

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՄԱԼԱԹԻՈՅ ՀԱՅՈՑ

•

ՏԵՂԱԳՐԱԿԱՆ, ՊԱՏՄԱԿԱՆ ԵՒ ԱԶԳԱԳՐԱԿԱՆ

•

ՀԱՄԱԴՐԵՑ՝

ԱՐՇԱԿ ԱԼՊՈՅԱՃԵԱՆ

1961
ՏՊ. ՍԵՒԱՆ
ՊԷՅՐՈՒԹ

A PUBLICATION OF
EDUCATIONAL SOCIETY OF MAŁATIA

# HISTORY
# OF THE ARMENIANS IN MALATIA

With Topographical, Historical and Ethnographical Information

Edited by
**ARSHAG ALBOYADJIAN**

Printed by
**SEVAN PRESS**
P. O. Box 2669
BEIRUT (Lebanon)





# Ա․ ՄԱՍ

# ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ

# Բ. ՄԱՍ

# ՊԱՏՄԱԿԱՆ ԱՆՑԵԱԼ

•

## ՄԱԼԱԹԻՈՅ ՀՆԱԽՕՍԱԿԱՆՆ ՈՒ ՊԱՏՄԱԿԱՆԸ՝ ՔԱՐԱՅԻՆ ՇՐՋԱՆԷՆ ՄԻՆՉԵՒ ԻՍԼԱՄԱԿԱՆ ԳՐԱՒՈՒՄԸ

Գրեց՝ ԵՂԻԱ Ս. ՔԱՍՈՒՆԻ

## Գ. ՄԱՍ

# ՀԱՅԵՐԸ ՄԵԼԻՏԻՆԷԻ ՄԷՋ

## (ՀԻՆ ՕՐԵՐԷՆ ՄԻՆՉԵՒ ՄԵՐ ՕՐԵՐԸ)



## Դ. ՄԱՍ

# ՄԱԼԱԹԻԱ ԵՒ ԹԵՄԻՆ ՀԱՅԱԲՆԱԿ ՎԱՅՐԵՐԸ

## Ա

### ՄԱԼԱԹԻԱ ՔԱՂԱՔԸ



## Բ.

### ՄԱԼԱԹԻՈՅ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ ՀԱՅԱԲՆԱԿ ՎԱՅՐԵՐԸ

# Ե· ՄԱՍ
# ՀԱՄԱՅՆՔԱՅԻՆ ԿԵԱՆՔ
## Ա·
## ԿՐՕՆԱԿԱՆ ԿԵԱՆՔ ԵՒ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

# Զ· ՄԱՍ

# ԻՄԱՑԱԿԱՆ ԵՒ ՄՏԱՒՈՐԱԿԱՆ ԿԵԱՆՔ

**1**

## Զ

## ՅԱՐԱՆՈՒԱՆԱԿԱՆ ԵՒ ՕՏԱՐ ԿՐԹԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՆԵՐ

### Ա.

### ՀԱՅ ԿԱԹՈԼԻԿ ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐ



### Բ.

### ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐ

## Է. ՄԱՍ

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԵԱՆՔ



## Ը. ՄԱՍ

# ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԵԱՆՔ



## Թ. ՄԱՍ

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԵԱՆՔ

# Ժ. ՄԱՍ

# ԱԶԳԱԳՐՈՒԹԻՒՆ ՄԱԼԱԹԻՈՅ

# ԺԱ. ՄԱՍ

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԻՒՆ

# ԺԲ. ՄԱՍ

# ՀԱՅ ԳՐՉԱԳԻՐՆԵՐ



# ԺԳ. ՄԱՍ

# ՄԱԼԱԹԻՈՅ ՀԱՅ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԴԷՄՔԵՐԸ



# ԺԴ. ՄԱՍ

# ՄԱԼԱԹԻԱՑԻՔ ՄԱԼԱԹԻԱՅԷ ԴՈՒՐՍ

էջ

# ՅԻՍՆԱՄԵԱՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ՄԱԼԱԹԻՈՅ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ



# Գ. ՄԱՍ

# ԻՄԱՑԱԿԱՆ ԵՒ ՄՏԱՒՈՐԱԿԱՆ ԿԵԱՆՔ

## Ա.

## ՄԱԼԱԹԻԱ ԻԲՐ ՎԱՅՐ ՄՏԱՒՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ

*Մալաթիա, Հայաստանի սահմանագլուխի մօտ Փոքր Հայքի պատկանող քաղաք մըն էր, որուն կեանքը, ինչպէս տեսնուեցաւ, խիստ փոփոխական հանգամանք ունեցած է:*

*Հայերը, հոն անյիշատակ ժամանակներէ սկսեալ բնակութիւն ունեցած են, սակայն ոչ տեւական, վասնզի մինչ պատերազմի վայր եղած է Մալաթիոյ շրջանը եւ ջարդերու ու գերեվարութեան ենթարկուած: Այս պատճառով քաղաքը Հայերէն քանի անգամներ պարպուած եւ նորէն վերաբնակուած է:*

*Որչափ ատեն որ Փոքր Հայքը կը գտնուէր Բիւզանդական տիրապետութեան տակ, Դ. կամ Գ. Հայքի գլխաւոր քաղաքին Մալաթիոյ բնակչութիւնը ծագումով թերեւս մեծամասնութեամբ հայ, չէր կրցած պահել իր հայեցի ինքնուրոյն մշակոյթը, վասնզի յունադաւան եկեղեցին բնաւ չէր հանդուրժեր, բիւզանդական պետութեան սահմաններուն մէջ, ուրիշ ազգի մը սեփական մշակոյթով զարգացման:*

*Հետեւաբար շատ մեծ թիւով Հայեր որոնք շատ վաղեմի ժամանակներէ սկսեալ ապաստանած էին բիւզանդական երկիրներ, ի մէջ այլոց Մելիտինէ, կլանուած էին յունադաւանութեամբ եւ յոյն մշակոյթով, երբ Արաբները ասպարէզ եկան Է. դարուն եւ իրենց տեւական յարձակումներով տկարացուցին բիւզանդական կամ Արեւելեան Հռոմէական կայսրութիւնը, եւ առիթ տուին որ արեւելքի մէջ կրօնական եւ ազգային բաժանումները եւ պառակտումները շեշտուին:*

*Այդ շրջանակին մէջ ապրող Հայերը, որոնք ենթարկուած էին բիւզանդական քաղաքակրթութեան ազդեցութեան, անկարելի էր որ մինչեւ Ժ. դար յունականէն տարբեր ուսում մը ստացած ըլլային:*

Թերեւս Ժ. դարուն քանի մը հայ եկեղեցիներ եւ վանքեր հիմնուած են Եփրատամերձ գաւառներու մէջ, օգտուելով ժամանակաւոր մեղմացումներէ եւ կամ հողամասի մը բիւզանդական կայսրութենէն խլումներու կամ հայ իշխանի մը կողմէն գրաւուելէն:

Այսպէս, Դ. Հայքի մօտ կամ մէջ կը յիշատակուին վանքեր, ինչպէս Դ. Հայոց Հաշտենից գաւառին դրացի Տուրուբերանին Արշամունիք գաւառին Վանդոյ վանքը, որ Ժ. դարուն Վարդիկ Հայրը անապատաւոր ծղնաւորը ծաղկեցուցած էր (Ասողիկ 163, ԱԶԳԱՊԱՏՈՒՄ 1103): Նոյնպէս Վարդիկ հօր ժամանակակից մըն էր և անոր պէս անապատաւոր մը, Կարմիր Հայրն որ «Ի ԾՈՓԱՑ ԳԱՒԱՌԻՆ, ՄԻՆՉ ՏԱՃԿԱՑ ԷՐ ԱՇԽԱՐՀՆ, ԲՆԱԿԷՐ ԱՆԴ» և Պալին բերդին (Արղընի կողմերը) ամիրայէն առած էր աւերակ եկեղեցի մը եւ հոն հաստատուած (Ասողիկ, 163):

Նոյն ժամանակները հիմնուած է նաեւ, գրեթէ միեւնոյն շրջանակներուն մէջ Խարբերդի գաւառին ՆԱՀՐՆԵԱՐ կոչուած տեղը «Մովսէսավանք»ը կամ «Մովսիսնոց»ը, զոր հիմնած է Մովսէս Տարոնեցի 934ին «բարեզարդ կարգադրութեամբ, բազմութեամբ եղբարց, բազմապայծառ բնական իմաստովք» (Ասողիկ 161—2):

Այս վանքը որ ԺԳ. դարուն տակաւին շէն էր (Զամ. Գ. 310 եւ 314) կառուցուած էր Լիկանտոն աշխարհին մէջ[1]:

Ասոնց նման կը յիշուին ուրիշ վանքեր, ինչպէս ԿԱՄՐՋԱՁՈՐԸ, որ եթէ ճիշդ է այս աւանդութիւնը, որուն արձագանգ կ'ըլլայ Հ. Ղեւոնդ Ալիշան (տես Այրարատ էջ 548) նոյնպէս Փոքր Հայոց Լիկանտոն գաւառին մէջ կը գտնուէր: Հոն պահուած էր խաչափայտի մասունք մը, զոր վանքին վանահայր Յովհաննէս իրեն հետ առնելով փախած էր, եւ Աբաս Բագրատունի (928—952) թագաւորին պաշտպանութեամբ նոր վանք մը շինած՝ հին վանքին անունով, 939ին:

Այս աւանդութիւնը պահած է Ստեփանոս Ասողիկ (158), որ կ'անգիտանայ Լիկանտոնի Կամրջաձոր վանքին գոյութիւնը, այլ միայն գրեթէ Արշարունեաց գաւառին մէջ գտնուած նոյն անունով վանքը Կապոյտ գետակի ձորին մէջ, կամուրջի մը մօտ շինուած, ուր բերուած էր Յովհաննէս վանահօր ձեռքով ՀՐԱՋԷՆ ՆՇԱՆ կոչուած հրաշագործ խաչափայտը, Եգերացւոց աշխարհէն[2]. որն որ ճիշդ եղած ըլլայ, տարբերութիւն չ'ըներ, քանի որ Արշարունեաց ԿԱՄՐՋԱՁՈՐը հիմնուած էր բիւզանդական Լիկանտոնէն կամ Եգերացւոց երկրէն եկող վանականներով, որոնց թիւը նախ քառասուն էր եւ բարձրացաւ մինչեւ երեք հարիւր: Այս վանքը եւս եղած է նշանաւոր:

---

(1) Արդի Ճահանին կը համապատասխանէ. Կեսարիոյ եւ Մելիտինէի միջեւ Եփրատի արեւմտեան կողմը կը գտնուէր այս նահանգը, որ մինչեւ Խարբերդ չէր տարածուէր:

(2) Օրմանեան (Ազգապատում էջ 1101) հաւանագոյն կը տեսնէ Կամրջաձոր անունին առաջին անգամ Հայաստանի մէջ գործածուիլը: Օրմանեանի այս տեսութիւնը համոզիչ կը թուի:

*Նոյնպէս բիւզանդական երկիրներէն փախստական վանականներ էին որ հիմնեցին ոչ նուազ նշանաւոր ՀՈՌՈՄՈՍԻ վանքը* (Ազգապատում *էջ* 1102) *եւ ուրիշ շատ մը վանքեր* (*տես* Ազգապատում 1102–3), *որոնց միաբանները չենք գիտեր թէ ուրկէ՞ գաղթած են։ Թերեւս կային անոնց մէջ Մալաթիա կամ շրջակայքն ալ հիմնուած եւ հիմա անունները մոռցուած վանքերու միաբաններ։*

*Այս վանքերը հիմնուած էին հաւանօրէն աւելի կանուխ, Ռոմանոս Դ. Լեկաբենոս կայսեր իշխանութեան շրջանէն* (920–944), *բայց այս մոլեռանդ կայսրը երբ սկսաւ հալածել իր պետութեան սահմաններուն մէջ գտնուող Հայերը, անոնք Բագրատունի թագաւորներու երկիրները ապաստանեցան, խոյս տալով Բիւզանդական հալածանքներէն։*

*Սակայն հազիւ հարիւր տարի ետք Ռոմանոսի յաջորդները Արեւելքէն արշաւող բարբարոսներու առջեւ տկար՝ պիտի ստիպուէին իրենց Եփրատեան սահմանագլուխը Հայերով ամրացնելու յոյսով, գրկաբաց ընդունիլ եւ տեղաւորել Բագրատունի եւ Արծրունի արքայական ընտանիքներու ժառանգները, իրենց իշխաններով եւ զինուորական հետեւորդներով։ Այս հայ գաղթականները որոնք մեծ զանգուածով կու գային ԺԱ. դարու ընթացքին, պիտի հայացնէին Փոքր Հայքը, ինչպէս նաեւ Կիլիկիան, որուն լեռնային մասերուն մէջ կը կառուցուէին բազմաթիւ վանքեր, որոնք հայեցի դաստիարակութեան ալ ապաստանարանները կ'ըլլային, շնորհիւ իրենց անքոյթ դիրքին եւ Ռուբինեանց իշխանութեան, որ իր հովանին կը տարածէր այդ վայրերուն վրայ։*

*Ինչպէս Վեր. Ե. Քասունի կը ներկայացնէ* «ԺԱ. դարուն Ամանոսի եւ Արեւելեան Տաւրոսի երկու զառիթափները հոծ հայութեամբ մը լեցուեցան, հայ վանքեր՝ մեղուներու փեթակներու չափ բազմաթիւ՝ նոյնքան ալ ժրաջան ու կենսալիր եռանդով կը շէնցնէին Քեսունի, Բերդուսի, Ուլնիոյ, Գերմանիկի եւ Տլուքի շրջանները, զորս մեր պատմութիւնը ընդհանուր կոչումով «Սեաւ լերինք» կ'անուանէ եւ կը տարածուին Եփրատէն մինչեւ Ջահան գետ։ Կարմիր վանք, Շուղր, Ընկուզուտ, Արեգին, Յեսուեանց անապատ եւ ուրիշ մենաստաններ Գրիգոր Վկայասէրի ջանքերով եւ Փիլարտոսի պաշտպանութեամբ, կարճ միջոցի մը մէջ կրթական գործունէութեան մեծ կեդրոններ դարձան, ուր մօտաւոր ապագայի մը մէջ հայ գրականութեան համար եթէ ոչ նոր ոսկեդար մը, գոնէ ԱՐԾԱԹ ԴԱՐ ՄԸ կը խոստանար։

Ասորւոց գրականութեան յիշատակարաններէն կ'իմանանք որ՝ այդ օրերուն Մալաթիայի, Հասնմանսուրի եւ Ուռհայի շրջաններն ալ լի էին Ասորի ծաղկեալ դպրեվանքերով ու մենաստաններով։ Ասորւոց պատրիարքութեան աթոռանիստ վայրը՝ այն ատեն Մալաթիայէ քիչ մը հարաւ՝ Բար Սաւմա (Bar Sauma) *վանքն էր*»[1] (Փիլարտոս Հայը *էջ* 62)։

(1) *Վեր. Ե. Քասունի Ասորւոց համար տրուած տեղեկութիւններուն համար օգտուած է* W. Wusoght *ի* Syrian Literature *խորագիրով գրած մէկ հատուածէն* (*Բրիտանական Համայնագիտարան, Թ. տպագրութիւն, ԻԲ. հատոր, էջ* 848)։

Այս երկար մէջբերումը զոր ըրի, ցոյց կու տայ թէ Հայերը իրենց Մայր–Հայրենիքէն դէպի արեւմուտք տեղաշարժ ըրած ատեն ինչպէս լեցուցած էին Իսկէնտէրունի ծոցին չուրջ բոլորը, մասնաւորապէս լեռնային շըրջանները եւ հիմնած վանքերը այս կրթական գործունէութեան կեդրոններ դարձած էին։

Նոյնպէս տեսանք որ այդ վայրերը դիմող Հայերու հետ իրենց իշխանները եւ իրենց հոգեւոր պետերն ալ արեւմուտք տեղափոխուած էին։

Հայ Կաթողիկոսական աթոռը արդէն փոխադրուած էր նոյնիսկ բիւզանդացիներուն կարգադրութեամբ այդ շրջանակը։ Խաչիկ Բ. Անեցի, որ 1049էն իվեր աթոռակիցն էր Պետրոս Գետադարձի (1019–1054) անոր մահէն վերջ արտօնուեցաւ բնակելու կայսրութեան արեւելեան սահմանագլուխ մօտ Թաւբլուր վանքը, ուր մնաց մինչեւ իր մահը (1060), որմէ հինգ տարի յետոյ միայն Գրիգոր Վկայասէր (1065–1105) կը հաստատուէր Ծամնդաւ։

Հայերը, որ Մալաթիոյ մէջ կ՚ապրէին, այդ շրջանակին մէջ տեսնուած Ասորիներու եռանդուն գործունէութենէն հաւանօրէն ազդուած են։

Ինչ ինչ երեւոյթներ եւ յիշատակարաններ ցոյց կու տան թէ Մալաթիոյ մէջ ԺԱ. դարուն, բաւական թուով Հայեր հաստատուած էին, Հայաստանէն տեղափոխուելով։

Անոնք 1057ին ունէին եկեղեցի եւ քահանայ, ինչպէս կը հաստատուի նոյն թուականին քահանայի մը գրած Աւետարանին յիշատակարանէն։

Բայց մինչ այդ թուականին ասիական բարբարոսները հասած էին Եփրատ եւ տարի մը ետքը (1058) Ապուտինար՝ առաջնորդութեամբ Իվանէ Ուռպելեանի պիտի գրաւէր Հանձիթը եւ յետոյ նաեւ Մալաթիան, որ բարբարոսները հրկիզեցին, կործանեցին եւ բնակիչները գերի վարեցին (տես վերը, էջ 214–5)։

Գրեթէ քաղաքը կը կործանէր, անշուշտ խամրեցնելով հոն մտաւորական կամ ուսումնական շարժման մը առաջին ծիլերը։

Երկու երեք տարի ետք 1060–1061ին քաղաքը կը վերաշինուի, սակայն Ալփասլան (1063–1078) պետը բարբարոսներու նոր արշաւանքի մը, Մալաթիան, ինչպէս նաեւ ուրիշ Փոքր Ասիական քաղաքներ կը գրաւէ, մինչեւ Գոնիա կ՚առաջանայ, վերստին տագնապի մատնելով Մալաթիան, ուր գըտնուող բիւզանդական բանակը կը ջարդուի (տես վերը, էջ 217)։

Անդր Եփրատեան հողերը փրկելու համար, բիւզանդական ճիգերը ապարդիւն կ՚ըլլան եւ 1071 Օգոստոս 19ին Մանազկերտի պարտութիւնը ու Ռոմանոս Դ. կայսեր գերութիւնը, որ այնքան ճակատագրական դեր ունեցած է, բիւզանդական իշխանութենէն պիտի կորզէր Մալաթիան եւ հոն պիտի տիրակալէին 1071էն մինչեւ 1106 Հայ իշխաններ, ինչպէս Փիլարտոս, Գաբրիէլ Յոյն եւ Գող Վասիլ, եւ բնական է անկէ քաջալերուած Հայերը վերստին կը հաստատուին Մալաթիոյ մէջ եւ իրենց ազգային–հոգեւոր եւ համայնքային կեանքը կը կազմակերպեն, անշուշտ Ծամնդաւի վանքը հաստատուած

*Գրիգոր Վկայասէր կաթողիկոսին (1065—1105) եւ մանաւանդ անոր աթոռակից Բարսեղ Ա. Անեցիի (1081—1115) կազմակերպական ջանքերով։*

*Գրիգոր Վկայասէր, որ ունէր գրական նախասիրութիւններ եւ յաճախ կը բնակէր Սեւ Լերանց եւ Փոքր Հայքի մէջ հաստատուած զանազան վանքեր, եռանդով պարապեցաւ եւ ուրիշներն ալ մղեց զբաղելու Ս. Գրոց մեկնաբանութիւններու եւ Սուրբերու վկայաբանութիւններու թարգմանութիւններով։*

*Նկատելի իրողութիւն մըն է որ մեղի դաւանակից Ասորիներու հոգեւոր կեդրոնն ալ այդ շրջանակին մէջ կը գտնուէր եւ ինչպէս տեսնուեցաւ, Ասորիները հոն կրցած էին ստեղծել մտաւորական կեանք հիմնելով ծաղկեալ դպրեվանքեր, եւ հասցնելով ուսումնական եկեղեցականներ, որոնք կը զբաղէին կրօնական գրականութեամբ։*

*Հաւանօրէն սոյնք Թելադրական ազդակներ եղած են կամ օրինակներ Մալաթիոյ Հայերուն, որոնք չատ հաւանաբար ունեցած են, ուսման եւ դպրութեան պարապող անձեր, իբր գրիչ կամ Թարգմանիչ, բայց դժբախտաբար չեն կրցած արդիւնաւոր աշխատանքի հետքեր Թողուլ Տուղրելի եւ Ալփասլանի կրկին արշաւանքներուն հետեւանօք Մալաթիոյ ենթարկուած աղէտի եւ Հայերու փախուստին պատճառով։*

*Իրաւ է քաղաքը կարճ ժամանակի մէջ վերաշինուեցաւ, բայց ապահովաբար Հայերու Թիւը չատ պակսեցաւ։*

*Այս Թուի նուազութիւնը ինչպէս տեսնուեցաւ դեր մը կատարեց Մալաթիոյ մէջ Հայ հոգեւոր իշխանութեան մը կազմութեան յապաղումին մէջ, որ բացատրուեցաւ (տես վերը, էջ 540)։ Տեսնուեցաւ Թէ ինչպէս Մալաթիոյ Հայերը ուղղակի Ծամնդաւ, Մուտառասուն եւ Թալըլուր նստող կաթողիկոսին իշխանութեան ենթարկուած էին եւ առանձին եպիսկոպոսի մը պէտք չէին ունեցած։*

*Քաղաքին աշխարհագրական դիրքը եւ անցեալն ալ չատ ապահովութիւն չէին ներշնչեր, որ մեծ Թիւով Հայեր չուտով դիմէին հաստատուելու համար կրկին։*

*Բայց Մալաթիոյ 1071էն ետքը Փիլարտոսի իշխանութեան ենթարկուիլը եւ այդ իշխանապետին մասնաւոր ջանքերը Փոքր Ասիոյ մուտքին վրայ Քրիստոնեայ պետութիւն մը կազմելու համար Եփրատացւոց շրջանը Հայերով լեցուցին, սակայն Մալաթիոյ իշխան Գաբրիէլ «Յոյն»ին (1079—1101 Սեպտեմբեր 18) մոլեռանդական արարքները եւ կարճ ժամանակի մէջ իրարու յաջորդող երկու սովերը, 1079—1080ին եւ 1100—1103 Թուականներուն Մալաթիոյ վերածաղկումը յապաղեցուցին մինչեւ Դանիշմենդեան տիրապետութիւնը։*

*Այնպէս որ Մալաթիոյ մէջ իմացական շարժումի փթթումի նշաններ չենք գտներ, Թէեւ չենք կրնար մերժել անոր գոյութիւնը, վասնզի Թերեւս կար, սակայն անյայտ մնացած է։*

*Սակայն միշտ պէտք է նկատի ունենալ Թէ Մալաթիա, աննպաստ մի—*

*ջամայր մը եղած է Հայ մտաւորական կամ ուսումնական շարժումներու համար, վասնզի նախ յունական եւ ասորական ազդեցութիւնը գերակշիռ եղած է եւ երկրորդ՝ երկիրը խաղաղութիւն չէ վայելած։*

*ԺԲ. դարէն առաջ հազիւ մանր մունր հետքեր կը գտնենք մշակութային աշխատանքներու, որոնք են քանի մը աննշան թարգմանութիւններ եւ կրօնական ձեռագիրներու ընդօրինակութիւններ։*

*Սելջուկները երբ 1106ին տիրեցին Մալաթիոյ շրջանին եւ հոն 1124էն 1178 Դանիշմենտները եւ 1178էն 1315 Ռումի Սելջուկները տիրակալեցին խամրեցան այդ տկար նշոյլներն ալ, եւ տիրեց կատարեալ անգործութիւն հարիւրամեայ շրջան մը (1166էն մինչեւ 1269) ուրկէ ոչ մէկ ձեռագիր կամ մշակութային աշխատանքի յիշատակութիւն մեզի կը հասնի։*

*Ուրեմն Դանիշմենդ էմիրութեան եւ Ռումի Սելջուկ սուլթանութեան տիրապետութեան շրջանին, այսինքն 1124էն մինչեւ 1315, հակառակ անոր որ այս երկու իշխանութիւնները քրիստոնեաներու նկատմամբ որոշ չափով մը բարեացակամ էին, Մալաթիոյ մէջ հայ մշակոյթը եւ հայ դաստիարակութիւնը անշքացած եւ ոչնչացած էին։*

*Այս անձխտումը բոլորովին կատարեալ եղաւ 1315–1316ին, երբ Մալաթիա անգամ մըն ալ ենթարկուեցաւ յարձակման եւ ինչպէս նոյն թուականին Մալաթիա, Երուսաղէմ եւ այլուր գրուած ձեռագիրներ կը հաստատեն, քաղաքը գրաւուած է Եգիպտացիներէն եւ հրկիզուած ու բնակչութիւնը ջարդուած եւ ողջ մնացողներն ալ գերի վարուած են։*

*Մալաթիոյ պատմութիւնը այդ թուականէն ետք շատ խառնակուած է, ինչպէս տեսնուեցաւ (տես վերը, էջ 280–1), վասնզի Թիւրքմէնները և Մոնկոլները սուրի եւ հուրի մատնած են ամբողջ շրջանը, որ եղած է ժամանակ, (ինչպէս 1335–1380ի յիսնամեակին) որ բացարձակ անիշխանութիւն մատնուած է, Մոնկոլ խաներու տեւական պայքարներուն պատճառով։*

*Քիչ յետոյ օսմանցիք կը հասնին Եփրատ, Մալաթիան կը գրաւեն 1396ին, բայց չեն կրնար հոն հաստատուիլ, վասնզի էօզպէք թաթարներու արիւնռուշտ պետը Լէնկթիմուր 1400–1401ին Մալաթիան կը գրաւէ եւ կ՚աւերէ եւ կու տայ Թիւրքմէն Ագգոյունլուներու, որոնք քիչ շատ հաստատուն վարչութիւն մը կը հաստատեն հոն։*

*1516ին երբ օսմանցիք տիրեցին քաղաքին եւ գայն գրեթէ աւերակոյտի մը վերածեցին, նոր եւ ծանր տագնապի մը ենթարկուեցաւ Մալաթիան։ Օսմանեան Թուրքերը այս անգամ ալ դիւրաւ չկրցան հաստատուիլ, վասնզի 1520–1ին Թիւրքմէնները եւ 1577ին Գալէնտէր օղլու մեծ ապստամբութիւններ յարուցին։ Ասոնցմէ զատ դժբախտութիւններ պակաս չեղան, ինչպէս 1599–1610 տեւող երկարատեւ սովը, եւ 1603ին քաղաքին գրաւումը, Ճելալի ապստամբ Գարա Եազըճըէն եւ քաղաքին թալանի եւ կողոպուտի մատնուիլը։*

*Այս պայմաններու մէջ շատ հասկնալի է որ Մալաթիոյ Հայերը բնաւ հանգիստ եւ կազմակերպուելու առիթ չունեցան, բայց կրցան պահել իրենց հայութիւնը եւ սերունդէ սերունդ փոխանցել հայ լեզուն եւ գիրը, որ թէեւ*

ոչ փայլուն այլ անշուք կերպով պահուած է, մտաւորական աշխատանքի համար շատ աննպաստ միջավայրին մէջ։

## Բ

# ԱՌԱՆՁՆԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՈՒՄ

Միշտ հայ մտաւորական կեանքը աւելի կամ նուազ փայլով պահուած է ամենէն դժնդակ համարուած ժամանակամիջոցներու եւ ամենէն աննպաստ միջավայրներու մէջ, վասնզի ամէն ատեն գտնուած են գիրի եւ գիրքի սիրով վառուած մարդիկ, որոնք ընթերցումով եւ գրչագրութեամբ պարապած են, վանքերու կամ տուներու մէջ։

Ասոնք կարդալ–գրել սորված էին անհատներէն, որոնք իրենց շուրջը հաւաքելով աշակերտներ, կրցած են առկայծեալ պահել հայացի ուսումը։

Այդ անհատները որոնք առանձնական ուսուցումով աշակերտներ կը հասցնէին սովորաբար եկեղեցականներ էին, վարդապետ կամ քահանայ։

Այսպէս առանձնական ուսուցումով, վարդապետները իրենց վանքերուն համար միաբաններ եւ քահանաները՝ իրենց եկեղեցիներու համար «Մանկունք եկեղեցւոյ» կամ տիրացուներ կամ լուսարարներ պատրաստեր էին, որպէսզի անոնցմէ յարմարութիւն ունեցողները քահանայ ձեռնադրըուէին։

Բոլոյ այն վանքերուն մէջ որոնք դպրանոց եւ ուսումնարան չէին, վարդապետները իրենց յաջորդները կը պատրաստէին փոքրաւորութեամբ։

Սովորութիւն էր իբր սպասաւոր եւ աշակերտ առնել հոգեւոր կեանքի յօժարութիւն ունեցող պատանի մը եւ զայն դաստիարակել անձամբ եւ պատրաստել կրօնաւորական կոչման։ Ահա այդ աշակերտներն էին որ փոքրաւոր կամ ձեռնասուն կը կոչուէին։ Ասոնցմէ անոնք որ ընդունակ էին կը ձեռնադրուէին վանական դառնալու համար եւ կ՚ապահովէին վանքերու տեւականութիւնը։ Այս դրութեամբ է որ վանքերու մէջ ուսումը առկայծեալ պահուած է մասնաւորապէս ԺԴ. ԺԵ. եւ ԺԶ. դարերու պէս անբարի ժամանակներու մէջ, ուր դպրեվանքեր եւ վարդապետարաններ դադրած էին գոյութիւն ունենալէ կամ շատ ցանցառ էին։

Մալաթիոյ վանքերը այս դրութեամբ գոյատեւած են, վասնզի որչափ որ կարելի է եզրակացնել առձեռն վաւերագիրներէ, անոնք իրենց մէջ վարժարաններ եւ ուսումնարաններ շատ քիչ ժամանակներ ունեցած են, անշուշտ երկրին խառնակ ու խռովեալ վիճակին պատճառով, որ երբեք նպաստաւոր միջավայր մը չէր ներկայացներ, ինչպէս բացատրուեցաւ։

Իսկ եթէ եղած է պահեր որ համեմատական հանդարտութենէ մը օգտուելով գտնուած են մարդիկ որ Մալաթիոյ վանքերը գոնէ կարճ ժամանակի համար յաջողած են ուսումնարաններու վերածել այդ վարդապետարանները Տաթեւի եւ Գլաձորի պէս մեծ ու ճոխ հաստատութիւններ չեն եղած։

Հետեւաբար, «ՄԱԼԱԹԻՈՅ ՄԱԳԱՂԱԹԵԱՅ ՁԵՌԱԳԻՐ ԱԻԵՏԱՐԱՆ»ը

*խորագիրով յօդուածին հեղինակը Գ. Ժ. (տես* ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ *ԺԵ. տարի Թ. 4 էջ 11) կը սխալի երբ 1000 կամ 1100 թուականով գրուած Աւետարանի մը գոյութիւնը եւ անոր յիշատակարանին մէջ Ս. Գրիգոր Լուսաւորչի վանքին մէջ երկու հարիւրի հասնող աբեղայ, վարդապետ եւ այլ բարձրաստիճան կղերականներով վարդապետարանի մը գոյութիւնը յիշուած կը կարծէ: Նոյնպէս կը յիշէ կարդացած ըլլալ թէ գրիչը երկու տարիէն աւելի տեւող աշխատութեամբ մը աւարտած է այդ աւետարանը եւ իբր յիշատակ կտակած է Մալաթիոյ հայ բնակչութեան:*

*Ուրախ եմ հաստատելով թէ այդ մագաղաթեայ Աւետարանը որ Թուրքերէն գողցուած, 1895-ին Ատանա տարուած եւ հոն ծախուած էր եւ յետոյ գինը վճարուելով վերադարձուած էր Մալաթիա, չէ կորսուած եւ կը գտնուի այսօր Երուսաղէմ: Անիկա Հայ բանասիրութեան ծանօթ 1267-ին համբաւաւոր Ռոսլինէ Կոստանդին կաթողիկոսի համար գրուած Աւետարանն է Հեթում Բ. թագաւորին նուիրուելու համար:*

*Այդ Աւետարանը, որ Մալաթիոյ մէջ չէ գրուած, ծանօթացնողները եղած են Սրուանձտեանց* (Թորոս Աղբար Ա. 324—7) *եւ ապա Մեսրոպ եպիսկ.* (Ազգագրական Հանդէս ԻԴ. *գիրք էջ* 74) *եւ Սահակ Կաթողիկոս Խապայեան* (Բիւզանդիոն թ. 3439): *Զայն քննած է նաեւ Գարեգին Կաթողիկոս Յովսէփեան* (Նիւթեր եւ Ուսումնասիրութիւններ հայ արուեստի եւ մշակոյթի պատմութեան *Բ. էջ* 40—41):

*Դժբախտաբար այս ձեռագրին յիշատակարաններէն ոչ մէկը կ'արդարացնէ Գ. Ժ.ի ըսածները, որ յիշողութեամբ գրուած են:*

*Յիշողութիւնը զինք վրիպեցուցած է, վասնզի ոչ մէկ բան կայ հոն որ հաստատէ թէ Ս. Գրիգոր Լուսաւորիչի վանքին մէջ վարդապետանոց մը գոյութիւն ունէր եւ 200ի չափ եկեղեցականներ՝ ամէն աստիճանէ:*

*Ընդհակառակը իմ խոնարհ կարծիքովս, Մալաթիոյ դժբախտ ճակատագրին հետեւանօք անոր վանքերուն մէջ հաստատուն այդպէս հարուստ եւ ճոխ կրթական հաստատութիւն մը չեմ կարծեր որ գտնուած ըլլայ, այլ պատահական խաղաղութեան շրջաններէ օգտուելով գրչագրական աշխատանքներ կատարած են եւ ուսուցումը հաւանօրէն պահած է իր առանձնական հանգամանքը, եւ փոքրաւորութեամբ շարունակուած է կղերականներու գոյութիւնը այդ վանքերու մէջ որոնք ԺԷ. եւ ԺԹ. դարերէ թերեւս աւելի կանուխ, միաբաններէ բոլորովին թափուր մնացած են:*

*
**

*Վանքերէն դուրս քաղաքին մէջ եկեղեցւոյ սպասաւորութեան համար կամ «եկեղեցւոյ մանկանց» համար ալ, ինչպէս ուրիշ վայրերու նոյնպէս նաեւ Մալաթիոյ մէջ շատ հաւանական է որ քահանաները, սարկաւագները եւ դպիրները իրենց տան մէջ կամ եկեղեցւոյ կից սենեակի մը մէջ հաւաքած են սահմանափակ թուով աշակերտներ եւ անոնց սորվեցուցած ընթերցա–*

նութիւն, որպէսզի եկեղեցիներու մէջ կարենան փոխասացութիւն ըսել կամ շարական կարդալ:

Դժբախտաբար բնաւ չէ յիշուած կամ ինծի ծանօթ չէ եղած Մալաթիոյ մէջ այս տեսակ առանձնական ուսումով զբաղող քահանայի մը, սարկաւագի մը և դպիրի մը անունը և ոչ ալ յիշատակութիւնը՝ դպրատուներու, որոնք ուրիշ քաղաքներու մէջ բացուած էին եկեղեցւոյ մանկանց համար[1]:

Սակայն յիշատակարաններու գոյութիւն չունենալը իրաւունք չի տար ըսելու թէ բնաւ գոյութիւն չեն ունեցած այս տեսակ դասարաններ եւ դասատուներ:

Կրնանք վստահօրէն ըսել թէ Մալաթիոյ մէջ ալ անոնք գոյութիւն ունեցած են որքան ներած են քաղաքին պայմանները կամ վիճակը որ դժբախտաբար շատ քիչ անգամ նպաստաւոր եղած է ժողովուրդին բարգաւաճման եւ ուսումնական զարգացման համար:

Գ.

# ԸՆԹԵՐՑՈՒՄ ԵՒ ԳՐՉՈՒԹԻՒՆ

Առանձնական ուսուցմամբ մտաւորական կեանքի պահպանութիւնը յաղթանակ մը կրնայ նկատուիլ ռեւէ հաւաքականութեան համար, երբ ան կը գտնուի այնպիսի պայմաններու մէջ որ թէ՛ իր ֆիզիքական գոյութեան դէմ սպառնալիքներ կան, եւ թէ իր ազգային մշակութային եւ տոհմային սեփական առանձնայատկութեանց խաթարումին վտանգը: Մալաթիոյ Հայերը մեր ազգին այն հատուածներէն մէկը կը ներկայացնէին որ կը գտնուէր այդ աննպաստ պայմաններուն մէջ, սակայն առաւել կամ պակաս յաջողութեամբ իրենց գոյութիւնը պահած էին:

Հայ ցեղը յայտնի է իր տոկուն նկարագրով: Անոր կը պարտի ան բոլոր դարերուն մէջ այնքան ճախող պայմաններու մէջ գտնուելով հանդերձ իր գոյութիւնը կարենալ պահելը:

Ֆիզիքական ուժով թերեւս անհամեմատ տկար ըլլալով շրջապատող ազգերէն, դէթ քաղաքակրթութեամբ եւ մշակոյթով զօրաւոր իր ֆիզիքական գոյութեան սպառնացող բարբարոս ժողովուրդներէն, կրցած է մինչեւ հիմա պահել իր առանձնայատուկ ազգային յատկանիշները եւ չձուլուիլ ժողովուրդներու մէջ:

Ասիկա կը պարտինք մեր անկողոպտելի մշակութային գանձերուն:

Այս գանձերուն ամենէն թանկագին մասը մեր լեզուն եւ մեր գիրն է որ ամենէն մեծ խարիսխը կը կազմէ հայ քաղաքակրթութեան:

Ազգերու զարգացման եւ յառաջդիմութեան գլխաւոր չափանիշը անոր ընթերցասիրութիւնն է, որ առանց գիրին եւ գիրքին չի կրնար գոյութիւն

(1) Քահանաները «ի տունս իւրեանց» բացած էին չափաւոր ուսում մը ջամբելու համար «Մանկանց եկեղեցւոյ» դպրոցներ, ուր կը յաճախէին եօթը տարեկանէն սկսեալ տղաք: (Այս դպրոցներու մասին տես Արշակ Ալպօյաճեան, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԴՊՐՈՑԻ, Ա. հտ., էջ 94):

*ունենալ: Հին ժամանակներու մէջ, երբ այսօրուան պէս տպագրութեան փըրկարար եւ լուսաւորիչ միջոցը չկար՝, մարդիկ պարտաւորուած էին տպագրական մեքենային գործը ձեռքով ու համբերատար աշխատութեամբ ընդօրինակութիւններով կատարել եւ այսպէս տաժանքով ձեռք բերել, միտքի սնունդ՝ ընթերցման նիւթը:*

*Հետեւաբար գրչութեան կամ ընդօրինակութեան գործը հետզհետէ մեծ զարգացում գտաւ: Մասնաւորապէս հայ վանքերու մէջ միաբաններ կը տքնէին անվհատ աշխատութեամբ գիրքեր ընդօրինակելու:*

*Այսպէս կ'ապահովէին Ե. դարուն կատարուած գիրի գիւտով հետապնդուած նպատակը՝ Ս. Գրքի հայացումը եւ կրօնքի եւ ազգութեան ամրապնդման համար հեղինակուած կամ թարգմանուած գործերու ըւթերցումը:*

*Ուստի գրչութեան արուեստը Ե. դարէն սկսեալ ընդհուպ տարածուեցաւ ուր որ հայ վանք մը կամ աւելի ճիշդ դպրեվանք մը կար: Այսպէս, նոյնիսկ Զ. դարուն Հայ վանական մը Յովսէփ կը գրէ ձեռագրական աշխատանքի կողմէ նշանաւոր եղած վերոյիշեալ Վանդոյի վանքը (Արշարունեաց գաւառին մէջ) ուր 36 վարդապետներ* «զգրչութեան արուեստն ունէին եւ զսուրբ գիրս յօրինէին»: *Անշուշտ միանգամայն* ՎԱՅԵԼՉԱԳՐՈՒԹԵԱՆ *հետամուտ ըլլալով (Եղիշէ Պատրիարք Դուրեան.* Պատմ. Հայ Մատենագրութեան *էջ* 67—68):

*Յաջորդ դարերուն հետզհետէ զարգացաւ այս արուեստը որ Կիլիկեան շրջանին ստացաւ գեղարուեստական զարգացում մը եւ արքունիքին եւ վանքերու մէջ գրիչներու եւ լաւ օրինակողներու առընթեր երեւան եկան ՆԿԱՐԻՉՆԵՐ (ծաղկող, ոսկող) որոնք աւելի ճոխութիւն տուին ձեռագիրներուն* (Նոյն *էջ* 71):

*Մալաթիոյ մէջ, որչափ որ Հայերը դժբախտ ճակատագիր մը ունեցած են, խաղաղութեան, անդորրութեան եւ ապահովութեան կարճ շրջաններ միայն ունենալով, ԺԱ. դարուն հազիւ ձերբազատուած յունադաւանութեան հալածանքներէ, ունեցած են գրիչներ[1] որոնք ընդօրինակութիւններ կատարած են եթէ ոչ վանքերու, գոնէ եկեղեցիներու հովանիին տակ երէցներու կամ դպիրներու աշխատութեամբ:*

*Արդարեւ Մալաթիոյ մէջ գրուած ծանօթ ձեռագիրներու հնագոյնը, որ* 1057*-ին ընդօրինակուած Աւետարան մըն է, գրուած է Խաչիկ Բ. Անեցի կաթողիկոսին* (1054—1060) *Թաւբլուր հաստատուելէն ետքը ԺԱ. դարուն:*

*Այդ Թուականին Հայերը Մալաթիոյ մէջ —ինչպէս տեսնուեցաւ— ունէին եկեղեցի եւ քահանաներ, որոնցմէ մէկը Թովմաս, որդի Մովսէս քահանայի, Աւետարան մը կը գրէր, ինքզինք կոչելով* «ՅԵՏԻՆ ԳՐՉԻ ՔԱՂԱՔԻՍ ՄԵԼԻՏԻՆԱՅ»:

*Դժբախտաբար ի վիճակի չեմ ճշդելու թէ այս Տ. Թովմաս քհնյ. իր—*

*(1) Դժբախտաբար շատ քիչ են ծանօթները, անշուշտ այն պատճառով որ ձեռագիրներու մեծ մասը փճացած են քաղաքին հասնող իրարու յաջորդող հրկիզումի, կողոպուտի, թալանի, ջարդի եւայլ աղէտներուն միջոցին:*

բեւ ձեւ բանի կը գործածէ՝ «ՅԵՏԻՆ ԳՐԻՉ» բացատրութիւնը թէ արդարեւ կային իրմէ աւելի կարող գրիչներ Մելիտինէի մէջ:

Ամէն պարագայի մէջ 1057-ին, «ի կաթողիկոսութեանն Տեառն խաչկայ, յորժամ ի Թաւբլուրի վանս էր», այս գրչագրութիւնը կատարուած է Մալաթիոյ մէջ քահանայի մը կողմէ, որուն բնիկ թէ եկուոր մը ըլլալուն մասին ալ տեղեկութիւն չունինք:

Եթէ ուրիշ գրիչներ ալ կային այս «նուաստ քահանայ» եւ Մելիտինոյ քաղաքին «յետին գրիչ»էն զատ, այն ատեն պէտք է ընդունիլ թէ ԺԱ. դարուն առաջին կէսին եւ թերեւս աւելի կանուխ հոն մտաւորական աղօտ շարժում մը գոյութիւն ունեցած է:

Բայց աւելի հաւանական է որ այս Աւետարանին գրչութիւնը գործն է պատահական գրիչի մը որ ոչ մէկ դպրոցի կամ վարպետի կապուած ըլլալ կը թուի եւ ոչ ալ յայտնի է թէ որո՞ւ աշակերտած է:

Եթէ ունեցած ըլլար անիկա իր ուսուցիչը եւ յաջորդութիւն մը ներկայացնէր եւ իր կարգին ունենար իր աշակերտը, երեւան եկած պիտի ըլլար դպրոց մը, որ սակայն կարելի չէ որ ստեղծուէր, վասնզի 1058-ին Ապուսուարի բարբարոսները քաղաքը կործանեցին եւ բնակչութիւնը գերի վարեցին, ուրեմն ԺԱ. դարուն կիսուն «ընդ բուսանելն չորացաւ» Մալաթիոյ մէջ գրչութեան գործը:

Հակառակ անոր որ 1060—1061-ին քաղաքը վերաշինուած է, սակայն անկարելի է որ բարգաւաճած ըլլայ եւ խաղաղ աշխատանքի ատակ միջավայր մը դարձած ըլլայ: Ալփասլանի (1063—1078) վերահաս արշաւանքին պատճառով, Մալաթիոյ բիւզանդական պահակազօրքը ամբողջ ջարդուեցաւ եւ քաղաքը բարբարոսներու գրաւման ենթարկուեցաւ:

Մանազկերտի բախտորոշ ճակատամարտէն (19 Օգոստոս 1071) յետոյ Մալաթիա մինչեւ Դանիշմենտ էմիրներու տիրապետութեան ենթարկուիլը 1124-ին քանի մը Հայ արկածախնդիրներու ինչպէս Փիլարտոսի, Գաբրիէլ «յոյն»ի եւ Գող Վասիլի իշխանութիւններուն ենթարկուեցաւ, որոնք գերագոյն ջանքեր ըրին, քրիստոնեայ խառն բնակչութեամբ պետութիւն մը կազմակերպելու Փոքր Ասիոյ մուտքին վրայ եւ չյաջողեցան հետզհետէ զօրացող բարբարոսներու չարունակական յարձակումներուն պատճառով:

Թերեւս ասոր համար յաջորդ տարիներուն գրուած ոեւէ ձեռագրի չենք հանդիպիր: Միայն երեսուն հինգ տարի ետքը, 1092-ին Գրիգոր Վկայասէր կաթողիկոսի (1065—1105 Յունիս 5) ատեն Մելիտինէի մէջ յունարէնէ թարգմանուած կը տեսնենք Մարկիանոս կայսեր ատեն կատարուած Մարինոս կոչեցեալ Ս. Եւստաքիոսի, Ռոմելի, Զենոնի եւ Մակարի վկայութիւնները որ ապահովաբար Մելիք Շահ Մեծ Սելճուքին ժամանակ —երբ համեմատաբար հանդարտ էր երկիրը— կատարուած էր անծանօթ թարգմանիչէ մը Պարկիարուխ սուլթանին (1092—1104) գահակալութեան տարին աւարտուած: Բայց տրուած ըլլալով որ Գրիգոր Վկայասէր (1065—1105), այդ օրերուն տենդագին փափաքով մը նուիրուած էր վկայութիւններ հաւաքե-

*լու, կը մղուինք մտածելու թէ այս սուրբերուն վկայաբանութիւններն ալ Հայերէնի վերածուած ունենալու փափաքած ըլլայ Վկայասէր, յունարէն բնագիրի մը Մալաթիոյ մէջ գոյութիւն ունենալուն ծանօթացած ըլլալով, եւ այդ պատճառով կատարուած ըլլայ այս թարգմանութիւնը:*

*Վկայասէր կրնար օգտուած ըլլալ Մալաթիա գտնուող Յունարէնի եւ Ասորերէնի ծանօթ հայ քահանաներէն որ յարմարութիւն կը ներկայացնէին այսպիսի գործի մը համար: Այդ պարագային պէտք է ընդունիլ թէ տակաւին, յունարէնի եւ ասորերէնի ուսուցումը կը շարունակուէր քաղաքին մէջ:*

*Առանց այս տեսակ ենթադրութեան մը այդ աշխարհամասին թոհուբոհի մատնուած մէկ պահուն առանց ոեւէ թելադիր պատճառի եւ ոեւէ կապակցութեան այս տեսակ թարգմանութեան մը կատարուիլը* 1092*-ին անմեկնելի պիտի մնար:*

*Այս տեսակ մեկնութիւն մը կ'արդարանայ նաեւ երբ նկատի ունենանք որ այս թարգմանութիւնները առանց ոեւէ հրահանգի եւ թելադրութեան կատարուած չէին կրնար ըլլալ, պատահօրէն եւ դիպուածով, երբ անոնք այնքան կը պատշաճէին ժամանակի մտայնութեան:*

*Ուրեմն, Մալաթիոյ Հայերը, իրենց աւերակներէն վերականգնող քաղաքին մէջ, կը հետեւէին իրենցմէ ոչ շատ հեռու գտնուող հայոց կաթողիկոսներու փափաքին համաձայն, հնարաւորութեան սահմանին մէջ, իրենց մէջ ապրող յունարէնի եւ ասորերէնի ծանօթ անձերու կատարել տալով այդ թարգմանութիւնները որոնք ունենալ կ'ուզէին կաթողիկոսները ապահովաբար*[1]:

*Այս կերպով կրնայ մեկնուիլ նաեւ Ս. Եւստաքիոսի, Թոմելի, Զենոնի, եւ Մակարի վկայաբանութիւններուն թարգմանութենէն* 33 *տարի ետքը,* 1125*-ին Գրիգոր Տղայ կաթողիկոսին* (1113–1166) *հրամանով Շմուէլ անուն ասորի քահանայի մը հեղինակած Ս. Պարսումի վկայաբանութեան թարգմանութիւնը կատարուիլը— հաւանօրէն Ասորերէնէ— Գրիգոր անուն քահանայի մը ձեռքով, որ թերեւս մարզուած եւ պատրաստուած էր Սեաւ լեռան վանքերուն մէջ, ուր հաստատուած էր նաեւ Հայոց կաթողիկոսը:*

*Գրիգոր քահանայի այս ասորերէնէ թարգմանութիւնը, ինչպէս Ներսէս Շնորհալի դիտել կու տայ, շատ յաջող չէր,* «Ասորւոց շաղփաղփ եւ ծամածուռ անյարմար եւ աշխարհօրէն բանից··· եւ ոչ ըստ մերում ազին, սիղաբայից» *կատարուած ըլլալուն համար:*

*Այնպէս որ Շնորհալի այդ գործը* 1166*-ին կրկին թարգմանած է: Որչափ որ համբակներու գործեր եղած ըլլան այս թարգմանութիւնները չեն*

---

*(1) Ս. Եւստաքիոսի, Թոմելի, Զենոնի եւ Մակարի վկայաբանութեանց յիշատակարանը բացորոշ կ'ըսէ թէ հայ թարգմանութիւնը կատարուած է Մելիտինէի մէջ, ըստ երեւոյթին ոչ թէ մէկ հոգիի ձեռքով: Չեմ գիտեր ինչ տուեալներու վրայ Հ. Գարեգին վրդ. Զարբհանալեան այս թարգմանութիւնը վերագրած է Գրիգոր Վկայասէրի (տես* **ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ ՆԱԽՆԵԱՑ**, *էջ* 722):

կրնար անտեսուիլ իր ջանադրութիւններ, ինչպէս նաեւ իբրեւ փաստեր սա իրողութեան թէ Մալաթիոյ մէջ կատարուած են յունարէնէ եւ ասորերէնէ թարգմանութիւններ ԺԱ. դարուն վերջերը (ինչպէս 1092–ին) եւ ԺԲ. դարուն առաջին կիսուն (ինչպէս 1125–ին), մեզի հասած ձեռագիրներու վրայ հիմնուելով, մինչ շատ հաւանական է որ ուրիշ թարգմանութիւններ ալ կատարուած են հոն: Սակայն իրենց միջեւ կապ չկայ եւ առանձնապէս ալ ոեւէ դպրոցի չեն պատկանիր անոնց ո՛չ թարգմանութիւնները եւ ո՛չ ալ գրիչները:

Ասոնք պատահական աշխատանքներ են, որոնք կատարուած են թերեւս Սեւ լերանց վանքերուն մէջ մարզուած անձերու կողմէն Հայ կաթողիկոսներու հաճելի ըլլալու համար, եթէ ոչ շատ հաւանական չէ որ դպրոց մը գոյութիւն ունեցած ըլլայ:

Ասով հանդերձ կը թուի թէ Յունարէնի եւ Ասորերէնի մշակութիւնը գէշ աղէկ պահուած էր մինչեւ ԺԲ. դարու եւ նոյնիսկ մինչեւ ԺԳ. դար, քանի որ այդ դարուն կը հանդիպինք Յունարէն Աւետարանի մը, գրուած Մելիտինեցի Վասիլ Դպրապետի (որդի Ովրեստէս քհնյ.ի) ձեռքով, 1226–ին Կեսարիոյ մէջ, թերեւս Մալաթիայէն Կեսարիա տեղափոխուած Յունարէնի ծանօթ Հայու մը կողմէ[1], որ գուցէ նաեւ յունադաւան (Հայ–Հոռոմ) էր:

Ինչպէս կը տեսնուի մեզի հասած քանի մը ձեռագիրներու գոյութեամբ, Մալաթիա ենթարկուած էր քիչ թէ շատ, ազդեցութեանը այն ոգեւորեալ գործունէութեան որ կը տեսնուէր իր շուրջը, Սեւ եւ Տաւրոսեան լեռներու եւ Կիլիկեան լեռներու մէջ հաստատուած վանքերու մէջ: Ասոր նախակարապետը եղած էր Գրիգոր Վկայասէր իր երկու աշակերտներուն՝ Կիրակոս եւ Մատթէոս վարդապետներուն հետ, եւ շարունակողները եղած էին Գրիգոր Գ. Պահլաւունի (1113–1166) եւ Ներսէս Շնորհալի (1166–1173) կաթողիկոսները, իրենց ժամանակակից բազում նշանաւոր վարդապետներու հետ:

Այս ջանքերը արդիւնաւորուեցան եւ Հայ մատենագրութեան արծաթի դարուն վերածնունդը կերտեցին:

Այդ վանքերուն մէջ էր որ քիչ յետոյ պիտի զարգանային Կիլիկեան գրչագրական դպրոցները որոնք այնքան գեղեցիկ ձեռագիրներ պիտի արտադրէին պարծանք հայութեան:

Մալաթիա, որ արեւմուտք ապաստանող Հայոց կաթողիկոսներու կեդրոնավայրին մօտ էր եւ դրացի՝ Սեւ լեռան եւ Կիլիկեան բարձունքներու վրայ թառած Հայ վանքերուն, բնական է անոնց ազդեցութեան ենթարկուած էր եւ անոնցմէ ներշնչուած եւ նոյն ուղղութեամբ զարգացած էր: Թերեւս նպաստաւոր պայմաններու մէջ ոգեւոր գործունէութեամբ պանծալի տեղ մը գրաւէր, եթէ քաղաքը իր աշխարհագրական դիրքին բերմամբ չպրտ–

(1) Այս ձեռագրին մասին տես Հ. Ներսէս Վրդ. Ակինեանի յօդուածը, ՀԱ, 1908, էջ 220 եւ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 543–1053 եւ 1840 եւ Գարեգին Կաթ. Յովսէփեան, ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ ՁԵՌԱԳՐԱՑ, էջ 845–849:

նուէր այնպիսի վայրի մը մէջ, որ իբր մշտակայ ռազմավայր եւ պատերազմի դաշտ, դրկուած չըլլար խաղաղութեան բարիքներէն որոնք միայն կըրնային ապահովել հանդարտ եւ անվրդով աշխատութիւն:

Այս բարիքը բնաւ չվայելեց Մալաթիա եւ ասոր համար էր որ հակառակ անոր որ մեծ կեդրոն մըն էր անիկա եւ երբեմն բարգաւաճ քաղաք մը, կարելի չեղաւ իր մէջ եւ շուրջը ստեղծել մշակոյթի մեծ կեդրոն մը եւ ուսումնավայր մը, որ տեւականութիւն ունեցած ըլլար:

Փորձեր կը թուի թէ կատարուած են սակայն շատ կարճ տեւած է անոնց փայլը, մանաւորապէս քաղաքական պայմաններու անակնկալ փոփոխութիւններով եւ սոսկալի վերիվայրումներով:

Ասոր համար զարմանալի չէ որ 1125-էն մինչեւ 1269, մօտ հարիւր յիսուն տարուան ժամանակամիջոցին մէջ եւ աւելի ետքը մինչեւ ԺԴ. դարուն սկիզբը մօտաւորապէս երկու հարիւր տարի, այսինքն Դանիշմենդներու (1124−1178) եւ Սելջուկ Ռումիներու (1178−1315) իրարու յաջորդող տիրապետութեանց շրջանին, ոչ մէկ ձեռագիր, ոչ մէկ գիրք եւ ոչ մէկ մտաւորական-մշակութային աշխատանքի յիշատակութեան կը պատահինք Մալաթիոյ մէջ:

Սակայն կրնայ ըլլալ որ Թիւրքմէններու Մալաթիոյ տիրելէն (1315) առաջ, Մալաթիոյ մէջ գրչութեան արուեստին հետեւողներ երեւան եկած ըլլան, քանի որ Մալաթիայէն դուրս կը գտնենք Մալաթիայէն փոխադրուած գրիչներ: Այսպէս 1269-ին կը յիշուի Աւետարանի մը գրիչը՝ Սարգիս որ Մելիտինէի մէջ պատահած սոսկալի սովի մը պատճառով փախուստ կու տայ դէպի Կիլիկիա եւ հոն կը գրէ Աւետարան մը (տես Երուանդ Լալայեան, Ջաւախք, էջ 311−2):

Մալաթիա այլեւս այնպիսի աշխատանքներու յարմար միջավայր մը ըլլալէ դադրած էր:

Բայց այս Աւետարանը կը հաստատէ թէ գրչութեան արուեստը բոլորովին մեռած չէր եւ կային մարդիկ որոնք զայն կիրարկել գիտէին:

Ասոնցմէ մէկն էր այս Սարգիսը, որ գրչութիւնը սորված էր Մալաթիոյ մէջ անկէ հեռանալէն առաջ, ինչպէս կը հասկցուի իր յիշատակարանէն:

Կը թուի թէ Սարգիս գրիչի պէս, այդ շրջանակին —թերեւս ո՛չ Մալաթիոյ այլ Խարբերդի— պատկանող գրիչ մըն էր Հեթում քհնյ., աշակերտը՝ Սմբատ Քաջկոնց քահանայի մը որ 1297ին Կիլիկիոյ Մամուեստիա քաղաքին մէջ Աւետարան մը գրած էր, գաղթելով Խարբերդէն կամ Մալաթիայէն[1]:

Նոյնպէս Կարապետ գրիչ (հաւանօրէն ժամանակակից մը Սարգիս գրիչին) գրած է 1295-էն առաջ Աւետարան մը որ այդ Թուականին կը կազ-

(1) Հեթում քհ.ի Խարբերդի եւ Մալաթիոյ հետ կապը կը հաստատուի վասնզի Մարկոսի Աւետարանին վերջը կը յիշատակէ «Մելտինու եւ Խարբերդու մայրաքաղաքաց» վերադիտող Յովհաննէս եպս. մը եւ Մարկոսի Աւետարանին վերջը երեւան կու գայ որ Աւետարանին ստացողն է Խարբերդի եպիսկոպոսը Անանիան:

*մուխ Մալաթիոյ Ս. Փրկիչ վանքին մէջ, որ կ'երեւի թէ ուսումնավայր մը դարձնելու ճիգեր կը գործադրուէին:, վասնզի կը յիշուին անունները երէցներու որ այս Աւետարանը կազմած են:*

*Այսպէս մեծ ընդհատումի ժամանակէ մը վերջ Մալաթիոյ մէջ վերընձիւղումի մը կը հանդիպինք վասնզի Մալաթիոյ մէջ* 1315*-ին գրուած* 2–3 *ձեռագիրներու կը հանդիպինք:*

*Մէկը անոնց Աւետարան մըն էր, որ ըստ Յարութիւն Քիւրտեանի չահեկան ձեռագիր մըն է* «մանրանկարչական տեսակէտով»:

*Այս ձեռագիրին գրիչն էր Ստեփանոս քահանայ որ առանց կարենալ աւարտելու ձեռագիրը կը վախճանի եւ ուրիշ քահանայ մը՝ Վահրամ անուն կը շարունակէ եւ կը լրացնէ:*

*Բայց արդէն իսկ մէկուն կիսահատ թողածին ուրիշի մը կողմէն լրացուիլը կը հաստատէ թէ Մալաթիոյ մէջ մշակուիլ սկսած էր գրչութեան արուեստը:*

*Մասնաւորապէս բանասէր Յ. Քիւրտեանի իբր ձեռագիրներու մասնագէտին, տուած այս վկայութիւնը թէ այդ ձեռագիրը մանրանկարչական տեսակէտով չահեկան է, ցոյց կու տայ թէ Մալաթիոյ մէջ սկսած էր զգալի ըլլալ Կիլիկիոյ մանրանկարչական դպրոցին ազդեցութիւնը:*

*Հազիւ կէս դար ետքը Մալաթիոյ մէջ կը գտնենք կազմակերպուած, Ս. Լուսաւորիչի վանքը, որուն պետն էր «անյաղթ փիլիսոփայ» մը՝ եւ իրեն ենթակայ ունէր բազմաթիւ միաբաններ, որոնցմէ մէկը գրած պէտք է ըլլայ* 1361 *թուականին գրուած Աւետարանը:*

*ԺԴ. դարու կէսէն այլեւս հոն կը տեսնուին գրչագրական կանոնաւոր աշխատութիւններ եւ վարպետներ, ինչպէս* 1430–1440*-ին ուխտին արքեպիսկոպոսը Սիմէոն որմէ սորված է Անանիա դպիր ծաղկումի արուեստը:*

*Այս Սիմէոն արքեպիսկոպոսը* 1433*-ին մերձակայ Դերձկի Թէոդորոս Զինուորի վանքին մէջ Յովսէփ աբեղայէ մը գրուած Տարեգիրքը ինքն ծաղկած է:*

*Այս ձեռագրին յիշատակարաններէն կը հասկցուի որ անիկա գրուած է Գրիգոր աբեղայի մը համար որ զայն տուած է եւ նուիրած է Կիւրինի Ս. Վասիլ եկեղեցւոյ:*

*Ասիկա կը հաստատէ թէ Մալաթիոյ մէջ գրչագրութիւնը այդ թուականներուն զարգացած էր եւ ուրիշ տեղերէ կու գային Մալաթիոյ երկու վանքերէն ձեռագիրներ գնելու:*

*Նոյնիսկ Մալաթիոյ մէջ արուեստը ուսած ծաղկողներ կ'երթային ուրիշ տեղեր իրենց արուեստը արժեցնելու ինչպէս Յովհաննէս Մելիտինեցին, որ գացած էր Երզնկա եւ ծաղկած է երբեմն Ակնայ Ս. Գէորգ եկեղեցին մէջ պահուած* 1435*-ին գրուած Շարականը:*

1438*-ին հոն կը գործէին իբր գրիչ Դաւիթ աբեղան, ղեւտական ընտանիքի մը անդամը, որ գանձարան մը գրած էր: Այդ թուականէն սկսեալ Մալաթիոյ մէջ երկու վանքեր Ս. Գրիգոր Լուսաւորիչի եւ Դերձկի Ս. Թէո-*

տարոս գինուորի վանքերը, կ'ունենան գրչագրական ակներեւ գործունէութիւն:

Այսպէս Ս. Գրիգոր Լուսաւորիչի վանքին մէջ կը գրուին 1438–1440 թուականներէն մինչեւ 1600 բաւական թուով ձեռագիրներ, որոնցմէ մեզի հասած են 1461–ին (Աւետարան), 1591–ին, 1590–91 եւ 1598–ին (երկուքն ալ մեկնութիւն Մատթէի) գրուած ձեռագիրները, եւ ինչպէս Դերձկի վանքին մէջ նոյն ժամանակ 1447–ի (Ճաշոց), 1576–ին եւ 1578–ին (երկուքն ալ Սաղմոսարան) ձեռագիրները:

Իսկ ԺԶ. դարուն սկիզբը, Ս. Փրկիչ վանքին մէջ կը ծաղկի Գրիգոր երէց արդիւնաւոր գրիչը, որ այս վանքին մէջ 1500–էն մինչեւ 1566, 66 տարի տքնած է եւ գրած է բազմաթիւ ձեռագիրներ, ինչպէս 1500–ին, 1548–ին, 1560–ին եւ 1566–ի գրուած չորս Աւետարանները եւ 1544–ին գրուած՝ Յայսմաւուրք մը:

Մալաթիոյ վանքերուն այս գրչագրական քիչ մը միօրինակ եւ առանց զանազանութեան ձեռագիրները, կը թուին ըլլալ վաճառքի ապրանք, վասնզի գլխաւորաբար եկեղեցիներու առօրեայ գործածութեան կրնային ծառայել այդ բազմաթիւ Աւետարանները, նմանապէս վանքերէն դուրս կը տեսնուին գաւառին զանազան վայրերու մէջ անհատներ որոնք անձնական նախաձեռնութեամբ ձեռագիրներ գրած են, մասնաւորապէս ԺԶ. դարուն, երբ գաւառին վանքերուն մէջ ալ ձեռագիրներ կը գրուէին:

Արդարեւ Գայլականջ գիւղին[1] մէջ 1563–ին, 1566–ին եւ 1589–ին գրուած են չորս Աւետարաններ, որոնք չորսն ալ հաւանօրէն գրուած են Ստեփան անունով երէցէ մը, թէեւ միայն առաջին երկուքին մէջ յիշուած ըլլայ իր գրիչ իր անունը:

1596–ին, կը յիշուի Կիրակոս անուն սարկաւագ մը որ ՇԱՐԱԿՆՈՑ մը գրած է Եղեգնոց Ձորի մէջ որուն Մալաթիոյ գաւառին մէջ ըլլալը ձեռագրին յիշատակարանը կը շեշտէ, բայց բոլորովին անծանօթ է այսօր, անշուշտ Գայլականջ գիւղին ճակատագիրը ունեցած ըլլալով:

Ասոնց ժամանակակից կը յիշուի ուրիշ գիւղ մը Մուշուղկան[2] ուր երկու տարուան տարբերութիւններով, 1576–ին եւ 1578–ին գրուած էին երկու Սաղմոսարաններ նոյնիսկ երկու եպիսկոպոսներու ձեռամբ որոնք իրենց օգնական ունէին մի քանի հատ գրիչներ:

---

(1) Այս գիւղը վերջին ժամանակներու մէջ անծանօթ էր. ապահովաբար անոր հայ բնակիչները պէտք է լքած ըլլան գիւղը կամ իսլամացած:

(2) Մալաթիոյ ենթակայ Մուշեղկայ գիւղը պէտք չէ շփոթել նոյնանուն ուրիշ գիւղի մը հետ, որ կը գտնուէր Բասէնի մէջ, Ակնակոմեր լերան վրայ: Այս լերան վրայ գտնուած Նորաիսի (Ներաիսի՞) անապատին մէջ 1210-ին գրուած էր Մանդակունիի ճառերը պարունակող ձեռագրի մը, որ հիմա Երուսաղէմ կը պահուի, եւ կը ներկայացնէ մասնաւոր շահեկանութիւն մը իր տարբերութիւններով: (Տես Եղիշէ Պատրիարք Դուրեան, Ուսումնասիրութիւնք եւ քննադատութիւնք, 1935, Երուսաղէմ, էջ 230–231):

Իսկ ԺԶ. դարուն նշանակելի է որ Մալաթիոյ մօտ, աւելի Եփրատացւոց գաւառին մէջ, կը ծաղկի նոր վանք մը՝ Կարկառի Ս. Տիմոթէոսի վանքը, ուր Պետրոս Կարկառեցի, Ամիթի դպրոցին աշակերտներէն ուսումնական եկեղեցականը որ Կիլիկիոյ կաթողիկոս ալ եղած է ակամայ, 1589—1600 հիմնած էր ուսումնավայր մը կամ դասարան մը, ուրկէ հասած էին պատկառելի եկեղեցականներ, ինչպէս տեսնուեցաւ երբ վանական վարժարաններուն վրայ խօսուեցաւ։

Այս մեծ փայլով իր ժամանակին կարեւոր հաստատութեան մէջ, գլխաւորաբար դպրանոցի պէտքերուն համար իբրեւ դասագիրք գրչագրուած են Անանիա Շիրակացիի գործերը, Գիրք Սահմանացը, «Առ որս»ը, Մեկնութիւն պատարագին[1], որոնք արտածութեան համար չէին գրուիր, այլ դպրոցին աշակերտներուն։

Այսպէս, կը տեսնուի թէ Մալաթիա ալ ունեցած է ԺԵ. դարուն սկիզբէն մինչեւ ԺԶ. դարուն վախճանը, գրիչներու շարք մը Ս. Լուսաւորիչ, Ս. Փրկիչ, Ս. Թէոդորոսի (Դերձկի) եւ վերջապէս մասնաւոր կերպով ԺԶ. դարուն Կարկառի Ս. Տիմոթէոս Վանքին մէջ, որոնք բաւական գործունէութիւն մը ունեցած են, առօրեայ պահանջներու գոհացում տալով, գրչագրելով առաւելապէս եւ մասնաւորապէս անձուկ միտքով կրօնական գիրքեր, յատկապէս ԱՒԵՏԱՐԱՆՆԵՐ եւ սակաւաթիւ ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔՆԵՐ, ՍԱՂՄՈՍՆԵՐ եւ ՄԱՇՏՈՑՆԵՐ եւ վերջապէս մէկ մէկ Շարական, Գանձարան, Տարեգիրք եւ Մեկնութիւն Մատթէի գործը թերեւս իբր դասագիրք։

Կարելի է ենթադրել թէ Ս. Գրոց ուսմանց ծառայող այս աշխատանքներուն ԺԷ. դարուն միացած էին նաեւ ԱՐՏԱՔԻՆ ՈՒՍՄԱՆՑ մշակութեանց սահմանուած գործեր ալ, որոնք կրնային մեծ զարկ ու զարգացում տալ Մալաթիոյ վանքերուն, եթէ յանկարծ Ճէլալիներու ապստամբութիւնը Հայաստանը, Փոքր Հայքը եւ Փոքր Ասիան, (ընդ որս Մալաթիան) չմատնէր ահարկու աւերածութեան մը որ ամէն բան քարուքանդ կ՚ընէր ահագին տարածութեամբ երկիրներ աւերակի վերածելով։

Ճէլալիներու սփռած թշուառութեան եւ աւերին պակաս թողածը լրացուց ամենասաստիկ սով մը, որ ինչպէս տեսնուեցաւ Անատոլուն դատարկացուց, Օսմանեան կայսրութեան վարիչները մեծ մտատանջութեան եւ տագնապի մատնելով, այնպէս որ Թուրք կառավարութիւնը փախչելով երկիրը դատարկացնողները վերապրեցնելու համար մեծ ջանքեր ըրաւ, թէեւ կարելի չեղաւ վերակազմել երկիրը։

Մալաթիա որ այդ ապստամբներուն առաջին հարուածները ստացած էր անշքացաւ, բայց հայ վանքերու մէջ կատարուած աշխատանքները խափանուեցան, Հայերը անշքացան եւ թիւով պակսեցան։

Այս ընդհանուր աւերածութենէ վերջ Մալաթիա տարիներու կարօտ

(1) Այս գործին 1700-ին կատարուած մէկ ընդօրինակութիւնը կը մնայ, որուն բնագիրը անտարակուսաբար աւելի կանուխ գրուած պիտի ըլլայ։

եղաւ վերակազմուելու համար եւ մշակութային աշխատանքներով զբաղուելու համար, հաւանօրէն ազդեցութեամբը Տաւրոսեան լեռնակատարներուն վրայ ծաղկած գրչագրական դպրոցներուն, որոնց աշակերտները Փոքր Ասիոյ շատ մը քաղաքներուն վրայ իրենց ազդեցութիւնը զգալի ըրած էին։

Այսով կրնայ մեկնուիլ գոյութիւնը բաւական արդիւնաւոր գրիչի մը, Յովհաննէս քհն. Մեղրեցիի (որդի Աստուածատուրի եւ Թագուհիի) որ աշակերտն էր Խաչատուր եպիսկ. Ջէյթունցիի, եւ 1633ին ՇԱՐԱԿՆՈՑ մը եւ 1650ին ՃԱՌԸՆՏԻՐ մը գրած էր, կրնայ ենթադրուիլ Մալաթիայէն դուրս։

Կարկառի դպրոցը՝ որ ԺԶ. դարուն վերջը փայլեցաւ շնորհիւ Պետրոս Կարկառեցի եպիսկոպոսին (յետոյ կաթողիկոս Կիլիկիոյ 1608) Ամիթի դըպրոցին մէկ ճիւղաւորումն է եւ իբր դպրեվանք նշանաւոր դեր կատարած է։

Հետեւաբար կարելի է ըսել թէ Մալաթիոյ մէջ Հայերը հնարաւորութեան սահմանին մէջ աշխատած են գրչագիրները բազմացնելու եւ միւս կողմէն ալ ուսում առնելու շրջակայ քաղաքները դիմելով։

Այնպէս որ ԺԷ. դարուն կէսին, երբ քիչ շատ վերակազմուած էին, գոնէ երկու անձեր (Յովհաննէս երէց եւ Յովնան դպիր) կը գտնուին, որոնք 1650ին եւ 1692ին երկու ձեռագիր կը գրեն, առաջինը՝ ՃԱՌԸՆՏԻՐ եւ երկրորդը ՏՕՆԱՑՈՅՑ։

Նշանակելի է որ ասոնք այլեւս վանքի մը մէջ չէ որ կը գտնուին, այլ «ի Մալաթիա ի դուռն Ս. Ստեփանոսի», որ յայտնի է որ հին Մալաթիոյ, այն ատենուան Մալաթիա քաղաքին եկեղեցին էր[1], ուր ԺԷ. դարուն երկրորդ կէսին կար Յովհաննէս անուն վարդապետ մը գիտակ գրչութեան, որ ուսուցիչը եղած էր 1692ին Տօնացոյցը գրչագրող Յովնան դպիրին։

Ուրեմն աղէտալի եւ աւերիչ պատահարներէ ետք Մալաթիայի հայերը չեն դադրած ճիգեր ընելէ, մշակոյթի մարզին մէջ հնարաւորը ընելու այդ դժբախտ քաղաքին մէջ։

---

## Դ.

# ՀԱՅ ԴՊՐՈՑՆԵՐ

Մալաթիոյ հայ վանքերու վրայ խօսուած ատեն (տես, էջ 591–639), անոնց մէջ հաստատուած գոնէ կարճատեւ կեանքով մը ուսումնական զարգացման նպաստող հաստատութիւններ ներկայացուցի։

Իսկ «եկեղեցւոյ մանկանց» համար ընդհանրապէս հայ քահանաներու կամ սարկաւագներու կողմէ եկեղեցիներու կամ տուներու մէջ հաստատուած վարժարաններու վրայ բաւական ծանօթութիւններ տուի։ Հիմա կը մնայ խօսիլ հաւաքական ուսմանց հաստատութիւններու եւ հասարակաց դպրոցներուն վրայ, որոնց գոյութիւնը շատ հին չէ։

Անոնք Արեւմտեան հայոց մէջ հազիւ ԺԸ. դարուն վերջերը հաստատ–

(1) Որ կանգուն կը մնար մինչեւ 1915։

ուած են, սկսելով Պոլսէն եւ Իզմիրէն եւ հետզհետէ տարածուած են Փոքր Ասիա եւ Հայաստան:

Այս կերպով Մալաթիա ալ պէտք չէր որ շատ ուշ ունենար իր ժողովրդային հասարակաց դպրոցները, քանի որ իբր քաղաք կարեւոր կեդրոն կը նկատուէր: Բայց հակառակ ասոր, կարծես թէ ազգային դաստիարակութեան տեսակէտով ուշ արթնցած վայր մը ըլլալու տպաւորութիւնը կը թողու, վասնզի ոչ ԺԸ. դարուն վերջերը եւ ոչ ալ ԺԹ. դարուն առաջին կիսուն, Ազգ. Վարժարանի մը յիշատակութեան չենք հանդիպիր, մինչ ուրիշ տեղերու մէջ այդ ժամանակները հիմնուած էին ծխական դպրոցներ:

Ասոր պատճառը պարզ է: Արդի Մալաթիան հիմնուած է 1839ին հին քաղաքին լքումով, այնպէս որ եթէ աւելի կանուխէն դպրոց մը հիմնուած ըլլար, անիկա հին քաղաքին մէջ բացուած պիտի ըլլար: Դժբախտաբար հին քաղաքէն ոչինչ մնացած է, ուստի չունինք յիշատակութիւն դպրոցի մը մասին, որ թերեւս գոյութիւն ունեցած էր, թէեւ ասիկա հաստատող փաստ մը չունինք:

Նկատելով որ 1834ին Կ. Պոլսոյ պատրիարքութեան ենթակայ 60է աւելի առաջնորդութիւններէն գէթ 25 կեդրոնական եւ վիճակային քաղաքներու մէջ 114 դպրոցներ գոյութիւն ունեցած են (տես ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ էջ 1096) նոյն համեմատութեամբ Կիլիկիոյ 10—12 վիճակներուն մէջ ալ այդ թուականին պէտք էր դպրոցներ հիմնուած ըլլային եւ Մալաթիա ալ ունենար գէթ անունով դպրոց մը:

Բայց դժբախտաբար տարակուսելի է, վասնզի Մալաթիոյ մէջ 1830էն մինչեւ 1844, կը տիրէր անսովոր կացութիւն մը:

Նախ այդ տասնամեակին սկիզբը 1831 Սեպտեմբեր—Հոկտեմբեր ամիսներուն, Մալաթիա վարակուած է սաստիկ համաճարակ քոլերայէ, որ մեծ կոտորած ըրած է քաղաքին մէջ: Ապա անոր յաջորդած է 1832էն 1834 Իպրահիմ փաշայի եգիպտական բանակին արշաւանքը մինչեւ Քէօթահիա, վրդովելով Մալաթիոյ խաղաղութիւնը, որ 1834 Յունիս 29ի դաշինքով հինգ տարի վերահաստատուեցաւ, սակայն կրկին վրդովուեցաւ երբ 1839 Ապրիլ 21ին Իպրահիմ փաշա վերսկսաւ պատերազմը, Թուրք բանակը չարաչար պարտութեան մատնեց 1839 Յունիս 29ին Նիզիպի ճակատամարտին մէջ:

Այս վերջին պատերազմին առենն է որ քաղաքը տեղափոխուած է իր հին տեղէն 6 մղոն դէպի հարաւ, այգիներու վայրը, ուր ժողովուրդը նախ ամառնային թեթեւ եւ անպատսպար բնակարաններու մէջ ապրելու դատապարտուած էր եւ վերջն է որ հետզհետէ նոր բնակարաններ ունեցած:

Այս դրկանքի դժնդակ օրերուն, գուցէ չեն կրցած դպրոցներու մասին խորհիլ, աւելի անհրաժեշտ եւ աւելի նախնական պէտքերու գոհացում տալու հարկադրուած:

Այս պատճառով գուցէ Մալաթիոյ մէջ դպրոցներու հաստատութիւնը շատ յապաղած է, թէեւ կարելի է խորհիլ թէ Մալաթիոյ վանքերուն կամ հին քաղաքին մէջ ուսում առնողներ եւ ուսուցիչներ պատրաստուած են,

քանի որ առանց անոնց գոյութեան, անկարելի պիտի ըլլար տեղացի ուսուցիչներով բանալ դպրոցներ նոր քաղաքին մէջ, մինչդեռ Մալաթիոյ մէջ հիմնուած առաջին վարժարանին մէջ պաշտօնավարած են ուսուցիչներ, ամէնքն ալ տեղացի:

Ուրեմն եթէ Մալաթիոյ մէջ ծխական-հանրային դպրոցներ գոյութիւն ալ չէին ունեցած, առանձնական ուսուցման կամ մասնաւոր դասաւանդութեան ձեռնարկներ պէտք է եղած ըլլան, ինչպէս կը հաստատէ Տոքթ. Միքայէլ Պէշիշեան իր «Որո՞նք եղեր են Մալաթիոյ Հայութեան կրթական գործին առաջնորդները» խորագրուած յօդուածաշարքին մէջ (տես Պապ Ուխտի Թ. 18–24), ուր կը խօսի երեք կարեւոր դէմքերու վրայ, որոնք էին.

1.— Կիւրեղեան Պելօ վարժապետ

2.— Բահանեան Աստուր վարժապետ

3.— Պէշճեան Պելլիկ վարժապետ:

Որոնք 1839էն արդի Մալաթիոյ հիմնարկութենէն ետք հրապարակ եկած եւ առաջին ռահվիրաները եղած են Մալաթիոյ կրթական գործին:

«Երկար տարիներու իրենց մտաւորական աշխատութեան իբր վարձատրութիւն՝ ստացած էին ՎԱՐԺԱՊԵՏ մեծ տիտղոսը այն ատենուան համար» (Պապ Ուխտի Թ. 18 էջ 1):

Տոքթ. Միքայէլ Պէշիշեան իր հօր յիշողութիւններէն եւ այս «վարժապետ»ներուն իր մանկութեան օրերուն ծերունիներ ըլլալէն կը հետեւցնէ թէ անոնց գործունէութիւնը հարիւր տարի առաջ սկսած պիտի ըլլար, ինչ որ ճիշդին կը համապատասխանէ Մալաթիոյ հիմնարկութեան թուականներուն:

Տոքթ. Միքայէլ Պէշիշեան կ՚ըսէ թէ.

«Այս երեք լոյսի մշակներու գործունէութիւնը թէ անհատաբար եւ թէ խմբովին շատ մեծ արդիւնքներ տուած է Մալաթիոյ Հայութեան կրթական գործին: «...Անոնք ունեցած են իրենց մասնաւոր աշակերտները եւ միասնաբար կառավարած են ազգային դպրոց մը Շուկայի եկեղեցւոյ կողքին: Պելօ վարժապետ եղած է հայագէտ, Աստուր վարժապետ Բահանեան եղած է հայերէնի հետ նաեւ թրքագէտ եւ Պելլիկ վարժապետ դարձեալ հայագէտ»: (Տոքթ. Միքայէլ Պէշիշեան ՊԱՊ ՈՒԽՏԻ Թ. 18 էջ 2–3):

Յայտնի չէ թէ անոնք իրենց ուսումը ո՞ւր առած են (տես նոյն), որո՞ւն աշակերտած, բայց ինչպէս Տոքթ. Պէշիշեան կ՚ըսէ որոշ է որ անոնք իրենց ստացածը կատարելագործած էին, ինքնաշխատութեամբ, բոլոր իրենց ժամանակակիցներուն պէս:

Այս երեք վարժապետները յաջողած են անկայծեալ պահել հայեցի ուսման ջահը, աշակերտներ հասցնելով մինչեւ Խրիմի պատերազմին օրերը (1854–1856) երբ Թուրքիոյ մէջ Եւրոպական լուսաւորութեան թափանցումը կը սկսէր եւ Հայերը իրենց յառաջդիմական ոգիով իրենք ալ կը հետեւէին պետութեան ընդգրկած ուղղութեան եւ դպրոցներու կարիք կու տային:

Այդ թուականներուն Մալաթիոյ առաջնորդ էր Առաքել վրդ. Խիզան

եկեղեցական մը, որ առաջին հանրական կամ ծխական դպրոցը հիմնած է Մայր Եկեղեցիին քովը, կառուցանել տալով միայարկ դպրոց մը, ուր կ՚ուսանէին 100ի մօտ աշակերտներ:

Ուրեմն Մալաթիոյ հայ առաջին վարժարանը հաստատուած էր 1852—1860ի միջեւ աւելի 1856—1860 թուականներուն, թերեւս ուսուցչութեամբ միայն Աստուր Բահանեանի, որուն եաքը կամ առաջին օրերէն միացած էին երեքէն միւս երկուքը եւս (ՊԱՊ ՈՒԽՏԻ թ. 20, էջ 1—2):

Այդ երեք նահապետները յանձն առնելով ամէն զրկանք, ամէն ցաւ ու տառապանք, ներքին անխմանալի ուժէ մը մղուած եւ միեւնոյն առեն Աստուածային հաւատքով մը տոգորուած, մինչեւ իրենց ծերութիւնը՝ կը շարունակեն իրենց հերքիւլեան աշխատանքը եւ յաղթահարելով իրենց ճամբուն վրայ ծառացող բոլոր խոչընդոտները, կը հասնին իրենց նպատակին, մայրենի լեզուն գրել եւ կարդալ սորվեցնելով նոր սերունդին եւ պատրաստելով իրենց յաջորդները (ՊԱՊ ՈՒԽՏԻ թ. 20, էջ 1—2):

Սակայն հակառակ այս փառաբանանքին, ինչպէս կ՚երեւի այդ երեք մեծ վարժապետները, շատ նախնական ուսում մը կու տային Մալաթիոյ նորահաս սերունդին եւ իրենց աշակերտներէն շատ քիչերն էին որ ինքնաշխատութեամբ կամ մասնաւոր դասաւանդութեամբ, ուսման որոշ մակարդակի մը կը հասնէին: Ասոնք հազուագիւտ եւ բացառիկ դէմքեր էին, որոց գոյութիւնը չի կրնար նկատուիլ Մալաթիոյ Հայերու կրթական—ուսումնական բարւոք վիճակին ապացոյց: Ընդհակառակը ընդհանուր առմամբ շատ գէշ ներկայացուած է սրտցաւ անձերու կողմէ Մալաթիոյ երբեմնի կրթական—ուսումնական վիճակը, հակառակ անոր որ 1860ական թուականներէն ետք Շուկայի թաղին առաջին վարժարանին կառուցումէն ետքը, միւս երկու եկեղեցիներուն քովն ալ խեղճ ու կրակ ողորմելի շէնքերու մէջ ալ դպրոցներ հաստատուած էին [1] հնօրեայ ուղղութեամբ:

Տ. Կարապետ քհն. Պէննէեան[2] որ նախ իբրեւ աշակերտ տեսած է այդ հին դպրոցները եւ ապա ալ իբր ուսուցիչ պաշտօնավարած է անոնց մէջ, կենդանի վկայ մըն էր իր ծննդավայրին կրթական գործին զանազան շրջաններուն, 1899ին իր համառօտ Մալաթիոյ տեղագրութեան մէջ, այդ հին օրերու կրթական վիճակը ներկայացուցած է շատ տխուր:

Հին, մութ ու խոնաւ շէնքերէն ներս, կ՚ըսէ թէ «բացի գետինէն արտադրած ցեխին եւ տիղմին հետ խաղալ եւ օրուան կէսը քնանալով իրիկուն կ՚ընէին»:

Այդ հին օրերուն «Նարեկը կարդալ եւ երկու տող ծուռ ու մուռ գիր գրելու կարողութիւն ունեցողը մատի վրայ կը համրուէր, իսկ քերականու—

(1) Ս. Յարութիւն եկեղեցին 1860-ին եւ Ս. Երրորդութիւնը՝ 1875-ին հիմնուած ըլլալով՝ անոնց հետ հաստատուած դպրոցներն ալ այդ թուականներէն ետք հիմնուած պիտի ըլլան:

(2) Կարապետ քհն. Պէննէեան ծնած էր 1854-ին, հետեւաբար իսկապէս ժամանակակից մըն էր 1870—1895 կրթական շարժման:

թիւն կը կարդացնէ կամ կը կարդայ ըսուածը բէեւ թիւերու շարքին մէջ միշտ զէրօ կը դրուէր, բայց մատով ցոյց կու տային: Թուաբանութիւն, աշխարհագրութիւն եւայլնի համար՝ եթէ տեսնուէր, մատաղ կը մորթուէր»:

Այս վիճակը, սակայն միայն Մալաթիոյ յատուկ չէր: Գաւառական շատ մը քաղաքներու մէջ նոյն էր կացութիւնը, վասնզի դեռ պէտք եղածին պէս չէր ըմբռնուած ուսման կարեւորութիւնը եւ զարկ չէր տրուեր դըպրոցներու:

Պատահօրէն դուրսէն եկած կամ տեղւոյն վրայ ինքնաշխատութեամբ կամ մասնաւոր դասաւանդութեամբ պատրաստուած ՊԱՏՈՒԵԼԻներ, կամ ԽՕՃԱներ եւ կամ ՎԱՐԺԱՊԵՏներ կը շարունակէին իրենց գործը, իրենց հնօրեայ մեթոտներով, Մալաթիոյ վերոյիշեալ առաջին երեք ռահվիրաներուն եւ անոնց աշակերտներուն եւ անմիջական յաջորդներուն հետ:

Այսպէս, իբրեւ երկրորդ սերունդի ուսուցիչներ կը յիշուին,

1.— Ս. Յարութիւն թաղէն Ծերուն վարժապետ Տամպուրաճեան

2.— Գարապաշենց թաղէն Թիֆթիկճեան Գրիգոր խօճա, որ ժողովուրդը «Թիֆթիկճի խօճա» կը կոչէր սովորաբար.

3.— Մալէմէզեան խօճա, որ ժամանակ մը Գափուչիններու դպրոցին մէջ պաշտօնավարած է:

Ծերուն վարժապետ լաւ ուսումնասիրած էր հայերէնի հետ նաեւ թուրքերէն լեզուն: Թուրքերն ալ կը յարգէին զինքն իբր ՄԵԾ ԽՕՃԱ:

Թուրք գրականութիւնը թուրքերուն ուսուցանելու աստիճան եւ աւելի կարող էր Թիֆթիկճի խօճան, որ Ծերուն վարժապետէն աւելի պատկառելի էր:

Այս երկուքն Պեյօ Աստուր եւ Պէլլիկ վարժապետներէն սորվածնին զարգացուցած էին ինքնաշխատութեամբ:

Այս երկուքին յատկացուած էր Շուկայի եկեղեցին, մեծ ճամբայի կողմը երկու դասարանով մեծ սրահ մը՝ իբր դպրոց:

Ծերուն եւ Թիֆթիկճի խօճա այս դպրոցին պատասխանատու ուսուցիչներն էին եւ ունէին 2—3 հարիւր աշակերտներ:

Այս դպրոցը շատ օգտակար և արդիւնաւոր եղած է՝ հասցնելով ժամանակին պահանջին համապատասխան անհատներ, որոնք յաջողութեամբ կը ծառայէին իբրեւ կառավարական պաշտօնեաներ: 1870էն մինչեւ 1895 Մալաթիոյ Հայերը ունեցած են շատ աւելի կարող ու աչքառու մտաւորականներ, քան Մալաթիոյ Թուրքերը (ՊԱՊ ՈՒԽՏԻ Թ. 27 էջ 1—2), որոնք շատ ետ կը մնային:

Թուրքերը այնքան յետամնաց էին, որ երբ 1879ին Մալաթիոյ մէջ ոստիկանական կազմակերպութիւն հաստատուեցաւ 15—20 ոստիկան եւ 25—30 ոստիկան-զինուոր Թրքերէն գրել-կարդալ գիտցող Հայերէն առնուեցաւ, ինչ որ տեղւոյն հայութեան համար մեծ բարիք մըն էր (Նոր Մալաթիա Գ. տարի Թ. 2, էջ 15):

Ծերուն եւ Թիֆթիկճի խօճաները 1900 թուականէն քիչ առաջ դադրած

էին ուսուցչութենէն: Թիֆլիզի խօճա իբրեւ կտակագիր եւ աղերսագիր գրող մինչեւ 1908 շուկային հրապարակին վրայ իր մասնաւոր տեղին մէջ օգտակար կ'ըլլար ու կը ծառայէր թէ՛ հայ եւ թէ՛ թուրք հասարակութեան, իսկ Ծերուն վարժապետ իբրեւ լաւ տիրացու, Ս. Յարութիւն եկեղեցիին երգեցողութիւնը կը ղեկավարէր, այսպէս կերպով մը հանգստեան կոչուած էին, երբ ժամանակին հետ դպրոցները եւ ուսուցանելու մեթոտները փոխուած էին արդէն եւ կրթական գործին մէջ զօրաւոր մրցում մը ստեղծուած էր օտար կրօնական ԲՐՕԲԱԿԱՆՏԻՍՏներու եւ այլադաւան քարոզիչներու հաստատած դպրոցներու պատճառով:

Անոնք դուրսէն կը բերէին պատրաստուած ուսուցիչներ եւ Հայերը թէեւ տնտեսական անձկութեան պատճառով միշտ տկար կը մնային եւ դըժուարաւ կը մըցէին անոնց հետ սակայն իրենց կարելին կ'ընէին իրենց դըպրոցներն ալ լաւ վիճակի մէջ դնելու համար:

Ժողովուրդը կ'օգտուէր օտար կամ յարանուանական հաստատութիւններէն, որոնք կը մատակարարուէին օտարներէն ընծայուած նիւթական առատ միջոցներով, իսկ մեր ազգային դպրոցները ժողովուրդին լումաներով, գրեթէ աղքատիկ միջոցներով այդ օտար հաստատութիւններու հետ կը մըրցէին: Մալաթիացիք հնարաւորութեան սահմանին մէջ լաւ պահելու կ'աշխատէին իրենց ազգային դպրոցները, վասնզի իրենց մէջ ազգային ոգին արթընցած էր եւ ուսման ծարաւ ցոյց կու տային:

Բոլոր Մալաթիացի Հայերը կը փափաքէին իրենց զաւակները կրթելու:

Այս պատճառով ազգային եւ մասնաւոր վարժարաններ կը բացուէին Հայերու ջանքերով, բացի յարանուանական եւ օտար վարժարաններէն, որոնց ուսանողներն ալ գրեթէ ամբողջ Հայեր էին:

Մալաթիոյ մէջ եկեղեցիներու քով դպրոցական շէնքեր գոյութիւն ունեցած էին, այսինքն երեք եկեղեցիներ եւ դպրոցներ կային 1870ական թուականներուն[1], սակայն ողբալի էր անոնց վիճակը:

Պէնէեան քհն. նոյնիսկ 1880ական թուականներուն «Մալաթիոյ դըպրոցներուն նիւթական թէ բարոյական վիճակը ··· բոլորովին հին ու անկեալ» կը ներկայացնէ (տես Մալաթիոյ տեղագրութիւն, համառօտ տպուած Պէյրութ էջ 104), ինչ որ անշուշտ 1870ական թուականներու վիճակին շարունակութիւնն էր:

Առաջին անգամ Գարեգին եպիսկ. Սրուանձտեանց (այն ատեն վարդապետ) որ 1878ին Պատրիարքարանի կողմէ գաւառները ղրկուած էր, իր «ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ»ին մէջ (Բ. հտ. էջ 319) Մալաթիոյ մէջ կը յիշատակէ երեք

(1) Անոնց Հաստատութեան որոշ թուականները դժբախտաբար ճշդել կարելի չէ որեւէ արձանագրութիւն կամ յիշատակութիւն գոյութիւն չունենալով: 1872 1873-ին Պոլսոյ Քաղ. Ժողովի Համարատուութիւնը գաւառական վիճակագրութեանց բաժին մը ունի, ուր դժբախտաբար Մալաթիոյ մասը կը պակսի. այնպէս որ այդ թուականին Մալաթիոյ դպրոցներու մասին ոչ մէկ տեղեկութիւն ունինք մինչեւ 1878 Գարեգին եպս. Սրուանձտեանցի այցելութիւնը:

վարժարաններ, Ս. Մեսրոպեան, Նարեկեան եւ Արշակունեան անուններով, որոնց մէջ կ'ուսանէին 400 մանկունք, տարեկան 7000 ղրուշ ծախքով:

Սրուանձտեանց, որ իր այցելած այլ վայրերու դպրոցներով շատ զբաղած է, զարմանալի է որ ոեւէ խորհրդածութիւն չունի Մալաթիոյ վարժարաններուն վրայ, ինչ որ ինքնին փաստ մըն է թէ անոնք կը գտնուէին արդարեւ անկեալ վիճակի մէջ, ինչպէս շեշտած է Պէննէեան քհն. իր գործին մէջ, աւելի մօտ թուականներու մէջ իսկ:

Չեմ գիտեր թէ ի՞նչ փաստերու վրայ հիմնուած Հ. Եփրեմ վրդ. Պօղոսեան (տես ՊԱՊ ՈՒԽՏԻ Թ. 58 էջ 18) հաւանական կը համարէ արդէն 1870ական թուականներու Մալաթիոյ մէջ կանոնաւոր դպրոցի գոյութիւնը, ՆՈՅՆԻՍԿ աւելի լաւ վիճակի մէջ, քան 1878ին, երբ Սրուանձտեանց կ'այցելէր Մալաթիա եւ տեղւոյն կրթական վիճակը կը գտնէր «մռայլ»:

Շատ զարմանալի է որ հակառակ անոր որ երեք վարժարաններու գոյութիւնը կը հաստատէ, Սրուանձտեանց կը խօսի միայն մէկ հայ վարժապետի մը վրայ, կարծես թէ ուրիշներ գոյութիւն ունեցած չըլլային.

«Հայ վարժապետ մը ունէինք՝ զոր ԽՕՃԱՅ կը կոչէինք, կը դասախօսէր տաճկերէն, հայերէն, գիր, թիւ, ձայնաւորութիւն, կառավարիչ էր եւ տնօրէն եւ ամենայն ինչ: Գրագիր էր Առաջնորդարանին, եւ այլ ուրիշ պաշտօններ ունէր, ո՞վ կրնար դատել զինքն թէ իրաւ այսքան բանգէտ էր կամ բան մը չգիտէր, իրեն կ'ըսէինք «բաւական ես մեզի, դուն ամէն բան գիտես, ամէն բանի կարող ես[1]» (տես ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ Բ. էջ 310):

Սակայն կ'երեւի թէ ժամանակը իր ազդեցութիւնը ունեցած է Մալաթիոյ Հայերու վրայ ալ:

Պերլինի վեհաժողովին (1878) յաջորդող ժամանակամիջոցը իբրեւ կրթական զարթումի ժամանակամիջոց մը եղած է. այդ ժամանակամիջոցին է որ Կ. Պոլիս օգնութեան կը հասնէր գաւառներուն, անոնց կրթութեան համար կազմելով ընկերութիւններ եւ բանալով բազմաթիւ վարժարաններ գաւառներու ամենէն խուլ վայրերուն մէջ իսկ:

Կ. Պոլսոյ հայերու այս նախաձեռնութիւնը զարթուցիչ զանգակի դեր կատարեց, ինչպէս շատ մը գաւառներու, նաեւ Մալաթիոյ համար, որուն կրթական կեանքին մէջ ալ կարեւոր դեր մը կատարած է այս շարժումը եւ այդ թուականէն ետք է որ մասնաւոր խնամք տարուած է դպրոցական գործին եւ դպրոցներու թիւը շատցած է:

Այնպէս որ 1879ին իսկ կը տեսնենք թէ Մալաթիոյ առաջնորդ Սրապիոն եպիսկ. որուն վրայ ծիծաղած է Գարեգին եպիսկ. Սրուանձտեանց, իբրեւ իր ձիերէն զատ ուրիշ բանի հոգ չունեցող, զբաղիլ սկսած է դպրոցով եւ կրթական գործին հոգ տանիլ փորձած է: Այնպէս որ Յակոբ Մուրատեան, երբեմն ուսուցիչ Մալաթիոյ մէջ 1880 թուականը կը համարէ Մալաթիոյ հայութեան թմրութենէ արթննալու նախօրեակը գրելով թէ «այդ թուականէն

(1) Ակնարկուած անձը Թիֆթիկճեան Գրիգոր վարժապետն է:

առաջ գոյութիւն կրնայ ունեցած ըլլալ Հայ ուսանողներու փոքր շարան մը, բայց բուն խմբական հոսանքը ճշգրտօրէն սկսաւ 1880ական թուականներուն» *երբ Հայ-Աւետարանականներու եւ Լատին Գաթուլիկներու դպրոցներն ալ կը կազմակերպուէին եւ կը կանոնաւորուէին (տես* ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ *Գ. տարի Թ. 2 էջ* 14—15):

*Տոքթ. Մ. Քէչիչեան, իր* «Պատմական ակնարկ մը Մալաթիոյ անցեալին ու ներկային վրայ» *յօդուածաշարքին մէջ, որ հրատարակուած է* ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ *հանդէսին մէջ (տես Ա. տարի Թ. 4. Բ. տարի Թ. 3. եւ Գ. տարի Թ. 2) աւելի իր ծննդավայրին սիրով լեցուած, քիչ մը հեռու իրականութենէն շատ նպաստաւոր կերպով կ'արտայայտուի Մալաթիոյ հայոց կրթական բութեան եւ անոնց ուսումնական ջանադրութեանց վրայ: Անիկա տեղ մը կը գրէ թէ.*

«Ս. Երրորդութիւն հայոց եկեղեցիին շինութիւնը վերջացածին պէս[1], անոր կողքին, նոյն եռանդով կառուցուեցաւ երկյարկանի երկսեռ շքեղ դպրոց մը, երկրորդական վարժարան մը, իր նախապատրաստական եւ մանկապարտէզի ճիւղով: Ճուկայի եւ Ս. Յարութեան եկեղեցիները վերանորոգուած եւ բարեզարդուած, դարձեալ անոնց կողքին ժողովրդեան անձնուէր ջանքերով, նիւթական եւ բարոյական աջակցութեամբ շինուեցաւ իւրաքանչիւր եկեղեցւոյ մօտ երկյարկանի եւ առողջապահիկ հսկայ մէկ մէկ վարժարաններ, բոլորը օժտուած տաղանդաւոր և մեծաւ մասամբ գոլէճներէ վկայուած ուսուցիչներու հսկողութեան յանձնուած:

Հայ բողոքականները վերաշինեցին կործանուած հին ժողովատունը եւ հսկայ վարժարանի շէնքը, որ Մեթիտիսէի լուսաւորութեան կեդրոնը եղած էր, ունենալով միշտ լաւագոյն ուսուցչական կազմը Գոլէճէն:

Հայ կաթոլիկները նորոգեցին իրենց հսկայ քարաշէն եկեղեցին, որ Երրորդութեան եկեղեցւոյ նման շատ մը դրացի ընտանիքներու համար փրկարար դեր մը կատարեց եւ երկրորդ դիմադրութեան վայրը եղաւ:

Վերաշինեցին երկսեռ դպրոցը եւ Առաջնորդարան մը շատ շքեղ, զարդարուն եւ գեղեցիկ»:

*Իրականութիւնը այն է կարծեմ որ Միացեալ Ընկերութեան ողեւորեալ աշխատութիւնները եւ յարանուանութեանց վարժարաններուն օրինակը խթան մը եղած է Մալաթիոյ հայերուն (որոնք բաւական ուշ մնացած էին) որ իրենք ալ աշխատին իրենց դպրոցներուն համար:*

1880*ին չէ, այլ բաւական ետքն է որ Մալաթիոյ դպրոցներուն վերին հսկողութիւնը յանձնուած էր իւրաքանչիւր յարանուանութեան մէջ գտնուած լաւագոյն մտաւորական ույժերուն:*

*Տոքթ. Մ. Քէչիչեանի վկայութեան վրայ հիմնուելով, կը ներկայա-*

---

*(1) Ս. Երրորդութիւն եկեղեցին 1875-ին հիմնարկուած երկար տեւողութեան մէջ շինուած է. Հաւանօրէն մօտ 1890-ական թուականներուն կամ անոր սկիզբները: Այնպէս ալ բաւական ուշ կը մնայ անոր մօտ կառուցուած դպրոցին շինութիւնը:*

*ցընեմ անունները այդ անձերուն, որոնք դպրոցներու հոգաբարձութիւնը կը կատարէին։*

*Տոքթ. Մ. Քէշիշեանի համաձայն.*

Հայ Լուսաւորչական երեք կեդրոններու վարժարանաց հոգաբարձութիւնը եւ մատակարարութիւնը յանձնուած էր.

Յովհաննէս Սարաֆեան
Յարութիւն Արսլանեան
Գէորգ Քէշիշեան
Գէորգ Պլըզեան
Կարապետ Ճիզմէճեան
Գրիգոր Ճիվէլէկեան
Գրիգոր Արսլանեան

Հայ Բողոքականաց հոգաբարձութիւնը յանձնուած էր.
Միքայէլ Թերխանեան (Արկղակալ կառավարութեան)
Գաբրիէլ Գաբրիէլեան (փաստաբան)
Յովհաննէս Թիւթէլեան (Արկղակալ)
Նաբոլէոն Պաղտօեան (Գրագիր կառավարութեան)

Հայ Կաթոլիկներուն հոգաբարձութիւնը.
Յակոբ Ժարժաբեան (Արկղակալ երկրագործական մասնաճիւղի)
Յակոբ Սահակեան (Գոմիսէր, նախկին ուսուցիչ)
Իսկէտէր Քիւնտիպէկեան (Անդամ դատարանի)

Վերոյիշեալ հոգաբարձութիւնք բոլորն ալ ժամանակին յատուկ բարձրագոյն կրթութեամբ օժտուած, բարեկիրթ երիտասարդներ էին։ Բոլորն ալ տեղեակ հայ մայրենի լեզուին եւ թուրքերէնի եւ իրենց արժանիքին համար իրենց երիտասարդ տարիքներու մէջ գրեթէ բոլորն ալ պաշտօնեայ կառավարութեան մօտ, արկղապետներ զանձին, անդամներ մասնաճիւղերու եւ գրագիրներ։

Հակառակ իրենց զբաղման եւ պատասխանատու պաշտօններու, գիշեր ցերեկ կը զբաղէին դպրոցական հարցերով եւ ամէն զոհողութեամբ կը ջանային վարժարանները դնել լաւագոյն դիրքի մը մէջ։ Դրամ չէր խնայուեր լաւագոյն ուսուցիչներու համար, բուն իսկ այս պատճառաւ, շուտով իր լաւագոյն արդիւնքը տալ սկսաւ իւրաքանչիւր վարժարանի ուսումնատենչ աշակերտներ եւ զոհաբերող ընտանեաց եւ ծնողներու օգնութեամբ կը խուժէին խարբերդի Եփրատ եւ փրանսական գոլէճները։

Մեր դպրոցները շուտով հաւասարելով գոլէճներու երկրորդական ճիւղերու, վկայական ստանալէ վերջ՝ միայն երեք տարիով կարող կ'ըլլային գոլէճներու շրջանը աւարտել եւ վկայական ստանալ եւ հետեւիլ Պէյրութի Ամերիկեան, փրանսական համալսարանները եւ Կ. Պոլսոյ Արուեստի ճիւղերը, ուսանելու բժշկութիւն, դեղագործութիւն, ատամնաբուժութիւն, փաստաբանութիւն, նկարչութիւն, եւայլն։

Մելիտինեցի ծնողք շուտով սկսան տեսնել եւ վայելել կրթութեան

համար իրենց թափած աշխատութեան եւ նիւթական մեծամեծ զոհողութեանց արդիւնքը[1] ունենալով իրենց զաւակներէն բժիշկներ»: *Ինչպէս նաեւ դեղագործներ[2] եւ գործակալներ[3]:*

*Տոքթ. Մ. Քէչիչեան բարեացակամ եւ ներողամիտ հայեացքով մը, լաւատես արտայայտութիւններով կը դատէ Մալաթիոյ կրթական գործը, եւ կ'ըսէ թէ.*

«Մեր այն մտաւորական անյաղթելի եւ զոհաբերող ոյժին իրենց մասնակցութիւնը կը բերէին առհասարակ քաղաքի բոլոր աչքառու անձնաւորութիւնք եւ երկսեռ ժողովուրդը:

«Կրթական մեքենան շարժման մէջ էր, դպրոցները լիք էին երկսեռ ուսանողներով, մօտակայ գոլէճներ իրենց լաւագոյն եւ ուշիմ աշակերտները Մալաթիայէն կը ստանային[4]:

«Մեր ուսանողք արդէն իրենց հարազատ ծնողներէն ժառանգած շատ մը բարի յատկութիւններու հետ, բոլոր դպրոցները իրարու հետ սերտ կապով կապուած, ուսանողք իրարու եղբայր էին, այս պատճառաւ մեր միջյարանուանական կեանքը շատ հաճոյալի էր, անկեղծ սէր եւ համերաշխութիւն կը տիրէր երեք այլազան եկեղեցւոյ կրօնակիցներու մէջ, առանց բոլորին մտաւորական դասակարգը կրթական գործի շուրջ համերաշխ եւ սիրով էին իրարու հետ, եւ իրական միութիւն կրթական գործի շուրջ կազմուած էր: Այնպէս որ աշխարհակործան վերջին[5] մեծ պատերազմէն մի քանի ամիսներ առաջ, մեր քաղաքի կղերականներու, միջյարանուանական մտաւորականներու եւ դպրոցաց հոգաբարձութեանց ընդհանուրի խորհրդակցութեամբ, համերաշխութեամբ եւ ընդհանուրի փափաքով որոշուեցաւ, նախ ընդհանուր երիտասարդութեան համար լսարանի դրութիւն հաստատել, եւ անմիջապէս բոլորի օգնութեամբ շինել խոշոր սրահ մը Երրորդութեան եկեղեցւոյ դիմացի պարտէզի մէջ, ուր ամէն կիրակի պիտի յաճախէին մեր երիտասարդները:

Շուտով ծրագիրը իրագործուեցաւ, մի քանի օրուան մէջ կանգնեցաւ հսկայ լսարանի սրահը, ուր նուագ, երգեցողութիւն, գրական եւ գիտական և քաղաքական տեղեկութիւններ կը տրուէին հոն հաւաքուող հոծ և ուսումնատենչ երիտասարդութեան: Հայ Լուս. կղերին հետ կողք կողքի կը նստէին Բողոքական եւ հայ Կաթողիկէ եկեղեցւոյ երիտասարդ կղերները, եւ իւրաքանչիւրը իր կարգին իր քարոզը, ճառախօսութիւնը կ'ընէր, լաւագոյն թե-

---

(1) Անոնց անուններու թուումը ըրած է Տոքթ. Քէչիչեան:

(2) Միայն մէկ հատ կը յիշէ Տոքթ. Քէչիչեան:

(3) Անոնց ալ անունները յիշուած են:

(4) Կը թուի այս տողերը չափազանցութիւն, վասնզի քաղաքին հայ բնակչութեան թիւին համեմատ չէր անոնց թիւը եւ ոչ ալ իբր աշակերտ անոնք արտակարգ յաջողութիւններով չէին փայլած:

(5) Առաջին պէտք է ըլլայ, վասնզի կ'ակնարկէ 1914–1918ի պատերազմին եւ ոչ 1939 - 1945-ի պատերազմին:

լադրութիւններով, բեմը անխտիր կ՚ընդունէր բոլոր խօսելու կարող անհատներ։ Այս վերջին ատենուան դպրոցաց հոգաբարձութիւնք էին ընդհանուր միութեան ծրագիրը մշակողները, որով կրթութիւնը բոլոր դպրոցներու մէջ նախակրթարաններէն սկսեալ մինչեւ բարձրագոյն վարժարանները, բոլորը միեւնոյն ծրագրով պիտի դասախօսէին, եւ բոլոր նախակրթարաններէ շրջանաւարտներ, բոլորովին յատուկ եւ միակ մեծ կեդրոնական ուսումնարանի մը մէջ իրենց երկրորդական ուսումը պիտի լրացնէին։ Ասոնց բոլորը ծրագրուած էր, սակայն ցաւ ի սիրտ գործադրութեան դրուելու գարնան[1] աշխարհակործան պատերազմի թմբուկներն մունետիկներն սկսան սարսափի մատնել, ինչպէս համայն աշխարհ, նմանապէս մեր քաղաքի ժողովուրդը, մանաւանդ Հայութիւնը։ Սոյն լաւագոյն եւ համերաշխական ծրագիրը եւ միջյարանուանական եղբայրակցութիւնը մշակողներն, (երիտասարդ կղերականներու հետ) այն ատենուան մտային եւ զարգացած եւ վերջին ծայր ազգասէր մեր երիտասարդ թարմ ուժերն էին՝ ինչպէս Տոքթ. Մ. Քէշիշեան, Խօսրով Քէշիշեան, Սեդրակ Մումնեան, պրն. Խանճեան, պրն. Սենեքերիմ Պօնճուգլեան, պրն. Փէքմէզեան, պրն. Յ. Պէննէեան, պրն. Սարմէլեան, պր. Յարութիւն Ճլնլեան, պրն. Տիրնիս Կեսարեան եւայլն»։

*Տոքթ. Մ. Քէշիշեանի այս տողերը որոնց մէջ բաւական տեղ ունին իր ծննդավայրը բարձր և լաւ տեսնելու տկարութիւնը, որ չատեր ունին եւ որ շատ բնական է, այնքան համապատասխան չեն իրականութեան եւ ինչպէս պիտի տեսնուի առհասարակ Մալաթիոյ դպրոցներէն թէ՛ տեղացի եւ թէ՛ դուրսէն դիտողներ եւ այցելուներ շատ լաւ տպաւորուած չեն եւ յաճախ տժգոյն արտայայտութիւններ ունեցած են։*

*Այսպէս, կրթական գործումի թուական ցոյց տրուած 1880-էն հինգ տարի ետքը 1885ին, երբ Մալաթիա ունէր նաեւ իր Ս. Երրորդութիւն եւ Ս. Յարութիւն եկեղեցիներու քով, ծխական դպրոցներ եւ ԱՍՏՂԻԿ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ դպրոցը (տես* Արեւելք *Օրաթերթ Կ. Պոլիս թիւ* 428) *ցաւ կը յայտնուէր թէ* «անփոյթ եւ անյաջողակ ձեռքեր Ս. Երրորդութիւն, Ս. Յարութիւն եկեղեցաց եւ Աստղիկ ընկերութեան վարժարաններն անբարեկարգ վիճակի մը մէջ պահած են միշտ, եւ յոյժ ցաւալի է անշուշտ տեսնել զայս» *(Նոյն)*։

*Այս երեք վարժարաններու տեսչութիւնը կը յանձնուի նոյն տարին* ՅԱՐՈՒԹԻՒՆ ՎՐԴ. ԱԹԱՔԵԼԵԱՆԻ, *որ ծնունդով Մալաթիացի՝ Վարագայ Վանքի միաբան մըն էր։*

*Երկու տարի ետքը* 1887*ին կը յիշուի թէ Մալաթիա դարձեալ ունի* 3 *դպրոց* 300 *աշակերտներով եւ* 6 *ուսուցիչներով, բայց դիտել կը տրուի թէ քաղաքին հայ բնակիչները* 2000 *տուն են,* «իսկ ատոնց զաւակներէն հայ դպրոցի մէջ ուսանողաց թիւն ՀԱԶԻՒ ԿԸ ՀԱՍՆԻ 300ի, միւսներն օտար ազ–

*(1) Գարնան չէ։ 1914 Օգոստոս 1-ին սկսաւ Ա. ընդհանուր պատերազմը, որուն Հոկտ. 17-ին մասնակցեցաւ նաեւ Թուրքիա։*

գաց դպրոցները կ'երթեւեկեն, ինչու որ ժողովուրդը նիւթական անկարողութենէն՝ դպրոցի հոգը քնաւ չի խորհիր»։ «Ուսուցիչք վեց են, որոնց տարեկան գինն է 500–1500 դրուշ...»։ «Այս տարի (1887) Չմշկածագէն վարժապետ մը եկած է, ասոր գինը 3000 դրուշ է... Ուսումնական խորհուրդ չկայ»։ (Արեւելք, 1887 թ. 1114)։

*Ուրիշ թղթակից մը* (*տես* Հայրենիք 1889 *թ.* 523) *նոյն թուականին* Արեւելքի *մէջ* (*թ.* 1593) *տեսնուածին նման տեղեկութիւններ կը հաղորդէ Մալաթիայէն, քիչ մը աւելի ողբալի ներկայացնելով վիճակը դպրոցներուն, գրելով թէ* «Մալաթիա երեք եկեղեցի ունի, ամէն եկեղեցի՝ իր դպրոցը խիստ անբարեկարգ, ուր կը յաճախեն 300 աշակերտք»։ *Հոս կը տեսնուի թէ աշակերտներու թիւը փոխան* 700*ի* 300 *կը նշանակուի, ինչ որ յետադիմութիւն մըն էր, թէեւ նշանակելի որ պզտիկ առաջդիմութիւններ ալ կ'արձանագրըւին, վասնզի* 1885–1889 *քառամեակի մէջ աղջիկներու երկրորդ վարժարան մըն ալ կը բացուի*։

*Տասնեակ մը տարիներ ետք*, 1899*ին հազիւ թէ Կարապետ քհն. Պէննէեան քիչ մը մխիթարական կը գտնէ Մալաթիոյ Հայոց կրթական վիճակը, վասնզի* «Հայք, *կ'ըսէ*, վերջին տարիներս, բերած են օրինաւոր և բանիմաց դասատուներ, որ ի միջի այլոց ծանօթ են, Ա. Խորասանճեան[1] (յետոյ քահանայ ՅԱկն) եւ Մ. Թուրեան, որք ըստ բաւականին ուսուցման կերպն ու եղանակը կանոնաւորելով, դասընթացքը բազմապատկած են ըստ այնմ Հայերէն եւ Թուրքերէն լեզուները աւանդելով մէկ երկու տարուան մէջ կարող եւ բանիբուն աշակերտներ հասցուցած են, որոնց մի քանին այսօր կը դասախօսեն տեղւոյն եւ Հիւսնի Մանսուրի ու Քեախթայի վարժարաններէն ոմանց մէջ։ Աւելի վերջերս ուսման մակարդակը քիչ մը եւս բարձրացնելու համար ուսումնասէր եւ բարեսիրտ անձնաւորութիւնք, որոնց պարագլուխ կը հանդիսանայ Մեծ. Յովհաննէս էֆ. Սարրաֆեան, անդուլ աշխատութեամբ յաջողած են կեդրոնական Վարժարան մ'ալ բանալ։

Գալով իգական սեռի դաստիարակութեան՝ չէ այնքան գոհացուցիչ, թէպէտեւ կայ մէկ երկու մանկապարտէզ կամ ծաղկոց, բայց տակաւին մայր ըլլալիք աղջկան մը սոսկ տնտեսագիտական պարտաւորութիւնը ճանչցնելու եւ սորվեցնելու եղանակէն զուրկ են, և այս յանցանքը ոչ թէ ծաղկոցին, այլ ժողովրդեանն է, զի աղջկան մը դեռ նոր ուսում առնելու կարգին դպրոց կը դրկեն, մօր ծունկին տակ ջաւ (ճախարակ) մանել եւ տեղական ասեղնագործութիւն սորվելու համար։

Այս մասին մխիթարական են հայ կաթոլիկներու եւ բողոքականաց դպրոցները։ Յոյս կայ թէ Հայերն ալ ըստ կարելւոյն աւելի կարեւորութիւն տալով իգական սեռի դաստիարակութեան, կարող վարժուհիներ պիտի բերեն (մասնաւոր վարժարաններ պիտի բանան), որով կը բարձուի ալ այն տգիտութեան վարագոյրը, որուն տակ կը մրափէր Մելիտինեցին եւ այն

(1) *Աւետիս Խորասանճեանի աշակերտներն էին Յակոբ Թիֆթիքեան, Մանուկ Խանձեան, Սեդրաք Քիւփէլեան, Գրիգոր Արփաճեան եւայլն*։

տրտունջներն ալ տեղի ունեցած են այլադաւան կրօնակիցներու մօտ գտնե-լէն ի վեր···» (Պէննէեան քհն· Համառօտ Տեղագր· էջ 104—106)։

Բայց ինչպէս կը տեսնուի այս մխիթարական կարծուած վիճակը շատ հեռի չէ ողբալի ըլլալէ, մանաւորապէս նիւթական մատակարարութեան տեսակէտով, քանի որ 1900ին, ըստ առաջնոյն 3 եկեղեցիներուն քով մէկ մէկ դպրոց կար, որոնց մէջ կը դասախօսէին ութը ուսուցիչ եւ կը յաճախէին 480 աշակերտներ տարեկան 7680 դահեկանով (Բիւրակն, 1900, էջ 85)։

Թէ՛ ուսուցիչներու եւ թէ՛ ուսանողներու թիւը համեմատական չէր, իսկ թոշակները բացարձակ անբաւական։ Առաջին անգամ Մալաթիոյ դըպ-րոցներուն վիճակը բարւոքելու աշխատող առաջնորդը եղած է Գէորգ վրդ· Արսլանեան, որ 1905—6 դպրոցական շրջանին տնօրէն բերաւ Յակոբ Բրիկ-եանը որ Եփրատ Գոլէճի շրջանաւարտներէն էր։

Իրեն կը գործակցէին իբր ուսուցիչ ուրիշ նոյն գոլէճէն աւարտական-ներ։

Արսլանեան վրդ· Թէ՛ Ուսումնական խորհուրդ եւ թէ՛ Հողաբարձութիւն կազմած էր։

Դպրոցական պիւտճէն կը հոգացուէր ազգային կալուածներու վարձ-քով, որոնք շատ աժան գիներով տրուած էին Մեծ-Ագաներու կողմէ, գուցէ կողմնակալութեամբ։ Արսլանեան վրդ· յաջողեցաւ անոնց վարձքերը բար-ձրացնել եւ այդպէս բարձրացնել դպրոցին մակարդակը (Յ· Գօճապաշեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ Թ· 31 էջ 10)։

Սեներքերիմ Ափալաքեան (Յուշեր եւ խոհեր· ՊԱՊ ՈՒԽՏԻ Թ· 27) կը պախարակէ Աղա-էֆէնտիները, որոնք իրենց քմահաճոյքին համաձայն կը վարէին ազգային գործերը, սակայն իրեն համաձայն չէ Տոքթ· Մ· Քէչիչեան որ մեծ յարգանքով կը խօսի եւ կը ներբողէ այդ Աղա-էֆէնտիները իբր հե-ռատես եւ ազգին համար զոհաբերուող անհատներ, ինչպէս նաեւ Յ· Գօճա-պաշեան, որ կը մերժէ անոնց քմահաճ գործունէութիւն մը ունենալը (ՊԱՊ ՈՒԽՏԻ Թ· 31 էջ 10), որ եթէ իրական ըլլար Արսլանեան վրդ· պիտի չյա-ջողէր։

Դժբախտաբար այս վարդապետին օրով կատարուած բարեփոխու-թիւնները տեւական չեղան, վասնզի Յակոբ Բրիկեան յաջորդ դպրոցական շրջանը չլրացուցած՝ ձգեց Մալաթիան եւ իր ծննդավայրը՝ Տիվրիկ մեկնե-ցաւ, եւ դպրոցը դարձեալ խանգարուեցաւ։ 1908ին Օսմանեան Սահմանա-դրութեան վերահաստատութենէն ետք Մալաթիացիք վերստին ուշադրութիւն ընծայեցին իրենց դպրոցներուն, որ սակայն շատ մեծ առաւելութիւն չէր ներկայացներ, վասնզի 1909ին դաշնակցական առանդուն գործիչ, Բարսեղ Շահպազ, կ'երթայ Մալաթիա կուսակցական քարոզչութեան նպատակով եւ կ'այցելէ վարժարանները։ Այս առթիւ Պոլսոյ Արեւելքին մէջ (1909 Թ· 7063) կը գրէր թէ «Հայ աշակերտները Մալաթիոյ մէջ ցրուած են չորս տեսակ վարժարաններու միջեւ — Լուսաւորչական, Բողոքական, Կաթոլիկ եւ Լատին կղերական։ Զորսն ալ զատ զատ գրեթէ ոչինչ չեն արժեր։ Թէեւ բարեբախ-

տարիին է որ կան մէկ քանի երիտասարդ ու իսկ եւ իսկ կարող ուսուցիչներ, բայց ափսոս որ անոնք ալ անգործութեան դատապարտուած են, որովհետեւ դպրոցական-կրթական գործը սիստեմաթիք մտազբաղման առարկայ չէ դարձած բնաւ այստեղ հասարակութեան կողմէ: Լուսաւորչականներու եւ բողոքականներու վարժարաններուն մէջ տակաւին՝ գրասեղան անգամ չկայ»:

*Յակոբ Գ. Ալաչանեան[1] ուրիշ ժամանակակից մը եւ ականատես մը գէթ ի դարուն առաջին տասնամեակին մէջ Մալաթիոյ կրթական եւ ուսումնական վիճակին մէջ կատարուած յեղաշրջումը ներկայացնելու համար, յատկապէս Մալաթիոյ պատմութեան համար գիրք առած է հետեւեալ տողերը, որոնք կը հաստատեն Պէննէեան քահանայի եւ զանազան լրագիրներու թղթակիցներուն հաստատումները Մալաթիոյ կրթական գործին խեղճ վիճակին համար:*

«Հնուց ի վեր Մալաթիացիք հաւաքուած էին երեք շրջաններու մէջ. — Մայր Եկեղեցւոյ, Ս. Երրորդութեան եւ Ս. Յարութեան թաղամասերը: Ամէն թաղամաս իրեն յատուկ եկեղեցին եւ դպրոցը ունէր կողք կողքի շինուած: Անկայ ցոյց կու տայ որ Հայը որչափ ուսումնասէր, նոյնչափ կրօնասէր էր: Դպրոցականը եւ եկեղեցականը համընթաց գիծերու վրայ կը քալէին, ազգին ծառայելու համար:

«1900էն սկսեալ Մալաթիոյ հայութեան մէջ կրթական ու ուսումնական մեծ զարթօնք մը ծնունդ առած էր. շուկային մէջ, խանութներուն ու տուներուն մէջ ամէն ոք կրթական հարցերով կը հետաքրքրուէր: Մանաւանդ Գէորգ վրդ. Արսլանեանի ժամանակով, որ այդ օրերուն Մալաթիոյ Առաջնորդն էր, այդ զարթօնքը աւելի ուժովցաւ եւ աւելի ընդհանրացաւ: Մինչեւ այդ օրը ժողովուրդին փափաքն էր իրենց տղայ զաւակներուն արհեստ սորվեցնել միայն: Իսկ աղջիկները դատապարտուած էին տնական գործերով զբաղուիլ, մինչեւ իրենց ամուսնութիւնը: Աղջկանց վարժարան գրեթէ գոյութիւն չունէր: Բայց ինչպէս ըսինք վերը, 1900 թուականէն սկսեալ կրթութեան յուսաւորման փափաքը մեծ եղաւ երկու սեռին մէջ ալ: Ամէն թաղի մէջ մանչերու դպրոցին մօտիկը աղջկանց համար ալ դպրոց բացուեցաւ եւ իգական սեռին պատկանող փոքրիկ դեռատիները մեծ եռանդով կը դիմէին հոն կարդալ գրել սորվելու համար:

«Փալով արհեստաւոր դասակարգին, որոնց մեծ մասը անգրագէտներ էին, գիշերային կեդրոններ բանալու եւ հոն զիրենք լուսաւորելու համար մեծ մղում մը շարժում եղաւ, բայց անյաջողութեան մատնուեցաւ, չեմ գիտեր ինչ պատճառներով:

«Այսպէս, Մալաթիոյ Հայ ժողովուրդը ոտքի ելած էր եւ մեծ եռանդով դէպի առաջ կ'ընթանար կրթութեան ճամբուն մէջ: Ուշիմ, ընդունակ աշակերտներ Սանասարեան, Եփրատ Գօլէն կ'երթային կամ կը ղրկուէին հոն բարձր կրթութիւն ստանալու համար: Իրենց կոչումին յարմար եկեղե-

[1] Այժմ ի Պաղտատ:

ցականներ հասցնելու հարցն ալ անտեսուած չէր: Մի քանի ուսանողներ Երուսաղէմի ժառանգաւորաց վանքը ղրկուեցան եւ հոն իրենց ընթացքը աւարտելով վերադարձան:

«Հայոց կրթական վերազարթումի շարժումը առաւել եւս սաստկացաւ 1908ի Օսմ. Սահմանադրութեան հռչակումէն վերջ: Առաջնորդարանի ղեկավարութեամբ Ուսումնական խորհուրդ մը կազմուեցաւ կարող եւ զարգացած անհատներէ՝ որուն անդամներէն էր յայտնի գրագէտ Խօսրով Թէշիշեան: Այս խորհուրդին ջանքերով բոլոր թաղային դպրոցներուն համար ստիճանական եւ միօրինակ ուսումնական ծրագիր մը պատրաստուեցաւ, որուն համաձայն ամէն տեղ նոյն աստիճանի դասարաններու մէջ միեւնոյն դասերը կ'աւանդուէին առանց ոեւէ փոփոխութեան: Թաղային դպրոցները նախակրթարաններ էին. միայն Սահակեան Մայր վարժարանի ուսումնական մակարդակը բարձր էր: Որովհետեւ հաստատուն եկամուտի աղբիւրներ ունէր, եւ բաւական նոխ էր տարեկան պիւտճէին յատկացուած գումարը: Սանասարեանէն եւ Եփրատ Գոլէճէն շրջանաւարտ ուսուցիչներ կը պաշտօնավարէին հոն գոհացուցիչ ամսականով, որոնցմէ կարելի է յիշել հետեւեալները. — Յակոբ Բրիկեան, Պետրոս Տեփոյեան, Յովհաննէս Զարդարեան, Գաբրիէլ Անսուրլեան, Սարգիս Շիշմանեան, Պօղոս Պօղոսեան, Յակոբ Ալաշանեան եւ ուրիշներ: Այդ վարժարանի ընթացքը աւարտողներ Եփրատ Գոլէճի մէջ ուղղակի **Freshman** (փրէշմէն) դասարանը կ'ընդունուէին, ինչ որ մեծ փարկ մըն էր Մալաթիացիներուս համար: Մշակոյթի եւ զարգացման հետամուտ կարգ մը անձնաւորութիւններ կը ծրագրէին Եփրատ Գոլէճի եւ Սանասարեանի ուսումնական աստիճանին հաւասար բարձրագոյն կրթական հաստատութիւն մը գոյութեան բերել մօտաւոր ապագային մէջ, եւ Ամերիկայի Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւնը արդէն իսկ մեծ քայլեր առած էր այդ հաստատութեան տնտեսական պահանջքները գոհացնելու և ապահովելու համար:

Հեռու չէր այն ժամանակը երբ այդ երազը իրականութիւն պիտի դառնար, երբ վայրենիները իրենց վաղուց պատրաստուած Հայկական բնաջնջումի ծրագիրը գործադրելու չելլէին: Այդ հրէշային անմարդկային ծրագրով՝ ամէն ասպարէզի մէջ յառաջդիմութեան ընդունակ բայց անպաշտպան ազգի մը (հայ Ազգին) դարաւոր աշխատանքը եւ գոհողութիւնները կէս նամբուն մէջ նզմել խեղդամահ ընել կ'ուզուէր...:

Աւելի ճիշդը, այդ անպաշտպան ազգին ֆիզիքական գոյութիւնը միանգամ ընդմիշտ մէջտեղէն վերցնել կ'ուզէին...»:

*Այս շրջանին վրայ 1912ին Պէնճէեան Տ. Կարապետ քհն. եւս տեղեկութիւններ տուած է իր ընդարձակ Տեղեկագրութեան ձեռագրին մէջ, որ ունի* «Կրթական հաստատութիւնք» *խորագրով հատուած մը, զոր նոյնութեամբ հոս կը ներկայացնեմ, իբրեւ կրթական շարժման ամէնէն աւելի մօտէն հետեւող անձնաւորութեան մը վկայութիւնը, որ չի կրնար զուրկ ըլլալ արժէքէ:*

«Թէ՛ Հայք եւ թէ յարանուանութիւնք իրենց եկեղեցիներուն յարակից ունին երկսեռ դպրոցներ ալ:

Հայեր ներկային[1] մէջ իրենց վարժարաններու ծրագիրները միացնելով երեք չորս տարիէ յետոյ քիչ շատ նախանձելի վիճակի մը հասցուցած են Մայր Եկեղեցւոյ դպրոցը մանչերու, իսկ Ս. Երրորդութեան դպրոցի վերնայարկը աղջկանց կեդրոնականի վերածելով: Անոնց մէջ կը դասախօսեն Եփրատ Գօլէճէ եւ Սանասարեանէ շրջանաւարտ ուսուցիչներ եւ վարժուհիներ եւ այլ մանկավարժներ, համաձայն կազմական կանոնագրի արդի պահանջման եւ կ'աւանդուին Մայրենի լեզու, Թուրքերէն, Անգլիերէն եւ Ֆրանսերէն: Սոյն եւրոպական լեզուներու աւանդման առաջնութիւնը մերթ մէկին եւ մերթ միւսին կը տրուի: Անգլիերէնին՝ Ամերիկա երթալու տենչէն, իսկ ֆրանսերէնին՝ համաշխարհային ըլլալու համար:

Հայոց դպրոցներու տարեկան *ծախսն* կը յանգի 350—400 ոսկիի[2], որ կը հայթայթուի անշարժ կալուածներէ, ուսանողաց թոշակներէն եւ եկեղեցեաց սնտուկներէն:

Բացի կրօնքի դասերէն, յարանուանութեանց դպրոցներու մէջ ալ կ'ուսուցուին եւ կ'աւանդուին գրեթէ միեւնոյն դասերն ու լեզուները: Բայց ձեռագործի մասին Հայոց դպրոցը մի քիչ ետ կը մնայ կրնանք ըսել:

Գոհունակութեամբ միայն կրնանք ըսել թէ՝ Մալաթիացին ալ, այլեւս տակաւ առ տակաւ կը նկրտի ի լոյս եւ ի գիտութիւն: Մոռցած է իր նախորդ սերունդին ո՛ւր, եւ ի՛նչ եւ ի՛նչպէս կարդալը: Որովհետեւ դեռ նոր անցեալի մէջ դպրոց ըսուածը ոստայնանկին տունը եւ եկեղեցեաց շրջանակին մէջ մութ ու խոնաւ ներքնայարկեր միայն ըլլալով՝ աւանդական ՖԱԼԱԽԱՅԻՆ եւ ԹԱԹ ըսուած պզտիկ թաթիկի եւ զաւազանի հարուածներուն տակ, առանց բան մը սորվիլ ու գրելու, տարիներով պէտք էր կարդալ ու հեգել հեգարան (Սաղմոսի ութ կանոններէն առաջինը), մեծ սաղմոս, ժամագիրք, շարական եւայլն:

Այդ երանելի, յաւ եւս է ըսել ողորմելի տարիներուն մէջ, գրոց աշակերտը պէտք էր ամէն շաբաթ օր իր ոստայնանկ ուսուցչին տանէր մէյ մէկ մեծկակ լօղ (թոնիրի մէջ եփած հաց), անոր պարտէզին մէջ թափած թութերը ժողուել, երախան գրկել պտտցնել եւ տարին մի քանի անգամ հրաւէր կարդալ ճոխ սեղաններով զայն մեծարելու համար: Ա՛լ, սակայն, այդ մութ ու խաւարին արգելանոցները քանդուելով՝ նոր եւ փառաւոր շէնքեր կառուցուած են: Ա՛լ բարեփոխուելով հին կարգ ու սարք, քիչցած է «Տղաս տէրտէր վարդապետ չպիտի ըլլայ» ըսողներու թիւը: Ա՛լ փոխանակ գրքի միայն հաց պարունակող թիլիկը փոխուած է ծրարի եւ պայուսակի: Ա՛լ բէյ բի բէյի անախորժ բանդագուշանքով օրն ողջոյն, գլուխ ուռեցնելու դատապարտութենէ ազատուած է: Վերջապէս, ալ «Մարկոսն ու Կիրակոսը ա-

(1) *1912-ին, այս տողերը գրուած ատեն:*

(2) *1870-ին, ինչպէս տեսնուեցաւ, միայն 70 օսմանեան ոսկի էր:*

մեռնէն խելօքն է» ըսելով խաղեր համար վարժապետ նստեցնելու բազմավըռնաս սովորութիւնները հեռացած են :

«Կրթէ մանուկը իր օրօրոցէն» խօսքը յարգելով՝ 1906–ին Ս. Երրորդութեան թաղին մէջ մանկապարտէզ մըն ալ բացուելով՝ կը շարունակուի : Բողոքականներն ալ հատ մը բացին, բայց հազիւ երկու տարի տեւեց ու փակուեցաւ : Հայոց մանկապարտէզը կը կառավարուի տեղւոյն Մասեաց ընկերութեան տնօրէնութեամբ» :

*Այսպէս Մալաթիացիք 1908–ին Օսմ. Սահմանադրութեան վերահաստատութենէն ետք ալ միայն զարկ տուած են իրենց Թաղային վարժարաններուն եւ ընդհանուր համերաշխութեամբ, հաւաքական ճիգով աշխատած են կանոնաւորել կրթական գործը, ինչպէս բացատրած էր Տոքթ. Քէչիչեան (տես վերը էջ 699) այդ գործին նախաձեռնարկներէն մին : Արդարեւ նախ 1912–1913–ին ազգային վարժարանները եւ ապա 1914–ին աւելի լայն սահման մը ընդգրկելով, երեք յարանուանութեանց վարիչներուն կատարեալ համերաշխութեամբը կազմուեցաւ կրթական միակ ծրագիր մը երեք հասարակութեանց վարժարաններուն մէջ գործադրելու համար, տղաքներու տալու համար միօրինակ նախակրթութիւն մը, իսկ երկրորդական կրթութեան համար Մայր–եկեղեցիին (Չուկայի Թաղ) Սահակեան վարժարանը դարձնել կեդրոնական վարժարան, ուր պիտի երթային երկրորդական ուսում առնել ուղղակի երեք յարանուանութեանց դպրոցներու միօրինակ ծրագիրով պատրաստուած աշակերտները :*

*Խառն Ուսումնական խորհուրդ մը կազմուած երեք հասարակութեանց ներկայացուցիչներով պիտի հսկէր անխտիր երեք հայ համայնքներուն կրթական գործին :*

*Կարգադրուած էր նաեւ դպրոցներու* պիւտճէի *հարցը լաւագոյն համաձայնութեամբ եւ կատարեալ համերաշխութեամբ եւ հասկացողութեամբ :*

*Այս օրինակելի ծրագիրը, ինչպէս յիշուեցաւ, կարելի չեղաւ իրագործել չարաղէտ պատերազմին պատճառով որ ամէն ինչ քանդեց :*

*Այնպէս որ դէթ 1908–1914 շրջանին Մալաթիացիք որոշ է որ մեծ ճիգ ըրած էին իրենց դպրոցներուն համար սահմանափակ միջոցներով եւ նիւթական եւ բարոյական դժուարութիւններու յաղթելով :*

*Թուրքերը որ անհամեմատ յետամնաց էին նախանձով կը դիտէին Հայերու յառաջդիմութիւնը եւ քաղաքը կրթական փեթակի մը վերածած ըլլալու յաջողութիւնը որուն մէջ մեծ դեր ունեցած էին Խարբերդի Ամերիկեան Եփրատ Գոլէճը եւ Ֆրանսական եւ Գերմանական կրթական հաստատութիւնները :*

---

1

# ՀԱՅ ԴՊՐՈՑՆԵՐԸ

*Վերոգրեալ ընդհանուր տեղեկութիւններէն ետք, կ'ուզեմ ներկայացնել նաեւ իւրաքանչիւր Հայ դպրոցի կեանքը, անոնց մասին առձեռն տեղեկութիւնները հաւաքելով, որպէսզի որոշ գաղափար մը տրուած ըլլայ ընդհանուր շարժումին վրայ:*

*Մինչեւ* 1884 *աղջիկներու վարժարան բնաւ գոյութիւն ունեցած չըլլալով նախ պիտի խօսիմ մանչերու դպրոցներու եւ ապա աղջիկներու վարժարաններուն վրայ, հնութեան կարգը ըստ կարելւոյն պահելով, իսկ առանձին պիտի խօսիմ յարանուանական կամ օտար այն վարժարաններուն վրայ որոնց աշակերտները ամբողջ հայ էին, եւ կը նպաստէին Մալաթիոյ Հայոց զարգացումին:*

## 1.— ՍԱՀԱԿԵԱՆ ՄԱՅՐ ՎԱՐԺԱՐԱՆ

*Ինչպէս տեսնուեցաւ Շուկայի Թաղին մէջ գտնուող Ս. Աստուածածին Մայր եկեղեցիին քով Առաջնորդ Առաքել վրդ.* 1856—1860*ի տարիները հիմնած էր այս վարժարանը ուսուցիչ նշանակելով Աստուր Բահանեանը* (Նոր Մալաթիա, *Գ. տարի, Թ.* 2, *էջ* 15)*: Անոր ետքը միացած էին Պելլօ եւ Պելլիկ վարժապետները: Առաջին տարիներուն դպրոցը ունէր հազիւ* 100 *աշակերտ: Սրապիոն եպիսկ. Սարօնճեան* (1859—1868 *եւ* 1878—1888) *որ Առաքել վրդ.ի յաջորդած էր, ինքն ալ կրթական գործին ուշադրութիւն ընծայած է: Ըստ Ստեփան Մանուչեանի Սրապիոն եպիսկ. բարելաւած է կրթական գործը, Ակինեան*[1] *անունով ուսուցիչ մը բերել տալով, եւ արդէն տեղւոյն վրայ պատրաստուած ուսուցիչները գործածելով* (Նոր Մալաթիա, *ԺԵ. տարի, Թ* 3—4 *էջ* 45)*.*

1870*ական Թուականներուն հոն կը պաշտօնավարէին իբր ուսուցիչ Ծերուն վարժապետ Տամպուրաճեան եւ Գրիգոր խօճա Թիֆթիկճեան: Աշակերտներու թիւը* 200—300*ի բարձրացած էր:*

*Սրուանձտեանց այս վարժարանը Ս. Մեսրոպեան անունով կը յիշէ, ժողովուրդը առ հասարակ զայն կը կոչէր* ՇՈՒԿԱՅԻ ԴՊՐՈՑԸ, *մինչ դպրոցին անունն էր* ՍԱՀԱԿԵԱՆ:

*Ծերուն վարժապետ եւ Թիֆթիկ խօճա, պաշտօնավարած են հոն մինչեւ* 1890*ական Թուականներու վերջին տարիները, կամ մինչեւ* 1900:

*Այս Մայր-վարժարանը որ Մալաթիոյ ամենէն գլխաւոր դպրոցը եղած է, մերթ կոչուած է նաեւ* «ԿԵԴՐՈՆԱԿԱՆ», *քանի մը կարգերու յաւելումով:*

---

(1) *Ակինեանի մասին ուրիշ որեւէ յիշատակութեան չեմ հանդիպած, այնպէս որ կը կասկածիմ այս անունին ճշդութեան վրայ:*

*Պոլսոյ ԱՐԵՒԵԼՔ օրաթերթին* (1885, *թ.* 428) *մէջ թղթակից մը կը գրէ թէ.*

«Վերջապէս Հայոց մէջ ալ սկսան տեսնուիլ անձինք որ գիտեն ճանչել վարժարանի նշանակութիւնն ու կարեւորութիւնն: Այսպիսիք ահա մեծ ջանք ցուցուցին ՄԱՅՐ ՎԱՐԺԱՐԱՆԻ բարեկարգութեան յորմէ միշտ զուրկ մնացած էր եւ հետեւաբար եւ ոչ մի գլխի տէր աշակերտ արտադրած: Վարժարանը բաժանեալ է նախակրթարանի եւ կրթարանի, դասատուք են Տեարք Ա. Խօրասանճեան, Գրիգոր Թիֆթիկճեան, եւ Մ. Յ. Խաչատուրեան եւ օգնականք, թիւ աշակերտաց 150[1]: Վարժարանն ունեցաւ իւր կենաց մէջ առաջին անգամն լինելով, իւր կանոնագիրն, ուսման յայտագիրն եւ ժամանակացոյց դասախօսութեանց եւ տոմարներ ներկայութեան, նիշագրութեան եւ վարուց: Աշակերտք յոյժ նուազ ունենալով դասագիրք, հոգաբարձութիւնն 10—15 ոսկւոյ դասագիրք բերել կու տայ ի Կ. Պոլսոյ: Մի լեզուգէտ դասատուի համար ալ ոչ նուազ փոյթ կը տարուի»:

*Այս վարժարանին կ'աշակերտէին* 1886*-ին Քերովբէ Թաշճեան, որ կը պատմէ թէ իւրաքանչիւր աշակերտի վիզէն կը կախէին քառակուսի տախտակ մը, որուն վրայ գրուած էր այբուբենը:*

*Այս թուականին դպրոցի դասատուն էր Յարութիւն Փափազեան եւ անոր հօրեղբայրը ԳԵՂԻԿ ՎԱՐԺԱՊԵՏ ՔԷՉԷՃԵԱՆ, ողնայրը ծռած ծերուկ մը որ գաւազանով կը քալէր:*

*Քիչ ատենէն Քերովբէ Թաշճեան կ'ունենայ քերական մը եւ գրեթէ վեց ամիսէն կը սկսի «ՄԱՅՐԵՆԻ ԼԵԶՈՒ» գիրքը կարդալ:*

*Դպրոցի շէնքի վարի յարկը յատկացուած էր նախակրթարանի, իսկ վերի յարկը կրթարանի ուր կը դասախօսէր Ակնցի Աւետիս Խօրասանճեան:*

*Այդ վերի կարգին կ'աշակերտէին* 20 *աշակերտներ եւ դպրոցին կարգ ու սարքը շատ լաւ էր:*

*Ժամանակին առաջնորդը Սահակ եպիսկ. շատ հոգածու էր դպրոցին* (*տես ՊԱՊ ՈՒԽՏԻ թ.* 48 *էջ* 14):

ԱՐԵՒԵԼՔ (1889 *թ.* 1593) *կը գրէ թէ* «Տեղւոյս Ս. Առաջնորդ Գեր. Իսահակ Արք. եւ իրեն համամիտ մի քանի անձանց ջանիւք այս օրեր... ծախուց գումարը կրկնապատկեցաւ»: *Այդ «ծախուց գումարը» ցաւալի է ըսել որ ըստ նոյն թղթակցութեան* 7000 *դրուշ էր ազգային եւ մասնաւոր եօթն հատ երկսեռ վարժարանաց* 700 *աշակերտներուն համար, այսինքն տարին* 10 *դրուշ իւրաքանչիւր աշակերտին համար:*

*Այդ թղթակցութեան մէջ տեղեկատուն կը գրէ թէ* «Նոր դասատուներ կարգուեցան եւ Մայր վարժարանն իւր պէտք եղած բարեկարգութիւնն ստանալու վրայ է» (ԱՐԵՒԵԼՔ 1889 *թ.* 1593):

*Եւ իբր թէ եղածը մեծ բաներ մը ըլլային թղթակիցը կը գրէ* «Յուսանք

---

(1) *Յակոբ Մուրատեան, որ այդ թուականներուն Մալաթիա իբր ուսուցիչ պաշտօնավարած է, Մայր եկեղեցւոյ վարժարանին աշակերտներուն թիւը 200 նշանակած է* (Նոր Մալաթիա, *Գ. տարի, թ.* 2, *էջ* 15):

թէ միւս վարժարանք եւս պիտի տեսնեն այդ օրը», *մինչ ինչպէս տեսնուեցաւ ողբալի էր Մալաթիոյ կրթական վիճակը նոյն այդ օրերուն, հիմնուելով նոյնիսկ նոյն թղթակիցին այդ տողերուն հետ տուած տեղեկութիւններուն վրայ որոնց համաձայն* 1889–*ին* «Մալաթիոյ երեք եկեղեցիք ունին իրենց վարժարանները, կան նաեւ աննշան մասնաւոր վարժարաններ եւ ազգային ու մասնաւոր երկու աղջկանց վարժարան, այս ամէն վարժարանաց աշակերտներու թիւն 700է աւելի է։ Ասոնց համար Մեկիտինէի մեր ազգայինք աւելորդ ծախք չեն ընեն, զի խնայողութիւնը լաւ բան է, եւ ի՞նչ հարկ կայ դպրոցին համար մեծ ծախքեր ընել, քանի որ իրենց դպրոցները ինչ անկեալ վիճակի մէջ եւ լինին՝ կրնան իրեն քանի մը տիրացուներ տալ··· Բաւական համարուած է հոս հայերէնի համար փոքր եւ մեծ Սաղմոս, թուրքերէնի համար ալ փոքր եւ մեծ ԻՆՇԱ···։ Այս ժողովուրդը տարեկան 7000 դրուշով իւր ազգային եւ մասնաւոր եօթն հայ երկսեռ վարժարանաց 700 աշակերտաց կրթական գործը կը կատարէ»··· (*տես* ԱՐԵՒԵԼՔ 1889 *թ*· 1593)։

1893–*ին Մալաթիայէ Ա· Ե· Թորգոմեանի հաղորդուած մանրամասն տեղեկութիւններու համաձայն* (*տես* ԱՐԵՒԵԼՔ 1893, թ· 2927)։

*Մալաթիացիք* «Ուսման եւ գիտութեան համը տակաւին չեն առած, սակայն··· կ'աշխատին, հինգ դպրոցներ ունին, երեք մանչերու, Մայր, Արամեան եւ Ներսէսեան··· Նիւթական շէնքերն ըստ բաւականին լաւ են, բայց ուսմունքը՝ թերի։ Իւրաքանչիւրը գրեթէ 120ական ուսանող եւ 3ական ուսուցիչ ունի։ Մասնաւոր շրջան մը չունին վարժարանք, ծաղկոց եւ կրթարաններու կը բաժնուին, կ'աւանդուին թուաբանութիւն, աշխարհագրութիւն, հայերէն, թրքերէն եւ փրանսերէն, այն ալ թերի կերպով։ Տարեկանն 180ական ոսկի ծախս կ'ըլլայ, որ եկեղեցեաց սնտուկներէ եւ աշակերտաց թոշակներէ կը հայթայթուի։ Թաղային վարժարան մըն ալ կայ, որ Արամեան վարժարանի մէկ մասնաճիւղը կը համարուի, 70 աշակերտ եւ 2 վարժապետ ունի··· թէեւ ցայսվայր ունեցած չեն օրինաւոր, խղճամիտ դաստիարակ մը, սակայն ժողովուրդը տակաւ կը սթափի իր տգիտութեան խոր թըմբիրէն եւ այժմէն ծիրանի յոյսեր կը տածեն իրենց վարժարանաց նկատմամբ եւ մտադիր են շրջակայ գաւառներէ կարող վարժ ուսուցիչներ բերել պայազայ սերունդը դաստիարակելու»։

1900–*ին Մալաթիոյ ՄԱՅՐ կամ ԿԵԴՐՈՆԱԿԱՆ վարժարանի տնօրէն կը կարգուի Խարբերդէն հրաւիրուած Միքայէլ Հալաճեան անուն ուսուցիչը* (ԱՐԵՒԵԼՔ 1900 *թ*· 4494)։

*Եղիշէ քհնյ· Խաչատուրեան որ Մալաթիոյ Ազգ· Որբանոցին Հոգաբարձութեան նախագահն էր 3 Փետրուար* 1901–*ին ներկայացուցած է Մալաթիոյ Թաղային վարժարաններու վիճակացոյցը որուն համաձայն Մայրվարժարանը ունէր՝* 200 *մանչ եւ* 120 *աղջիկ* (*ընդհանուր* 320) *աշակերտ*, 3 *ուսուցիչ եւ* 2 *ուսուցչուհի*։

*Նիւթական մատակարարութիւնը կը կատարուէր Ա· ամսական եկե–*

ղեցւոյն սնտուկէն առնուած 300 ղրուշով, Բ. աշակերտներէն գանձուած 75 ղրուշ թոշակներով եւ Գ. գանձանակէ գոյացած 25 ղրուշ, այսինքն ընդամէնը 400 ղրուշ հասոյթով:

Օրուան Առաջնորդը Խաչատուր վարդապետ Տէր Ղազարեան, ամէն ճիգ կը թափէ եւ «կ'ուզէ կրթական գործը փայլուն վիճակի մը ենթարկել, կը բաղձայ դաստիարակութեան սէրը արծարծել ամէն անհատներու մէջ» (ԱՐԵՒԵԼՔ 1901, Թ. 4532):

Կ. Պոլսոյ Կեդրոնական Ուսումնական խորհուրդի պատրաստած 1901–1902 տարուան Գաւառական Ազգային վարժարանաց վիճակացոյցին մէջ՝

ՄԱՅՐ ՎԱՐԺԱՐԱՆԻՆ համար նշանակուած է Դ. դասընթացք, 180 մանչ եւ 120 աղջիկ (համագումար 300) աշակերտներով 3 այր եւ 1 կին ուսուցիչներով: Նիւթապէս կը մատակարարուի եկեղեցիին սնտուկէն 250 ղրուշ եւ գանձանակէ կամ զանազան նպաստներէ ստացուած 150 ղրուշ ամսական հասոյթով:

Իսկ անոր մաս կազմող ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԸ որ նոյնպէս ունէր Դ. դասընթացք 230 միայն մանչ աշակերտներով եւ 3 ուսուցիչներով:

Ամսական ծախքն էր 400 ղրուշ, որուն 100ը Թաղին սնտուկէն եւ 80ը թոշակներով կը հայթայթուէր:

Խաչատուր վարդապետ Տէր Ղազարեանի 21 Մարտ 1902 թուականով Պատրիարքարան ղրկած մէկ խնամեալ վիճակացոյց-տեղեկագրին համաձայն կը յիշուին քաղաքին մէջ երեք եկեղեցի եւ անոր յարակից երեք վարժարան, որուն առաջինն է ՄԱՅՐ-ՎԱՐԺԱՐԱՆ՝ որ ունի 4 ուսուցիչ եւ 205 ուսանող, այնպէս որ կը դժուարանայ այս 1901 եւ 1902 թուականներու համար երեք անհաշտ տեղեկութիւններ իրարու հետ համաձայնեցնել:

Իսկ բոլորովին ցաւալի են եւ վհատեցուցիչ 1909-ին Բարսեղ Ծահկագի հաղորդած տեղեկութիւնները Մալաթիոյ ամբողջ կրթական գործին վըրայ (տես ԱՐԵՒԵԼՔ 1909 Թ. 7063), վասնզի կը գրէ թէ «Նոյնիսկ Կեդրոնական վարժարանի աշակերտները կը նստին գետինը, ծալապատիկ եւ գիրը կը գրեն իրենց առջեւ դրուած փոքր սնտուկներու վրայ — ճիշդ նման Պոլսոյ Եէնի ճամիի ԱՐԶՈՒՀԱԼՃԻՆերուն...»:

Այս անհաւատալի ըլլալու աստիճան ողբալի վիճակը զարմանալի է, քանի որ գիտենք թէ այդ թուականներէն բաւական առաջ իսկ Եփրատ Գոլէճի շրջանաւարտներն էին որ կը վարէին Մալաթիոյ կրթական հաստատութիւնները:

Արդարեւ կ'երեւի թէ բարեշրջումը եղած է յանկարծական Օսմ. Սահմանադրութեան հաստատութենէն ետք: Մալաթիոյ Հայերը որոնք առաջին քայլերը առնելէ ետք 1885–1893ի շրջանին, միեւնոյն եռանդով չեն կրցած զարգացնել կրթական գործը, եւ ընդարմացած վիճակ մը ունեցած են: Մինչ Բողոքական, Կաթոլիկ եւ Լատին դպրոցները աչքառու յառաջդիմութիւններ

կ'ունենային օրէ օր, ինչ որ կ'երեւի թէ խթան մը կ'ըլլայ որ հայադաւան համայնքն ալ արթննայ թմրութենէ:

Այս շրջանին կը շինուի Շուկայի եկեղեցիին դիմաց, հսկայ վարժարան մը մեծ դասարաններով, իբր Մայր-վարժարան:

Կը հաստատուի թէ Հայ ծխական երեք դպրոցները արդիական կահաւորում ունէին: Ուսանողները ունէին կանոնաւոր սեղաններ, եւ դասարաններուն պատերը նկարազարդ էին եւ քարտէզներ կախուած:

1899–1900 թուականներուն Շուկայի դպրոցին ուսուցիչները եղած են Գրիգոր վարժապետ Արրաճեան (տնօրէն), Պապօ վարժապետ Փափազեան, Արապկիրցի Մանչուկ վարժապետ, Յովհաննէս Սիրունեան, եւ Գրիգոր Արգայեան –լուսարար էր Ս. Աստուածածին եկեղեցիին– որոնք կը դասախօսէին նախակրթարանին մէջ:

Հոն դասախօսած են նաեւ Գրիգոր Թաչճեան եւ Եղիա Կարապետեան, որոնք 1905–ին քահանայ ձեռնադրուեցան:

1905–էն վերջ աւելի ուժ տրուեցաւ վարժարանի, եւ հրաւիրուեցան Յակոբ Բրիկեան Տիվրիկցի[1], Մեսրոպ Ժամկոչեան, Պետրոս Տեփոյեան եւ Յովհաննէս Սերկիճեան, ամէնքն ալ Եփրատ Գոլէճէն: Իսկ Սանասարեանէն դարձած էին Սարգիս Խաչատուրեան, Գաբրիէլ Անտուրեան, Տոնոսիոս Կեսարեան, շրջանաւարտ Խարբերդի Ֆրանսական գոլէճէն, երեքն ալ Մալաթիացիներ:

Սարգիս Խաչատուրեան ժամանակ մը պաշտօնավարելէ ետք իբր Նըկարչութեան ուսուցիչ մեկնած է Հռոմ կատարելագործելու իր արուեստը, Գ. Անտուրեան, հայրենանուէր եւ յեղափոխական խառնուածքով անձնաւորութիւն մը, արդիւնաւորապէս մի քանի տարի պաշտօնավարելէ ետք Պէյրութի բժշկական վարժարանէն վկայուած է 1915–ին բժիշկ, բայց առանց գործի սկսելու սպաննուած է:

Իսկ Տոնոսիոս Կեսարեան Ֆրանսերէնի ուսուցիչ եղած է եւ սիրուած անձնաւորութիւն մը: 1915–ին եղեռնէն ետք մեկնած է Սուրիա եւ Հալէպ հաստատուած ուր եղած է երկաթուղիի ընկերութեան պաշտօնեայ:

Ասոնց ժամանակակից են Շիշմանեան Սարգիս եւ Յակոբ Փափազեան որ նահատակուած է 1915–ին: Մալաթիոյ կրթական գործին ընդհանրապէս եւ մասնաւորապէս Մայր վարժարանին ուսումնական վիճակին բարւոքման մեծ նպաստ բերած է Խարբերդի Եփրատ Գոլէճը որուն շրջանաւարտներէն առնուած են մեծ մասամբ Մալաթիոյ ուսուցիչները:

Սահակեան վարժարանը կատարուած այս ճիգերուն շնորհիւ բաւական լաւ վիճակ մը ունեցած է եւ այս դպրոցէն շրջանաւարտ ելլողները կրցած են շարունակել իրենց ուսումը Խարբերդի Եփրատ Գոլէճի եւ Սեբաստիոյ Սանասարեանի մէջ:

Մինչեւ 1908 այս դպրոցը ոչ մէկ շրջանաւարտ ունեցած էր, վասնզի

---

(1) Յակոբ Բրիկեան շրջանաւարտ է Խարբերդի գոլէճէն, տնօրէն եղած է Մայր վարժարանի (Նոր Մալաթիա, ԺԵ. տարի, Թ. 1–2, էջ 27):

1895-ի ջարդէն ետք Մալաթիոյ Հայերը տնտեսապէս վնասուած էին եւ ծը–նողքները մատաղ հասակին մէջ իրենց տղաքը դպրոցէն քաշելով գործի կը հանէին, որպէսզի կարենան ապրեցնել իրենց բազմանդամ ընտանիքները եւ կամ ապահովութեան համար իրենց արտասահման մեկնող ծնողներուն հետ կը գաղթէին:

1908-ին առաջին անգամ Սահակեան վարժարանը ունեցաւ երկու շըր–ջանաւարտներ որոնք էին Կարապետ Խպիկեան[1] եւ Խորէն Փափազեան[2]:

Այդ օրերուն վարժարանին ուսուցիչներն էին Մարտիրոս Սաչաքլեան[3], Օր· Արգաւեան, Բաբերդցի Խորէն վարժապետ եւ Կարապետ Թէրզիպաշեան:

Խորէն Փափազեանի 1911-ին կը յաջորդէ Եղիա Թօփալեան որ 1915-ին եղեռնին զոհ կ'ըլլայ: Մինչեւ տարագրութիւն միշտ Կեդրոնական կամ Մայր վարժարանը առաջին կարգի վրայ էր (Լեւոն Փափազեան որ իր տեղեկութիւնները քաղած է իր հօրեղբայրը՝ Մանուկ, եւ հօրեղբօր որդի՝ Խորէն Փափազեաններէ):

## 2· ՆԵՐՍԷՍԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Այս վարժարանը կը գտնուէր Ս· Յարութիւն եկեղեցիին քով:

Եկեղեցին շինուած էր 1860ին, բայց դպրոցը բաւական վերջը բացուած էր, հաւանօրէն 1872–1873ին, հիմնուած Ներսէսեան ընկերութեան ջանքերով:

Առաջին ուսուցիչը եղած է Ծերուն վարժապետ Տամպուրաճեան (Նոր Մալաթիա Գ· տարի Թ· 2 էջ 15): Ներսէսեան ընկերութիւնը որ իրեն ժամանակակից ԱՍՏՂԻԿ եւ ԱՆՁՆՈՒԷՐ ընկերութեան պէս դպրոցներու օգնող ընկերութիւն մըն էր մինչեւ 1888, շարունակած է:

Ընկերութեան կազմալուծումէն ետք Ներսէսեան դպրոցը ազգային կամ Թաղային վարժարանին վերածուած է:

1901ին կազմուած Կեդր· Ուսումնական խորհուրդին վիճակացոյցի համաձայն, Ներսէսեան վարժարանը ունէր չորս դասարան 140 մանչ աշակերտներով եւ 2 ուսուցիչներով: Ամսական ծախքը 220 ղրուշ էր, որ կը հայթայթուէր Թաղային սնտուկէն 80 ղրուշ, Թօշակներէ 100 ղրուշ եւ գանձանակէն 40 ղրուշ:

3 Փետրուար 1901-ին Եղիշէ քհն· Խաչատուրեանէ պատրաստուած վիճակացոյցին համաձայն աշակերտներու թիւն էր 120 մանչ եւ ուսուցիչներուն՝ 2, իսկ հասոյթները 100 ղրուշ եկեղեցիէն, 40 Թօշակներէ, 10 ղրուշ գանձանակէ (ընդամէնը 150 ղրուշ):

(1) Կանուխ արտասահման անցած է:

(2) Ուսուցիչ եղած է Ս. Յարութիւն Թաղին դպրոցին եւ Լուսարար նոյն եկեղեցիին 1908-էն 1911, եւ ապա անցած է Ամերիկա:

(3) Վերջերս մեռած Քալիֆորնիա:

Իսկ Խաչատուր վրդ. Տէր Ղազարեանի 21 Մարտ 1902ին ներկայացուցած տեղեկագրին համաձայն, Ներսէսեան վարժարանը ունէր 140 աշակերտ 2 ուսուցիչով:

## 3. ԱՍՏՂԻԿ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

«Աստղիկ» անունով մշակութային ընկերութիւն մը կազմուած էր 1872ին, Մալաթիոյ մէջ:

Այս ընկերութիւնը Ս. Երրորդութեան թաղին մէջ կաթոլիկ եկեղեցիին փողոցին դիմաց Ժարժաթեաններու տունը վարձելով, 1881ին Դեկտեմբերի մասնաւոր դպրոց մը կը բանայ, ուր կը գործադրուէր Միացեալ Ընկերութեան կրթական ծրագիրը (ՊԱՊ ՈՒԽՏԻ Թ. 60 էջ 19):

Դպրոցը ունեցած է 60 աշակերտ եւ երկու դասատու: Այս դպրոցին տնօրէնն էր Աւետիս Խօրասանճեան, Ակնցի հայկաբան, ուսուցիչ բերուած էր այս վարժարանին համար եւ հոն պաշտօնավարած էր մինչեւ այս վարժարանի փակումը (1886):

Վարձուած շէնքը ընդարձակ վերնայարկ մըն էր որ հովասուն, լուսաւոր եւ վայելչագիր էր:

Աշակերտները կիսով չափ գրասեղան ունէին եւ աշխարհացոյցեր (Մասիս 1882 Թ. 3333):

Այս դպրոցը, 1886ին հազիւ հինգ տարուան կեանք մը ունենալէ ետք կը փակուի (ՊԱՊ ՈՒԽՏԻ Թ. 58), երբ Աստղիկ ընկերութիւնն ալ դադրած էր գոյութենէ:

Աւետիս Խօրասանճեան 1886ին կոչուած է Սահակեան Մայր վարժարանի տնօրէնութեան:

## 4. ԱՐԱՄԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Այս վարժարանը կը գտնուէր քովը Ս. Երրորդութեան եկեղեցիին, որ հիմնուած էր 1875ին: Սրապիոն եպիսկ.ի քարոզներուն ազդեցութեան տակ երբ Մալաթիոյ Հայերուն մէջ արթնցաւ ազգային ոգին եւ արծարծուեցաւ ուսման սէրը, Ս. Երրորդութիւն եկեղեցիին թաղականներէն Հաճի Գէորգ Քէփէնէկեան, Հաճի Մարտիրոս (Ձնքուշցի Մրտօ) Ջուլալեան եւ Պօղոս Վառվառեան, հակառակ անոր որ իրենք կարդալ գրել չէին գիտեր, անխոնջ աշխատեցան եւ Ս. Երրորդութեան եկեղեցիին դիմաց երկյարկանի վարժարան մը շինեցին երեք դասարաններով եւ 1883-ին վարժապետ բերին Արապկիրի Անջրդի գիւղէն Կարապետ եւ Պետրոս անունով երկու եղբայրներ, որոնք մինչեւ 1885 պաշտօնավարեցին իրենց օգնականներով: Անոնք 200է աւելի աշակերտ ունէին (Յակոբ Մուրատեան ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ Գ. տարի Թ. 2 էջ 15):

Այս վարժարանին մէջ իբրեւ վարժապետ պաշտօնավարած են նաեւ Ջնփիյէճեան, Համբարձում Պէննէեան (յետոյ Տ. Կարապետ քհն.) եւ Նազարէթ Տ. Մուշեղեան, յետոյ Տ. Մուշեղ քհն. (ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ Գ. տարի Թ. 2 էջ 15):

Արամեան վարժարանը 3 Փետրուար 1901ին ներկայացուած վիճակացոյցին (պատրաստուած Տ.՝ Եղիշէ քհն. Խաչատուրեանէ) համաձայն ունէր 150 միայն մանչ աշակերտներ 2 ուսուցիչներով: Հասոյթներն էին 120 ղրշ., եկեղեցիին սնտուկէն, 160 ղրշ. Թոշակներէն, 20 ղրշ. գանձանակէն (ընդամէնը 300 ղրշ.) իսկ Խաչատուր վրդ. Տէր Ղազարեանի 21 Մարտ 1902 Թուականով, տեղեկագիրին համաձայն, այս դպրոցը ունէր 200 միայն մանչ աշակերտներ եւ երկու ուսուցիչներ:

## 5. ԿՐԹԱՍԻՐԱՑ ՎԱՐԺԱՐԱՆ

1880ին Մալաթիոյ մէջ ալ ուսման կարեւորութիւնը ըմբռնուելով, շարժում մը առաջ կու գայ եւ կը խորհին Մշակութային ընկերութիւն մը կազմել կրթական գործին զարկ տալու համար (ՊԱՊ ՈՒԽՏԻ Թ. 57 էջ 18) եւ ըստ Հ. Եփրեմ վրդ. Պօղոսեանի 1885ին կը ծրագրեն Թելադրութեամբ Յակոբ Յովնանեանի ընկերութեան սեփական միջոցներով յատուկ դպրոց մը բանալ:

1886ին Աւետիս Խօրասանճեանի Սահակեան վարժարանէն հրաժարելէն ետք, Յակոբ Յովնանեան եւ Աւագ Կէմալմազեան 1886ին Կէմալմազ Թաղին մէջ Կուրապեաններու տունը վարձելով՝ դպրոց մը կը բանան, Աւետիս Խօրասանճեանի տնօրէնութեամբ: Իրեն կը յաջորդէ ԱՍԱՏՈՒՐ ՐԱՀԱՆԵԱՆ, որուն օգնական կը կարգուի քիչ ետքը ՅԱԿՈԲ ՄՈՒՐԱՏԵԱՆ:

Այս վարժարանին հիմնարկութեան պատմութիւնը զոր Հ. Եփրեմ վրդ. Պօղոսեան կը ներկայացնէ, կը կարօտի ճշգումներու, վասնզի ընկերութիւնը որ այդ վարժարանը բացած է, 1880ին չէ որ կազմուած էր, այլ 1862ին «Անձնուէր» պիտակ անունով: 1880ին այդ ընկերութիւնն էր որ կը վերակազմըւէր, իսկ այս վարժարանին հիմնադիրը հաւանօրէն 1886ին Յունուար 1-ին կազմուած ԿՐԹԱՍԻՐԱՑ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆ էր, որ Թերեւս ԱՆՁՆՈՒԷՐ ընկերութեան մէկ ճիւղն էր:

Այս վերջինը 1886ին լուծել խոհեմութիւն համարուած է երեւութապէս, մինչ ան շարունակած է իր գործունէութիւնը գաղտնի, զանազան դիմափոխութիւններով, ինչպէս պիտի տեսնուի:

1887ին ԿՐԹԱՍԻՐԱՑ ՎԱՐԺԱՐԱՆի գլխաւոր ուսուցչութեան կը կոչուի ԳՐԻԳՈՐ ԹԱՇՃԵԱՆ, որ հայերէնէ զատ նաեւ անգլիերէն կ՚աւանդէ, իսկ Յակոբ Մուրատեան կու տայ հայերէնի եւ Թրքերէնի դասերը:

Դպրոցը այդ շրջանին ունէր Ա. եւ Բ. կարգեր: Աշակերտներու Թիւը հետզհետէ կ՚աճի եւ 120ի կը հասնի 1891ին, իսկ դպրոցին չէնքը նեղ գալով, նախ կը փոխադրուի Կէմալմազեաններու, յետոյ Յակոբ Մազմանեանի տու-

նը։ Այս վարժարանին է որ կ՚ակնարկէ ապահովաբար 1893ին Թղթակից մը (տես Արեւելք օրաթերթ Պոլսոյ Թ. 2927), երբ կ՚ըսէ թէ Արամեան վարժարանին մէկ մասնաճիւղը կը համարուէր Թաղային վարժարան մըն ալ որ 70 աշակերտ եւ 2 վարժապետ ունէր։

Դպրոցին պաշտպան՝ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ նիւթական եւ բարոյական ձեռնտուութեամբ, դպրոցը կը շարունակուի մինչեւ 1895ի կոտորածի Թուականը։

Այդ դպրոցին մէջ իր բացման Թուականէն սկսեալ ամէն կիրակի տեղի կ՚ունենային նաեւ բարոյական ու գիտական բանախօսութիւններ ՅԱԿՈԲ ՅՈՎՆԱՆԵԱՆի կողմէ եւ վարժարանը կ՚ունենար արդիւնաւոր կեանք (Հ. Եփրեմ վրդ. Պօղոսեան ՊԱՊ ՈՒԽՏԻ Թ. 57 էջ 19, նաեւ ՊԱՊ ՈՒԽՏԻ Թ. 32–33 էջ 12)։

Այս դպրոցը Կէմալմալին դպրոցը կը կոչէր ժողովուրդը։

## 6. ԳԱՅԵԱՆԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Մինչեւ 1880 Թուական Մալաթիոյ մէջ իգական սեռի համար դպրոց չկար։ Միայն տնական վարժարաններ կային, Պոլսոյ վարպետ-տուտուներուն նման, որոնք Թաղերու մէջ աղջիկներու կարդալ կը սորվեցնէին։

Ասոնցմէ մին էր Տիկին Մարինէ Որբերեան, մայրը գրագէտ Ռուբէն Որբերեանի, որ ունէր իր տան մէջ այն տեսակ վարժոց մը 15–20 աշակերտներով, որոնց նախնական դասեր կու տար ու ասեղնագործութիւն ալ կը սորվեցնէր։

Տիկին Մարինէ Որբերեան, երբ Բողոքականները Մալաթիոյ մէջ աղջիկներու վարժարան բացին, անոր անդրանիկ ուսուցչուհին եղաւ եւ սերունդներ հասցուց։ Շրջան մը ունեցաւ 50–60 աշակերտներ եւ հանդիսացաւ Մալաթիոյ առաջին վարժուհին (Նոր Մալաթիա, Գ. տարի, Թ. 2, էջ 15)։

Նաեւ Կաթոլիկները, Հայ Բողոքականները եւ Լատինները աղջիկներու վարժարաններ ունեցած են (տես Մասիս օրաթերթ, 1884 Թ. 3629) աւելի կանուխ քան հայադաւանները։ Մինչեւ 1884 աղջիկներու դաստիարակութիւնը անտեսուած էր, եւ բնաւ չէ յիշուած աղջիկներու վարժարան մը։ Հակառակ անոր որ Հ. Եփրեմ վրդ. Պօղոսեան (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ 57, էջ 20) կը կարծէ թէ, հին դպրոցներու մէջ աղջիկներ ալ կ՚ընդունուէին, բնաւ հաւանական չէ որ աղջիկներ ալ դրկուած ըլլան մանչերու հետ դպրոց ուսում առնելու։

1884ին է որ առաջին անգամ աղջիկներու վարժարանի պէս բան մը կ՚ունենան Հայերը (տես ՄԱՍԻՍ 1884, Թ. 3629)։ Նոյն Թուականին, Ապրիլին կը բացուի աղջիկներու վարժարանը, եկեղեցիին կանանց վերնատան մէջ, մէկու կէս մեթր բարձրութեամբ եւ երկու փոքր լուսամուտով յարկ մը, ուր 60–70 աղջիկներ ուսում կ՚առնէին (ՄԱՍԻՍ 1884 Յունիս 27, Թ. 3716)։

*Այս վարժարանը անուանուած է «ԳԱՅԵԱՆԵԱՆ», հաստատուած ըլլալով Գայեանեանց խնամակալուհի Տիկնանց աշխատութեամբ (Մարտիրոս Սահակեան եւ Կարապետ Գըզըլքէչիչեան, ՄԱՍԻՍ, 1884 Ապրիլ 5, Թ. 3663)։*

*Այս վարժարանը հակառակ եկեղեցիի մը շէնքին մէջ հաստատուած ըլլալուն իր յատուկ խնամակալութեամբ, մասնաւոր վարժարան մը նկատուած է։ 1891ին Ազգ. Մայր վարժարանին միացած է, անոր համար Տէր Ղազարեան վրդ. այդ Թուականին հիմնուած ցոյց կու տայ այս վարժարանը, իր 21 Մարտ 1902 տեղեկագրին մէջ։ Ասոր համար Թերեւս 1901ին Եղիշէ քհն. Խաչատուրեանի պատրաստած վիճակացոյցին մէջ չէ նշանակուած, ինչպէս նաեւ չէ յիշուած Կեդրոնական Ուսումնական Խորհուրդի վիճակացոյցին մէջ։ Խաչատուր վրդ. Տէր Ղազարեան իր 21 Մարտ 1902 Թուականով պատրիարքարան յղած ընդարձակ տեղեկագրին մէջ, այս վարժարանը կը յիշատակէ եւ կ'ըսէ Թէ ունէր 150 աշակերտուհի եւ 2 վարժուհի։*

*Ուրեմն Ա. Ե. Թորգոմեանի 1893ին յիշած այս վարժարանը (տես Ա-* րեւելք, *Թ.* 2927) *շարունակուած է մինչեւ վերջը Մայր Վարժարանի հետ։*

## 7. ՍԱՆԴԽՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

*Գայեանեանց մասնաւոր վարժարանին հիմնարկութենէն մէկ տարի ետքը, 1885 Մայիս 15ին, կը բացուի Մալաթիոյ մէջ առաջին աղջիկներու Ազգ. Վարժարանը, Մայր Եկեղեցիին Թաղին մէջ, Յարութիւն վրդ. Առաքելեանի նախաձեռնութեամբ, նոյն Թուականով գրուած Թղթակցութեան մը համաձայն, ուր ըսուած էր Թէ.*

«Մայր Եկեղեցւոյ թաղն այսօր աղջկանց վարժարան մը բացաւ, թէեւ վարժուհի չկայ եւ թերութիւնք անպակաս են, բայց գոնէ գործն սկսած է։ Այս յաջողութիւնը կրնայ վերագրուիլ Արժ. Տ. Յարութիւն վրդ. Առաքելեանի, միաբանին Վարագայ վանուց։ Սա 7—8 ամիսէ հետէ աստ, իւր հայրենիքը գտնելով, կը ջանայ ըստ կարի օգտակար ըլլալ» (*տես* Արեւելք, 1885, *Թ.* 428)։

*Վարժարանը կոչուած է Սանդխտեան։* 1889*ին Պոլսոյ ՀԱՅՐԵՆԻՔԻ մէջ* (1889, *Թ.* 523) *կը յիշուի այս վարժարանը, որ 30 աշակերտուհի միայն ունէր։ Այս դպրոցը ինչպէս կ'երեւի շարունակուած է այլեւս անխափան։*

*Հ. Եփրեմ վրդ. Պօղոսեան այս վարժարանը չփոթելով Գայեանեանի հետ «մասնաւոր» եւ «անհատական» նախաձեռնութեամբ հաստատուած ցոյց կու տայ (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 57, էջ 21)։*

1893*ին այս վարժարանը կը շարունակուէր (Ա. Ե. Թորգոմեան* Արեւելք, 1893, *Թ.* 2927)։

*Բայց 1894ին փակուած է, վասնզի 1894 Նոյեմբեր 11 Թուականով կը տեղեկացնեն պատրիարքարան, որ աղջիկներու վարժարան չունին եւ բանալու համար դպրոցը, կ'ուզեն վարժուհի մը, որուն Թոշակին մէկ ու կէս ոսկին իրենք վճարելու յանձնառու կ'ըլլան։*

Հաւանօրէն պատրիարքարանին օգնութեամբ վերաբացուած է աղջիկներու վարժարանը որ կ՚երեւի փոխադրուած է Ս. Երրորդութիւն եկեղեցիին քով եւ 1900ին ունէր միայն մէկ վարժուհի եւ 80 աշակերտուհի (տես Մկրտիչ Ս. Որբերեան, ԲԻՒՐԱԿՆ, 1900, էջ 85):

8. . . . . . . . .

1888ին Մալաթիոյ ՎԵՐԻ ՍԱՆՏԸՂԵՐ թաղին մէջ կը բացուի նոր դըպրոց մը, որուն ուսուցիչը՝ Եզովբոս, կիրակի օրերը դպրոցին մէջ բանախօսութիւններ կ՚ընէր, մեծերու եւ երիտասարդներու (տես ՊԱՊ ՈՒԽՏԻ 1942, թ. 32–33, էջ 12):

Ոչ դպրոցին անունը յիշուած է եւ ոչ որքան ատեն տեւած ըլլալը:

Հաւանօրէն անհատական վարժարան մըն էր:

## 9. ՀՌԻՓՍԻՄԵԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

Խաչատուր վրդ. Տէր Ղազարեան իր տեղեկագրին մէջ (21 Մարտ 1902) կը յիշատակէ Հռիփսիմեանց վարժարան մը, հիմնուած 1899ին:

Տ. Եղիշէ քհն. Խաչատուրեան 3 Փետրուար 1901ին կազմած իր վիճակացոյցին մէջ, չէ յիշած այս աղջկանց վարժարանը, որ Ուսումնական Խորհուրդի վիճակացոյցին մէջ ալ չէ յիշուած:

Տէր Ղազարեան վրդ.ի տեղեկագրին մէջ Մայր Վարժարանը միայն 205 մանչ տղաքներու սեփական ցոյց տրուած ըլլալով, Հռիփսիմեանցը Մայր Վարժարանի աղջիկներու մասը պէտք է ըլլայ, այս վարժարանը որ 120 աշակերտուհի ունէր, ըստ Ուսումնական Խորհուրդի վիճակացոյցին, ճիշդ ու ճիշդ Տէր Ղազարեան վրդ.ի Հռիփսիմեանց վարժարանի աշակերտուհիներու թիւին համաձայն:

## 10. ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ

Մանկապարտէզներու թրքահայ կեդրոնին եւ կարեւոր գաւառներու մէջ հաստատուելէն բաւական ետք, Մալաթիա ալ ունեցաւ մանկապարտէզ մը 1906ին, Առաջնորդ Գէորգ վրդ. Արսլանեանի եւ Ուսումնական Խորհուրդի ջանքերով:

Առաջին մանկապարտիզպանուհին կ՚ըլլայ Օրիորդ Մարի Քէչիչեան, որ Տապին Գարահիսարէն հրաւիրուած է: Մանկապարտէզի համար շէնք մը կը շինուի կեդրոնական թաղին վարժարանին շրջափակին մէջ, եւ կը բացուի 1906 Նոյեմբերին:

Մալաթիայէն թղթակից մը Կ. Պոլսոյ ՍՈՒՐՀԱՆԴԱԿին մէջ (տես 1906 Դեկտ. 12) կը գրէ թէ, «Այս տարի Մալաթիա կ՚ունենայ իր մանկապարտէզը .... դպրոցական տարեշրջանի սկիզբները արդէն պաշտօնի



Մանկապարտէզի աշակերտութիւնը: Կեդրոնը նստած՝ Գէորգ Վրդ. Արսլանեան, ձախին՝ Կարապետ Քհնյ. Պէննէեան, աջին՝ Սերոբ Քհնյ. Տէլլալեան:

կոչուած էր Շապին Գարահիսարէն Օր. Մարի Քէշիշեան, մեր նոր մանկապարտիզպանուհին, որ իր առաջին քայլերուն մէջ իսկ ցոյց կու տայ իր վրայ հմուտ ու փորձառու դաստիարակուհիի մը պէտք եղած բոլոր յատկութիւնները: Իր թելադրութեանց համաձայն, քաղաքին կեդրոն թաղի վարժարանի շրջափակին մէջ շինուեցաւ շատ յարմար ու գեղեցիկ շէնք մը, ուր ահա 2—3 շաբաթներէ ի վեր, երկու սեռէ հարիւրի չափ պզտիկներ, սկսած են իրենց մանկական խաղերն ու վարժութիւնները»:

*Մանկապարտէզը իր գոյութիւնը պահած է մինչեւ* 1915:

## 11. ԱԶԳԱՅԻՆ ՈՐԲԱՆՈՑ

1895—6*ի ջարդերը, ինչպէս ուրիշ գաւառներու, նոյնպէս Մալաթիոյ մէջ պատճառ եղան որբանոց-կրթարաններու հիմնարկութեան, արտաքին և ներքին աջակցութիւններով եւ ժողովուրդին գերագոյն զոհողութեամբ:*

1897—8*ի ընթացքին Մալաթիոյ շրջանակին մէջ կը հաստատուին երեք որբանոցներ, երեք յարանուանութիւններու վարչութեան տակ: Ազգային Որբանոցը կը գտնուէր պատրիարքարանին պատասխանատու, Հայ Որբախնամ կազմակերպութեան մը հսկողութեան տակ:*

*Սկզբնական օրերուն, կարեւոր դեր կը խաղայ Խարբերդի Ամերիկեան միսիոնարութիւնը, որ որբերու մեծ թիւ մը հաւաքելով, առաջին անհրաժեշտ հոգածութիւնը ցոյց տուած է անոնց:*

*Հայ Որբանոցը բացուած է* 23 *Նոյեմբեր* 1898*ին, Մոսկուայի Որբախնամի նպաստով, նախ քաղաքի մէջ, բայց յաջորդ գարնան տեղափոխուած է Ս. Լուսաւորիչ վանքը* (*տես Օրմանեան* Նպաստից Յանձնաժողով, Հաշուեցուցակ եւ Տեղեկագիր 1897—1908, *էջ* 39):

*Նախապատրաստական ծախուց համար Պոլսոյ Պատրիարքարանէն ղրկուած է* 30 *Լ. Օ. եւ ամսաթոշակ սահմանուած է Լ. Օ.* 15 (*Նոյն էջ* 39):

1899*ին* 40—50 *որբեր կը պատսպարուէին այս հաստատութեան մէջ, մէկ ուսուցիչով* (Բիւզանդիոն 1899, *թ.* 822): *Մալաթիացիք իրենք կը կարէին որբերուն զգեստները:*

*Խարբերդի Ամերիկեան միսիոնարութեան հոգածութեամբ խնամուած* 100*է աւելի հայ որբերը, ինչպէս նաեւ Լատիններու* 24 *եւ Հայ Կաթոլիկներու* 24 *խնամած հայ որբերն ալ աւելցնելով, հայ որբանոցին որբերու թուին վրայ,* 1899*ին Մալաթիոյ մէջ մասնաւորապէս* 200 *որբեր կը հոգացուէին եւ առհասարակ ամէնքն ալ լաւ խնամուած էին* (Բիւզանդիոն, 1899, *թ.* 822):

*Ս. Լուսաւորիչ վանքին որբանոցին մէջ պատսպարուած տղաքը մայրենի լեզուէն զատ կը սորվէին կօշկակարութիւն* (*տես* Արեւելք 1900, *թ.* 4494):

*Արհեստական կրթութեան զարգացման այս ձեռնարկին համար, բացէ նպաստ ալ տրուեցաւ եւ մինչեւ քառամեակին լրումը եւ բան մըն ալ աւելի շարունակուեցաւ, եւ դադրեցաւ* 1903 *Օգոստոսին, իսկ բովանդակ ծախուց*

գումարը եղաւ Լ. Օ. 876 (տես Օրմանեան ՆՊԱՍՏԻՑ ՑԱՆՑՆԱԺՈՂՈՎ եւայլն 1897—1908, էջ 39):

Ծախքերը հոգացող Մոսկուայի Հայ Որբախնամը Պատրիարքարանի միջոցով Մալաթիա ղրկուած գումարներուն մատակարարութիւնը կը կատարէր տեղական հոգաբարձութեան մը միջոցաւ, որուն անդամ էին (տես Ընդ. Օրացոյց, 1900, էջ 350)՝

Տ. Ստեփան քհն. առ. տեղ. նախագահ
Տ. Եղիշէ քհն. Խաչատուրեան փոխ նախագահ
Պետրոս Որբերեան
Յարութիւն Պլըքեան
Փիլիպպոս Վարդանեան
Պօղոս Ուսալեան

1901ին Ս. Լուսաւորչի վանքին որբանոցին տեսուչ էր Կարապետ քհն. Պէննէեան:

1902 Թուականին կը պատսպարուէին 50 որբ, եւ ունէին մէկ ուսուցիչ, մէկ հայրիկ եւ երկու կօշկակար վարպետներ:

Դասացուցակը ցոյց կու տար որ բաւական բարձրացեր էր աշակերտներու միտքին մակարդակը: Արհեստանոցին մէջ մուճակի եւ հողաթափի ամէն տեսակները կը պատրաստուէին և որբերը խաղախորդութիւն ևրոպականը եւ տեղականը միեւնոյն ատեն կ՚ուսանէին (Յ. Յ. Ծըլծըլեան, Արեւելք, 1901, Թ. 4610):

1903ին այս որբանոցը կը փակուի:

## 2

## ՅԱՐԱՆՈՒԱՆԱԿԱՆ ԵՒ ՕՏԱՐ ԿՐԹԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՆԵՐ

### Ա.

### ՀԱՅ ԿԱԹՈԼԻԿ ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐ

Կաթոլիկ քարոզչութենէն եւ հասարակութեան կազմութենէն (1858) ետք, երբ հայադաւանները իրենց վարժարանները հիմնած էին արդէն եւ բաւական ուշադրութիւն դարձուցած էին անոնց վրայ, հայ կաթոլիկներ մինչեւ 1880 գրեթէ դպրոց չունէին: Միայն Թադէոս (Խրիմ Թոթօ) վարժապետ 15—20 տղայոց Ա. Բ. Գ. կը սորվեցնէր, իսկ Անարատ Յղութեան քոյրերը օգտակար կ՚ըլլային (Նոր Մալաթիա, Գ. տարի, Թ. 2, էջ 15):

#### 1. ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

1862ին Ղեւոնդ եպիսկ. Խոսխոռունի (Առաջնորդ 1861—1897) կառոյց երկսեռ վարժարանի շէնքը, եկեղեցիին հետ եւ վարկ տուաւ կրթական գործին:

Հասարակութիւնը իր շնորհիւ ունեցաւ թէ մանչերու եւ թէ աղջիկներու վարժարան եւ իրենց նորընծայ վարդապետներով, յարատեւութեամբ շարունակելով իրենց դպրոցները, հասցուցին օգնական ուսուցիչներ:

Որովհետեւ Խորխոռունի եպիսկ.ի յաջորդը՝ Միքայէլ եպիսկ. Խաչատուրեան (1899–1916) իր ընդհանուր փոխանորդը եւ անոր կրթական ջանքերուն մեծ օգնականը եղած էր եւ իր առաջնորդութեան ընթացքին, մեծ փափաք ունէր դպրոցին վրայ, վարժարանը կոչուեցաւ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ:

Կաթոլիկ հասարակութեան այս դպրոցին առաջին ուսուցիչը եղած է Յակոբ վարժապետ Կոչաեան, որ Կ. Պոլիսէն հրաւիրուած էր: Ան կատարած է նաեւ դպրոցին տեսչութեան պաշտօնը որպէս աշխարհական: Իրեն յաջորդած է Վենետիկի Մխիթարեան Միաբանութենէ Հ. Թադէոս վրդ. Թոմաճան, որ 1903–1906 Մալաթիոյ դպրոցական կեանքին մէջ դեր մը կատարած է, զարկ տալով Խաչատուրեան վարժարանին, ուր ուսուցչութեան պաշտօն վարած է նաեւ Յակոբ վարժապետ Սիսեան 1907–1910 թուականներուն: Նոյն հաստատութեան աղջկանց բաժինը յանձնուած էր Անարատ Յղութեան քոյրերուն, որոնք այս հաստատութեան մէջ ձրիաբար կը դասախօսէին: Այդ դասախօս անձնուէր քոյրերէն կը յիշուին քոյր Անաստասիա Քիւնտիւպէկեան, քոյր Փուլքերիա Զօրաքեան, քոյր Լուիզա Սանիոսեան եւ քոյր Գարբուսուզեան:

Թէոդիկ (Յուշարձան, էջ 93) կը յիշէ նաեւ քոյր Շուշան մը, որ նահատակուած է 1916ի եղեռնին:

1900ին Հայ Կաթողիկէ հասարակութեան երկսեռ վարժարաններէն մանչերու դպրոցը ունէր 110 աշակերտ միակ վարժապետով մը, որուն կ՚օգնէին վարդապետներ (ԲԻՒՐԱԿՆ, 1900, էջ 85): Իսկ 3 Փետրուար 1901ին, Եղիշէ քհն.ի կազմած վիճակացոյցին համաձայն այս վարժարանը կը յաճախէին 50 մանչ եւ 100 աղջիկ, մէկ ուսուցիչով եւ 3 ուսուցչուհիով:

Եկեղեցիին սնտուկը կը վճարէր դպրոցին 100 ղրուշ ամսական եւ աշակերտներու թոշակէն կը գոյանար միայն 20 ղրուշ ամսական:

1901–2ին հոն կը յաճախէին 130 մանչ աշակերտներ (տես Վիճակացոյց Գաւառական Ազգ. Վարժարանաց Թուրքիոյ. Բ. 1903, էջ 23): Բայց Առաջնորդ Խաչատուր վրդ. Տէր Ղազարեանի տեղեկագիրին համաձայն դպրոցը ունէր 120 ուսանող եւ 4 ուսուցիչ: Իսկ աղջիկներու դպրոցը 1900ին ունէր 200 աշակերտներ, որոնց կը դասախօսէին Անարատ Յղութեան երեք քոյրեր (Նոյն): Իսկ 1901ին հոն ուսում կ՚առնէին 250 հայ աղջիկներ (տես Վիճակացոյց Գաւառական Ազգ. Վարժարանաց Բ. 1903, էջ 23) եւ 1902ին 200ի չափ աշակերտուհիներ 4 մայրապետներու ուսուցչութեամբ (Տէր Ղազարեան վարդապետ):

Տղայոց վարժարանին ուսուցիչը կը ստանար 1900ին տարեկան 720 դահեկան, իսկ մայրապետները թոշակաւոր չէին (Նոյն 88):

Մկրտիչ Որբերեան իր Մալաթիա այցելութեան տպաւորութիւններուն մէջ գրած է թէ «Կաթոլիկներու իգական դպրոցին ձեռագործական ճիւղը որ–



Մալաթիոյ Հայ-Կաթոլիկներու դպրոցը եւ եկեղեցին

Մալաթիոյ Հայ-Կաթոլիկներու դպրոցի աշակերտուհիները, նկարուած՝ 1912-ին։

քան գնահատելի, նոյնքան արգահատելի է ուսումնական մասը (ԲԻՒՐԱԿՆ 1900, էջ 86)։ 12 տարի վերջը Պէննէեան Կարապետ քհն. (Ը. 73), որ երեք յարանուանութեանց դպրոցները հաւասար մակարդակի վրայ կը դնէր, աւանդուած ուսմանց տեսակէտով, «ձեռագործի մասին Հայոց դպրոցը մի քիչ ետ կը մնայ կրնանք ըսել» կ'ըսէ, ինչ որ անմեկնելի չէ, քանի որ Անարատ Յղութեան մայրապետները Կ. Պոլսոյ մէջ, նրբահիւս ձեռագործներու պատրաստութեան ընտելացած էին։ Եւ աղջիկներու դպրոցը վստահուած ըլլալով այդ մայրապետներուն, բնական է որ հոն աւելի ուժ տրուած պիտի ըլլար ձեռագործի։

Գալով տղոց դպրոցին, անոր համար ալ Մ. Որբերեան կ'ըսէ թէ, «խեղճութեան վերջին բազբոտին վրայ կը գտնուի» (նոյն)։ Այս վիճակէն ազդուած Բրօֆ. Մ. Որբերեան ցաւ կը յայտնէ ըսելով թէ, «Չեմ գիտեր, կ'ըսէ, Միքայէլ Գերապայծառ ի՞նչպէս կրնայ տանիլ այս անկումին»։ Եւ գիտել կու տայ իրաւամբ թէ Գերապայծառը «Եթէ ուզէ իրեն համար նուիրական ոյժ չի պակսիր զայն բարձրացնելու։ Երբոր փառաւոր շէնքերու, աղբիւրներու եւ պարտէզներու համար հարիւրաւոր լիրաներ կը գտնուին, արդեօք կարելի չէ՞ որ փոխան տարին 750 դահեկանի, 7500 դահեկան ալ կրթական կենսական գործին համար տրամադրելի ըլլայ։ Այս պարագային տակ մարդ կը փորձուի խորհիլ թէ մասնաւոր ատելութի՞ւն մը կայ կրթութեան դէմ եւ բնաւ շունչը հասած չէ՞ Վենետիկի եւ Վիեննայի միաբանութեանց» (ԲԻՒՐԱԿՆ նոյն 86)։

Մալաթիոյ Հայ Կաթոլիկներու կրթական հաստատութեանց յետամնաց վիճակը ուշադրութիւն պէտք է գրաւած ըլլայ Պոլսոյ Հայ Կաթոլիկ կեդրոնին, վասնզի հոն 1892 Մարտին կազմուած Հայ Կաթոլիկ «Հայ Երիտասարդաց Ակումբ»ը, անշուշտ իրեն եղած խնդրանքին վրայ, յանձն առած է Մալաթիոյ Հայ Կաթոլիկ տղոց վարժարանին աշխարհագրութեան գիրքերը հոգալ եւ ուսանողներուն նպաստ մը ընել (տես ՄԷՃՄՈՒԱՅԻ ԱՂԲԱՐ, Թ. 2340, ՀԱ. 1952, էջ 429)։

Միայն կասկածելի է որ երկար տեւած ըլլայ այս նպաստը, վասնզի 1896էն յետոյ, բնաւ չէ յիշուած։

Հայ Կաթոլիկները ինչպէս յիշուեցաւ 1912—13 եւ 1914 թուականներով Հայ Առաքելական եկեղեցիի եւ Հայ Աւետարանական համայնքին հետ համերաշխական ծրագիր մը գործադրած էին Հայ կրթութեան գործը ամուր հիմերու վրայ դնելու համար, երբ 1915ի աղէտը վրայ հասաւ, եւ քանդեց ազգին տունը։

## 2. ՈՐԲԱՆՈՑ

1895ի ջարդերէն վերջ, 1898ին Հայ Կաթոլիկներն ալ ունեցան իրենց յատուկ որբանոց մը, ուր կը հոգային 24 որբեր։

Կարճ ժամանակէ ետքը, այսինքն հազիւ 1—2 տարիէն, այս որբանոցը փակուած է։

## 3. ԼԱՏԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԸ

Լատին այս փոքրիկ հասարակութիւնը, ինչպէս վերը ըսուեցաւ, իր հաստատուելէն (1867) գրեթէ անմիջապէս ետք միջամուխ եղած է կրթական գործին եւ հիմնած է արական եւ իգական առանձին դպրոցներ, որոնք 1895ին Թուրքերու կողմէ այրուելէն ետք, աւելի փառաւորը շինուած են։

Այս վարժարանին առաջին ուսուցիչը եղած է Կիւրինցի Յովհաննէս Աճէմեան[1], օգնական ունենալով Պալճան Եէմէզեանը, իր ծերութեան օրերուն եւ Յակոբ Սահակեանը (Յակոբ Մուրատեան, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Գ. տարի, Թ. 2, էջ 15), որ ծանօթ էր «քօմիսէր Յակոբ էֆէնտի» անունով։ Լատինները քաջալերուելով իրենց գտած յաջողութենէն, նպաստի եւ նիւթական աջակցութեանց շնորհիւ, վարձեցին ուսուցիչներ լաւ վարձատրութեամբ եւ Թէք Չէշմէ Թաղին մէջ Քէչիչեան կալուածին վրայ շինել տուին մեծ սրահ մը, դասարաններով աշակերտներու համար։

Հոն կը տրուէին այն ժամանակին համար շլացուցիչ ներկայացումներ, բանախօսութիւններ եւայլն, որոնք ժողովուրդը ոգեւորելու կը ծառայէին։ Վատիկանին աջակցութեամբ այս դպրոցը կը զարգանար ու կը հասնէր երկրորդական վարժարանի մը մակարդակին։

Իրենց շէնքերը իբրեւ դպրոց լաւագոյններն էին։ Հոն կը դասախօսէին Խարբերդի Ֆրանսական Գոլէճի շրջանաւարտ ուսուցիչներն եւ վարդապետները։ Այս դպրոցին մէջ Ֆրանսերէն լեզուն աւելի լաւ կ'ուսուցուէր։ Հոս կը դասախօսէր Յարութիւն Ճըլճըլեան իբրեւ Թրքերէնի եւ Ֆրանսերէնի ուսուցիչ։ Ճըլճըլեան պետական ԻՏԱՏԻ դպրոցին ալ Ֆրանսերէնի ուսուցիչ էր, Լատին դպրոցը շատ օգտակար եղած է Մալաթիոյ, վասնզի պետական դըպրոցներու մէջ իբր օտար լեզու, Ֆրանսերէնը ընդունուած էր։ Այդ դպրոցի շրջանաւարտները կրնային երեք տարիէն Մամուրէթ իւլ Ազիզի Ֆրանս. Գոլէճը աւարտել եւ մտնել Պէյրութի Ֆրանս. Համալսարանը։

Իրենց արական եւ իգական առանձին դպրոցները 1900ին ունէին 2 ուսուցիչ եւ 3 վարժուհի։

Ուսանողներուն թիւն էր 180 մանչ եւ 140 աղջիկ, իսկ 5 ուսուցիչներուն տարեկան թոշակն էր 7300 ղրուշ, իսկ 3 Փետրուար 1901ի վիճակացոյցին համաձայն, այս վարժարանը կը յաճախէին 100 մանչ եւ 80 աղջիկ աշակերտ, երկու այր եւ երկու կին ուսուցիչով։ Իսկ Ուսումնական Խորհուրդի վիճակացոյցին համաձայն 150 մանչ եւ 150 աղջիկ աշակերտներ ունէին (Վիճակացոյց Գաւառ. Ազգ. Վարժ. Բ. 1903, էջ 23)։

Մալաթիոյ ամենէն լաւ վճարուած ուսուցիչները այս դպրոցին մէջ էին (ԲԻՒՐԱԿՆ. 1900, էջ 85—86)։

Մալաթիոյ Լատիններու դպրոցը իբր ուսուցիչ պաշտօնավարած է Եղեկիէլ վարժապետ Շիրոցի, որ իր ուսումը առած էր Պոլսոյ Կեդրոնական

(1) Ժողովուրդը կը ճանչնար զայն «Կիւրինցի Խոճա»։

վարժարանի մէջ, լաւ Թուարան, աստղագէտ եւ Թրքագէտ էր (ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ Դ. տարի, Թ. 2, էջ 10)։

### 4. ԼԱՏԻՆ ՈՐԲԱՆՈՑ

1900ին Մալաթիոյ Լատինաց Առաջնորդ Հայր Սելիմդին, իր խնամքին տակ առած էր 26—28 երկսեռ հայ որբեր։ Անոնցմէ մանչերուն ուսում, իսկ աղջիկներուն՝ ուսում եւ ձեռագործ աւանդել կու տար (ԱՐԵՒԵԼԵԱՆ ՄԱՄՈՒԼ, 1900, էջ 276—7)։ 1901—2ին այս որբանոցին մէջ կը պատսպարուէին 15 մանչ եւ 10 աղջիկ հայ որբեր (Վիճակացոյց Գաւառ. Ազգ. Վարժարանաց Բ., էջ 23)։

## Բ.

## ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐ

### 1. ՀԱՄԱՅՆՔԱՅԻՆ ԴՊՐՈՑՆԵՐ

Մալաթիոյ Բողոքականները, նոյնիսկ իրենց կազմակերպութեան առաջին տարիներուն, ունեցած են իրենց առանձին սեփական դպրոցը։ Այսպէս 1866ին Մալաթիոյ մէջ Հայ Աւետարանական եկեղեցիին հետ նոյն ատեն կը հաստատուէր երկսեռ վարժարան մը։ (Արտաւազդ Արքեպ. ՅՈՒՑԱԿ ՀԱՅԵՐԷՆ ՁԵՌԱԳՐԱՑ ՀԱԼԷՊԻ. Բ. հատոր, էջ 97), որ ցոյց կու տայ Թէ Մարտիրոս Իգնատիոսեան 1867 Դեկտեմբերին հոն կը պաշտօնավարէր իբրեւ ուսուցիչ եւ տարի մը վերջ (1868 Դեկտ.) կը հեռանար։ Ուրեմն Մալաթիոյ Հայ Աւետարանականները 1860ական Թուականներէն սկսեալ ունեցած են իրենց դպրոցները։

Արդարեւ, Բողոքականները եւ անոնց օժանդակ Ամերիկացի միսիոնարները, հիմնաւորելու համար իրենց գործը, Խարաչայի Թաղին մէջ ընդարձակ հողի մը վրայ կանոնաւոր եւ երկյարկանի շէնք մը կառուցած էին, իբրեւ ժողովարան, գմբէԹաւոր եւ բակին հարաւային կողմը երկյարկանի հսկայ շէնք մը, որուն վերի յարկը կը ծառայէր իբր վարժարան—դասարան գրասեղաններով եւ ուսուցչանոցով, վարի յարկի մէկ մասը կրթարան, միւս մասը մանկարան։

Միսիոնարներու շէնքին տակը կար բաւականաչափ խոշոր սրահ մը, որ կը ծառայէր իբր աղջիկներու կրթարան եւ վարժարան։

Եփրատ Գոլէճը, որ իր ձրիավարժ ուսանողներէն խոստում առած էր, որ իրենց ուսումը աւարտելէ ետք, շրջակայ վայրերու մէջ պաշտօն պիտի ստանձնէին եւ լոյս ու գիտութիւն պիտի տարածէին, առաջին շրջանաւարտներէն Պէօշկէօթիւրեան Կարապետը Մալաթիոյ Բողոքականներու վարժարանին ուսուցիչ ղրկեցին 1880ին։ Հոն կը պաշտօնավարէր նաեւ Եփրատ Գոլէճի ուսուցիչներէն բանաստեղծ Աշոտ։

Կրթարանի ուսուցիչն էր Աբրահամ Եուսուֆեան։ Աչոտ եւ Ա. Եուսուֆեան Այնթապի Ամերիկեան Գոլէճի շրջանաւարտ էին։

Աչոտ բաւական ատեն Մալաթիա մնալէ վերջ, Եփրատ Գոլէճի նախապատրաստական ճիւղի մէջ ուսուցիչ եղաւ։

Աբրահամ Եուսուֆեան ալ վերջը Այնթապ գացած է եւ նախ հոն եւ ապա Ամերիկայի մէջ բժշկութեան հետեւած է։

Կարապետ Պէօչկէօթիւրեան բողոքականներու դպրոցին Ուսուցչապետը եղաւ եւ իբր լաւագոյն բեմբասաց, կը ղեկավարէր նաեւ բողոքական եկեղեցին։

Իբր տնօրէն, դպրոցը չատ լաւ կը կառավարէր։ Այդ դպրոցը ունէր իր դրասեղանները եւ շինուած էր նկատի ունենալով առողջապահիկ պայմանները։

Այս վարժարանի մէջ կային Թուրք եւ քիւրտ տարէց ուսանողներ, որոնք կու գային սորվելու համար իրենց լեզուն եւ Թուաբանութիւն։

Այս վարժարանին մէջ ուսում առած են Ասլանեան Յարութիւն, Պըլըքեան Գէորգ, Գրիգոր քհն. Թաչճեան, Յովհաննէս Որբերեան, Գ. Արփաճեան, Մարտիրոս Քէչիչեան եւն, որոնք մեծ օգտակարութիւն ունեցած են Մալաթիոյ Հայերուն։

Այս վարժարանը գրեթէ երկրորդական աստիճան ունէր։ Հոն կը դասախօսէր նաեւ անգլերէն։

Պէօչկէօթիւրեանի յաջորդած է 1883ին Կարապետ Մանուչեան, որու օգնականներն էին Աստուր Եղօեան (յետոյ պատուելի) եւ Վարդան Ամիրխանեան (նոյնպէս յետոյ պատուելի)։

Մանկարանին բաժինը յանձնուած էր Պէօչկէօթիւրեանի աշակերտներէն մանկավարժ Մկրտիչ Որբերեանի, որ վերջը եղած է Բրօֆէսէօր Եփրատ Գոլէճի։

Պէօչկէօթիւրեանի մէկ ուրիչ աշակերտը, Գրիգոր Թաչճեան (ետքը քահանայ) նոյնպէս կրթարանի օգնական ուսուցիչ եղած է։

Նաեւ պաշտօնավարած է Ակնցի Կ. Մանաւեան, որ վերջը եղաւ պատուելի եւ Ամերիկա գնաց։

Այս խումբը կը պաշտօնավարէր 1880ական Թուականներուն, երբ բողոքական դպրոցը իր երկսեռ բաժիններով բարձրագոյն նախակրթարանի մակարդակի վրայ կը գտնուէր։

Կ. Մանաւեանի յաջորդեցին Միքայէլ Փիլիպպոսեան (յետոյ պատուելի) եւ ապա Գարեգին Կիրակոսեան որ Մալաթիոյ ծերունի պատուելի Մարտիրոս Կիրակոսեանի որդին էր եւ շրջանաւարտ Եփրատ Գոլէճէն։ Մօտաւորապէս 5—6 տարի տնօրէն եղաւ բողոքականներու վարժարանին, Եփրատ Գոլէճէն եկող օգնական ուսուցիչներով։

Տեղացի օգնական ուսուցիչներ էին Մկրտիչ Որբերեան, Գրիգոր Թաչճեան, Գէորգ Պըլքեան։

Ասոնք ամէնն ալ 1895ի կոտորածէն առաջ են եւ աւելի քան գոհացում կու տային ժամանակի պահանջին:

Մինչեւ այս թուականը պէտք է ըսել թէ իգական սեռի դաստիարակութիւնը գրեթէ հաւասար չափով առաջ կը տարուէր, մասնաւորապէս Տիկ. Մարինէ Որբերեանի նախապատրաստական աշխատանքներն էին որ պատրաստեցին աղջիկներու կրթութեան համար հողը, որ ետքը աւելի մշակուելով, Պոլէճական ուսուցիչներու կողմէ, Մալաթիոյ հայութեան այնքան օգտակար եղաւ զարգացած կիներու խումբ մը պատրաստելով:

Բողոքական համայնքը Մալաթիոյ մէջ, շնորհիւ այն գիտակցութեան, որ կը ստանար իր վարժարանէն, այնքան զօրացաւ 1880ական թուականներուն վերջերը եւ 1890ական թուականներուն սկիզբը, որ նման Խարբերդի շրջանակին պատկանող Չնքուշի, Խուլլուի, Խուլագիւղի, Արաբկիրի եւ Ակնայ բողոքական եկեղեցիներուն, այլեւս Պորտէն օգնութիւն չէին ստանար:

Սակայն 1895ի սոսկալի պատահարը, որ որքան Հայոց, նոյնքան Թուրքերուն սուղի նստած էր, քայքայեց քաղաքին տնտեսական կեանքը եւ Հայ Բողոքականները մնացին կրկին կարօտ Պորտին աջակցութեան: Այնպէս որ Խարբերդի միսիոնարները ստանձնեցին Մալաթիոյ Հայ Աւետարանական դպրոցին ծախքերու կէսը:

Մկրտիչ Ս. Որբերեան, որ 1895ի ջարդէն միայն հինգ տարի ետքը, 1900ին այցելած է Մալաթիա, կը գրէ թէ. «Բողոքականները կը կառավարեն առանձին արական եւ իգական երկու վարժարաններ, իւրաքանչիւրին մէջ երեքական ուսուցիչ եւ ուսուցչուհի կան: 204 տղայ եւ 170 աղջիկ կը յաճախեն[1]: Վարժապետներուն կը վճարուի տարեկան 4560 դրուշ եւ վարժուհիներուն 1920 դրուշ, համագումար 6480 դրուշ» (ԲԻՒՐԱԿՆ, 1900, էջ 85):

Նոյն թուականի Հայ Առաքելականներու դպրոցը ունէր 8 ուսուցիչ եւ մէկ վարժուհի, եւ թիւով աւելի աշակերտ, սակայն երկսեռ ուսուցչութեան կը վճարուէր 7680 դրուշ, որով կը հաստատուի թէ ուսուցիչները աւելի լաւ կը վճարուէին բողոքականաց վարժարանին մէջ:

Թերեւս այս իսկ պատճառով, հակառակ անոր որ ըստ Մ. Ս. Որբերեանի (ԲԻՒՐԱԿՆ, 1900, էջ 86) «Ընդհանուր առմամբ կրթական հաստատութիւնները անգոհացուցիչ վիճակի մը մէջ կը գտնուէին, սակայն քաղդատաբար, առաջին բարեձիշը բողոքականներուն եւ երկրորդը Լատիններուն վարժարանները կ'առնեն»:

Յ. Ն. Շէքէրճեան ալ կը հաստատէ թէ Հայ Աւետարանական երկսեռ դպրոցները ունեցած են փայլուն շրջաններ, 1895էն առաջ:

Իրենց դպրոցը թրքական վանտալականութեան զոհ երթալէն վերջ, 1900ին Մ. Որբերեան լաւ կը խօսի անոնց վրայ, մինչ Կարապետ քհն. Պէն-

(1) Այս թիւերը կասկածելի կը թուին, վասնզի 1901–2 դպրոցական տարւոյն մէջ Բողոքականներու վարժարանը կը յաճախէին 160 մանչ եւ 40 աղջիկ աշակերտներ (Վիճակացոյց Գաւառական Ազգ. Վարժարանաց Բ., էջ 23):

*նէեան (Ընդ. էջ 72), ինչպէս յիշեցի 1912ին «քանի մը ներքնայարկ ծածկեր» լեցուած ցոյց կու տայ երկսեռ ուսանողները, որոնք* «բացի կրօնական դասերէն, յարանուանութեանց դպրոցներու մէջ ալ կ'ուսուցուին եւ կ'աւանդուին գրեթէ միեւնոյն դասերը ու լեզուները» (Ը. էջ 74)։

*Ինչպէս կը տեսնուի, շատ փայլուն վիճակ մը չունէր այս վարժարանը 1901ին։*

*Ունէր 100 մանչ եւ 40 աղջիկ աշակերտներ, իսկ 3 Փետրուար 1901ի Եղիշէ քհն. Խաչատուրեանի վիճակացոյցին մէջ, 100 մանչ եւ 100 աղջիկ աշակերտներ, եւ ունէր 2 ուսուցիչ եւ 2 ուսուցչուհի։ Աշակերտներէն ամսական 120 ղրուշ թոշակ կը գանձէին։ (Այս գումարը ճիշդ չ'երեւիր)։*

*31 Մարտ 1902ի Խաչատուր վրդ.ի տեղեկագրին համաձայն, վարժարանը ունէր 100 աշակերտ եւ 120 աշակերտուհի։*

*1903ին Բողոքականներու դպրոցին տեսուչն էր Մանասէ Անտոնեան, Այնթապցի, շրջանաւարտ Կեդրոնական Թուրքիոյ գոլէճէն։*

*Իսկ աւագ ուսուցիչն էր Գէորգ Սէֆէրեան, Խարբերդի Եփրատ գոլէճէն (ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Դ. տարի, Թ. 2, էջ 7)։*

*Կարապետ քհն. Պէննէեան իր գործին մէջ կը վկայէ թէ Բողոքականներն ալ 1906էն ետք, այսինքն Հայոց Առաջնորդարանին նախաձեռնութեամբ մանկապարտէզ մը բացուելէն ետք, բացին մանկապարտէզ մը, բայց հազիւ երկու տարի տեւեց եւ փակուեցաւ (Ը. էջ 74)։*

*Հայ Աւետարանականները աղջիկներու դաստիարակութեան տեսակէտով շատ կարեւոր դեր կատարած են, որքան Բողոքականներու, նոյնքան Հայ Առաքելական եկեղեցիին զաւակներուն համար։*

*Երկար տարիներ Տիկ. Վարդեր Գարամղտեսեան (քոյրը Պատ. Կիրակոս Խաչատուրեանի), շրջիկ դասատու եղած է անգրագէտ կիներու, կարդալ սորվեցնելու համար։*

*Իսկ Հայ Աւետարանականներու աղջիկներու վարժարանին մէջ պաշտօնավարած են իբր ուսուցչուհի, Բալուցի Տիկին Էլմաս Ֆալճեան, Եփրատ Գոլէճէն շրջանաւարտ, Խարբերդցի, Եղսա Սարաֆեան եւ Եւա Զթիկեան, Մալաթիացի Վարդեր Թայեան։*

*Հաճընցի Մարիամ Գըրքեաշարեան, Այնթապ Գոլէճէն շրջանաւարտած, Խարբերդցի Թուրվանտա Կիւլէսէրեան եւ Թէրվիզ (Պերճուհի) Թաշճեան Եփրատ Գոլէճէն եւ Տիարպէքիրցի Հրանուշ Շիխայեան, եւ Մալաթիացի Պայծառ Պաղտոյեան (յետոյ Տիկին Ստեփանեան) երկուքն ալ Եփրատ Գոլէճէն։*

*Ինչպէս կը տեսնուի Հայ Աւետարանականներու երկսեռ վարժարանին մէջ պաշտօնավարած են բաւական թիւով երկու սեռէ ուսուցիչներ, մեծ մասամբ Եփրատ Գոլէճին մէջ ուսում առած։*

*Հետեւաբար Հայ Աւետարանականներու վարժարանը քաղաքին մտաւորական մակարդակին բարձրացման մէջ մեծ դեր կատարած է։*

***

1915ին Համաշխարհային առաջին պատերազմին, մանչերու եւ աղջիկներու վարժարանները փակուեցան:

Թուրք կառավարութիւնը Հայ Բողոքականներու Նորակառոյց եկեղեցին գործածեց իբրեւ ալիւրի մթերանոց ու մանչերու դպրոցը վերածեց Հացի փուռի:

1918ին երբ պատերազմը վերջացաւ, Տիկին Հոփսիմէ Թերխանեան (պատ. Մարտիրոս Կիրակոսեանի աղջիկը) եւ Տիկ. Վարդեր Մարտիկեան, կը դիմեն կառավարիչին, որպէսզի եկեղեցիին շէնքը ժողովուրդին դարձուի, իբր դպրոց գործածելու համար:

Կառավարիչը կը համաձայնի եւ եկեղեցին կը յանձնուի վերապրող բողոքական համայնքին:

Դպրոցը կը բացուի ուսուցչութեամբ Եսթեր Նաճարեանի (այժմ հաստատուած Նոր Մալաթիա Խ. Հայաստան) և Մարիցա Խանձեանի (այժմ Նէյվըրիւ Մ. Նահանգներ Ամերիկա):

1918ին երբ Տօքթ. Պարթըն Մալաթիա կու գայ եւ դպրոցը վերաբացուած կը տեսնէ, մեծապէս կը զարմանայ եւ կը հրճուի, եւ նիւթապէս կը նպաստէ դպրոցին:

Այս դպրոցը կը յաճախէին առանց յարանուանական խտրութեան բոլոր վերապրող Մալաթիացիներու տղաքը:

Քէմալական շարժումը զօրանալով, քաղաքական վատթար պայմաններ կը ստեղծուի եւ 1922ին դպրոցը կը փակուի եւ Նիւր Իսթ Րիլիֆ իր որբերը Հալէպ փոխադրելով, Մալաթիոյ մէջ իր գործունէութիւնը կը դադրեցնէ:

## 2. ԱՄԵՐԻԿԵԱՆ ՈՐԲԱՆՈՑ

1895ի աղէտէն ետք, ինչպէս յիշուեցաւ, որբախնամի կազմակերպութեան սկզբնական օրերուն կարեւոր ծառայութիւն մատուցին Խարբերդի Ամերիկացի միսիոնարները, որոնք Հայ որբերը հաւաքած եւ առաջին անհրաժեշտ հոգածութիւնը ցոյց տուած են:

1898ին անոնք քաղաքին մէջ կը հաստատեն երկու որբանոցներ, մին մանչերու եւ միւսը աղջիկներու համար եւ անոնց հսկողութիւնը կը յանձնեն Մալաթիոյ բողոքականներուն: Հաւանաբար 100−120 որբեր կը խնամուէին այդ երկու որբանոցներուն մէջ: Այս որբանոցներուն համար Ամերիկացիք կազմած էին Հոգաբարձութիւն մը, երկու Հայ Բողոքական եւ մէկ Առաքելական եկեղեցւոյ անդամ անհատներէ կազմուած:

1900ին, ինչպէս նաեւ 1901−2ին, երկու որբանոցներէն ամէն մէկուն մէջ պատսպարուած էին 60ական որբեր:

Ասոնց ծախքը կը հայթայթուէր մասամբ Ամերիկայէն եկած նպաս-

*տով, մասամբ ալ հայ ժողովուրդի եւ բարերարներու ընծեռած նուէրներով։*

*Մկրտիչ Ս. Որբերեան կը գրէր թէ*, «ամէն ջանք ի գործ կը դրուի որբերու հոգածութիւնն ու ապագան ապահովելու համար» (*ԲԻՒՐԱԿՆ*, 1900, *էջ* 118)։

*Մանչերը մինչեւ կէսօր ուսում կ՚առնէին, իսկ կէսօրէն վերջ արհեստի կը հետեւէին։ Մասնաւոր հոգ կը տարուէր աղջիկներու, որոնք գրել-կարդալէ զատ կը սորվէին նաեւ մանել, հիւսել, ձեռագործ եւ ղորղագործութիւն* (*ԲԻՒՐԱԿՆ*, *նոյն եւ ԱՐԵՒԵԼԵԱՆ ՄԱՄՈՒԼ*, 1900, *էջ* 726)։

## 3. ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՈՐԲԱՆՈՑ

*Երբ գերման միսիոնարներ մտան Թուրքիա եւ գործել սկսան, Մալաթիա ալ եկան։ Նախ հանրածանօթ պաշտօնեաներու տան մէջ, ապա իրենց սեփական ամէն յարմարութեամբ կառուցած շէնքին մէջ (շինուած Թրքական զօրանոցին քովը) որբանոց մը հաստատեցին։ Եղիշէ քհն. Խաչատուրեանի* 3 *Փետրուար* 1901*ի վկայագրին համաձայն, հոն կը պատսպարուէին* 50 *մանչ եւ* 50 *աղջիկ որբեր։*

*Այս Գերման որբանոցը շարունակուեցաւ մինչեւ* 1917*ի Մեծ Եղեռնը։*

***

*ՊԱՊ ՈՒԽՏԻ* (*Թ.* 59, *էջ* 4) *կը գրէ թէ* «Գերմանացի միսիոնարները համատարած սպանդի նախօրեակին, իրենց ձեռքերով թուրք կառավարութեան արիւնոտ երախին մէջ նետեցին տարիներով անվերապահ նուիրումով եւ հաւատարմօրէն իրենց ծառայող հայ պաշտօնեաները, ապա, երբ ջախջախուեցան Գերմանական բանակները, գերման միսիոնարները լուծարքի ենթարկեցին իրենց գործը եւ 1917ին ամբողջովին ցրուեցին հայ որբերը եւ մեկնեցան Մալաթիայէն։

1917էն վերջ թրքական բանակներու խորտակումով, աստիճանաբար մեղմացան հալածանքները, դարձեալ վերսկսաւ որբանոցներու գործը, տղաքները կեդրոնացուեցան Ապունաներու լքուած դպրոցին եւ եկեղեցիին մէջ, իսկ աղջիկները պաշտօնեաներու եւ մաս մըն ալ Գաբրիէլ էֆ. Գաբրիէլեանի տան մէջ։

Որբախնամի գործին մէջ աչքառու եւ փրկարար դեր կատարեց Կարապետ Տօնապետեան, իրեն գործակից ունենալով Պետրոս Արփանեանը, Մոիզ Նազմանեանը եւ Մանուէլ Տ. Վահրամեանը։

Աղջիկ որբերուն մայրիկն էր Տիկին Եղիսաբէթ Մարտիկեանը, որ իր ուժերուն ներած չափով օգտակար եղաւ ընդհանուր գործին։ 1917էն 1922 Մալաթիոյ մէջ գոյութիւն ունեցող որբանոցներու ծախսերը կը հոգացուէին նախ Պոլսոյ Պատրիարքարանի նպաստներով, ապա՝ Ամերիկեան Րիլիֆին միջոցով։

Պէտք է յիշել որ Ամերիկայէն «Կրթասիրաց Ընկերութիւն»ը այդ նպատակին համար կարեւոր գումար մը փութացուցած էր Պոլսոյ Պատրիարքարանին, Մալաթիա փոխանցուելու համար:

Վերոյիշեալ որբանոցներուն մէջ կային Մալաթիացի եւ ոչ-Մալաթիացի որբեր, որոնք կը խնամուէին հաւասարապէս: 1922էն յետոյ որբանոցները լուծարքի ենթարկուեցան եւ որբերը ցրուեցան, որոնցմէ շատեր մեկնեցան դէպի Հալէպ ու Կիլիկիա, իսկ ոմանք ալ տեղաւորուեցան տեղւոյն վրայ հայ կամ թուրք տուներու մէջ»:

## Ե.

## ԿՐԹԱԿԱՆ ՄՇԱԿՆԵՐ

*Ինչպէս տեսնուեցաւ Մալաթիոյ հայ բնակչութիւնը բաւական ջանադիր եղած է իր դպրոցներու կրթական վիճակը բարձրացնելու եւ ժողովուրդին մտաւորական զարգացման նպաստելու, միտքերու լուսաւորութեամբ:*

*Այս գործին գլխաւոր դերակատարները եղած են հոն պաշտօնավարող տեղացի եւ դուրսէն եկող ուսուցիչները, որոնց կեանքի դժնդակ պայմանները ծանօթ են յաճախ, վասնզի անոնք աշխատած են ոչինչ վարձատրութեամբ մը եւ Թաղականներու ու հոգաբարձուներու ամբարտաւանութիւններուն հանդուրժելով:*

*Առանց անոնց այս մարտիրոսական զոհողութեան չենք գիտեր թէ ինչ պիտի ըլլար հայ ժողովուրդին վիճակը մտաւոր զարգացման տեսակէտով, ոչ միայն Մալաթիոյ, այլեւ ի սփիւռս աշխարհի:*

*Իրապէս անոնք գաղափարականի մը ծառայած են, զոհաբերութեամբ եւ այսպէս կերտած են Հայ ազգային վերածնունդը: Հաւանական է որ այս ուղղութեամբ տարուած աշխատութիւններով անոնք աւելի արդիւնաւոր ծառայութիւններ պիտի մատուցանէին այդ ազգին, որ մղուած անհեռատես առաջնորդներէն, մտաւ արիւնալի արկածախնդրութիւններու ճամբուն մէջ եւ իսկական նահատակութեան մը մատնուեցաւ ապարդիւն կերպով թափելով իր արիւնը:*

*ԺԸ. դարուն իր լեզուն աղճատուած եւ տեղ տեղ նոյնիսկ կորսուած, իր բարքերը խաթարուած, ետ մնացած, զգացումները թմրած զանգուածի մը վերածուած էր Հայ ազգը: ԺԹ. դարուն ամբողջ տեւողութեան մեր վարժապետներն էին որ ազգը սթափեցուցին իր դարաւոր թմրութենէն եւ գրեթէ նոր ազգ մը կերտեցին:*

*Հետեւաբար դէթ երախտամոռաց չըլլալու եւ յարգանք ընծայելու համար անոնց յիշատակին, որոնք սերունդներ հասցուցին եւ նպաստեցին ազգին մտաւոր զարգացման, ինչպէս նաեւ անոր տնտեսական բարօրութեան եւ յառաջդիմութեան, հարկ է զանոնք ներկայացնել աւելի լիակատար կերպով բայց դժբախտաբար իմ տեղեկութիւններս հեռու են ամբողջական ըլլալէ,*

ուստի կը գոհանամ եղածով, եւ կը ջանամ ներկայացնել Մալաթիոյ Հայ կրթական մշակները, այբուբենական դասաւորութեամբ։ Շատ կը ցաւիմ որ աւելի քան քառասուն ուսուցիչներուն եւ ուսուցչուհիներու մասին չեմ կըրցած կենսագրական տեղեկութիւններ ունենալ։



Մալաթիոյ Հայ Առաքելականներու Ս. Երրորդութիւն Եկեղեցին

## ԱԼԱՃԱՆԵԱՆ ՅԱԿՈԲ (Մալաթիացի)

*Ծնած է 1890ին։ Նախակրթութիւնը առած է Սահակեան Մայր վարժարանին մէջ։ Իր բացառիկ ուշիմութեան համար, Առաջնորդարանը 1904ին ղայն ղրկած է Խարբերդ, ուր մուտքի քննութեամբ կը մտնէ Եփրատ Գոլէճի «Ֆրէշմըն» դասարանը։ 1908ին կ'աւարտէ Գոլէճը եւ կը դառնայ Մալաթիա, ուր 1908ին ուսուցիչ կ'ըլլայ Սահակեան վարժարանի մէջ։ Իրեն պաշտօնակից եղած են Գաբրիէլ Անտուրլեան, Գրիգոր Արրաճեան, Գրիգոր Արքայեան, Փօլոս Փօլոսեան, Տոնոսխոս Կեօպրեան, Մուշեղ Շիշմանեան, Սարգիս Շիշմանեան (Ատըեամանցի)։ 1911ին Տիարպէքիրի Ազգ. Վարժարանի տնօրէնութեան կը հրաւիրուի, սակայն ինքը Կ. Պոլիս կ'երթայ եւ կը մտնէ Համբօղոսս չինութեանց յատուկ օղնական երկրաչափներու վարժարանը։ 1913ին կ'աւարտէ վարժարանը եւ Պաղտատ կը ղրկուի իբր կառավարական պաշտօնեայ։ Մինչեւ հիմա հոն է։*



Յակոբ Ալաճանեան

## ԱԼԹՈՒՆԵԱՆ ՄԱՆԱՍԷ (Այնթապցի)

*Շրջանաւարտ Այնթապ Գոլէճէն։ Ուսուցիչ Հայ Բողոքական վարժարանի։ 1903ին տնօրէն Բողոքական վարժարանի։*

## ԱԼԵՔՍԱՆԵԱՆ ԳԵՂԱՄ (Մալաթիացի)

*1906ին կը մտնէ Եփրատ Գոլէճ եւ 1916ին շրջանաւարտ կ'ըլլայ Քէնտէրեան Գէորգի եւ Քէփէնէկեան Մանուէլի հետ, որոնց անբաժան ընկերն էր։ Դարձին Մալաթիա իր միւս ընկերներուն հետ ուսուցիչ կ'ըլլայ եւ անոնց հետ նահատակ 1915ին (ՊԱՊ ՈՒԽՏԻ Դ. տարի Թ., 1, էջ 16)։*

## ԱՀԱՐՈՆԵԱՆ ՕՐ. ԻՍԿՈՒՀԻ

1911ին շրջանաւարտ Եփրատ Գոլէճէն : 1915ին Նահատակուած :

## ԱՃԷՄԵԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ (Կիւրինցի)

Ժողովուրդը զինքը կը կոչէր Կիւրինցի խօճա : 1867ին բացուած Լատինաց վարժարանին առաջին ուսուցիչը եղած է : Օգնական ունենալով Պալճան Եէմէզեանը եւ Յակոբ Սահակեանը : Աճէմեան հասցուցած է թրքագէտ եւ հայագէտ աշակերտներ, ինչպէս Յակոբ Ժարժաթեան, Ծրճրեան եղբարք եւ այլք : Իր տնօրէնութեան առեն դպրոցը ունէր 200է աւելի աշակերտ :

## ՎԵՐ. ԱՄԻՐԽԱՆԵԱՆ ՎԱՐԴԱՆ

Ծնած է 11 Փետրուար 1870 : Ուսանող Եփրատ Գոլէճի ուրկէ շրջանաւարտ եղած է 1891ին :

Յաճախած է նաեւ Մարզուի Աստուածաբանական Ճեմարանը եւ վկայուած 1902ին : 1903ին ձեռնադրուած է Երէց Խարբերդի մէջ եւ իբր հովիւ պաշտօնավարած է 1903էն մինչեւ 1910 : Յետոյ այցելու ուսուցիչ եղած է Եփրատ Գոլէճի մէջ եւ հովիւ՝ Խարբերդի վերի թաղի եկեղեցին մինչեւ 1922, իր Ամերիկա գաղթելը : 1924ին Harfert Seminary (Post graduate) :

Առեն մը Վէսթ Հօպօքընի Հայ Աւետարանականներու երիցական եկեղեցիին հովիւ կ'ըլլայ եւ ետքը՝ 1925էն 1942, 17 տարի, Ֆրէզնոյի հայ բողոքական երիցական եկեղեցիին : Նոյն պաշտօնով 1942ին կը փոխադրուի Սան Ֆրանսիսքոյ :

Վեթերան անդամ Հ. Բ. Ը. Միութեան եւ ցկեանս անդամ Ամերիկեան Կարմիր խաչին եւ Ամերիկեան Bible Societyի նաեւ Religions Leaders of America–ի մէջ (1941) յիշուած չորս Հայերէն մէկը :

Ցկեանս անդամ Y. M. C. A.ի : Անտիպ գրութիւններ ունի : 50 տարուան բեղմնաւոր գործունէութենէ ետք, քաշուեցաւ գործէ եւ վախճանեցաւ ....ին :

## ԱՆՋՐԴԵՑԻ ԿԱՐԱՊԵՏ ԵՒ ՊԵՏՐՈՍ ԵՂԲԱՅՐՆԵՐ

1883ին Արաբկիրէն վարժապետ եկած են Արամեան Վարժարանին (Ս. Երրորդութիւն) համար : 1885ին մեկնած են :

## ԱՆՋՐԴԵՑԻ ԿԱՐԱՊԵՏ ԵՒ ՊԵՏՐՈՍ ԵՂԲԱՅՐՆԵՐ

1894ին ուսուցիչ ի Մալաթիա : Եփրատ Գոլէճէն շրջանաւարտ : Նահատակուած 1895ին :

## ԱՆՍՈՒՐԼԵԱՆ ԳԱԲՐԻԷԼ (Մալաթիացի)

*Նախնական ուսումը առած է իր ծննդավայրին մէջ։ Լատիններու վարժարանը, իսկ երկրորդական ուսումը՝ Սանասարեանի մէջ, որուն խնամակալութիւնը յանձնառու եղած էր ամէն տարի երեք Մալաթիացի ուսանող առնել իր ձրիավարժ։ Գաբրիէլ Անսուրեան իր յաջող աշակերտ, Մանուէլ Միրաքեանի եւ Սարգիս Խաչատուրեանի հետ կը դրկուի Սանասարեան, որուն շրջանը աւարտելով 1905ին, Կարինէն կու գայ Մալաթիա եւ Սահակեան վարժարանի մէջ ուսուցչութիւն կ՚ընէ, դասախօսելով քիմիաբանութիւն, բուսաբանութիւն, ուսողութիւն եւ տնտեսագիտութիւն։*



**Անսուրեան Գաբրիէլ**

1905էն 1911 *իբր ուսուցիչ պաշտօնավարելէ ետք, կը ստանձնէ Սահակեան վարժարանի տնօրէնութեան։*

*Անկաշառ դաստիարակ, արի, անվախ եւ տաղանդաւոր։ Շատ յարգուած եւ սիրուած ուսուցիչ* (*Կ. Գ. Նաճարեան*, *ՊԱՊ ՈՒԽՏԻ Ա. տարի, Թ.* 3, *էջ* 7–10)։

*Պետրոս Զօպեան, հանգուցեալ Գաբրիէլ Անսուրեանի աշակերտներէն, կը գրէ հետեւեալ տողերը.* «Առանց չափազանցած ըլլալու երկիւղին կարելի է ըսել թէ Մալաթիոյ ոեւէ մէկ վարժարանին մէջ պաշտօնավարող կրթական մշակ մը և դաստիարակ մը չէ եղած, որ ըլլար այնքան նուիրուած, այնքան գոհաբերող, այնքան իր աշակերտներու հանդէպ եղբայրական սէր եւ գուրգուրանք տածող, համակուած ազգասիրական ոգիով, որքան եղած է Անսուրեան։

Անսուրեան որքան խիստ, աններող եւ կարգապահութեան բծախնդիր

դպրոցի սեմէն ներս դասերու ժամանակ, նոյնքան պարզ ու ընկերական էր դասարանէն դուրս։ Բնաւորութեամբ ժպտադէմ ու զուարճախօս։ Դիւրահաղորդ ու ընկերական մէկը ըլլալով, սիրուած էր թէ իր պաշտօնակիցներէն, թէ իր աշակերտներէն ու հոգաբարձութենէն եւ թէ հասարակ ժողովուրդէն։

Ան ազգային ազատագրման շարժման մէկ հաւատաւոր քաջամարտիկ զինուորն էր, պատրաստ շարունակ դիմագրաւելու ամէն պատահականութիւն եւ մնալու պատնէշին վրայ։ 1909ի Ատանայի ջարդերուն ժամանակ երբ նոյն վտանգը կը նշմարուէր Մալաթիոյ մէջ, ան ամենայն պաղարիւնութեամբ առանց ինքզինքը կորսնցնելու, առանց ադմուկ բարձրացնելու, կարողացաւ դպրոցի աշակերտութիւնը տուն ղրկել եւ դիրք բռնել հաւանական յարձակումի մը դէմ։

Մինչեւ 1908 թուականը, հայ դպրոցներու մէջ Հայ Ազգային պատմութեան դասաւանդութիւնը խստիւ արգիլուած էր։ Գաբրիէլ Անսուրլեան, հայրենասէր ուսուցիչը, հակառակ դրուած խիստ արգելքներուն ու անոր հետեւանք ծանր պատիժներու, ստանձնած էր Հայոց Պատմութեան դասաւանդութիւնը եւ միակ Հայոց Պատմութեան գիրքը որ կը գտնուէր, իր սեփականութիւնն էր։

Ճշմարիտ իրողութիւն է, որ Սանասարեանէն դուրս եկող եւ ուսուցչութիւնը իրենց ասպարէզ ընտրողները տեղւոյն համայնքին եւ դպրոցի աշակերտութեան վրայ թողուցած են լաւ տպաւորութիւն, որպէս մանկավարժ, հայ լեզուին ու պատմութեան ուսուցման նախանձախնդիր, իրենց կոչումին գիտակից, քան այլ երկրորդական վարժարաններէ դուրս եկողներ։

Գաբրիէլ Անսուրլեան իր ուսուցչական պաշտօնէն հրաժարելով կը մեկնի Պէյրութ և Ֆրանսական Բժշկական Համալսարանէն շրջանաւարտ կ'ըլլայ։ 1915ի համաշխարհային պատերազմին թուրք կառավարութեան հրամանով Մալաթիա կը բերուի, թրքական բանակին մէջ ծառայելու անունին տակ, սակայն կ'առաջնորդուի բանտ, ուր տեղի ունեցած է իր եղերական մահը։» (Պետրոս Զօպեան)։

## ԱՇՈՏ ԵՈՒՍՈՒՖԵԱՆ

*Ծրջանաւարտ Այնթապի Գոլէճէն։ Եղած է 1880էն ուսուցիչ բողոքականներու վարժարանին։ Բանաստեղծ էր։ Յետոյ եղած է Եփրատ Գոլէճի նախապատրաստական ճիւղին մէջ ուսուցիչ։*

## ԱՌԱՔԵԼԵԱՆ ՅԱՐՈՒԹԻՒՆ ՎՐԴ. (Մալաթիացի)

*Ուսումը առած է Վարագայ Վանքին մէջ եւ ապա ստացած՝ վարդապետական աստիճան։ 1884ին Մալաթիա եկած է եւ եղած՝ նախաձեռնարկ աղջիկներու վարժարանի մը հաստատութեան, որ 1885 Մայիս 15ին բացած*

է Սանդխտեան անունով Մայր Վարժարանի թաղին մէջ։ 1880ական թուականներուն պահ մը հաստատուած Ս. Երրորդութեան և Ս. Յարութեան եկեղեցիներու եւ Աստղիկ ընկերութեան վարժարանի ընդհանուր տնօրէն եղած է։

1892–93ին առեւնները Սահակ եպսկ.ի աքսորէն քանի մը շաբաթ վերջը, այս վարդապետը նաեւ աքսորուած է Եօզղաթ, ուրկէ 7–8 ամիս ետքը լուր կու գայ որ վախճանած է (Խորէն Առաքելեան)։

## ԱՐԲԱՃԵԱՆ ԳՐԻԳՈՐ (Մալաթիացի)

Իր նախնական ուսումը առած է Մալաթիոյ Ազգ. Սահակեան վարժարանին մէջ, Աւետիս Խորասանճեանի տնօրէնութեան ժամանակ (ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Գ. տարի, Թ. 2, էջ 15) եւ ապա Հայ Աւետարանականներու վարժարանին մէջ։ Դեղին մազերով, երկարահասակ եւ խոշոր քիթով, Զօրպաճի փողոցէն մինչեւ Մայր Վարժարան, օրական չորս անգամ կը քալէր։ Սարսափեցուցած էր աշակերտները ծեծով։ Հմուտ էր Թուրքերէնի եւ շատեր իրեն գրել կու տային պետական պաշտօնատուն ներկայացնելիք իրենց գիրերը։

Յարգանք կը վայելէր հասարակութեան մէջ։ Ուսուցչական երկար պաշտօնավարութենէ վերջ, պահ մը (1899ին) եղած է տնօրէն Սահակեան վարժարանի։ 1900ին Մայր Վարժարանի մէջ կը պաշտօնավարէր իբր դասախօս Թուրքերէնի եւ Թուաբանութեան։

Գրիգոր Թաշճեանի տնօրէնութեան շրջանին, երբ ՖԱԼԱԽԱՆԸ ջնջուեցաւ, բնաւ չէր միջամտեր դպրոցին կարգապահութեան։

Մեսրոպ Ժամկոչեանի տեսչութեան միջոցին Առաջնորդարանի քարտուղար եղաւ եւ դպրոցը թողուց։

Ժողովուրդը զայն կը կոչէր «Արբաճի վարժապետ»։

Նահատակուած է 1915ին։ (Ստեփան Մանուչեան, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ Ե. տարի, Թ. 4, էջ 10–11)։

## ԱՐԳԱԵԱՆ ԳՐԻԳՈՐ (Մալաթիացի)

1900ին Սահակեանի ուսուցիչ, եւ Լուսարար Ս. Աստուածածին եկեղեցիի։ 35 տարի աշխատած է Եգիպ վարժապետի հետ թէ դպրոցին եւ թէ եկեղեցիին մէջ (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 53, էջ 9–10)։

## ԱՐԳԱԵԱՆ ՕՐԻՈՐԴ Ե.

1903ին Սահակեան վարժարանի աղջիկներու ուսուցչուհի, Արգաեան Գրիգոր վարժապետի քոյրը։ 30 տարի աշխատած է դպրոցին մէջ, 1950ին Պէյրութ էր։

## ԱՐՍԼԱՆԵԱՆ ԳՐԻԳՈՐ

*Ծնած է 1892–ին։ Եփրատ Գոլեճէն շրջանաւարտ եղած է 1911–ին։ Առաջին համաշխարհամին մեծ պատերազմին Աւստրալիական բանակին մէջ կը ծառայէ իբրեւ թարգման-զինուոր, ու այդ հանգամանքով, Պաղեստինէն Սուրիա յառաջացող Անգլիական զօրքերուն հետ մեծապէս օգտակար կ'ըլլայ անօթի ու անտուն հայ գաղթականներուն։ Մեծ երախտագիտութեամբ կը յիշուի իր անունը մանաւանդ Պերեճիքցի Հայերուն կողմէ, որոնց համար Կիլիկիոյ պարպումի շրջանին, Գրիգոր Արսլանեան կը հայթայթէ իր բանակի նաւակները անոնց փոխադրութեան համար։*

*Խաղաղութենէն ետք, կը հաստատուի Հալէպ ու կը զբաղի ընդհանրապէս ուսուցչութեամբ։ Այդ շրջանին իր հայրենակցական մտահոգութիւնը կ'ըլլայ Կրթասիրացի գիշերային վարժարանը, ուր կարդալ-գրել պիտի սորվէին շատ մը հայրենակիցներու կողքին նաեւ ուրիշ տեղացիներ։ 1930–ին կը մեռնի՝ որբ ձգելով իր երեք փոքրիկ զաւակները, Ալիս, Կարապետ եւ Մելքոն։ Կարապետ եւ Մելքոն բարձրագոյն ուսման հասած են շնորհիւ Կրթասիրացի զոհողութիւններուն, ու այժմ կը վարեն մասնաճիւղերու ատենադպրութիւնը, Կարապետ՝ Հալէպի մէջ, Մելքոն՝ Պէյրութ։*

## ԲՐԻԿԵԱՆ ՅԱԿՈԲ (Տիվրիկցի)

1901*ին շրջանաւարտ Խարբերդի Եփրատ գոլէճէն։* 1905*ին տնօրէն Մալաթիոյ Սահակեան Մայր Վարժարանին։ Հետոյ, իր տեսչութեան միջոցին կրթարանի եւ վարժարանի դրութիւնը հաստատուեցաւ, որով Մայր Վարժարանէն շրջանաւարտներ Եփրատ Գոլէճ կարող էին մտնել (Ստեփան Մանուչեան, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, ԺԵ. տարի, Թ.* 1–2, *էջ* 27)։

*Իր պաշտօնավարութեան միջոցին Աղա Էֆէնտիներու հետ խնդիր կ'ունենայ եւ յաջորդ դպրոցական շրջանը չլրացած Մալաթիայէն կը մեկնի եւ Տիվրիկ կ'երթայ։*

## ԳԱԼԸՆԵԱՆ կամ ԹԵՐԶԵԱՆ ԽՈՐԷՆ (Քէսրիկցի)

1899*ին վկայուած է Եփրատ Գոլէճէն։ Մէկ տարի ուսուցիչ եղած է Մալաթիոյ Բողոքականաց վարժարանը։*

*Ետքը մտած է Պէյրութի Ամերիկեան բժշկական վարժարանը, որուն շրջանը աւարտելէ ետք, եղած է երեք տարի Մէզիրէի քաղաքապետական բժիշկ։ Տասը տարի զանազան վայրեր իբր զինուորական բժիշկ ծառայած է եւ ապա անցած է Եգիպտոս եւ հաստատուած Աղեքսանդրիա* (Յիշատակարան Եփրատ Գոլէճի, *էջ* 199)։

### ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆ ....

*Ֆրանսերէնի ուսուցիչ*, 1905–6ին *Սահակեան Վարժարանի մէջ* (*ՆՈՐ* **ՄԱԼԱԹԻԱ**, *ԺԵ. Թ.* 3–4, *էջ* 45)։

### ԳԱՐԱՄՂԼԵՍԵԱՆ ՏԻԿ. ՎԱՐԴԵՐ

*Քոյր Պատ. Կիրակոս Խաչատուրեանի. շրջիկ դասատու եղած է անգլիագէտ կիներու, կարդալ սորվեցնելով*։

### ԳԸՐՔԵԱՇԱՐԵԱՆ ՄԱՐԻԱՄ (Հաճընցի)

*Այնթապ Գոլէճի շրջանաւարտներէն*։ *Բողոքական վարժարանը ուսուցչուհի եղած է*։

### ԵԶԵԿԻԷԼ ՎԱՐԺԱՊԵՏ ՇԻՐՈՅԻ

*Մալաթիոյ Լատին վարժարանին մէջ պաշտօնավարած է*։ *Կ. Պոլսոյ Կեդրոնականի աշակերտ. լաւ թուաբան, ատաղձագէտ եւ թրքագէտ* (*ՆՈՐ* **ՄԱԼԱԹԻԱ**, *Դ. տարի, Թ.* 2, *էջ* 10)։

### ԵԴԵՍԻԱՑԻ ՍԱՐԳԻՍ ՎԱՐԺԱՊԵՏ

*Ընտիր դպրապետ մըն էր. Առաջնորդ Սրապիոն եպսկ.* 1879*ին ուսուցիչ բերել տուած է Մալաթիա* (**ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ**, *Գ. տարի, Թ.* 2, *էջ* 14)։

### ԵՂՈՅԵԱՆ ԱՍԱՏՈՒՐ ԶԱՔԱՐ (Խույլուցի)

1889*ին շրջանաւարտ եղած է Եփրատ Գոլէճէն եւ երկու տարի* (1890–1892) *Խարբերդի մէջ ուսուցչութիւն ըրած է*։ 1892–1893*ին օգնական ուսուցիչ Մալաթիոյ Բողոքականաց վարժարանին մէջ, ըստ Պ. Խ. Պօնաբարդեանի*։ *Յետոյ Մարաշ կ'երթայ իբր քարոզիչ եւ նոյն ատեն ուսանող Մարաշի Աստուածաբանական Ճեմարանին, որուն շրջանը կ'աւարտէ* 1895*ին*։

1895*էն* 1899, *չորս տարի հովիւ Խույլուի*։ 1900*ին Բալուի*, 1901–1905 *Ուրֆայի հովիւ*։ 1905*ին ուսուցիչ կ'ըլլայ Գերման Ճեմարանին Աստուածաբանական դասարանին, նոյն ատեն հովիւ Մելիտէի*։ 1909–1912*ին կրկին Ուրֆայի հովիւ կ'ըլլայ եւ* 1912*ին Գերմանիա կ'երթայ, իր ուսումը շարունակելու*։

1913*ին կը դառնայ Մեզրէ եւ հայ բարերարներու նպաստով կը բանայ «Թադէոսեան Աստուածաշունչի դպրոցը» եւ* 9 *շրջանաւարտներ կը հասցնէ*։

1914–1921 *եօթը տարի պատերազմի, տեղահանութեան եւ զինադադարի տարիներուն Մէզրէի Գերման որբանոցներուն եւ հայ գաղթականներու հովիւ կ'ըլլայ*։

1922ին կը գաղթէ Ամերիկա եւ կը հաստատուի Քալիֆորնիա, Բասատինա քաղաքը: Զօրս Աւետարանչական պաշտօններ կը կատարէ Սիւրիոյ, Հարաւային Եւրոպայի, Մ. Նահանգաց Արեւելեան Նահանգներուն մէջ եւ Գանատա: Քառասնամեայ գործունէութենէն վերջ Տիթրոյիթի մէջ կը վախճանի 1937ին: (Յիշատակարան Եփրատ Գոլէճի, էջ 55 եւ 190):

## ԵՈՒՍՈՒՖԵԱՆ ԱԲՐԱՀԱՄ

Այնթապի Գոլէճէն շրջանաւարտ: 1880ին Բողոքականաց վարժարանին կրթարանին ուսուցիչ էր: Վերջէն նորէն Այնթապ գացած է եւ հոն բժշկութեան հետեւած է եւ Ամերիկային մէջ աւարտած է իր ուսումը:

## ԶԱՐԴԱՐԵԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ

1905—1907 ուսուցիչ Սահակեան Մայր Վարժարանի (Ստեփան Մանուչեան, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, ԺԵ. Թ. 3—4, էջ 45):

## ԸՆԹԻԷՅՃԵԱՆ

Արամեան վարժարանի ուսուցիչ 1870ական թուականներուն:

## ԹԱԴԷՈՍ ՎԱՐԺԱՊԵՏ (Խըմխըմ Թաթօ)

1858—1862 Կաթոլիկ 15—20 տղայոց դաս կու տար, Կաթոլիկ համայնքութեան կազմութենէն եւք, անոնց դպրոցին հաստատութենէն առաջ: 1890ական թուականներուն ուսուցիչ եղած է Լատիններու վարժարանը (Նշան Բէփէնէկեան ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. տարի, Թ. 4, էջ 19):

## ԹԱՅԵԱՆ ԱՌԱՔԵԼ (Մալաթիացի)

Վկայուած Խարբերդի Աստուածաբանական վարժարանէն 1887ին: 1890ին Մալաթիոյ ԿԷՕՔ ՍՈՔԸ թաղին մէջ Վէավէռէեանի տունը հաստատուած, դպրոցին մէջ կը դասախօսէր (Նշան Բէփէնէկեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Բ. տարի, Թ. 4, էջ 19):

Այս դպրոցը փակուած է, վասնզի Թայեան Ամերիկա գացած է:

## ԹԱՅԵԱՆ ՕՐ. ՎԱՐԴԵՐ (Մալաթիացի)

Ուսուցչուհի Բողոքական դպրոցի: Հաւանօրէն քոյր նախորդին:

## ԹԱՇՃԵԱՆ ԲԵՐՎԻԼ (Պերճուհի)

Խարբերդի Եփրատ Գոլէճէն շրջանաւարտ եղած է 1904ին եւ երկու տարի (1904—1906) ուսուցչուհի Մալաթիոյ Բողոքական վարժարանին (Յիշ.

Եփրատ Գոլէճի, էջ 251), պաշտօնավարած է նաեւ Զմշկածագի մէջ, մէկ տարի:

Ամուսնացած Արտաշէս Մանուէլեանի հետ: Նահատակուած 1915ին: (Նոյն):

## ԹԱՇՃԵԱՆ Տ. ԳՐԻԳՈՐ ՔՀՆՅ. (Մալաթիացի)

Ծնած է 1869 թուականին:

Ութը տարեկան հասակին յաճախած է Բողոքականաց դպրոցը, Փրոֆ. Կարապետ Պէշկէօթիւրեանի տնօրէնութեան շրջանին (1878–1882): Ինք առաջին շրջանաւարտներէն մին կ՚ըլլայ այս վարժարանին: Իրեն հետ շրջանաւարտ կ՚ըլլան նաեւ Ստեփան Կուռուպեան, Յակոբ Ոսկանեան, Մկրտիչ



Տէր Գրիգոր Քհնյ. Թաշճեան

Որբերեան, Յովհաննէս Որբերեան, Ահարոն Միրաքեան: Փրոֆ. Կարապետ Պէշկէօթիւրեանի կարող ղեկավարութեան տակ, Բողոքականաց վարժարանը փայլուն շրջան մը կը բոլորէ:

Գրիգոր Թաշճեան 17 տարեկանին շրջանաւարտ կ՚ըլլայ: Դպրոցի տեսչութիւնը գնահատելով իր ընդունակութիւնը, զինք կը կարգէ նախակրթարանի դասատու: Այս շրջանի հոգաբարձութեան անդամներն էին Յովհաննէս Թիւթէլեան, Նափոլէոն Պալտոեան եւ Յովհաննէս Պալտոեան: Իր ուսուցչական պաշտօնը կը շարունակէ 1883էն մինչեւ 1895ի կոտորածը: Երբ Բողոքականաց դպրոցները Թուրքերու կողմէ փլատակներու կը վերածուին, Գրիգոր Թաշճեան 1896–1900 Մայր եկեղեցւոյ դպրոցին մէջ տնօրէն կ՚ըլլայ եւ Ազգ. վարժարանի մէջ անգլիերէնի եւ գծագրութեան դասերը կ՚աւանդէ,

*եաքը կրկին կը վերադառնայ Բողոքականաց գիւղը: 1896ին կ'ամուսնանայ Օրիորդ Մարինէ Մարգարեանի հետ, կը բախտաւորուին 4 զաւակներով, 3 տղայք մէկ աղջիկ:*

*1901ին ժողովուրդի մեծամասնութիւնը կը պնդէն որպէսզի Սր. Յարութեան եկեղեցւոյ քհնյ. ձեռնադրուի, ուսեալ քահանայ մը ունենալու նախաձեռնութեամբ: Նախ կը մերժէ սակայն ժողովուրդին բուռն պնդումներուն վրայ տեղի կու տայ, սակայն երբ 1903ին Սիս կ'ուղեւորի քհնյ. ձեռնադրուելու համար, խումբ մը մարդիկ իր դէմ բողոք կը բառնան, եւ պատուիրակ մը կը ղրկեն Սիս Սահակ կաթողիկոսին արգիլելու համար անոր ձեռնադրութիւնը: Իրեն հետ Սիս գացող երկու ուրիշ ընծայացուներ, որոնք էին Ս. Երրորդութեան Տ. Մուշեղ քհնյ.ն եւ Մայր Եկեղեցւոյ Տ. Եղիա քհնյ., Սահակ կաթողիկոս կը ձեռնադրէ, իսկ Գրիգոր Թաշճեանը ձեռնադրել կը մերժէ, առարկելով թէ իրեն դէմ բողոք կայ:*

*Գրիգոր Թաշճեան հինգ վայրկեան կ'ուզէ Կաթողիկոսէն իր դէմ եղած քննադատութիւններուն պատասխանելու: Իր վերջին խօսքը կ'ըլլայ «Սօղոսը Պօղոս ընողը Աստուած էր»: Սահակ Կաթողիկոս երբ կը համոզուի թէ անոր դէմ եղած բողոքները նախանձի արդիւնք են, իր նախկին որոշումը կը փոխէ եւ զինք քհնյ. կը ձեռնադրէ Մայր-եկեղեցւոյ, իսկ Տէր Եղիա Ս. Երրորդութիւն եկեղեցւոյ քհնյ. կը կարգէ որպէսզի ժողովուրդին մէջ խռովութեան որեւէ առիթ չտայ:*

*1888ին մատնութեան մը զոհ կ'ըլլայ, իր տունը կը խուզարկեն եւ կառավարութեան կողմէ իր բոլոր գիրքերը եւ գրութիւնները կը գրաւուին, սակայն շնորհիւ կրօնափոխ Չնքուշցի Հաճի Կարապետի թարգմանութեանց, որեւէ վնասակար գրութիւն մը չեն գտներ, սակայն կառավարութիւնը իր մօտ կը պահէ գոյքերը: Գրիգոր քհնյ. ինքնօգնութեամբ Մալաթիոյ համայնքի ամենազարգացած կրօնականներէն մին եղաւ: Իր ջանքերուն շնորհիւ շատ մը ընդունակ աշակերտներ ընդունուեցան Եփրատ Գոլէճ, Սանասարեան եւ ոմանք ալ Երուսաղէմի Ժառանգաւորաց վարժարանը եւ յաճախ չքաւոր աշակերտներու ապահոված է բարերարներ:*

*1899ին կը միանայ Հնչակեան կուսակցութեան[1] եւ կը կազմակերպէ երիտասարդութիւնը: Գիշերուայ ժամերուն դիմելով հարուստներուն կը առնայ որոշ գումարներ եւ կը բաժնէ այն երիտասարդներուն որոնք նիւթապէս անկարող էին զէնք գնելու: Գրիգոր քհնյ. իր քահանայական պաշտօնը 1903էն մինչեւ 1915 կը կատարէ խղճմտութեամբ եւ նուիրումով: 1915ին կը ձերբակալուի եւ կը բանտարկուի: Բանտին մէջ զինք կ'ենթարկեն չարաչար ծեծերու եւ տանջանքներու եւ օրին մէկն ալ գիշեր ատեն բանտէն դուրս հանելով կառավարական շէնքի բակին մէջ կը նահատակեն:*

---

(1) Հնչակեանք կը գործէին Մալաթիոյ մէջ իբր մշակութային մարմին «ՄԱՍԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ» անունով: Այս ընկերութեան հիմնադիրներէն մէկն էր Գրիգոր վարժապետ Թաշճեան (ՊԱՊ ՈՒԽՏԻ, թ. 27, էջ 6):

## ԹԷՐՋԻՊԱՇԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ

*Ուսուցիչ* 1908*ին Սահակեան Մայր–վարժարանի* :

## ԹԵՐԽԱՆԵԱՆ ՄԻՀՐԱՆ (Մալաթիացի)

*Որդի Միքայէլ Թերխանեանի : Նախ աշակերտած է Բողոքականաց վարժարանի եւ ապա Եփրատ Գոլէճի, որմէ շրջանաւարտ կ'ըլլայ* 1909*ին* (Յիշատ· Եփրատ Գոլէճի, *էջ* 219), *եւ նոյն տարին աշնան կը մեկնի Պոլիս, եւ Ռոպերթ Գոլէճ կը մտնէ : Կիսաւարտ կը դառնայ Մալաթիա եւ* 1911*ին անգլերէնի եւ թուրքերէնի ուսուցիչ կ'ըլլայ Բողոքականաց դպրոցին* :

1913*ին հօր հետ կը հաստատէ կերպասեղէնի վաճառատուն* (Եփրատ Գոլէճի յիշատակարան, *էջ* 219, *սեղանաւոր գրած է*) :

*Անդամ էր Հ·Բ·Ը·Միութեան եւ Ռամկավար Կուսակցութեան : Աշխատակից Բիւզանդիոնի* : 1916*ին եղեռնին զոհ եղաւ* 28 *տարեկանին* (*ՊԱՊ ՈՒԽՏԻ*, *Դ· տարի*, *Թ·* 1· *էջ* 16) :

## ԹԻՖԹԻԿՃԵԱՆ ԳՐԻԳՈՐ

(*այլ անուամբ* «Թիփթիկճի խօճա»)

*Մասնագէտ էր թուրքերէնի*, «օժտուած էր պատկառելի արտաքինով եւ հեզահամբոյր դէմքով մը», (*Յակոբ Մուրատեան ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ*, *Գ· տարի*, *Թ·* 2, *էջ* 15) «Տղայք կը վախնային անոր փալախաներէն որ մեծ ազդեցութիւն ձգած էր ամէնքին վրայ» (Նոյն) :

*Այս ուսուցիչը Ծերուն վարժապետի հետ* 1865–1880 *կառավարած է Շուկայի Սահակեան Վարժարանը, ուր կը յաճախէին* 2–3 *հարիւր ուսանողներ* :

*Դպրոցը ուսուցչութիւն ըրած ատեն կը վարէր նաեւ Առաջնորդարանին քարտուղարութիւնը* 1870 *թուականներուն : Սրուանձտեանց* 1878*ին իր այցելութեան ատեն իր մասին կը խօսի քիչ մը հեգնութեամբ* (*տես վերը*) : 1886*ին Թիֆթիկճեան վարժապետը տնօրէնութենէ զադրած է պահելով թրքերէնի ուսուցչութիւնը* :

1900*ական թուականներուն տակաւին ողջ էր, բայց դադրած ուսուցչութենէ, սակայն իբր կտակագիր և աղերսագիր գրող Շուկայի հրապարակին վրայ իր մասնաւոր տեղին մէջ օգտակար կ'ըլլար եւ կը ծառայէր թէ՛ Հայ եւ թէ՛ Թուրք հասարակութեան* :

## ԹՈՄԱՃԱՆ Հ· ԹԱԴԷՈՍ ՎՐԴ· (Խարբերդցի)

*Ծնած է* 1864 *Յունուար* 6*ին : Աշխարհական անունն էր Պաղտասար* : 1874*ին գաղթած է իր ծնողքին հետ Կ· Պոլիս ուր յաճախած է Բերայի Վե–*

*նետիկի Մխիթարեան վարժարանը, որուն տեսուչը Հ. Մանուէլ վրդ. Քաջունի, զինքը կը ղրկէ Վենետիկ 1876ին: Իր ուսման շրջանը աւարտելէ ետք, 1887ին կը ձեռնադրուի եւ ուսուցչութիւն կ'ընէ վանքին ընծայարանին մէջ, եւ ապա 1892–1894ին Մուրատ-Ռափայէլեանի եւ ապա 1894–1898ին Պոլսոյ Մօտայի վարժարանը: 1898ին կը ղրկուի Խարբերդ իբր քարոզիչ եւ վարիչ Քլարեան դպրոցին: 1902–3ին դարձեալ Մուրատ-Ռափայէլեան վարժարանի մէջ կը դասախօսէ: 1903–1906ին կ'երթայ Մալաթիա ուր վարիչ կը կարգուի Խաչատուրեան վարժարանին եւ 1906ին Մամուրէթ իւլ Ազիզի կաթողիկէ Հայոց երկսեռ դպրոցներուն:*



**Հ. Թադէոս Վրդ. Թումաճան**

*1907–1912 կը վարէ Տրապիզոնի Մխիթարեան վարժարանի տեսչութիւնը:*

*1912–1913ին կրկին Խարբերդ կը դառնայ Մխիթարեան վարժարան մը հիմնելու համար, բայց չի յաջողիր եւ կը դառնայ Կ. Պոլիս, ուր կը մնայ պատերազմի եւ եղեռնի տարիներուն (1914–1919): Զինադադարին կը դառնայ Վենետիկ եւ կ'ըլլայ անդամ Վանքին կեդրոնական Վարչութեան:*

*1923–1929ին տեսուչն էր Մուրատ-Ռափայէլեան վարժարանին:*

*1929-30ին Միլանի Մխիթարեան Ուսանողարանի Մեծաւոր կ'ըլլայ եւ 1930–1931ին դաստիարակ վանքին աշակերտութեան եւ ապա հոգեւոր Հայր Մուրատ-Ռափայէլեան սաներու (1932): 1932-ին հիւանդանալով վանք կը քաշուի ուր կը մնայ մինչեւ իր մահը՝ 1948 Մարտ 19:*

Ցիսնամեայ կրթական բեղմնաւոր աշխատութիւններով յայտնի այս Մխիթարեանը, Մալաթիոյ Հայ Կաթողիկէ համայնքութեան վարժարանին կազմակերպութեան մէջ մեծ դեր կատարած է։

Իբր գրական վաստակ ունի գրաբար թարգմանութիւնը Պուալոյի «ԱՐՈՒԵՍՏ ՔԵՐԹՈՂԱԿԱՆԻՆ» որ հրատարակուած է 1888–1889ին։

Հեղինակած է Աշխարհաբարի քերականութիւններ։ Ունի նաեւ բազմաթիւ գրաբար թարգմանութիւններ՝ քերթուածներու, եւ յօդուածներ՝ ԲԱԶՄԱՎԷՊԻ մէջ պանազան նիւթերու շուրջ։

Գրած է նաեւ իր յուշերը «ԱՆՁՆԱՊԱՏՈՒՄ» խորագրով (տես Հ. Եղիա վրդ. Փեչիկեան, ԲԱԶՄԱՎԷՊ, 1948, էջ 147–148)։

## ԹՈՒՐԵԱՆ ՄԿՐՏԻՉ (Տարէնտէցի)

Հեղինակ ԵՐԳԵՐ, ՏԱՂԵՐ, ԵՂԵՐԵՐԳԵՐ, ՍԻՐԱՎԷՊԵՐ, ՆԱՄԱԿՆԵՐ, ԴԱՄԲԱՆԱԿԱՆՆԵՐ (1892 Կ. Պոլիս, էջ 288) գիրքին։

1880ին Աւետիս Խօրասանճեանի հետ ուսուցիչ եղած է Մալաթիա։ Պէննէեան քհն. պայն կը նկատէ Մալաթիոյ վարժարանը կարգաւորողներէն մին։

## ԹՕՓԱԼԵԱՆ ԵՂԻԱ ՎԱՐԺԱՊԵՏ

Սահակեան վարժարանի մէջ Արփաճի վարժապետ վերի կարգերուն ուսուցիչն էր եւ Մանչուկ վարժապետ վարի կարգերու մէջ քերական կարգայողներու կը դասախօսէր, երբ Մայր Վարժարանի մէջ ուսուցչութեան կոչուեցաւ (Ստեփան Մանուշեան, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ ԺԵ. տարի, Թ. 1–2, էջ 27)։

Երեսունը հինգ տարի Արգայեան Գրիգորի եւ անոր քրոջը՝ Արգայեան Օր. Ե.ի հետ աշխատած է դպրոցին մէջ, ինչպէս նաեւ եկեղեցին (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 53, էջ 9–10)։

1911ին կարգուած է լուսարար Ս. Յարութիւն եկեղեցիին, յաջորդելով Խորէն Փափազեանի։

1915ի եղեռնի զոհ։

## ԺԱՄԿՈՉԵԱՆ ՄԵՍՐՈՊ (Խարբերդցի)

1901ին շրջանաւարտ Եփրատ Գոլէճէն։

1905ին Մալաթիոյ Ազգային Վարժարաններու ընդհանուր տեսուչ ընտրուած է (ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, ԺԵ. տարի, Թ.3–4, էջ 45)։

Ուսուցիչ Տիգրանակերտի, Մէզիրէի, Մալաթիոյ եւ Չմշկածագի մէջ, իսկ չորս տարի Խարբերդի կեդրոնականի մէջ։ Ամերիկայի մէջ հետեւած է Եէյլի Համալսարանին մանկավարժական դասընթացքին եւ շրջանաւարտ եղած 1912ին M. A. տիտղոսով։ 1913ին շրջանաւարտ Ուստրի Քլարք Հա–

*մալսարանի ընկերաբանութեան եւ մանկավարժութեան ճիւղերէն։ Խմբագիր «Ազգ»ի։ 1914—1916ին տնօրէն Աղեքսանդրիոյ Պօղոսեան վարժարանին։ 1916—1919 Բորտ Սայիտի Միսուան վարժարանի ուսուցիչ։ Բարեգործականի կրթական քննիչ Կիլիկիոյ, Սուրիոյ եւ Պաղեստինի։*

*1922ին կը քաշուի Պէյրութ առողջական պատճառներով։*

*Ունի գիրքեր «Օշական Այբենարան, Ա. տարի» եւ «Երազացոյց»։ Ունի նաեւ անտիպ գործեր։*

*Մեռած է 1935ին* (Յիշ. Եփրատ Գոլէճի, էջ 204—205)։

## ԺԱՐԺԱԹԵԱՆ ՅԱԿՈԲ (Մալաթիացի)

*Ուսումը ստացած է Խարբերդի Լատինաց Գոլէճը եւ նոյն հաստատութենէն շրջանաւարտ։ Մէրտինի մէջ ուսուցչութեան պաշտօն կը վարէ 4 տարի։ Հետագային վերձեալ Մալաթիա կը դառնայ եւ կը պաշտօնավարէ իբր ուսուցիչ Լատիններու դպրոցին մէջ, որ ժողովուրդը կը կոչէր ԱՊՈՒՆԱՆԵՐՈՒ դպրոց։ Հոն կը դասախօսէր Թուրքերէն եւ Թուաբանութիւն։ 1890ական Թուականներուն հրաժարելով ուսուցչութենէն, ելեւմտական օգնական պաշտօնեայ կը կարգուի։ Այս գործը երեք տարի շարունակելէ յետոյ, իր ուշիմութեան շնորհիւ առաջին կարգի գանձային պաշտօնեայ կը կարգուի։*

*1915ին Թիւրք կառավարութեան հրահանգով կը տեղահանուի իր ծննդավայրէն, բաժնուելով իր ընտանիքէն եւ զաւակներէն։ Ճանապարհին գազանային տանջանքներու ենթարկուելէ ետք կը նահատակուի Թուրք ջարդարարներու կողմէ։*



Յակոբ Լճ. Ժարժաթեան

## ԻԳՆԱՏԻՈՍԵԱՆ ՄԱՐՏԻՐՈՍ (Ակնցի)

*Ծնած է* 1842*ին։ Իր ծննդավայրը առած է իր նախնական կրթութիւնը Ներսէսեան եւ Նարեկեան դպրոցներուն մէջ եւ յետոյ անցած է Խարբերդ։* 1860*ին Ակնայ մէջ շարունակած է իր ուսումը։* 1862*ին գացած է Ատրեամա՞ն, իր եղբօրը Յակոբին քով եւ* 1863*ին յարած է Բողոքականութեան։* 1866*ին կը դառնայ Ակն ուր կը հալածուի իբր BPOS, վեց ամիս վերջը կ'երթայ Մալաթիա վաճառականութիւն ընելու համար, սակայն, հոն, ինչպէս բացատրըուեցաւ* 1867 *Դեկտեմբերին, ուսուցիչ կ'ըլլայ բողոքականաց վարժարանին եւ ապա կ'անցնի* 1868*ին Դեկտեմբերին իր ծննդավայրը Ակն։ Ապա Խարբերդ ուր կ'աշակերտի Աստուածաբանական Ճեմարանին։* 1871*ին Ակնայ մէջ կը կազմակերպէ Աւետարանական համայնքը եւ ինքը կ'ըլլայ անոր առաջին պատուելին՝* 1875*ին։*

1881*ին Այնթապի Գոլէճին հայերէն լեզուի դասախօս կ'ըլլայ* (Լուսաշաւիղ 383—4)։ *Յետոյ կրկին Ակն կը պաշտօնավարէ եւ անկէ* 21 *Յունիս* 1893*ին Կիլիկիոյ Միութեան Ժողովին կը ղրկէ* «Հայր Մաշտոց եւ Լուսաւորչական եկեղեցւոյ վարդապետութիւնը» *խորագիրով հմտալից գրութիւն մը* (Լուսաշաւիղ 180)։

*Պաշտօնավարած է նաեւ իբր հովիւ Մարզուան, Այնթապ, Իզմիր եւ Նիկոմիդիա* (Յուշարձան, *էջ* 490)։ *Ունի շահեկան գիրք մը* «Հանդէս Լուսաւորչական եւ Բողոքական Հայոց որ ի Տաճկաստան» (*Կ. Պոլիս* 1880)։

## ԽԱՆՋԵԱՆ ՄԱՐԻՑԱ

*Այժմ Հէյվրիլ* (*Մ. Նահանգներ*)։ *Ուսուցչուհի* 1914*ի Համաշխարհային Պատերազմէն ետք* 1918*ին վերաբացուած բողոքականաց վարժարանին։*

## ԽԱՆՋԵԱՆ ՄԻՀՐԱՆ (Մալաթիացի)

*Որդի Մանուկ Խանճեանի։ Տեղւոյն Սահակեան վարժարանէն* 1908*ին կ'երթայ Խարբերդի Ամերիկեան Եփրատ Գոլէճը։* 1913*ին շրջանաւարտ կը դառնայ Մալաթիա եւ կը նշանակուի Երրորդութեան եկեղեցւոյ յարակից դպրոցին ուսուցիչ, եւ երկու տարի պաշտօն կը վարէ։* 1914—1918*ի պատերազմին կը զինուորագրուի եւ կը ղրկուի Երզնկայի ապայից դպրոցը։*

*Երկու ամիս ետքը կը դառնայ Մալաթիա կեղծուած արձակուրդի թուղթով մը, սակայն երկու ամիսէն կը ձերբակալուի եւ* ԱՄԻԼԷ ԹԱԳՈՒՐԻ *կը տարուի, ուրկէ անջատուելով բանտ կը նետուի եւ կը սպաննուի։ Եփրատ Գոլէճի Դաշնակցական Ուսանողական Միութեան եռանդուն անդամներէն էր* (*տես* ՊԱՊ ՈՒԽՏԻ, *Դ. տարի, Թ.* 1, *էջ* 10 *եւ* 16 *եւ Թ.* 2, *էջ* 3, *նոյն Թ.* 41, *էջ* 16)։

## ԽԱԶԱՏՈՒՐԵԱՆ Մ. Յ. (յետոյ Տ. Եղիշէ քհն.)

1886*ին Սահակեան Մայր Վարժարանին ուսուցիչ, Աւետիս Խօրասան–*

ճեանի եւ Թիֆլիզի խօճայի հետ։ Յաղթանդամ, գեղուկ եւ մեծ փորով եկեղեցական մըն էր։ Աշակերտ Երուսաղէմի Ժառանգաւորաց Վարժարանին։ Մալաթիոյ քահանաներուն ամենէն զարգացածը եւ ազգանուէրը։ Անձնուէր եւ գործունեայ։ 1895ի ինքնապաշտպանութեան հերոսը ինքն հանդիսացած է զէն ի ձեռին կռուելով։

1895–96ի կոտորածի ատեն այս քահանան հայ կաթոլիկներու եկեղեցին, ապա Ս. Երրորդութիւն եկեղեցին մէջ, իր շուրջը հաւաքելով Մալաթիոյ կռուող ուժերը, հերոսաբար դիմադրած էր աւելի քան 20,000 թուրք եւ քիւրտ բարբարոս խուժանին։ Շնորհիւ 5–6 օրուան ինքնապաշտպանութեան Հաչիմ պէյ եւ Պեհեսնէցի Եաղուպ փաշա, ճերմակ դրօշակով պատուիրակ ներկայացան եւ հաշտութիւն առաջարկեցին։ Այսպէս փրկուեցաւ Մալաթիոյ հայութիւնը։

1914էն քիչ առաջ վախճանած է եւ փառաւոր թաղում մը ունեցած է (Տոքթ. Մ. Քէչիշեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ. տարի, թ. 1, էջ 9–10)։

## ԽՈՐԱՍԱՆՃԵԱՆ ԱՒԵՏԻՍ (Ակնցի)

Հայկական ուսուցիչ։ 1881էն Մալաթիոյ «Աստղիկ» Ընկերութեան հիմնած վարժարանին տնօրէն կ'ըլլայ։ 1866էն երբ այս դպրոցը կը փակուէր, Աւետիս Խորասանճեան, Սահակեան Մայր Վարժարանի տնօրէն ընտրուեցաւ։

Իր օգնականներն էին Թիֆլիզի վարժապետ եւ Մ. Յ. Խաչատուրեան (յետոյ Տ. Եղիշէ քհն.), Յարութիւն Փափազեան եւ անոր հօրեղբայրը՝ Քէչէճեան Պեպօ վարժապետ։

Այս ուսուցիչը դպրոցին մակարդակը բարձրացուցած է կրթարանի բաժին մըն ալ հաստատելով Մայր Վարժարանին վերի յարկին մէջ, ուր 20–30 աշակերտներ ուսում կ'առնէին։ Այդ թուականին հասած են Հայերէնի եւ Թրքերէնի հմուտ աշակերտներ, ինչպէս էին Յակոբ Թիֆլիկեան, Մանուկ Խանձեան, Սեդրակ Քիւփէլեան, Գրիգոր Արփաճեան եւայլն (ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Գ. տարի, թիւ 2, էջ 15)։

Սակայն իր տնօրէնութիւնը ոմանց հաճելի չէ եղած եւ վշտացած է։ Խորասանճեան անկէ ազդուած հրաժարած է եւ Յակոբ Յովնանեանի եւ Աւագ Կէմալմազեանի հետ հաստատած է պզտիկ դպրոց մը, որ «Կէմալմազի» դպրոցը կը կոչէին։

1880ական թուականներուն Մալաթիոյ մէջ ալ սկսան թուրք կառավարութեան խստութիւնները եւ ձերբակալութիւններ կը կատարուէին։

1893ին երբ առաջնորդ Սահակ եպսկ.ը աքսորուելու կ'աշխատուէր Քէֆսիզեան Կաթողիկոսի իսկ հաւանութեամբ, Աւետիս Խորասանճեան իր անձին համար ալ վտանգ մը նշմարելով, անոր աքսորէն մէկ օր առաջ կը հեռանայ Մալաթիայէն։

Յետոյ իր ծննդավայրին մէջ քահանայ կը ձեռնադրուի։

## ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ ՍԱՐԳԻՍ (Նկարիչ)

*(Տես իր կենսագրութիւնը արուեստագէտներու մէջ)։*

## ԽՈԹԽՈԹԵԱՆ ԳՐԻԳՈՐ (Մալաթիացի)

*Բողոքական վարժարանի ուսուցիչ։ 1895ի ջարդին զոհ եղած է։*

## ԽՈՐԷՆ ՎԱՐԺԱՊԵՏ (Բաբերդցի)

*Ուսուցիչ եղած է Սահակեանի 1908ին։*

## ԿԱՐԱՊԵՏԵԱՆ ԵՂԻԱ (յետոյ քհն., Մալաթիացի)

*1900ին Սահակեան Վարժարանի ուսուցիչ էր։*
*1905ին Սիս գրկուած եւ քահանայ ձեռնադրուած է Սահակ Կաթողիկոսէն Մալաթիոյ Մայր Եկեղեցիին վրայ։*

## ԿԵՍԱՐԵԱՆ ՏՈՆՈՍԻՈՍ (Մալաթիացի)

*Շրջանաւարտ Խարբերդի Ֆրանսական Գոլէճէն։*
*1905ին Սահակեան Վարժարանի ֆրանսերէնի ուսուցիչը։*
*Սիրուած անձնաւորութիւն մըն էր։ 1915էն ետք մեկնած է Սուրիա եւ հաստատուած Հալէպ, ուր եղած է ցարդ երկաթուղւոյ ընկերութեան պաշտօնեայ (Պետրոս Զօպեան)։*

## ԿԻՐԱԿՈՍԵԱՆ ԳԱՐԵԳԻՆ (Մալաթիացի)

*Որդին էր պատ. Մարտիրոս Կիրակոսեանի։ Ուսումը առած է Եփրատ Գոլէճի մէջ, ուրկէ շրջանաւարտ եղած է 1885ին։*
*Պաշտօնավարած է իբր տնօրէն Մալաթիոյ եւ Արաբկիրի բողոքական Վարժարաններուն։*
*Յետոյ գացած է Ամերիկա, ուր յաճախած է Օպըրն Աստուածաբանական Ճեմարանը, որուն շրջանը աւարտած է։*
*Պոսթոնի մէջ 26 տարի գործ նորոգելու հաստատութիւն մը ունէր։*
*Եղած է Ազգ. Միութեան գանձապահ, եւ Հ. Բ. Ը. Միութեան պատուոյ անդամ։*
*Հաստատած է Եփրատ Գոլէճի համար մրցանակներ։*
*Ֆաուլըր (Քալիֆորնիա) ապրած էր իր կեանքին վերջին 18 տարիները իբր այգեմշակ։*
*Մեռած է 1936ին* (Յիշատ. Եփրատ Գոլէճի, *էջ* 189)։

## ԿԻՒԼԷՍԻՐԵԱՆ ԹՈՒՐՎԱՆՏԱ (Խուլագիւղցի)

*Շրջանաւարտ Եփրատ Գոլէճէն։ Ուսուցիչ Հայ Բողոքականաց Վարժա-*

րանը, ինչպէս նաեւ Արաբկիրի եւ Եփրատ Գոլէճի մէջ: Ամուսնացած Պ. Մարտիրոս Ֆէրէչէթեանի հետ։Այժմ կը բնակի Բասատինա (Գալ.) (Յիշատ. Եփրատ Գոլէճի, էջ 244):

## ԿԻՒՐԵՂԵԱՆ ՊԵԼՕ (Մալաթիացի)

Առաջին ուսուցիչներէն մին Մալաթիոյ կրթական գործին, Սահակեան Մայր Վարժարանին մէջ պաշտօնավարած անոր հիմնարկութեան օրերէն սկսեալ: Պելօ վարժապետ, դասարանին մէջ խիստ շատ լուրջ էր, բայց երբ տղաք կէսօրին զբօսանքի կ'ելլէին, գրեթէ ամէն շաբթու, նոր ու զուարթ պատմութիւններ կ'ընէր, դպրոցը հաճելի ընելու համար տղոց (Ա. Եաղուպեան, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Բ. տարի, թ. 4, էջ 15):

Մինչեւ 1890ական թուականները ապրած է: Կը բնակէր Խարագա թաղին մէջ գետնայարկ, առջեւը պարտէզով տան մը մէջ:

Գլուխը մեծ ֆէս մը՝ վրան սեւ չէմպէր մը կը փաթթէր: Իր երկար եւ լեցուն հասակը ծածկուած էր սեւ զպունով մը եւ վրան սեւ երկար ՃԻՒՊՊԷ մը: Իբր ուսումնատենչ մարդ, իր խոր ծերութեան մէջ իսկ իր մէջքէն չէր ձգեր իր ՏԻՎԻՏԸ, որուն մէջ կար մելան ու գրիչը: Ոտքը Մալաթիոյ սեւ ԵՄԷՆԻՆ հագած, արշալոյսին եւ արեւմուտքին, ճիւպպէն կռնակը ժողված, շուկայի եկեղեցին կ'երթար եւ կու գար: Տոքթ. Միքայէլ Քէչիչեան (տես ՊԱՊ ՈՒԽՏԻ թ. 18, էջ 1) կ'ըսէ թէ «Ես եւ ընկերներս առաւօտ եկեղեցիէն դառնալուն եւ երեկոյեան եկեղեցի երթալու պահուն, Խարագայի թաղը գտնուող մեր դպրոցին առջեւ զինքը տեսնելու բախտը կ'ունենայինք: Իր ներկայութեան լուրջ կերպարանք մը կ'առնէինք, մինչեւ որ ծեր վարժապետը անցնէր: Այդ տարիքին մէջ բոլորէն կը յարգուէր: Առ ի վարձատրութիւն իր օգտաշատ եւ երկար տարիներու աշխատութեան քաղաքին բոլոր ազնուականները, բոլոր ուսուցիչները եւ գիտակից մարդիկ կը յարգէին զինքը, որովհետեւ ինք եղած էր գրեթէ բոլորին ալ ուսման հայրը, ուսուցիչը»:

## ԿՈՋԱԵԱՆ ՅԱԿՈԲ

Առաջին վարժապետը եւ տնօրէնը Հայ Կաթողիկէ Հասարակութեան դպրոցին, որ Ղեւոնդ եպսկ. Խորխոռունի կառուցած էր:

## ԿՈՍՏԱՆԵԱՆ ԳԱՐԵԳԻՆ

Եփրատ Գոլէճէն շրջանաւարտ, Սահակեանի մէջ ուսուցչութիւն ըրած է:

## ՀԱԼԱՃԵԱՆ ՄԻՔԱՅԷԼ

1900ին Խարբերդէն ԿԵԴՐՈՆԱԿԱՆԻ տնօրէնութեան կը հրաւիրուի, (ԱՐԵՒԵԼՔ, 1900, թիւ 4494):

## ՃԼՃԼԵԱՆ ՅԱՐՈՒԹԻՒՆ (Մալաթիացի)

*Ծնած է 1870ին։ Իր նախնական կրթութիւնը ստացած է Մալաթիոյ նախակրթարաններուն մէջ, սակայն իր յարատեւ ինքնաշխատութեամբ եղած է Մալաթիոյ յայտնի մտաւորականներէն մին։ Մալաթիոյ Թուրք* **ԻՏԱՏԻ** *վարժարանին մէջ Ֆրանսերէն կը դասախօսէր, իսկ Լատինաց վարժարանի մէջ Ֆրանսերէն եւ Թուրքերէն։ Եռանդուն եւ ժրաջան ուսուցիչ մըն էր։ 1908ի Օսմանեան Սահմանադրութենէն վերջ, իր համբաւը աւելի սկսաւ տարածուիլ, իբր բազմահմուտ լեզուագէտ հայերէնի, Թուրքերէնի եւ Ֆրանսերէնի։ Զրոյց կար թէ մրցման յաջող քննութիւն մը անցընելով, Կուսակալութեան կեդրոնին մէջ Թարգման ընտրուած էր։ Կը պատրաստուէր իր նոր պաշտօնատեղին մեկնիլ, երբ 1915ի պատերազմը վրայ հասաւ եւ նահատակուեցաւ Թուրք ջարդարարներու ձեռքով։ (Խ. Պօնարարդեան եւ* **ՊԱՊ ՈՒԽՏԻ**, *Բ. տարի, Թ. 4, էջ 19)։*



**Յարութիւն Ճլճլեան**

## ՄԱԹԻԿԵԱՆ ՕՐ. ԶԱՊԷԼ (Մաշկերտցի)

*Շրջանաւարտ 1911ին Եփրատ Գոլէճէն, 1912–1913ին ուսուցչուհի նոյն հաստատութեան մէջ* (Յիշատակարան Եփրատ Գոլէճի, *էջ 131)։*

*1913էն ետքը ուսուցչուհի եղած է Արաբկիր եւ Մալաթիա։*

*Ամուսնացած է Պօղոս Գարիկեանի հետ եւ գաղթած Ամերիկա (Նիւ-Ճըրզի, նոյն, էջ 268)։*

## ՄԱՆԱՒԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ (Ակնցի) (Վեր.)

*Շրջանաւարտ 1883ին Եփրատ Գոլէճէն։ 1884–5ին ուսուցիչ եղած է նոյն գոլէճին մէջ եւ 1885ին Մալաթիա գացած է իբր ուսուցիչ տեղւոյն բողոքականներու վարժարանին։*

1888ին Ամերիկա գաղթած է եւ հոն գործօն դեր կատարած է Աւետարանական համայնքին մէջ։ Հետեւած է Շիքակոյի Աստուածաբանական ճեմարանին ընթացքին եւ Lake Forest համալսարանին մէջ հոգեբանութեան եւ փիլիսոփայութեան։

Պաշտօնավարած է իբր քարոզիչ Շիքակոյի հայ եւ օտար եկեղեցիներուն մէջ, եւ ապա 14 տարի հովիւ եղած է Ուստրի Հայ Մարտիրոսաց եկեղեցիին, եւ 11 տարի՝ Ֆաուլըրի (Քալիֆորնիա)։

Պատմագէտ եւ հրապարակագիր։ Խմբագիր ԿՈՉՆԱԿ շաբաթաթերթի։

Հիմնադիրն է Հայ Աւետարանչական Միութեան, Հ. Բ. Ը. Միութեան Պատուոյ Անդամ։ ԲԻՒՐԱԿՆ հանդէսին մէջ թարգմանած է ՎԱՐՔ ՅԻՍՈՒՍԻՆ։

Մեռած է 1939ին Ֆաուլըր (Յիշատակ. Եփրատ Գոլէճի, էջ 185)։

## ՏՈՔԹ. ՆՇԱՆ ՄԱՆՈՒՇԵԱՆ (Մանուշակեան)

Կարապետ Պէշկէօթիւրեանի յաջորդած է իբր տնօրէն Հայ Աւետ. վարժարանին։ Ուսած է բժշկութիւն։ 1915ի համաշխարհային պատերազմին, Թրքական բժշկական խումբին հետ ռուսական ճակատը կը ղրկուի, ուր գերի կ'իյնայ և կը ղրկուի Սիպերիա, ուրկէ փախուստ կու տայ, անունը փոխելով կը հաստատուի Հայաստան և տուն մը կը գործէ Նոր Իոթ Րեյիֆի մէջ։ Երկար տարիներ Խորհրդային Հայաստանի մէջ իբր բժիշկ ծառայելէ յետոյ, պետութեան կողմէ հանգստեան կը կոչուի։

Իր խոր ծերութեան մէջ, ներկայիս կ'ապրի Նոր Մալաթիա, իր սեփական տան մէջ։

## ՄԱՆՈՒՇԵԱՆ ՍՏԵՓԱՆ

Սահակեանի վարժարանի մէջ պաշտօնավարած է իբր ուսուցիչ։

## ՄԱՆՉՈՒԿ ՎԱՐԺԱՊԵՏ (Արաբկիրցի)

Մայր Վարժարանին ուսուցիչ էր 1900ին (ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Ե. տարի, Թ. 4, էջ 10)։

## ՄԻՐԱՔԵԱՆ ՄԱՆՈՒԷԼ (Մալաթիացի)

Տնօրէն եղած է Սահակեանի։ Սանասարեանէն շրջանաւարտ։ Անոր ջանքերուն շնորհիւ առաջին անգամ գրասեղաններ մուտք գործեցին Մայր Վարժարանին սեմէն ներս։

Մէկ տարի պաշտօնավարելէ վերջ, Առաջ. Հմայեակ վրդ. Տէր Պաղտասարեանի հետ խնդիր ունենալով եւ չհանդուրժելով, դառնութեամբ լեցուած թողուց Սահակեան վարժարանը եւ մտաւ ԻՏԱՏԻ ՄԷՔԹԷՊԻՆ, ուր

*տարի մը պաշտօնավարելէ վերջ անցաւ Ամասիա եւ մինչեւ 1915 պաշտօնավարեց տեղւոյն Իրրանոսեան վարժարանին մէջ:*

## ՄՈՒՄՃԵԱՆ ՍԵԴՐԱԿ (Մալաթիացի)

*Ծնած է 1870ի ատենները, ու իր նախնական կրթութիւնը ստացեր Մալաթիոյ թաղային դպրոցներուն մէջ: Ազգային իշխանութիւնք տեսնելով անոր ուշիմութիւնը, Երուսաղէմ ղրկեցին, զինքը Ժառանգաւորաց Վարժարանին մէջ պատրաստուելու համար կղերականութեան: Հոն իր ուսումը աւարտելէ վերջ, վարդապետ չձեռնադրուեցաւ, որովհետեւ կղերական ծառայութեան փափաք չունէր, Մալաթիա դառնալով նուիրուեցաւ ուսուցչական ասպարէզին մէջ: Երկար տարիներ խղճմտօրէն կրթեց, դաստիարակեց ազգին զաւակները եւ ժողովուրդին մէջ կրթական վերազարթումի ոգին ըստեղծողներէն մին հանդիսացաւ: Ժամանակ մը վերջ Պրուսա անցնելով, մըտաւ պետական չերամաբուծական վարժարանը: Հոն գիտական եւ փորձառական ուսման շրջանը լրացուց, եւ յաջող քննութենէ անցնելով, իբրեւ մասնագէտ չերամաբոյծի վկայագիր ստացաւ: Կրկին իր ծննդավայրը վերադառնալով, իր նոր մասնագիտական ասպարէզին մէջ աշխատանքի լծուեցաւ: Միեւնոյն ժամանակ իր ազգային գործունէութիւնն ալ լքած ու ձգած չէր: Գէորգ վրդ. Արսլանեանի առաջնորդութեան շրջանին, ան գաւառական ժողովի, ինչպէս նաեւ ուսումնական խորհուրդի անդամ ընտրուեցաւ իր յայտնի կարողութեան եւ ձեռնհասութեան բերումով: Գաւառական ժողովի նիստերուն մէջ այլ եւ այլ ազգային հարցերու շուրջ անոր կրակոտ ճառախօսութիւնները ժողովրդային ընդհանուր գովեստի եւ գնահատութեան արժանացած էին: 1915ի իր նահատակութենէն առաջ, տեղւոյն կառավարութեան նախաքննական դատարանի ատեանին անդամ նշանակուած էր, ինչ որ կ'ապացուցանէ թէ յիշեալը Մալաթիոյ համայնքի կարողագոյն եւ արժանաւոր անձնաւորութիւններէն մին էր (Յակոբ Գ. Ալաջանեան):*

## ՄՈՒՐԱՏԵԱՆ ՅԱԿՈԲ (Մալաթիացի)

1886*ին բացուած Կրթասիրաց Ընկերութեան վարժարանին* (*ՊԱՊ ՈՒԽՏԻ*, *թ.* 57, *էջ* 18) *առաջին տնօրէն Աստուր Բահանեանին օգնական կարգուած է:*

1887*ին Թրքերէնի եւ հայերէնի դասեր կու տար:*

*Յետոյ Կիպրոս հաստատուած է:*

## ՅՈՎՀԱՆՆԵԱՆ ՅԱԿՈԲ

*Կրթասիրաց Վարժարանի բացման թուականէն* (1886) *սկսեալ կիրակի օրերը կատարած է այս վարժարանին մէջ բանախօսութիւններ, բարոյա-*

կան եւ գիտական նիւթերու վրայ (ՊԱՊ ՈՒԽՏԻ, թ. 57, էջ 19 ու ՊԱՊ ՈՒԽՏԻ 1942 թ. 4, էջ 12)։

## ՇԻՇՄԱՆԵԱՆ ՍԱՐԳԻՍ (Ատըեաւմանցի)

Սանասարեան վարժարանէն շրջանաւարտ, Գաբրիէլ Անտուրեանի տնօրէնութեան շրջանին ուսուցիչ եւ տնօրէն Սահակեան վարժարանի՝ Արսլանեան վրդ.ի ատեն։

Մէկ տարի Մալաթիա պաշտօնավարեց եւ գնաց Հռոմ, ուսանելու իր նախասիրած մասնագիտութիւնը (Պետրոս Ջօպեան)։

## ՆԱՀԻԿԵԱՆ ԱՒԵՏԻՍ (Հիւսէյնիկցի)

Շրջանաւարտ 1901ին Եփրատ Գոլէճէն, մէկ տարի Մալաթիա ուսուցիչ, Բողոքական վարժարանին։ Յետոյ երկու տարի ուսուցիչ Տիարպէքիրի, մէկ տարի Մալաթիա, մէկ տարի Խարբերդ, Ս. Յակոբ Թաղի Ազգային վարժարանը։ Գաղթած Ամերիկա։ Ատեն մը առեւտրական։

Վարիչ ԷՔՈՆԸՄԻ ԿՐՕՍԸՐԻ ընկերութեան։

## ՆԱՃԱՐԵԱՆ ՏԻԿԻՆ ԵՍԹԵՐ

Այժմ Նոր Մալաթիա, Հայաստան։ 1918ին ուսուցչուհի։

## ՇԽԼԱՅԵԱՆ ՀՐԱՆՈՒՇ (Տիարպէքիրցի)

1906ին շրջանաւարտ Եփրատ Գոլէճէն։ Երկու տարի պաշտօն վարած է Մալաթիա, Բողոքականաց վարժարանը։

Ամերիկա գաղթած է եւ հաստատուած է Պոսթըն։

Ամուսնացած Յարութիւն Նալպանդեանի հետ (Յիշատ. Եփրատ Գոլէճի, էջ 259)։

## ՈՐԲԵՐԵԱՆ ՄԱՐԻՆԷ (Տիկ.)

Մայր Ռուբէն Որբերեանի։

Իր տան մէջ ունէր վարժոց մը 15–20 աղջիկներով, որոնց նախնական դասեր կու տար եւ ասեղնագործութիւն կը սորվեցնէր։

Բողոքականաց Վարժարանին անդրանիկ ուսուցչուհին կ'ըլլայ 50–60 աշակերտով (ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Գ. տարի, թ. 2, էջ 15)։

Պելօ, Աստուր, Պեյլիկ եւ Թիֆթիկճի խօճաներու ատենէն այս ուշիմ աղջիկը գլխաւորաբար ինքնաշխատութեամբ եւ ինքնազարգացմամբ եղած էր քաղաքին առաջին հայ վարժուհին։

Անոր ջանքերով դրուած է հիմը իգական սեռի կրթական գործին, նաեւ տուներու մէջ մասնաւոր դասերով եւ յետոյ միսիոնարներու օգնութեամբ բանալով մասնաւոր կրթարան։

## ՈՐԲԵՐԵԱՆ ՓՐՈՖ. Ս. ՄԿՐՏԻՉ (Մալաթիացի)

*Ծնած է Մալաթիոյ մէջ* 1868 *Օգոստոս* 24*ին։ Այս յամառ աշխատութեան տիպար մանկավարժ ուսուցիչը, խոնարհ, բարի արհեստաւորի մը զաւակն էր։ Ինքնօղնութեամբ, հաւատքով ու աննկուն կամքով, իր այդ նախանձելի դիրքին բարձրացած էր։ Դիւրին բան է դրամ ունենալով կարդալը, սակայն մարդուս մեծութիւնը եւ անոր կամքի եւ նկարագրի տոկունութիւնը չքաւորութեան եւ կարօտութեան մէջ կը յայտնուի։ Տնտեսական աննպաստ պայմաններու տակ, իր մէջ յայտնուեցաւ պողպատեայ կամք, ու յարատեւութեան ոգի։ Նկարագրի տոկունութիւն եւ մաքուր փառասիրութիւն։ Իր ծննդավայրին մէջ ստացած է իր նախնական կրթութիւնը, Բողոքականներու վարժարանին մէջ, Կարապետ Պէշկէօթիւրեանի տնօրէնութեան շրջանին* (1878–1882)*։ Եղած նոյն վարժարանին մանկարանին ուսուցիչ, Կարապետ*



**Փրոֆ. Մկրտիչ Ս. Որբերեան**

*Մանուշեանի տնօրէնութեան տակ։ Յետոյ Եփրատ Գոլէճ մտած է, ուսման պապակը յագեցնելու համար։ Իր դպրոցական ծախսերը ինք հոգացած է, աշխատանքով եւ վերջին աստիճան ինքնազրկումով, եւ վերջապէս* 1894*ին աւարտած է Գոլէճի ընթացքը։ Մր. Հուիլըր նկատի ունենալով անոր նկարագիրն ու ջանասիրութիւնը՝ զայն ուսուցչութեան կոչած է։ Իր բոլորանուէր սրտով ծառայութեան իբր վարձատրութիւն, Եփրատ Գոլէճի Նախագահը* 25*ամեայ յոբելեանի առթիւ, զինք ուսուցչապետի տիտղոսով օժտած է։ Որբերեան մանկավարժ, գրող եւ խօսող էր։*

*Գոլէճին կողմէ Ամերիկա կը ղրկուի, ուր Բրինսթըն համալսարանին մէջ տարի մը կը հետեւի իր սիրած ճիւղին*[1]*։ Ու երբ Խարբերդ կը ժամանէր՝ արդէն սկսած էր Համաշխարհային արիւնահեղ պատերազմը։*

1915 *Մայիս* 1*ի գիշերը, իր մահիճին մէջ ձերբակալուեցաւ եւ գիշերանոցը վրան, բանտ նետուեցաւ։ Ջուր անցան իր կնոջ, սրտահատոր զաւակներուն ու ծերունի զոքանչին այդ գիշերուան մէջ բարձրացող աղիողորմ ճիչերը ու կանչերը։ Քանի չորս ժամ անագորոյն ծեծերու ու չարչարանքնե–*

(1) *Այսինքն բնական աշխարհագրութիւն, երկրաբանութիւն եւ հանքաբանութիւն։*

*րու կ՚ենթարկուի, որմէ վերջ կէս-խելայեղ վիճակով, Մէզրէի Ամերիկեան հիւանդանոցը կը փոխադրուի կառքով մը։ Ատեն մը հոն դարմանուելէ յետոյ իր ընտանիքով կը մնայ Մէզրէի երկրորդ ու ամենամեծ կարաւանին եւ Մալաթիոյ մօտերը զինք կը բաժնեն իր ընտանիքէն՝ զրկելով զինք իր սիրելիներու վերջին մնաք բարովի համբոյրներէն։ Կը նահատակուի 1915ի սկիզբները։*

*Փրոֆ. Որբերեան միջահասակ էր, մարմնով աշխոյժ եւ կայտառ։ Ունէր պայծառ ու գեղեցիկ դէմք մը, իր սրտին նման։ Իր յաւէտ մանրուկ աչքերը սեւ էին եւ խորաթափանց։ Դէմքին շուք ու գեղը աւելի կ՚աւելնար, շնորհիւ իր կարճ ու խարտիշահեր մօրուքին, որուն վրայ իր բերնին երկու կողմերէն հեզօրէն թափուած էր կլոր ընչացքը. գեղեցիկ խոշոր ճակատ մը ունէր, միշտ խնամքով սանտրուած բայց խարտիշահեր մազերուն ներքեւ։*

*Այս գեղեցիկ մարդը օրինաց կառչող մըն էր տառապէս։ Տղայոց Վարժարանի Տեսուչն էր։ Սկզբունքի տէր այս մանկավարժը, մեծ մտային տաղանդ յայտնաբերած չէր, սակայն չեմ յիշեր մէկը, որ իրեն չափ յարատեւօրէն եւ յամառօրէն աշխատէր ու մտնէր գրքերու խորը։ Բծախնդիր էր իր դասերուն մէջ, խիստ ու պահանջկոտ։ Սակայն անկէ դուրս ընկերական էր ու զուարթարան։*

*Չեմ գիտեր աւելի ճարտար ու աւելի զօրեղ վարպետ մը նկարագրել, քան իր Քրիստոնէական հաւատքին ու կեանքի գործին հոգեւին փարող այս մտքի մշակը։ Փրոֆ. Մկրտիչ Որբերեան ունի ԲԻՒՐԱԿՆին մէջ (տես* 1900, *էջ* 68, 84, 91, 115) *Մալաթիոյ նուիրուած յօդուածաշարք մը, հաւանօրէն ունէր ուրիշ աշխատութիւններ ձեռագիր։ (Տես* Խարբերդի Եղեռնը, Յիշատակարան Եփրատ Գոլէճի, *էջ* 156—7, *Ատանալըեան վեր. Կարապետ* Յուշարձան Հայ Աւետարանականաց, *էջ* 379, *ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Ը. տարի, Թ.* 4, *էջ* 13 *եւ ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ. տարի, Թ.* 1, *էջ* 15)։

## ՉԹԻԿԵԱՆ ԵՒԱ (Խարբերդցի)

*Եփրատ Գոլէճէն շրջանաւարտ,* 1888*ին դասատու Բողոքականաց Վարժարանին, երեք տարի ուսուցիչ Եփրատ Գոլէճի մէջ, իսկ մէկ տարի Խարբերդի վարի Թաղի դպրոցը։*

*Հուսկ ուրեմն հինգ տարի Զմիւռնիոյ Ամերիկեան վարժարանը։*

*Ամուսնացած Գրիգոր Դանիէլեանի հետ։ Գաղթած է Ամերիկա եւ հոն մեռած* (Յիշատակ. Եփրատ Գոլէճի, *էջ* 242)։

## ՊԱԼՃԱՆԵԷՄԷՋԵԱՆ ԽՕՃԱ

1860*ական թուականներէն սկսեալ երկար ատեն, ազգային վարժարաններու մէջ պաշտօնավարելէ ետք, իր ծերութեան օրերուն, Մալաթիոյ Լատին Գաբուչիններու վարժարանին մէջ պաշտօնավարած է,* 1895*էն սկսեալ, իրր Կիւրինցի Յովհաննէս Աճէմեանի օգնականը։*

## ՊԱՂՏՕԵԱՆ ԵԴՈՒԱՐԴ (Մալաթիացի)

Որդի Նափոլէոն Պաղտօեանի (+1895)։ Զոհ 1915ի եղեռնին։

1913ին աւարտած է Եփրատ Գոլէճը։ Մասնաւոր սէր եւ հակում ունէր երաժշտութեան։

1912–1913ին փրոֆ. Սամուէլ Խաչատուրեանի բացակայութեան ինքն վարած է Եփրատ Գոլէճի նուագախումբը եւ երաժշտախումբը։

Եփրատի շրջանը աւարտելէ վերջ, ուսուցիչ եղած է Մալաթիա, Բողոքական վարժարանը։

Կ՚ուզէր Պոլիս երթալ իրաւաբանութեան հետեւելու համար։ Զինուորագրուեցաւ եւ իբր Սպայից Վարժարանի ուսանող, Երզնկա ղրկուեցաւ եւ հոն սպաննուեցաւ։ (Արմէն Պարտիզեան ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ. տարի, Թ. 2, էջ 2–3)։

## ՊԱՂՏՕԵԱՆ ՊԱՅԾԱՌ (Մալաթիացի) (տիկ. Խաչատուր Ստեփանեան)

Քոյր Եդուարդի։

Եփրատ Գոլէճէն շրջանաւարտ եղած է 1913ին։ Երկու տարի Մալաթիա ուսուցչուհի եղած է։ Ամերիկա գաղթած է եւ հոն հաստատուած (Բիալի Քալ.) ։(Յիշատակարան Եփրատ Գոլէճի, էջ 275)։

## ՊԷՆՆէԵԱՆ ՀԱՄԲԱՐՁՈՒՄ (յետոյ Տ. Կարապետ Քհնյ.) (Մալաթիացի)

Ծնեալ է Մալաթիա 1864ին։ Նախնական եւ վերջնական ուսումն ու կրթութիւնը ստացած է նախ իր հօր Յարութիւն քահանայ Պէննէեանէ, յետոյ Մալաթիոյ մէջ գտնուած նախնական դպրոցէ մը։ Ու յետոյ ինքնաշխատութեան շնորհիւ բաւական հմտութիւն ձեռք ձգած է եւ ուսուցչութիւն ըրած է Ս. Երրորդութեան Արամեան վարժարանին մէջ։ Ժամանակ մը պարապած է քրտական դերձակութեամբ եւ յետոյ լքելով արհեստը կրկին ուսուցչութեամբ պարապած է։

1895 Թուականներու նախօրեակին Ամերիկայէն եկած անձի մը, որուն անունը յիշողութենէս վրիպած է եւ Տ. Եղիշէ քհնյ. Խաչատուրեանի հետ միասին նախատեսելով հետագայ 1895ի պատահելիք աղէտը, նախազգուշական միջոցներ ձեռք առած են ձեռնառումբեր պատրաստելով։ Պէննէեան քհնյ. նաեւ Թաշճեան Գրիգոր քհնյ.ի հետ հիմնադիրներէն մէկն էր ՄԱՍԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ անուանուած իբր թէ մշակութային միութեան որ աքօղեալ Հնչակեան մասնաճիւղ մըն էր։

1895ի կոտորածէն յետոյ որբ մնացած տղայոց համար Ս. Գրիգոր Լուսաւորիչ վանքի մէջ բացուած որբանոցին ուսուցչութիւնը ստանձնած է մինչեւ 1903 Թուականը, ու յետոյ որբանոցի լքումով ինքն ալ ձգած է այդ պաշտօնը։ Նոյն Թուականներուն տեղական ժողովուրդի բաղձանքին անսալով Տ. Մուշեղ քհնյ.ի հետ քահանայ ձեռնադրուած է Սիսի մէջ 1905ին Սա–

Հակ կաթողիկոսի ձեռամբ[1]:

Գրած է «Աստծապատում» անուն գրքոյկ մը, որ Կ. Պոլիս տարագըրուելէ յետոյ ղրկուած է Մալաթիա: Ունէր նաեւ շատ մը ուրիշ մանր գըրուածքներ որոնց մեծ մասը իր ձեռքով փճացուցած է Թուրք ջարդարարներու վախէն, վասնզի յեղափոխական թղթեր փնտռելու պատրուակով տուներէ ներս կը մտնէին ու ամէն տեսակ գրութիւնները եւ չարչարանքներու կ'ենթարկէին ենթական: Իր գրուածքներուն մէկ մասը որ Համբարձում



Տ. Կարապետ Քհնյ. Պէննէեան

տարագրութիւնը կը կրէր՝ հանգուցեալ Տիկ. Հայկանուշ Փիլիպպոսեանի պաղատանքին վրայ յանձնած է անոր, յիշեալը խնամքով փաթթելէ յետոյ գրուածքները պատի մը ճեղքին մէջ զետեղելով ինքն ալ իր կարգին աքսորի ճամբան է բռնած: Երբ հրաշքով կ'ազատուի ու ետ կը դառնայ, առաջին գործը կ'ըլլայ պահած թղթերը փնտռել բայց դժբախտաբար ժամանակի ընթացքին ձիւնի եւ անձրեւի ազդեցութեամբ մեծաւ մասամբ փճացած էին:

Իր վերջին գրածն էր «Տեղագրութիւն Մալաթիոյ» անուն գիրքը որ աւարտելով ղրկած էր Կ. Պոլսոյ պատրիարքարան, ապահովելու համար: Զինադադարէն յետոյ հանգուցեալ Տոքթ. Միհրան Քէչիշեանի ջանքերուն շնորհիւ կը ստուգուի որ ձեռագիրը դեռ Պոլիս պատրիարքարանի քով կը գտնուի, սակայն Քէմալական շարժումի պատճառով պատրիարքարանը կ'ուղարկէ Երուսաղէմի պատրիարքարանը:

Լաւ թրքերէն եւ քիւրտերէն գիտնալուն պատճառաւ, ժամանակ մը

---

(1) Հաւանօրէն սխալ է. վասնզի 1905-ին ձեռնադրուած երեք քահանաներուն մէջ Կարապետ քհնյ. Պէննէեան չկար:

վարած է քիւրտ քլիւպի նախագահութիւնը։ Իր կարգին հայրս նաեւ 1915ի հայկական ջարդերու շրջանին, ոտրիկաններու կողմէ կը ձերբակալուի։ Աղիզին Մուստաֆա աղան որ իր շատ բարեկամը եւ հայասէր ու մարդասէր անձ մըն էր, քեզ կ'ուզեն բռնել կը տանին, չեմ յիշեր Ինտարա թէ Տաչ Տափա, ու կացինահար կը սպաննեն ուրիշ շատ մը հայ նահատակներու նըման։ (Իր որդին Պարոյր Պէննէեանի գրուածէն քաղուած, Սենեքերիմ Ափալաքեան— տես նաեւ ՊԱՊ ՈՒԽՏԻ թ. 27 էջ 6 եւ ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ Ը. տարի թ. 2, էջ 11–12)։

## ՊԷՇԿԷՕԹԻՒՐԵԱՆ ԿԱՐԱՊԵՏ (Խարբերդցի)

1880ին անդրանիկ շրջանաւարտներէն մին Եփրատ Գոլէճի։ Նոյն տարին իսկ ղրկուած է Մալաթիոյ Բողոքականաց վարժարանը իբր տնօրէն։ Երեք տարի (1880–1883) հոն պաշտօնավարած է։ Յետոյ 1883–1886 պաշտօնավարած է Խարբերդ, եւ 1886–1889ին՝ Սեբաստիա։ 1890ին ուսուցիչ կը նշանակուի Իզմիրի միջազգային Գոլէճին մէջ Հայերէն լեզուի եւ գրականութեան։ 25 տարուան պաշտօնավարութենէ յետոյ որուն ընթացքին



Փրոֆ. Կ. Պէշկէօթիւրեան

Փրօֆէսէօր տիտղոս կը տրուի, 1915ին Ամերիկա Տիթրոյթ կ'երթայ եւ հոն կը մեռնի 1941ին։

Աշխատակցած է հայ թերթերու ինչպէս ԱՒԵՏԱԲԵՐԻ, ԱՐԵՒԵԼԵԱՆ ՄԱՄՈՒԼԻ, ԲԻՒՐԱԿՆԻ, ԿՈՉՆԱԿԻ, ՊԱՅՔԱՐԻ։

Ունի «Բարոյաշունչ Քերթուածներ» անուն գրքոյկ մը։ Կարող եւ լաւագոյն բեմբասաց մը, որ ղեկավարած է իր Մալաթիա պաշտօնավարութեան տարիներուն (1880–1883) Բողոքական եկեղեցիին բեմը, այնքան ճեռնհասութեամբ որ կառավարած էր դպրոցը (Յիշատակարան Եփրատ Գոլէճի էջ 160)։

## ՊԼԸՔԵԱՆ ԳԷՈՐԳ

Հայ Աւետարանականներու վարժարանին մէջ ուսում առած է։
Օգնական ուսուցիչ եղած է 1895էն առաջ նոյն վարժարանին մէջ։

## ՊՕՂԻԿԵԱՆ ԱԲՐԱՀԱՄ (Հիւսէյնիկցի)

*1899ին վկայուած Եփրատ Գոլէճէն, ուսուցիչ Մալաթիոյ Բողոքական լարժարանը, նաեւ Հիւսէյնիկ եւ Տիարպէքիր։*
*1905ին Ամերիկա գաղթած է եւ դերձակութեամբ զբաղած։*
(Յիշատակարան Եփրատ Գոլէճի էջ 200)։

## ՍԱՀԱԿԵԱՆ ՅԱԿՈԲ (Կիւրիւնցի) (Քօմիսէր Յակոբ էֆ․)

*Յովհաննէս Աճէմեանի Լատինաց վարժարանի մէջ օգնական (Յակոբ Մուրատեան)։*
(*ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Գ․ տարի, Թ․* 2, *էջ* 15)։

## ՍԱՋԱՔԼԵԱՆ ՄԱՐՏԻՐՈՍ

*1908ին Սահակեանի աշակերտ։ Ամերիկա անցած եւ հոն Քալիֆորնիա մեռած է վերջերս։*

## ՍԱՋԱՔԼԵԱՆ ՍԵՐՈԲ

*1890ական Թուականներուն ուսուցիչ Ս․ Յարութիւն եկեղեցւոյ վարժարանին։*
*Յետոյ Ամերիկա անցած է։*
(*ՊԱՊ ՈՒԽՏԻ, Բ․ տարի, Թ․* 4, *էջ* 19)։

## ՍԱՐԱՃԵԱՆ ԱՐՄԵՆԱԿ (Բերրթակցի)

*Եփրատ Գոլէճին եւ անոր Աստուածաբանականին շրջանաւարտ 1908ին։ Յետոյ մէկ տարի պաշտօնավարած է Մալաթիոյ Բողոքականաց վարժարանը։*
*Քարոզիչ Թէմրան-Քղի (մէկ տարի)։ Ամուսնացած է Էլմաս Աբգարեանի հետ։ Իբր քարոզիչ պաշտօնավարած է Սեւերէկի, Ուրֆայի, Զնդուշի, Կարմրիի եւ Իջմէի մէջ։*
*1915ին նահատակուած* (Յիշատ․ Եփրատ Գոլէճի, էջ 218)։

## ՍԱՐԱՖԵԱՆ ԵՂՍԱ (Խարբերդցի)

*Շրջանաւարտ Եփրատ Գոլէճէն 1886ին։ Երկու տարի ուսուցչուհի Մալաթիա։ Երկար տարիներ Եփրատ Գոլէճի եւ Մեզրէի Գերման վարժարանի մէջ պաշտօնավարած է։*
*1915ին նահատակուած է Ուրֆա* (Յիշատ․ Եփրատ Գոլէճի, էջ 242)։

## ՍԵՐԿԻՃԵԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ (Հիւսէյնիկցի)

*1906ին շրջանաւարտ Եփրատ Գոլէճէն։ Մէկ տարի ուսուցիչ (Հայ Բո-*

*ղոքական ?) վարժարանին։ Ամուսնացած է Օր. Թէրէզ Նահիկեանի հետ։ Առեւտրական Հալէպի մէջ։ Նահատակուած* 1915*ին* (Յիշատ. Եփրատ Գոլէճի, *էջ* 212)։

## ՍԷՖԷՐԵԱՆ ԳԷՈՐԳ

*Շրջանաւարտ Եփրատ Գոլէճէն։ Աւագ ուսուցիչ Մանասէ Անտոնեանի տնօրէնութեան ատեն Մալաթիոյ Աւետարանական վարժարանին* (*ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ*, *Դ. տարի*, *Թ.* 2, *էջ* 7)։

## ՍԷՖԷՐԵԱՆ ՄԱՐԻՋԱ (Խարբերդցի)

*Մէկ տարի ուսուցչուհի Մալաթիոյ Հայ վարժարանը եւ մէկ տարի Խարբերդի Լատինաց դպրոցը։ Ամուսնացած է Սարգիս Թէրխանեանի հետ։ Գաղթած Ամերիկա եւ հաստատուած Ուստր* (Յիշատ. Եփրատ Գոլէճի, *էջ* 267)։

## ՍԻՍԵԱՆ ՅԱԿՈԲ

*Մալաթիոյ Հայ Կաթողիկէ համայնքութեան Խաչատուրեան վարժարանին տնօրէնութիւնը վարած է* 1907—1910։

## ՍԻՍԼԵԱՆ ՅԱԿՈԲ

1890*ական թուականներուն ուսուցիչ Ս. Յարութիւն դպրոցին* (*ՊԱՊ ՈՒԽՏԻ*, *Բ. տարի*, *Թ.* 4, *էջ* 10)։

## ՍԻՐՈՒՆԵԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ

1900*ին Շուկայի Սահակեան դպրոցին ուսուցիչ*։

## ՍԻՐԱԿԱՆԵԱՆ ՍԻՐԱԿԱՆ (Արաբկիրցի)

*Ուսուցիչ Բողոքականաց վարժարանի*։

## ՏԱՄՊՈՒՐԱՃԵԱՆ ԾԵՐՈՒՆ ՎԱՐԺԱՊԵՏ

*Ս. Յարութեան Թաղին Ներսէսեան վարժարանին առաջին ուսուցիչը եղած է։ Հայերէն եւ Թուրքերէն լեզուներուն համար հմուտ դասախօս։*

*Առաջ Պեյօ, Աստուր, Պէյլիկ վարժապետներուն աշակերտ էր։ Ատեն մը Թիֆթիկճի խօճայի հետ Շուկայի եկեղեցիին մօտ երկու դասարանով եւ մեծ սրահով Սահակեան դպրոցին մէջ կը դասախօսէր։ Շատ աշակերտներ հասցուցած է։*

1872—73*ին բացուած Ներսէսեան վարժարանին առաջին ուսուցիչը*

եղած է։ Սակայն իր գործունէութեան մեծ դաշտը եղած է Սահակեան վարժարանը։

1900էն քիչ առաջ ուսուցչութենէ դադրած էր եւ Ս. Յարութեան եկեղեցիին երգեցողութիւնները կը ղեկավարէր։

## ՏԵՓՈՅԵԱՆ ՊԵՏՐՈՍ (Խուլլուցի)

1905ի աւարտական Եփրատ Գոլէճի։ 1905–1908 երեք տարի ուսուցիչ Մալաթիոյ Կեդրոնական վարժարանին։

Առաջին ընթացաւարտները տուաւ վարժարանը 1906ին (Ստեփան Մանուշեան ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, ԺԵ. տարի, Թ. 3–4, էջ 45)։

1908ին Ամերիկա գացած է։

Համաշխարհային Ա. պատերազմին կամաւոր գացած Կովկաս։ 1919ին վիրաւոր, կը դառնայ Պոլիս։ Տնօրէն Ազգային խնամատարութեան 1920ին։ 3000 որբերու կեանքը ապահովելէ վերջ, կ'անցնի Եգիպտոս։ Աշխատակից ԱՐԵՒԵԼԵԱՆ ՄԱՄՈՒԼԻն, ՊԱՀԱԿի, ՀՈՎԻՏի, ՄՇԱԿի, ԱՐԱԳԱԾի, ԺՈՂՈՎՈՒՐԴԻ ՁԱՅՆի, ՊԱՅՔԱՐի։

Խմբագիր Թիֆլիսի ՀԱՅԿԱՇԷՆ ամսագրի։ Պաշտօնավարած է Մաթոսեան գործարանին մէջ։



Պետրոս Տեփոյեան

1948–1950 վարած է ԱՐԵՒի խմբագրապետութիւնը։

Թլկատինցիի վրայ ընդարձակ ձեռագիր աշխատութիւն մը ունի։

Մեռաւ 6 Դեկտ. 1956ին Գահիրէ։

## ՏԷՐ ՊՕՂՈՍԵԱՆ ՊՕՂՈՍ (Ակնցի)

Սանասարեանէն շրջանաւարտ նուիրուած ուսուցիչ մըն էր որ երկար տարիներ որպէս ուսուցիչ (1909–1915) եւ տնօրէն (Գէորգ վրդ. Ասլանեանի տեն) պաշտօնավարած է Մայր–Վարժարանին մէջ։ Ան սիրեց Մալաթիոյ համայնքը եւ աշակերտները, մինչեւ 1915ի եղեռնը։

Այդ սեւ թուականին զարհուրելի տառապանքներով եւ չարչարանք–

*ներով նահատակուեցաւ (Պետրոս Զօպեան)։*

*Վերջին ծայր նուիրուած իր պաշտօնին, ընկերական եւ դիւրահաղորդ, գրաւած էր իր պաշտօնակիցներուն ու աշակերտներուն համակրութիւնն ու սէրը։*

*Ան հաւատարապէս սիրուած էր նաեւ տեղւոյն Հայ համայնքէն։*

## ՏԷՐ ՄՈՒՇԵՂԵԱՆ ՆԱԶԱՐԷԹ (Տ. Մուշեղ Քհնյ.) (Մալաթիացի)

*Ս. Երրորդութեան եկեղեցւոյ Արամեան Վարժարանին ուսուցիչ եղած է։ 1905ին քահանայ ձեռնադրուած է Սահակ Կաթողիկոսէն (ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Գ. տարի, Թ. 2, էջ 15)։*

## ՏԻՐԱՏՈՒՐԵԱՆ ՏԻԳՐԱՆ (Աղրնցի)

*Եփրատ Գոլէճէն շրջանաւարտ 1906ին։ Մէկ տարի ուսուցիչ Հայ Բողոքականաց վարժարանին մէջ (Մալաթիա)։ Մէկ տարի ալ Եփրատ Գոլէճի մէջ ուսուցիչ եղած է։ 1908ին գաղթած է Ամերիկա եւ երեք տարի ուսանող եղած է Հարթֆըրտի Աստուածաբանական Ճեմարանի եւ շրջանաւարտ 1911ին։*

*1912էն ի վեր Ա. եւ Մ. Գարակէօզեաններու Բուշէլ Փարքի մանարանին մէջ աշխատած է 43 տարի իբր ընդհանուր վարիչ։ Բարեգործականին ի սպաս դրած է իր ջանքերը եւ երկար տարիներ Կեդրոնական Վարչութեան*



**Տիգրան Տիրատուրեան**

*անդամ եղած է, ի վերջոյ փոխ–Նախագահ։*

*1942ին Պատուոյ եւ 1952ին Բարերար անդամ ընտրուած է։ Մեռած է 17 Սեպտ. 1954ին Հէքընսէք (Ն. Ճ. Մ. Նահանգներ)։*

## ՏՕՆԻԿԵԱՆ ԵԶՈՎԲՈՍ

*1888ին Մալաթիոյ վարի Սանտըղըր թաղին վարժարանին մէջ բանախօսութիւններ կ'ընէր։*

*Երբ Մալաթիոյ ԿԷՕՔ ՍՈՔԸ թաղին մէջ Վէավէսէեաններու տան մէջ բացուած դպրոցը փակուեցաւ, Հայադաւանները որպէսզի Բողոքականներու դպրոցը չերթան, նոր դպրոց մը բացին Գէորգ Հաւսարեանի տան մէջ։ Նշան Քէփէնէկեան կ'ըսէ թէ «այստեղ մեր վարժապետին էզօպօ կ'ըսէին, մականունն էր Տօնիկեան։ Բայց մեր չար բախտէն այս երանելի վարժապետը ով որ հարուստի զաւակ էր, բարձր կարգերուն մէջ կը դնէր ու աղքատներուն կարեւորութիւն չէր տար։ Այն տղաները, որ իրեն պտուղ կամ անուշեղէն չէին բերեր, եւ կամ այն տղաները, որ ձմեռը հետերնին փայտ մը չէին բերեր վառարանին համար, լքուած էին․ բարեբախտաբար երկար չտեւեց ու այս դպրոցն ալ գոցուեցաւ»։*

(*ՊԱՊ ՈՒԽՏԻ, Բ. տարի, Թ.*1, *էջ* 19)։

## ՐԱՀԱՆԵԱՆ ԱՍԱՏՈՒՐ

*Մալաթիոյ ուսումնական զարգացման առաջին ռահվիրաներէն մին որ Խօճա անունով կը ճանչցուէր շատերէն առանց անունի։ Առաջին ուսուցիչն եղած է 1858ին բացուած անդրանիկ դպրոցին։ Հայագէտ եւ նոյնպէս ծանօթ Թրքերէնի։*

*1886ին ալ Կրթասիրաց Ընկերութեան Կէմալմազ թաղին մէջ բացած վարժարանին դաստիարակը եղած է, օգնական ունենալով Յակոբ Մուրատեանը։*

*«ՐԱՀԱՆԵԱՆ ԱՍԱՏՈՒՐ վարժապետ կը բնակէր Տուկայի եկեղեցւոյ ետեւի թաղը, Րահանեան մեծ կալուածի անկիւնը շինուած իր աղքատիկ խրցիկին մէջ… 70–80 տարեկան կար, երկար, նիհարակազմ, սուր քիթով եւ նիհար դէմքով մարդ մըն էր։ Իր հասակը ծածկուած էր ուսէն մինչեւ ոտքերը իջնող ճիւպպէով մը, տակը էնթարի մը սեւագոյն, իր մէջքի գօտիին մէջ ունէր կարդացողներու յատուկ տիվիտը, որուն մէջ մելան ու գրիչ, եւ միշտ պատրաստ գրելու իրեն դիմողներուն խնդրանքները»։*

## ՓԱՓԱԶԵԱՆ ԽՈՐԷՆ

*Ուսուցիչ Ս. Յարութիւն թաղին դպրոցին եւ լուսարար նոյն եկեղեցիին 1908էն 1911։ Ապա անցած է Ամերիկա։*

## ՓԱՓԱԶԵԱՆ ՅԱԿՈԲ

1906ին *Սահակեանի ուսուցիչ։ Նահատակուած* 1915ին։

## ՓԱՓԱԶԵԱՆ ՅԱՐՈՒԹԻՒՆ

*Եղբօր որդի Պէլլիկ վարժապետի, որուն հետ Սահակեան Մայր-Վարժարանին մէջ պաշտօնավարած է* 1886ին։

## ՓԱՓԱԶԵԱՆ ՊԱՊԼՕ

1900ին *ուսուցիչ Շուկայի դպրոցին*։

## ՓԻԼԻՊՊՈՍԵԱՆ ՄԻՔԱՅԷԼ (Վեր.)

*Հայ Աւետարանականաց վարժարանին ուսուցիչ։ Յաջորդած է իբր տնօրէն Կարապետ Մանուեանի*։

## ՔԷՆՏԷՐԵԱՆ ԳԷՈՐԳ (Մալաթիացի)

1906ին *մտած է Եփրատ Գոլէճ։ Շրջանաւարտ ըլլալէ ետք եկած Մալաթիա եւ ուսուցիչ եղած է։ Նահատակուած է* 1915ին (*ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ. տարի*, 1—16)։

## ՔԷՇԻՇԵԱՆ ՕՐ. ՄԱՐԻ (Շապին-Գարահիսարցի)

1906ին *բացուած Մանկապարտէզի Ա. վարժուհին։ Շապին-Գարահիսարէն բերուած է Մալաթիա*։

## ՔԷՉԷՃԵԱՆ ՊԵԼԼԻԿ (Մալաթիացի)

*Մալաթիոյ կրթական կեանքին առաջին ռահվիրաներէն մին։ Մեծ վարժապետի անուն եւ հռչակ ունէր եւ մեծ յարգանք կը վայելէր։ Սահակեան Մայր-Վարժարանի մէջ անոր հիմնարկութենէն սկսեալ պաշտօնավարած է։ Հայագէտ էր։ Այս ողնայարը ծռած ծերուկը*[1] *որ գաւազանով կը քալէր, պաշտօնավարած է մինչեւ* 1890*ական թուականները։ «Պէլլիկ վարժապետ Քէչէճեան որքան իր առաջացած տարիքով (գրեթէ* 85) *նոյնքան եւ շատ աւելի ուշագրաւ էր իր ձեռքի հաստ գաւազանով, քանզի իր կքած մարմինը, բնականէն ծռմռկած ողնաշարը, կռնակին վրայ բրգացած մարմնակոյտը, ծուռ վիզը միշտ դէպի վար, որ կը դժուարացնէր աջ ու ձախ նայիլ աչքերուն անկիւնով, եւ այս բոլորին հետ իր կարճ հասակը բոլոր հասակակիցներուն համար տարօրինակ եւ քիչ մը ծիծաղելի բան մը ունէին իրենց*

---

(1) *Տոքթ. Մ. Քէշիշեան զայն կը կոչէ «Գամպուռ վարժապետ» ժողովուրդին անոր տուած անունով* (*ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Բ. տարի, թ. 2, էջ 8*)։

*մէջ։ Սակայն իր ՄԵԾ ՎԱՐԺԱՊԵՏԻ անունն ու հուշակը, մանաւանդ իր ձեռքի սփայով կրթուած եւ արդէն տարիքաւոր մարդոց անոր հանդէպ ցոյց տուած սէրն ու յարգանքը կը զօրէին, սանձ կը դնէին մեր կատակներուն եւ ծաղրանքին»* (*Տոքթ. Քէչիչեան ՊԱՊ ՈՒԽՏԻ, թ.* 18)։

ՔԷՓԷՆԷԿԵԱՆ ՄԱՆՈՒԷԼ (Մալաթիացի)

1906*ին Մալաթիայի վարժարանէն եւ* 1910*ին Եփրատ Գոլէճէն շրջանաւարտ։ Ուսուցիչ Մալաթիա. նահատակուած է* 1915*ին* (Յիշ. Եփրատ Գոլէճ 225։ *ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ. տարի, թ.* 1, *էջ* 16)։

ՓԱԼՃԵԱՆ ՏԻԿԻՆ ԷԼՄԱՍ (Բալուցի)

*Ուսուցչուհի Բողոքականաց վարժարանին։ Եփրատ Գոլէճէն շրջանաւարտ։*

# Զ.

# ՎԻՃԱԿԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐ

*Ինչպէս տեսնուեցաւ Մալաթիոյ առաջնորդութիւնը իբր հովեւոր տեսչութիւն հայրենակ ընդարձակ նահանգի մը, ունէր բազմաթիւ թեմեր, որոնց կրթական գործին ալ ուշադրութիւն ընծայելու պարտաւորուած էր։ Սակայն ինչպէս տեսնուեցաւ, Մալաթիա իբրեւ կեդրոն ինքն չէր կազմակերպուած որ կարենար իրեն ենթակայ գիւղերուն վրայ ուշադրութիւն դարձնել։ Անոր համար դժբախտաբար Մալաթիոյ Առաջնորդութեան ենթակայ վայրերու մէջ շատ քիչ թիւով եւ շատ դէշ վիճակի մէջ դպրոցներու յիշատակութեան միայն կը հանդիպինք։*

*Իսկ անոնց վիճակին վրայ գրեթէ բնաւ տեղեկութիւն չունինք բացի վիճակագրական քանի մը արձանագրութիւններէ, զորս ներկայացնել պարտք կը համարեմ գոնէ ընդհանուր գաղափար մը տալու համար։*

*Առաջինը այդ վիճակագրութիւններուն որ ունիմ իմ տրամադրութեանս տակ,* 21 *Մարտ* 1902 *թուականով Առաջնորդական Տեղապահ Խաչատուր վրդ. Տէր Ղազարեանի ընդարձակ մէկ տեղեկագիրն է, որ անիկա կազմած է, ինչպէս կ'երեւի իր աշխատութենէն, շատ խնամով եւ խղճմտութեամբ, անոնց խեղաթիւրումներու։ Անոր քաղաքին դպրոցներուն մասը արդէն ներկայացուցած եմ* (*տես վերը, էջ* 690—733)։

*Գաւառի վիճակային վարժարաններու այս տեղեկագրին մէջ կը յիշատակուին հետեւեալ վարժարանները.*

1. *ՄՈՒՇՈՎԿԱՅ* (*Արգէ տաղի գայմագամութեան մէջ*)։

1895էն առաջ այս գիւղը ունեցած է դպրոց մը որ Համիտական ջարդէն վերջ դադրած է գոյութենէ։

2. ՀԱՔԻՄԽԱՆ (Ապչէ տաղի դայմագամութեան մէջ)։

Նոյնպէս մինչեւ 1895 ունէր դպրոց մը որ ջարդէ ետք փակուած է։

3. ՀԻՍՆԻ ՄԱՆՍՈՒՐ.

Ունի երկսեռ վարժարան 100 աշակերտով եւ 100 աշակերտուհիներով եւ 2 ուսուցիչ եւ 2 ուսուցչուհիներով։

1895ին ջարդին պատճառով պահ մը դպրոցը փակուած սակայն ետքը վերաբացուած է։

Հիսնի Մանսուրի մէջ Հայ-կաթոլիկներն ալ ունէին վարժարան մը 50 աշակերտով եւ մէկ ուսուցիչով, եւ Հայ-բողոքականները՝ 100 աշակերտով եւ 2 ուսուցիչով։

4. ՊԵՀԵՍՆԻ։ Ունի դպրոց մը հիմնուած 1849ին (Հիճրէթի 1266) տեղւոյն եկեղեցիին հետ։

Այս վարժարանը Պատրիարքարանէն նպաստ կը ստանար։ Աշակերտներու թիւն էր 120, եւ ունէր երկու ուսուցիչ։

Հայ Կաթոլիկները հոս ունէին 25 ուսանողով եւ մէկ ուսուցիչով դպրոց մը։ Իսկ բողոքականաց վարժարանը փակուած էր արդէն 1902ին։

5. ՊԷԼՎԷՐԷՆ գիւղ (Պեհեսնիի մօտ)։

1880ին հոս հիմնուած էր վարժարան մը, որ 1895ի ջարդէն ետք փակուած է։

6. ՔԵՍԱՂՏԷ. 1901ին հոս բացուած է Նպաստընկալ վարժարան մը, որ տեղական կառավարութեան հրամանով փակուած է եւ 1902ին փակ կը մնար։ Թէեւ ունէին ուսուցիչ մը որ չէր կրնար պաշտօնավարել, դպրոցին բացման դէմ հանուած արգելքին պատճառաւ։

7. ՊԷՕՅԻՒՔ ՊԱՂ (Քեադթէէն չորս ժամ հեռու)։

1880ին հոս դպրոց մը հաստատուած էր, որ փակուած է 1895ին, նիւթական միջոցներու չգոյութեան պատճառով։

8. ԻՒԼՊԻՇ (Քեադթէէն 7 ժամ հեռու)։

Այս գիւղին մէջ 1879ին Միացեալ Ընկերութիւնը հաստատած էր վարժարան մը, որ 1895էն ետքը Նպաստընկալ վարժարանի վերածուեցաւ, պատրիարքարանէն օգնութիւն ստանալով։

1901 Մայիս 1էն սկսեալ Թօխարիսցի Օսման աղայի Իւլպիշի Հայոց թշնամանալուն հետեւանքով տեղւոյն Հայերը քանիցս յարձակումի ենթարկուեցան եւ կողոպտուեցան եւ իրենց տուները քանդուեցան եւ վարժարանին շէնքն ալ հիմնայատակ կործանուեցաւ։

Այդ թուականէն վերջ դպրոցը փակ մնաց, թէպէտեւ Խաչատուր վրդ. Տէր Ղազարեան դպրոցին ուսուցիչը Արդար Ազատիկեանը վերստին ղրկեց հոն դպրոցը բանալու փորձ մը ընելու համար, սակայն վանքի յիշեալ Սադըր Օսման աղայի թշնամութիւնը փոխանակ մեղմանալու սաստկացած էր, այս ուսուցիչը փախաւ Քեադթէ, իզուր սպասելով դպրոցին վերաբացման։

Խաչատուր վրդ. Տէր Ղազարեանէն ետք, Մալաթիոյ վիճակին դպրոցներուն մասին ունինք 1902ին պատրաստուած ուրիշ վիճակագրական տախտակ մը, որ հրատարակած է Կ. Պոլսոյ Ուսումնական Խորհուրդը, որ իբր «վիճակ 1901—1902 տարւոյ» պատրաստած է երկու տետրակներ 1901 եւ 1903 Թուականներով: Ասոնց երկրորդին մէջ է Մալաթիոյ վիճակացոյցը, որ հաւանօրէն Տէր Ղազարեան վարդապետի վերոյիշեալ տեղեկագրէն քաղուած է կամ նորէն պատրաստուած (տես էջ 771ի մէջ առանձինն դրուած տախտակը):

Հոս կը ներկայացնեմ նոյնութեամբ այդ վիճակագիրը, որ ամբողջական գաղափար մը կու տայ բոլոր վիճակին կրթական հայ հաստատութիւններուն վրայ, քաղաքին դպրոցները եւ որբանոցներն ալ միասին ներկայացնելով:

**ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ**

**1.— Այս վիճակացոյցէն դուրս կը մնան Մալաթիոյ օտար որբանոցներու մէջ պատսպարուող եւ դաստիարակուող որբերը, որոնց թիւն է 145:**

| **Ասոնք կը գտնուին** | **Մանչ** | **Աղջիկ** |
|---|---|---|
| **ա. Ամերիկեան որբանոցը** | **60** | **60** |
| **բ. Լատինաց »** | **15** | **10** |
| | **75** | **70** |

**2.— Օտար վարժարաններ կը յաճախեն**

| | | |
|---|---|---|
| **ա. Բողոքականաց վարժարանը** | **100** | **40** |
| **բ. Հռոմէականաց »** | **130** | **250** |
| **գ. Լատինաց »** | **150** | **150** |
| | **380** | **440** |

**Օտար յարանուանութիւնք Հիւսնի Մանսուրի մէջ ալ դպրոցներ ունին:**

**3.— Շիրօ գիւղախմբի հայաբնակ գիւղերու դպրոցները փակ կը մնան, նոյնպէս Սնուր գիւղինը՝ նիւթական անձկութեան պատճառաւ:**

Այս Թուականէն վերջ 3 Փետրուար 1911ին Առաջնորդական Փոխանորդ Եղիա քհնյ. Խաչատուրեան պատրիարքարանէն եկած հրահանգի մը վրայ, կը պատրաստէ նոր տեղեկագիր—վիճակագրութիւն մը, որ 23 Յունիս 1911ին Մալաթիոյ Քաղաքական Ժողովին դիւանին հետ ստորագրելով կը ղրկէ Կ. Պոլիս:

Հոն վիճակային վարժարաններու համար կը տրուին հետեւեալ տեղեկութիւնները, ըստ որոնց մօտաւորապէս տաս տարուան շրջանի մը մէջ Մալաթիոյ Թեմը դպալի յառաջդիմութիւն մը չէ ցոյց տուած կրթական տեսակէտով եւ նոյնիսկ տեղ տեղ ալ աւելի ետ գացած ըլլալու երեւոյթ մը ունի:

Ահա այդ պաշտօնագիրէն քաղուած տեղեկութիւնները.

1. ՀԻՒՍՆԻ ՄԱՆՍՈՒՐ.

Մեսրոպեան վարժարանը ունէր 150 մանչ, 100 աղջիկ աշակերտներ, 3 ուսուցիչ եւ 2 ուսուցչուհի:

# ԱՌԱՋՆՈՐԴԱԿԱՆ ՎԻՃԱԿ ՄԱՂԱԹԻՈՅ

| Թիւ | Քաղաք կամ գիւղ | Վարժարանին անունը | Դասընթացքը | Աշակերտներ | | | Ուսուցիչներ | | | Ամսական հասոյթ եւ ծախք | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | | | | Մանչ | Աղջիկ | Համագումար | Այր | Կին | Համագումար | Թաղային սնտուկ | Թոշակներ | Գանձանակ կէն կամ զանազան նպաստներ | Պատրիարքարանէն | Համագումար |
| 1 | Մալաթիա | Մայր Վարժ | Դ | 180 | 120 | 300 | 3 | 1 | 4 | 250 | — | 150 | — | 400 |
| 2 | » | Կեդր. » | Դ | 230 | — | 230 | 3 | — | 3 | 100 | 80 | 220 | — | 400 |
| 3 | » | Ներս. » | Դ | 140 | — | 140 | 2 | — | 2 | 80 | 100 | 40 | — | 220 |
| 4 | » | Ազգ. Որբ. | Դ | 52 | — | 52 | 1 | — | 1 | — | — | — | 100 | 100 |
| 5 | Հիւս.Ման. | Մեսրոպ. | Դ | 140 | 110 | 250 | 2 | 2 | 4 | 180 | — | 120 | 100 | 400 |
| 6 | Պեհեսնի | Ս. Փրկչեան | Դ | 90 | — | 90 | 2 | — | 2 | 25 | — | 25 | 100 | 150 |
| 7 | Իւլպիշ | Միացեալ | Բ | 20 | — | 20 | 1 | — | 1 | — | — | — | 100 | 100 |
| 8 | Մուշովկա | Սահակեան | Բ | 20 | — | 20 | 1 | — | 1 | 50 | — | — | 50 | 100 |
| 9 | Անսուր | Ազգ. Վրժ. | Բ | — | — | 35 | 1 | — | 1 | — | — | — | 50 | 50 |
| | | | | 872 | 230 | 1137 | 16 | 3 | 19 | 685 | 180 | 555 | 500 | 1920 |

2. ՊԵՀԵՍՆԻ.

Արամեան վարժարան ունէր 100 աշակերտ, 2 ուսուցիչ։

3. ՔԵԱՂԹԷ.

Պէօյիւք Պաղի վարժարանը ունէր 20 աշակերտ, 1 ուսուցիչ։

Այս կերպով Մալաթիոյ ընդարձակ վիճակին մէջ ընդամէնը կար վիճակային 3 վարժարան 270 մանչ եւ 100 աղջիկ աշակերտով եւ 8 երկսեռ ուսուցիչներով (միայն երկուքը ուսուցչուհի)։ Ուրեմն վիճակներու մէջ՝

1902ին գտնուող 5 վարժարանի տեղ 1911ին 3 վարժարան,

1902ին 415 աշակերտին փոխան 1911ին 370 աշակերտ,

1902ին 9 ուսուցիչի փոխան 1911ին 8 ուսուցիչ կը գտնենք, ինչ որ ցոյց կու տայ թէ հակառակ 1908ի Սահմանադրութենէ ետք Հայոց վայելած ազատութեան եւ Առաջնորդութեան կեդրոնին մէջ կրթական գործին ընծայուած մեծ ուշադրութեան, վիճակային դպրոցները ուշադրութեան առարկայ չէին եղած եւ կը գտնուէին շատ խեղճ վիճակի մէջ։

1895ի ջարդը Մալաթիոյ եւ իր շրջակայի հայութեան համար մեծ հարուած մը եղած էր եւ Հայ բնակչութիւնը շատ տեղեր գաւառական գիւղաքաղաքները եւ գիւղերը լքելով հեռացած եւ գաւառին հայ բնակչութիւնը շատ պակսած էր։

## Է.

# ԿՐԹԱԿԱՆ, ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԵՒ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ

ԺԹ. դարուն Թուրքիոյ Հայերուն կրթական եւ մշակութային զարգացման պատմութիւնը ուսումնասիրութիւններու առարկայ եղած է զանազան աշխատութիւններու մէջ։

Այնպէս որ աւելորդ կը գտնեմ անդրադառնալ անոր, երկարօրէն բացատրելով թէ ի՛նչ ուղղութեամբ արեւմտեան Հայերու մէջ զարգացաւ հանրային կրթութիւնը եւ ինչպէ՞ս ստեղծուեցաւ Եւրոպական զարգացումով հայ մտաւորականութիւն մը որ իր կարգին իր նպաստը բերաւ հայ ազգին ընդհանուր զարգացման[1]։

Այս շարժումին մէջ կարեւոր տեղ մը ունեցած են մեր մտաւորականութեան նախաձեռնութեամբ եւ անոր թելադրութիւններով կազմուած բազմաթիւ ընկերութիւնները դպրոցներու եւ հրատարակութեանց ի նպաստ։

---

(1) Տես 1910 Ընդարձակ Օրացոյց Ս. Փրկիչ Հիւանդանոցի Հայոց, Ազգային Սահմանադրութիւնը, իր ծագումը եւ կիրառութիւնը քննական փորձին յատկապէս «Հանրային կրթութեան զարգացումը եւ մտաւորականութեան ազդեցութիւնը» (էջ 205-262)։

*ԺԹ. դարու մեր ազգային կեանքին մէջ չորս նշանաւոր թուականներ կան որոնք մեծ հանգրուանները կը կազմեն Թուրքիոյ Հայերու կեանքին: Այդ թուականներն են 1839, Թանզիմաթի հրատարակութեան, 1860, Ազգ. Սահմանադրութեան հաստատութեան, 1878, Պերլինի վեհաժողովին մէջ Հայկական հարցի մը ստեղծումին եւ 1908ին Օսմանեան սահմանադրութեան վերահաստատութեան թուականները:*

*Այդ չորս թուականները որոնք յեղաշրջումներու մեկնակէտեր եղած են, ազգը կը հարկադրէին իր կեանքը պատշաճեցնելու տրուած նոր պայմաններուն եւ աշխատելու մանաւորապէս ժամանակին առաջդիմութիւններուն հետեւելու:*

*Առաջին մեծ փոփոխութիւնը որ գրեթէ անմիջական հետեւանքը եղաւ* **ԹԱՆԶԻՄԱԹԻ** *հրատարակութեան, պատճառ եղաւ որ մեծ կարեւորութիւն տան ազգին բոլոր դասակարգերը հանրային կրթութեան, որուն զարգացման աշխատեցան հաւաքական ուժերով: Այսպէս բազմացաւ թիւը դպրոցներու ու մշակութային այլ նպատակներով կազմուած ընկերութիւններու, որոնք իրենց կարգին մեծապէս օգտակար եղան:*

*Կ. Պոլսոյ եւ գաւառներու մէջ կազմուած հայ ընկերութիւններու վրայ գրուած է զանազան բանասէրներու կողմէ[1], այնպէս որ ընդհանուր գաղափար մը կազմելու հետաքրքրութիւնը ունեցողներ կրնան գոհացում գտնել եթէ հետամուտ ըլլան:*

*Դժուար է ինծի անդրադառնալ նիւթի մը որով զբաղած եմ անցեալին մէջ եւ կրկին ըսել նոյն բաները որոնք անգամ մը ըսած եմ:*

*Աւելորդ կը գտնեմ ընդհանուր կերպով խօսիլ գաւառներու մէջ ընկերութիւններու կազմութեան պարագաներուն վրայ եւ քանի որ անցեալին մէջ երկու[2] անգամ կատարած եմ այդ աշխատանքը, բացատրելով այն շարժառիթները եւ ազդեցութիւնները որոնցմէ մղուած շատ մը գաւառներ իրենք ալ կազմած են ընկերութիւններ:*

*Միայն կէտ մը կայ որ հարկ է մատնանիշ ընել որպէս անհրաժեշտ լուսաբանութիւն մը, որպէսզի միտքերու մէջ տարակոյսներ չծագին:*

*Կ. Պոլսոյ ազդեցութեամբ գաւառներու մէջ ընկերութիւններու կազմութիւնը ամէն գաւառի մէջ միեւնոյն չափով չէ որ արձագանգ գտած է:*

---

(1) *Առաջինը անոնց հանդիսացած է Տոքթ. Ն. Տաղաւարեան, որ Սկսնակ-բանասէր ստորագրութեամբ 1898-ին Կ. Պոլսոյ* **ԱՐԵՒԵԼՔ** *օրաթերթին մէջ (թ. 2852–3) փորձ մը ըրած է թրքահայ ընկերութիւններու ցուցակը կազմելու: Այս տողերը գրողը միայն Կ. Պոլսոյ մէջ կազմուած ընկերութիւններու մէկ ցուցակը կազմած է եւ հիմա* **ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ**_ի_ *մէջ աւելի լիակատար կը հրատարակէ Հ. Եփրեմ վրդ. Պօղոսեան:*

(2) *Տես* **ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ**, *էջ 1249–1283, յատկապէս առաջին էջերը այդ մասին եւ* **ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒԴՈԿԻՈՅ ՀԱՅՈՑ**, *էջ 995–1003: Կը խորհիմ թէ նոր բան մը չունենալով աւելցնելիք՝ ինքզինքս պիտի կրկնէի. հետեւաբար կը խուսափիմ երրորդ անգամ նոյն նիւթին վրայ խօսիլ:*

Գաւառներ կան որ Պոլսոյ շատ մօտ գտնուելով կամ շատ յարաբերութիւններ ունենալով, աւելի զգայուն եղած են Պոլսոյ շարժումներուն եւ անոնց ներգործութիւնը աւելի շատ կրած են։

Հետեւաբար հոն դպրոցներու օգնող մարմիններ ունեցած են։

Այդ ընկերութիւնները չսահմանափակեցին իրենց գործունէութիւնը միայն դպրոցներու օգնութեան գործին մէջ, այլ ուրիշ մարզերու մէջ ալ ազգային յառաջդիմութեան գործին նպաստելու աշխատեցան։

Թուրքիոյ Հայերու վարչական կեդրոնը՝ Կ. Պոլիս, որ ինչպէս ըսուած է պատուհան մըն էր յետամնաց Արեւելքի մէջ դէպի Եւրոպա բացուած, կատարած է գերազանցապէս նշանակելի դեր մը, ոչ միայն արեւմտեան քաղաքակրթութեան սերմերը ընդունելով եւ զարգացնելով, այլ նաեւ փոխանցման կամուրջ մը հանդիսանալով գաւառներու համար, որոնց լուսաւորութեան գործը մանաւորապէս 1878ի հանդրուանէն ետք մեծ ուշադրութեան առարկայ եղաւ եւ իսկապէս հրաշալի արդիւնք մը ունեցաւ։

Կ. Պոլիս հաստատուած շատ մը գաւառացիներ, բաւական կանուխ պոլսահայոց մէջ տիրող ոգեւորութենէն ազդուած ջանքեր ըրած են իրենց ծննդավայրերու դպրոցներուն նպաստներ հասցնելու եւ դպրոցներ հաստատելու, ընկերութիւններ կազմելու համար։ Այսպէս, սկսած են կազմուիլ նախ գաւառական վարժարաններու ի նպաստ ընկերութիւններ եւ ապա գաւառներու մէջ տեղւոյն վրայ իսկ տեղական կրթական հաստատութիւններ։

Դժբախտաբար Մալաթիա այդ ազդեցութիւնը շուտով կրող գաւառներէն չէ եղած, վասնզի նախ աշխարհագրապէս բաւական հեռու էր, եւ երկրորդ Մալաթիացի մեծ գաղութ մը չկար Պոլսոյ մէջ, եւ վերջապէս հոգեւոր վարչութեան տեսակէտով Կիլիկիոյ կաթողիկոսութեան ենթարկուած ըլլալով, Կ. Պոլսոյ կեդրոնին ուղղակի ազդեցութեան չէր ենթարկուած եւ ասոր համար է որ Մալաթիա որոշ չափով մը ուշ մնացած էր կրթական ու մշակութային մարզերու մէջ։ Նաեւ իր ազգային ներքին վարչութիւնը շատ դանդաղ կազմակերպուած էր սահմանադրական կարգերով, վասնզի Ազգ. Սահմանադրութեան կիրարկութիւնը բաւական յապաղած էր հոն։

Հետեւաբար Մալաթիոյ մէջ կրթական եւ մշակութային ընկերութիւններու կազմութիւնն ալ ոչ շատ կանուխ եւ ոչ ալ թիւը շատ եղած է, ինչպէս իրենց գործունէութիւնը շատ արդիւնաւոր։

## ԱՆՁՆՈՒԷՐ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1862—1895)

Ինչպէս տեսնուեցաւ գաւառները Պոլիսի հետեւելով, իրենք ալ կազմած են ընկերութիւններ։ Շատ մը գաւառներ նոյնիսկ իրենց Կ. Պոլիս ապրող պանդուխտ հայրենակիցներուն շնորհիւ ունեցած են իրենց ընկերութիւնները, վասնզի այդ պանդուխտները տեսնելով Պոլսոյ մէջ թաղային վարժարաններու օգնելու նպատակով ընկերութիւններ կազմելու համար Պոլսեցինե-

րու ցոյց տուած ոգեւորութիւնը, բարի նախանձը ունեցած են իրենց ծննդավայրերու կրթական հաստատութիւններուն համար կազմել նպատակամատոյց ընկերութիւններ, մանաւորապէս Ազգային Սահմանադրութեան հաստատութենէն (1860) ետք, որ գեղեցիկ երազներու ժամանակամիջոց մը եղած է մեզի համար: Պոլիս հաստատուած Մալաթիացիք ալ անտարբեր եւ անհաղորդ չմնացին այս շարժումէն եւ իրենք ալ Պոլսոյ մէջ կազմեցին ԱՆՁՆՈՒԷՐ անունով ընկերութիւն մը 1862ին[1], իրենց քաղաքին ուսումնական զարգացման համար:

Գլխաւոր հիմնադիրներն են Պոլիս գտնուող Մալաթիացիներէն Հաճի Գէորգ Առաքելեան[2] եւ Հաճի Անան Ափալպղեան[3], որոնք ուրիշներու հետ 1862ին կը կազմեն այս ընկերութիւնը, հաւանօրէն այս անունը առնելով Քրիստոստուր Ղազարոսեանի եւ Յարութիւն Մարգարեանի կազմած կիրակնօրեայ վարժարան մը հաստատող ընկերութեան անունէն:

Այդ ընկերութիւնը ինչպէս յայտնի է, կարդալ գրել կը սորվեցնէր մանաւորապէս Ղալաթիոյ մէջ ապրող գաւառացի պանդուխտ ազգայիններու եւ բարերար դեր կատարած էր, իրենց գաւառը դարձողներու միջոցաւ լուսաւորութեան միջոց մը ծառայելով:

Մալաթիացի Կ. Պոլիս բնակող պանդուխտները այս անունը ընտրելով իրենց ընկերութեան համար, յայտնի է թէ ուղղակի կ՚ընդօրինակէին Պոլսոյ մէջ տիրող շարժումը: Ընկերութեան առաջին անդամները կ՚ըլլան.

Հաճի Վարդան
Էնֆիէճեան
Գրիգոր Մատէնեան
Հաճի Խաչատուր Առաքելեան
Գրիգոր Նաճարեան
Սարգիս Սումպուլ Պէրպէրեան

(1) Հ. Եփրեմ վրդ. Պօղոսեան «Անձնուէր Ընկերութեան» հաստատութեան թուականը կը կարծէ թէ 1860-էն առաջ է (տես ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 58, էջ 2) եւ սակայն երկու տարի վերջ 1862-ին կազմուած է: Այս թուականին ճշդումը կատարած է Պ. Խորէն Առաքելեան (հիմա Աթլանթիք Սիթի, Մ. Նահանգներ), որուն ընդարձակ մէկ գրութենէն օգտուած եմ ԱՆՁՆՈՒԷՐ ընկերութեան պատմութեան համար: Շատ դժբախտաբար Պ. Խորէն Առաքելեանի աշխատութիւնը ծանրաբեռնուած է շատ մը կողմնակի աւելորդաբանութիւններով, որոնք ընկերութեան հետ կապ չունին: Կան կարգ մը յիշողութեան վրիպներ եւ ժամանակագրական անհամաձայնութիւններ, որոնք կարելի եղածին չափ ճշդել աշխատած եմ, առանց շատ վստահ ըլլալու թէ լիովին յաջողած եմ:

(2) Հաճի Գէորգ Առաքելեան հայրն է Անձնուէր ընկերութեան պատմութիւնը գրող Պ. Խորէն Առաքելեանի, որ Դամասկոս եւ Երուսաղէմ այցելելէ ետք Պոլիս գացած եւ Եգիպտացի կառավարական պաշտօնեայի մը քով ծառայութեան մտած եւ ութը տարի մնացած է հոն:

(3) Հաճի Անան Ափալպղեան Սուլթան Ազիզի ծառայութեան մէջ էր իբրեւ սեղանապետ:

Աւետիս Աղազարեան
Քերովբէ Գուլխանճեան
Տօնապետ Անսուրեան
Հաճի Պետրոս Ղրղըլքէչիչեան
Այնէլի Տեփօ
Յակոբ Թէրզի Եազուպեան
Զաքարիա Անսուրեան
Արթին Զավուշ Ազատխանեան
Ֆարխիկ Ֆարխիկեան
Հաճի Յակոբ Խուլեան
Հաճի Գէորգ Առաքելեան

Ամէնքն ալ պոլսաբնակ Մալաթիացիներ։

Ընկերութեան առաջին ատենապետը կ'ըլլայ Հաճի Անան Ափալագեան եւ ատենադպիրը՝ Գէորգ Առաքելեան, որ ութը տարի Պոլիս մնալէ ետք, Մալաթիա կը դառնայ եւ 1871ին կ'ամուսնանայ։

Չորս տարի (1871–1875) ոսկերչութիւն կ'ընէ Մալաթիոյ մէջ եւ մեծ յաջողութիւն մը չ'ունենար։

Անձնուէր ընկերութեան Պոլսոյ կեդրոնը ընկերութեան անդամ արձանագրած է նաեւ Մալաթիոյ մէջ գտնուող անձեր ալ, որով ընկերութիւնը թէ՛ Պոլիս եւ թէ՛ Մալաթիա երկու կայան ունեցած է։

Առաջին տարիներու գործունէութեան վրայ ոչ մէկ տեղեկութիւն կայ։ Ինչպէս սովորաբար կը պատահի առաջին ոգեւորութիւնը շուտով անցած եւ տկարացած է իր կազմը։

Գէորգ Առաքելեան իր Մալաթիա բնակութեան չորս տարիներուն մեծ ջանքեր կ'ընէ ընկերութեան Մալաթիոյ ճիւղը զօրացնելու. ընկերութիւնը 1872–1873ին Մալաթիոյ մէջ զօրաւոր վերակազմութեան մը կ'ենթարկուի, այնպէս որ Հ. Եփրեմ վրդ. Պօղոսեան կը կարծէ թէ իր հիմնարկութիւնը 1872–1873-ին կատարուած է Մալաթիոյ մէջ։

1874ին Գէորգ Առաքելեան, Մալաթիոյ մէջ պեղումներ կատարող անգլիական ընկերութեան մը հետ կը գործակցի եւ ութը ամիս կատարուած ապարդիւն աշխատանքէն վերջ, երբ անոնք կը դառնային Պոլիս, ինքն ալ կ'ընկերանայ եւ մինչեւ 1880 կը մնայ Կ. Պոլիս։

Այս ժամանակամիջոցին շատ բնական է որ իր ընկերութիւնով չահադրգռուած է, բայց կ'երեւի թէ Պոլսոյ մէջ ալ ընկերութեան մէջ թուլութիւն կը տեսնուէր։

Այնպէս որ 1880ին երբ Գէորգ Առաքելեան կ'որոշէ դառնալ Մալաթիա, դառնալէ առաջ կ'ուզէ վերակազմել Անձնուէր ընկերութիւնը եւ այս նպատակով Կ. Պոլսոյ մէջ ապրող Մալաթիացիները վերստին կը հաւաքէ։ Այս հաւաքոյթին մէջ կ'որոշուի ընկերութեան գոյութիւնը դադրնի պահել[1]։ Գ.

(1) Շատ հաւանական չէ։ 1880-ին տակաւին խառնութիւններ չկային եւ Հայերը

Առաքելեան կը խոստանայ Մալաթիա դարձին հոն նոր անդամներ ալ արձանագրել եւ ընկերութիւնը զօրացնելով Մալաթիոյ մէջ հաստատել երկրորդական բարձր վարժարան մը։

Ընկերութիւնը կ'ունենայ կանոնաւոր ամսագրեր, անդամական քարտեր, ընկալագիրներ եւայլն։

Ընկերութեան անունն ալ կ'երեւի թէ փոխել խոհեմութիւն կը համարեն եւ «Կրթասիրաց» կամ «Մարդասիրաց» կը կոչեն։

Գէորգ Առաքելեանի զաւակը կնիքը մինչեւ հիմա պահած է, եւ կը յիշէ ընկերութեան ընկալագրին ձեւը։




**Պրն. Գէորգ Առաքելեանի զաւկին՝ Պրն. Խորէնի՝ յիշողութեան համաձայն վերարտադրուած ընկալագիրը «ԱՆՁՆՈՒԷՐ» ընկերութեան։**

Գէորգ Առաքելեան Մալաթիա դառնալով Մայր Եկեղեցիին դիմացը նպարավաճառի խանութ մը կը բանայ եւ կ'աշխատի կարգ մը նորութիւններ մտցնել Մալաթիոյ Հայոց մէջ, ինչպէս նաեւ գաղափարական առաքելութիւն մը կատարել։

Անձնուէր ընկերութիւնը, ինչպէս կ'երեւի մինչեւ 1880—1882 չատ տկարացած էր եւ կը կարօտէր նոր վերակազմութեան մը որ Գէորգ Առա-

Թուրքիոյ մէջ։ Արդէն հաւանական է, քանի ազատօրէն ընկերութիւններ կը կազմէին Թուրքիոյ մէջ։ Արդէն հաւանական է, քանի ազատօրէն ընկերութիւններ կը կազմէին

Կը կարծեմ որ Անձնուէր ընկերութիւնը իր գոյութիւնը պահելով հանդերձ, մի քանի գաւառներու մէջ կազմուած գաղտնի ընկերութիւններու նման, Մալաթիոյ մէջ ալ գաղտնի ընկերութիւն մը կազմելու ձեռնարկ մը կատարած ըլլայ Անձնուէրին հովանիին տակ անոր անդամներէն առնուած «ընտրեալ»ներով։

քելեան փորձած է ըստ իր զուկլին հաւատումին։

Ասիկա կը հաստատուի Կ. Պոլսոյ ՄԱՍԻՍԻ մէջ հրատարակուած թղթակցութեան մը սա տողերով.

«Խիստ ցաւալի է տեսնել որ Անձնուէր ընկերութիւնն այսօր 10·000 դրուշի նիւթական կարողութիւն ունենալով՝ մեղադրելի անգործութեան դատապարտուած է, յոռետեսք ոմանք մեռած կը համարեն զայն, իսկ ոմանք պարսաւելի ծանր քնով մը քնացած, եւ այս, զգուշաւոր ցնցում մը կը բաւէ, ըստ իս, զայն յարուցանելու» (Մասիս 1882 թ. 3247)։

Այդ ակնկալուած ցնցումը նոյն տարին իսկ կը պատահի, ինչպէս կը տեսնուի, վասնզի 1882 Հոկտեմբերի «Ուղեւոր» ստորագրութեամբ դարձեալ Պոլսոյ ՄԱՍԻՍին մէջ (1882 թ. 3333) կը տեսնուի թղթակցութիւն մը Մալաթիայէն հաղորդուած, ուր կ'ըսուի թէ ,«Տեղւոյն Անձնուէր Ընկերութիւնն, որ երկար ժամանակէ իվեր անգործութեան դատապարտեալ է եղեր, այս օրերս շարժեցաւ եւ երէկ իր գործադիր ժողովն ընտրեր է»։

Այնպէս կ'երեւի թէ կ'ոգեւորուէր ընկերութեան գործունէութիւնը, որ մինչեւ 1885 կը շարունակուի։ Սրապիոն եպիսկոպոսի մահէն (1885 Դեկտեմ. 23) ետք Սահակ եպիսկոպոս կը քաջալերէ այս ընկերութիւնը, անոր գլուխը ինքն անցնելով իբր ատենապետ եւ ընկերութիւնը կը շարունակէ իր գործունէութիւնը դպրոցներուն նպաստելով։

Ընկերութիւնը յաջորդ տարին (1886) Գրիգոր Թիֆթիկճեանը ուսուցչութենէ կը դադրեցնէ եւ տնօրէնութիւնը կը յանձնէ Աւետիս Խօրասանճեանի — Աստղիկ ընկերութեան նախկին տնօրէն — որ դպրոցի մակարդակը կը բարձրացնէ ինչպէս տեսնուեցաւ, սակայն ինչպէս յաճախ կը պատահի մեր մէջ անձերու շուրջ կը բացուի պայքար եւ Թիֆթիկճեանի աշակերտները եւ բարեկամները Յակոբ Յովնանեանի եւ Աւագ Կէմալմազեանի շուրջ կը բոլորուին եւ իրենք ալ դպրոց մը կը բանան մէկ վարժապետով։ Այս դպրոցը ինչպէս տեսնուեցաւ կը կոչուէր Կէմալմազին դպրոցը։

Թերեւս այս պառակտումը եւ հակառակութիւնը կը տկարացնէ ընկերութիւնը, որ 1886—87ին անկման շրջանի մը մէջ էր, բայց թղթակից մը կը գրէ թէ «Մեծ յոյս կայ որ Անձնուէր Ընկերութիւնն քիչ մը ժամանակ յետոյ պիտի ստանայ դարձեալ իւր նախկին փայլուն վիճակն եւ ապա ձեռնարկէ իւր օգտաւէտ նպատակին, վարժարանաց նիւթապէս օգնել » (Արեւելք, Կ. Պոլսոյ, 1885 թ. 428)։

Ըստ Հ. Եփրեմ վրդ. Պօղոսեանի 1886ին ընկերութիւնը դադրած է գոյութիւն ունենալէ, ըստ Արեւելքի (1887 թ. 1114) մէջ հրատարակուած թղթակցութեան մը, բայց ինչպէս կ'երեւի, այս տեղեկութիւնը ճիշդ չէ, վասնզի անիկա իր անունը փոխելով հաւանօրէն շարունակուած է մինչեւ 1892։

Ընկերութեան տկարութիւնը հաւանօրէն հետեւանքն էր այս պառակտումին, որ պատահած էր Սահակեան Մայր Վարժարանի մէջ ընկերութեան ներմուծած վերանորոգութեան եւ արդիացման աշխատանքներին պատճառով։

Սակայն ինչպէս կը տեսնուի իր դէմ բացուած պայքարի առջեւ չեն ընկճուած ընկերութեան անդամները, որոնց թիւը շատ ցած էր: Սահակ Եպիսկոպոս անոր Ատենապետը եղած էր եւ Գրիգոր աղա Արսլանեան գանձապետը, իսկ Գէորգ Առաքելեան կը մնար դարձեալ ատենադպիրը:

Ընկերութիւնը կը յաջողի մեծ զարկ տալ դպրոցին եւ անոր մակարդակը բարձրացնել: 18—20 տարեկան տղաքներ տակաւին դպրոց կ'երթային: Դպրոցը որ իր եկամուտի աղբիւր 40 հատ խանութներուն վարձքերը ունէր, ընկերութենէն ալ կը նպաստաւորուէր եւ շնորհիւ ասոր դպրոցը լաւ վիճակ ստացած էր: Հարուստ դասակարգն ալ ասիկա տեսնելով, ինքն ալ միացուցած էր իր ջանքերը: Այսպէս անոր կ'անդամակցէին.

Ատուր աղա Սարաֆեան
Յովհաննէս Սարաֆեան (որդին Ատուր աղայի)
Հաճի Գրիգոր Թօզաթցի
Հաճի Գրիգոր Չէօփճեան, Արաբկիրցի
Լեւոն Չէօփճեան (որդին Գրիգորի)
Աւետիս Կոնճեան
Գէորգ Ըպըըդեան
Հաճի Պետրոս Կիւլպէնկեան
Եղիա Կիւլպէնկեան
Մկրտիչ Կեսարացի
Բագրատուն Կեսարացի (որդին Մկրտիչի)
(Վերջին կերկուքը կեսարացի բժիշկ եւ դեղագործ եղբայրներ են եւ իրենց Մանասէ եւ Եփրեմ զաւակները)
Տոքթ. Անդրէաս (պարսկահայ)
Տոքթ. Լեւոն (Սեբաստացի)
Տոքթ. Փանպճագի (յոյն)
Նաճարեան եղբարք
Զորեպան Տէտիգկոեան
Եագըճեան եղբայրներ
Տէր Մարտիրոսեան եղբայրներ
Մանոյեան եղբայրներ
Պօղոս Խանըմեան
Գէորգ Արսլանեան
Յարութիւն Ոսկերիչեան
Մկրտիչ Ոսկերիչեան
Յակոբ Ղզըլքէչիչեան
Գրիգոր Ղզըլքէչիչեան
Մարտիրոս Շալմաճեան
Մհտ. Կարապետ Չէգէմեան
Թիւթէլ Թիւթէլեան
Կարապետ Թիւթէլեան

*Սարգիս Կոստիկեան*
*Գասպար Մանուչեան*
*Գալէմգարեան եղբայրներ*
*Սարգիս Փափազեան*
*Յակոբ Փափազեան*
*Հաճի Գէորգ Պըրգեան*
*Գէորգ Անսուրեան*
*Կարապետ Հայրապետեան (մխթար)*
*Կանան Խանձեան*
*Մանուկ Խանձեան*
*Յակոբ Թօփալեան*
*Սարգիս Էլիճանեան*
*Մկրտիչ Կէզուրեան*
*Յարութիւն Կէզուրեան*
*Կանան Կանանեան*
*Մարտիրոս Կանանեան*
*Տատաեան պզտիկ վարժապետ*
*Ծորճի Հալէպցի (Նախորդին ընկերը)*
*Յովհաննէս Ընդրիկեան*
*Պետրոս Ընդրիկեան*
*Յակոբ Արզաեան*
*Տէր Յակոբեան եղբայրներ*
*Վաճառական Ակնցի Աւետիս*
*Հաճի Եսայի Եսայեան*
*Գրիգոր Ժամկոչեան*
*Հաճի Գրիգոր Ատելճի*
*Յակոբ Տօնապետեան*
*Ասատուր վարժապետ Բահանեան*
*Լիպարիտ Թիւթելեան*
*Գրիգոր Վարդանեան (Նաճար)*
*Արթար Ձիլինկիր (Ակնցի)*
*Սարգիս Ապտալեան*
*Վարդան Եողընեան*
*Սարգիս Թիֆթիկեան*
*Գէորգ Առաքելեան*
*Սարգիս Թաչճեան եւայլն եւայլն:*

*Ասոնք չափահաս տղաք ունէին դպրոցը, դպրոցը ունէր բաւական ճոխ գրադարան մը:*

*Ամէն տղայ յատուկ նստարան սեփական բանալիով դարակներով: Պատերը զարդարուած էին աշխարհագրական քարտէզներով, որոնք Պոլիսէն բերուած էին:*

1892 Դեկտեմբեր 22ին մեռաւ Գէորգ Առաքելեան, որ ընկերութեան կազմութեան օրերէն մինչեւ այդ թուականը, 30 տարի անընդհատ քարտուղարութիւնը վարած էր ընկերութեան։ Իր մահուան պատճառով կառավարութիւնը կը կնքէ իր խանութը։ Այդ իրիկունը առաջնորդարանի փոքրաւորը Կարապետ Էրքէկեան եւ ժամկոչը (որ Գէորգ Առաքելեանի եղբայրն էր) կու գան անոր տունը եւ ընկերութեան տոմարները եւ թուղթերը ամբողջ հաւաքելով սնտուկ մը լեցնելով առաջնորդարան կը տանին, որովհետեւ ինչպէս կը տեսնուի մատնութիւն եղած էր[1]։

Առաջնորդը եւ Գրիգոր Արսլանեան չարիքը խափանելու համար, Գէորգ Առաքելեանի մահէն քանի մը շաբաթ վերջ «անիրաւ մամոնայ»ով գիշերանց Խարբերդ կը փութան եւ կը յաջողին կուսակալը սիրաշահիլ եւ չարիքին առջեւը առնել։

Քանի մը շաբաթ վերջը, ինչպէս յիշուեցաւ Յարութիւն վարդապետ կ՚աքսորուի Խօզաթ եւ 7—8 ամիս վերջը կը վախճանի։

Պ. Խորէն Առաքելեանի աղօտ յիշողութեան համաձայն, այս գործին հետ կապ պէտք է ունեցած ըլլայ մատնիչ Աղայի մը Առաջնորդարանի սանդուխներէն վար նետուիլը, որ տակաւին մանուկ, կը յիշէ լսած ըլլալ։

Այս իրողութենէն վերջ, Պ. Խորէն Առաքելեան կը յիշէ թէ հայրը քանի մը օր ետքը, իրիկուն մը իր ժամկոչ հօրեղբայրը կու գայ իր մայրը կը հրաւիրէ Առաջնորդարան եւ անոր կը յայտնէ թէ ընկերութեան թուղթերը պարունակող սնտուկը պիտի վերադարձնէ իր տունը, որ աւելի ապահով է քան Առաջնորդարանը, վասնզի կը խորհի թէ երկար ատեն պիտի չկարենայ մնալ Մալաթիա եւ հաւանօրէն պիտի աքսորուի։

Սահակ եպիսկոպոս կ՚ըսէ թէ Հայերը մատնած են զինքը։

Արդարեւ երկու օր վերջ Սահակ եպիսկոպոս կ՚աքսորուի եւ 1895ի ջարդին կը սպաննուի[2]։ Առաջնորդի աքսորուած օրը դպրոցն ալ կը խուզարկուի, հատուկ աշակերտներէն մէկ մասը կը հարցաքննուին եւ գրադարանի գիրքերը, ինչպէս նաեւ Առաջնորդարանը գտնուող գիրքերը տոպրակները լեցնելով կը տարուին։

Աւետիս Խօրասանճեան սպառնացող վտանգը զգալով, օր մը առաջ Մալաթիայէն կը հեռանայ եւ իր ծննդավայրը կ՚երթայ։ Սահակ եպիսկոպոսի կը յաջորդէ Կարապետ վրդ. Ոշտունի, որ համաձայնութիւն կ՚ունենայ Աւետիս Խօրասանճեանի յաջորդին (Աճբիծ վարժապետ կոչուած) հետ, որուն հետեւանօք վարժապետը 1895ի սկիզբը կը ձգէ, կը մեկնի, իսկ վարդապետն ալ 1895 Յունիսին։

---

(1) Այս պարագան կը հաստատէ թէ ԱՆՁՆՈՒԷՐները գաղտնի եւ հակապետական գործունէութիւն մըն ալ ունէին, որուն մասնակից էին նաեւ տեղւոյն առաջնորդը եւ ուրիշներ։ Ասոր համար ընկերութեան թուղթերը տունէն առնուած են։

(2) Պ. Խորէն Առաքելեան Խօզաթ գրած է, սակայն կարծեմ Տարենտէի վանքն էր Սահակ եպիսկոպոսի աքսորավայրը, ուր սպաննուեցաւ։

Դպրոցը քայքայուեցաւ եւ Կեմալմազի եւ Ս. Յարութեան Թաղի դըպրոցներուն կը տրուին դպրոցին նստարանները, գրադարանները և բոլոր քարտէզները:

Հասուկ տղաքը կը ցրուին եւ վարի յարկին մէջ գոյութիւն ունեցող վարժարանին ուսուցիչ կը նշանակուին Գրիգոր Արրաճեան, Պէլիկ վարժապետ եւ տղան Անդրէաս Փափազեան, Եղիա Տ. Կարապետեան, Միքայէլ Վարժապետ Թաշճեան:

Միւս կողմէն Մալաթիացիք գերագոյն ճիգով մը հսկայ շէնքը կը շինեն գիշերը ցորեկին խառնելով, որպէսզի ձմեռը չհասած աւարտեն շէնքը, որ այնքան փառաւոր եւ ներկայանալի էր, որ խուլմները ամէն կողմ փսփսալ սկսած էին թէ ԿԵԱՎՈՒՐՆեր կառավարական շէնք կը շինեն:

1895ի ջարդին ՄԱՐԴԱՍԻՐԱՑի Թուղթերը Գէորգ Առաքելեանի կինը կը թաղէ, որպէսզի ձեռք չանցնին եւ բազմաթիւ մարդիկ չվտանգուին: Արդարեւ անոնց թաքստոցը չգտնուելով, նոր աղէտի պատճառ չ՛ըլլար:

Կարճ ժամանակ ետքը, Եղիա վարժապետ (ետքը քահանայ) կու գայ, Մարդասիրացի սնտուկին բովանդակութիւնը կը քննէ եւ սնտուկը կը փոխադրէ իր տունը ապահովելու համար:

## ԱՍՏՂԻԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Անձնուէր ընկերութենէն ետք Մալաթիոյ մէջ կազմուած ամենէն հին ընկերութիւնը եղած է ԱՍՏՂԻԿ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԸ որ հաւանօրէն 1872ին կազմուած է:

Այս ընկերութեան ալ առաջադրութիւնն էր կրթական գործին նպաստել եւ այս նպատակով անիկա բացած էր վարժարան մը Ս. Երրորդութիւն եւ Ս. Յարութիւն եկեղեցիներու յարակից գոյութիւն ունեցող վարժարաններէն զատ:

1885ին Յարութիւն վարդապետ Առաքելեան, Մալաթիացի, Վարագայ վանքին միաբանը, երբ Մալաթիոյ դպրոցներու ընդհանուր տնօրէն եղաւ, միւս վարժարաններուն հետ Աստղիկ վարժարանին տնօրէնութիւնն ալ վարեց (Արեւելք, Կ. Պոլիս 1885 թ. 128), ինչ որ ցոյց կու տայ թէ այս վարժարանը, հակառակ անոր որ ընկերութեան մը կողմէն հիմնուած էր, մասնաւոր վարժարան չէր նկատուեր, այլ ազգային վարժարաններու շարքին կը դասուէր:

1886ին ընկերութիւնը եւ իր վարժարանը դադրած են (Արեւելք, 1887, թ. 1114 կամ ՊԱՊ ՈՒԽՏԻ թ. 58, էջ 2 եւ վերը էջ 714):

Աստղիկ ընկերութեան վարժարանը Մալաթիոյ մէջ բարերար դեր մը կատարած է Անձնուէր ընկերութեան վարժարանին հետ, կրթական գործի մղում տալով եւ զայն արդիականացնելով եւ իր հնաբոյր Տէր Թողիկեան գրութենէն հանելով Մալաթիոյ Հայերու կրթական հաստատութիւնները:

## ՆԵՐՍԷՍԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

*Մալաթիոյ մէջ կազմուած է նաեւ* ՆԵՐՍԷՍԵԱՆ *անունով ընկերութիւն մը, որ նոյն անունով վարժարան մը հիմնուած է կամ գոյութիւն ունեցող նոյն անունով վարժարանի մը օգնելու համար կազմուած է հաւանօրէն* 1872—1873*ին* :

*Իր հիմնադրութեան թուականը անծանօթ կը մնայ, իսկ անոր կազմալուծումը կամ հոգեվարքը* 1887*ին կը ծանուցուի լրագրական սիւնակներու մէջ* (*տես* Արեւելք *թ.* 1114) :

## ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

(1880—1895)

*Մալաթիոյ մէջ ուսուցչական երկարատեւ պաշտօնավարութեամբ եւ հանրային գործունէութեամբ ծանօթ Յակոբ Մուրատեան, որ հայաջինջ եղեռնէ վերապրող մը եղած էր եւ Կիպրոս կ'ապրէր* 1942*ին*, ***ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ*** (*Դ. տարի, թ.* 1, *էջ* 12—14) *եւ* ***ՊԱՊ ՈՒԽՏԻ*** (*թ.* 32—33, *էջ* 11) *հանդէսներուն մէջ* «Որո՞նք եղած են Մալաթիոյ Կրթասիրացի հիմնադիրները» *խորագրով յօդուած մը ունի*[1] *որուն մէջ այս ընկերութեան ծնունդը սապէս կը նկարագրէ ·*

«Զօրպանը թաղէն Որբերեան Սարգիս, Մազմանեան Փիլիպպոս (Մազմանն երկայն Ակոյին եղբայրը) Ավշարեան (Եօթնցենց) Պապօ, Կէմալմազ թաղէն Կարապետ մուխթար Հայրապետեան, Կէմալմազեան Աւագ եւ եղբայրը Աւետիս, Խանճեան Մանուկ (պղնձագործ), Պօնուզեան փողոցի դիմաց Յակոբ Մազմանեան, Գարագուշենց թաղէն Յարութիւն Ոսկերիչեան, ինը ազնիւ հայրենակիցներ, որոնցմէ հինգը կարդալ գրել իսկ չէին գիտեր, իսկ մնացեալ չորսն հազիւ իրենց ստորագրութիւնը գրելու չափ կարողութիւն ունեցող ազգայիններ էին, 45—65 տարեկան:

«Վերոյիշեալները 1880 թուականին ընկերութիւն մը կազմելու գաղափարը կը յղանան ու գաղափարէն գործի անցնելով մէկ մէկ մէճիտ մուտքի տուրքով, եւ շաբաթական մէկ մէկ դրուշ վճարելու որոշումով, ընկերութիւն կը կազմեն:

«1885ին երբ դրամագլուխնին 15 ոսկիի կը հասնի, Զորպանը թաղէն Յակոբ Յովնանեանի (Պէշկէօթիւրեան Կարապետ Էֆէնտիի աշակերտներէն) թելադրութեամբ թաղային դպրոց մը բանալու գաղափարը կ'ունենան, ու 1886ին Կէմալմազ թաղի Կարապետեաններու տունը կը վարձեն, եւ իբր դաստիարակ կը բերեն Բահանեան Աստուր վարժապետը»: *Այս կերպով այն երի–*

---

(*1*) *Յակոբ Մուրատեան միեւնոյն յօդուածը ղրկած էր երկու հանդէսներուն ալ համերաշխական յորդորներով:*

*տասարդները որոնք այս ընկերութիւնը կազմած էին Մալաթիոյ կրթական գործին զարկ տալու համար, իրենց նպատակին ծառայել կը սկսէին:*

*Իրենց ձեռնարկը յաջողութիւն գտաւ վանքի վարժարանը 3–4 ամիս ետքը իր բացումէն ունեցաւ 50–60 աշակերտներ:*

*Յակոբ Յովնանեանի թելադրութեամբ դպրոցին բացման նախօրեակին ընկերութիւնը կը կոչուի* ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ *եւ դպրոցն ալ* ԿԸՐ-ԹԱՍԻՐԱՑ ՎԱՐԺԱՐԱՆ, *որ այս ժամանակուան համար խիստ օգտակար եւ տիպար հաստատութիւն մը եղած է:*

*Մալաթիոյ մէջ իբր ուսուցիչ արդիւնաւոր դէմք մը հանդիսացող Աւետիս Խօրասանճեան, որ Սահակեան վարժարանին տնօրէնութիւնը կը վարէր 1889ին, Կրթասիրացի դպրոցին տարեկան քննութիւններուն ներկայ գտնուելով կրթասիրաց ընկերութեան եւ անոր դպրոցին մասին, 300էն աւելի բաղմութեան մը ներկայութեան գնահատական խօսքեր ըրած է:*

*Այս վարժարանին մէջ 1886էն մինչեւ 1891, իբր օգնական ուսուցիչ պաշտօնավարած է Յակոբ Մուրատեան, որ իր յիշողութիւնները գիրի առած է:*

*Անոր յիշողութիւններուն համաձայն, 1887ին Աստուր վարժապետի տեղ, Կ. Պէօշկէօթիւրեանի աշակերտներէն Գրիգոր Թաչճեանը (1903ին քահանայ ձեռնադրուած) կը հրաւիրուի իբր դասախարակ, Յակոբ Մուրատեանը պարձեալ օգնական ուսուցիչ մնալու պայմանաւ:*

*Թաչճեան հայերէնէ զատ անգլերէն կ'ուսուցանէր առաջին կարգի տղայոց, իսկ Յակոբ Մուրատեան հայերէն եւ Թուրքերէն կը վարժեցնէր երկրորդ կարգի տղաքներուն: Նոյն տարին դպրոցին չէնքը նեղ գալով, դըպրոցը կը փոխադրուի Կէմալմագեաններու տունը: Իսկ երրորդ տարին երբ աշակերտներու թիւը հարիւրի կը բարձրանայ, այս նոր տեղն ալ նեղ կու գայ, ուստի Պօնճուգլեան փողոցի դիմաց ընկերութեան անդամներէն Յակոբ Մազմանեանի տունը կը փոխադրուի դպրոցը ուր Թաչճեան եւ Յակոբ Մուրատեան միասին մինչեւ 1891 ուսուցչութիւն կ'ընեն:*

*1891էն 1895 ուրիշ ուսուցիչներ կը շարունակեն գործը:*

*Այս ընկերութիւնը որ ոչ կանոնագիր ունէր եւ ոչ ալ կանոնաւոր տոմար, միայն ունէր մնայուն դանձապետ մը՝ Կէմալմագեան Աւագը: Ընկերութեան անդամները սրտանց կ'աշխատէին: Կրնար իրենց վարժարանը մեծ ծառայութիւն մատուցանել Մալաթիոյ Հայերուն, եթէ 1895ի կոտորածը դպրոցը եւ ընկերութիւնը միասին չանհետացնէր:*

## ԳԱՅԵԱՆԵԱՆ ԽՆԱՄԱԿԱԼՈՒՀԻՆԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1884՞)

Մալաթիոյ մէջ 1880ական թուականներուն կազմուած ընկերութիւններու շարքին կը յիշուի ԳԱՅԱՆԵԱՆՑ ԽՆԱՄԱԿԱԼՈՒՀԻՆԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԸ, որ հաւանօրէն 1884ին կամ քիչ առաջ կազմուած էր, և 1884ին իր հովանաւորութեան տակ ունէր ԳԱՅԱՆԵԱՆՑ ՕՐԻՈՐԴԱՑ ՎԱՐԺԱՐԱՆԸ, որ նոյն տարի բացուած էր այս ընկերութեան կողմէ, իբրեւ Հայադաւանները անդրանիկ աղջիկներու վարժարանը, մինչ Հայ Աւետարանականները, Հայ Կաթոլիկները եւ Լատինները ունէին իրենց աղջիկներու վարժարանները։

Գայանեանց վարժարանը այնպէս կ'երեւի որ ազգային դպրոցներու շարքին նկատուած եւ համայնքին վարժարանի վերածուած է, իր բացումէն հազիւ մէկ երկու տարի ետք։

## ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Կ. Պոլսոյ ԱՐԵՒԵԼՔ օրաթերթին մէջ 1885ին (Թ. 428) գրուած էր թէ Մալաթիոյ մէջ գոյութիւն ունէր նորակազմ ընկերութիւն մը «ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ» անունով։

Հետեւաբար առ առաւելն 1884 կամ 1885ին կազմուած կրնար ըլլալ այս ընկերութիւնը «ՆՈՐԱԿԱԶՄ» կոչուելու համար։

Իբր ընկերութեան նպատակ եւ գործունէութիւն ԱՐԵՒԵԼՔի նոյն թիւէն կը տեղեկանանք թէ անիկա 5—6 տեսակ թերթերով կը ջանար ընթերցասէր սաներուն մտաւոր սնունդ ճամբել։ Այս թուականներուն ուրիշ գաւառներու մէջ ալ նոյն կամ նման անուններով եւ նոյն նպատակով կազմուած ընկերութիւններու նմանութեամբ կազմուած պէտք է ըլլայ այս ընկերութիւնը, որուն վրայ դժբախտաբար ուրիշ տեղեկութիւն չունինք։

## ԿՐԹԱՍԻՐԱՑ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Կ. Պոլսոյ ԱՐԵՒԵԼՔի մէջ (1887 Թ. 1114), Մալաթիոյ կրթական հաստատութիւններու մասին գրուած թղթակցութեան մէջ որ շատ աննպաստ գիծերով կը ներկայացնէր Մալաթիոյ Հայոց կրթական եւ մշակութային հիմնարկութիւնները, գրուած է թէ «Մալաթիոյ մէջ ուրախանալու կէտ՝ Կրթասիրաց Երիտասարդաց Ընկերութիւնը կայ միայն, որուն հիմնարկութիւնը եղած է 1 Յունուար 1886, իւր նպատակն է կրթութիւն սփռել Հայ երիտասարդութեան մէջ եւ կրօնական, ազգային թերթեր եւ գրեանք բերել տալով կարդալ, այժմ ունի մի մատենադարան եւ 80ի չափ գրեանք· անդամոց թիւը 40, եւ հետզհետէ շատնալու վրայ է»։

*Այս ընկերութեան վրայ Հ. Եփրեմ վրդ. Պօղոսեան, որ տարիներէ իվեր Թուրքիոյ Հայոց մշակութային ընկերութիւններու մասին տեղեկութիւններ կը հաւաքէ, ուրիշ տեղեկութիւն չէ կրցած գտնել եւ այս տողերը արտագրելով բաւականացած է, իր կողմէն աւելցնելով միայն սա տարակոյսը թէ արդեօք այս ընկեութիւնը եւ* ***ԿՐԹԱՍԻՐԱՑ*** *ընկերութիւնը միեւնոյն են (տես* ***ՊԱՊ ՈՒԽՏԻ*** *Թ.* 58, *էջ* 3)։ *Ես ալ կը տարակուսիմ որ* ***ԿՐԹԱՍԻՐԱՑ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ*** *ընկերութիւնը բոլորովին անջատ ընկերութիւն մը եղած ըլլայ։*

*Եթէ Ընթերցասիրաց Սանուց Ընկերութիւնը* 1 *Յունուար* 1886*էն առաջ յիշուած չըլլար (ինչպէս տեսնուեցաւ վերը) պիտի միտէի այս երկուքը նոյնացնել, սակայն կը վարանիմ, բայց կը կարծեմ թէ* ***ԿՐԹԱՍԻՐԱՑ ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ*** *այս ընկերութիւնը, որ* 1 *Յունուար* 1886*ին կազմուած էր,* 1883–84*ին կազմուած Ընթերցասիրաց Սանուց Ընկերութեան շարունակութիւնն է ձեւափոխութեամբ կամ անուանափոխութեամբ։*

*Թերեւս այս փոփոխութիւնով Ընթերցասիրացը միացած կամ հովանաւորուած է Կրթասիրաց զօրաւոր կազմակերպութեան կողմէ։*

## ԾԻԱԾԱՆ ՄԵԼԻՏԻՆԷԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1892–1897)

*Դէպի Ամերիկա գաղթային հոսանքը բաւական զօրանալէն ետք,* 1892*ին Ամերիկա գաղթած Մալաթիացիներ Ուստրի մէջ կը հիմնեն «*__ԾԻԱԾԱՆ ՄԱԼԱԹԻՈՅ__*» անունով Մշակութային Ընկերութիւնը, որուն նպատակն էր Մալաթիոյ Հայ դպրոցներուն օգնել (տես* ***ՊԱՊ ՈՒԽՏԻ***, 1936 *Թ.* 2, *էջ* 14)։

*Հ. Եփրեմ Պօղոսեան առանց ուրիշ տեղեկութեան, կը յայտնէ թէ դժբախտաբար երկար կեանք չէ ունեցած ընկերութիւնը։ Արդարեւ Ա. Խմինեան որ ընկերութեան հաստատութիւնը կը ճշդէ* 1892 *թուականին*[1]*, նաեւ կը ճշդէ անոր լուծումի թուականը որ* 1897*ն է (* ***ՊԱՊ ՈՒԽՏԻ***, *Գ. տարի, Թ.* 2, *էջ* 12)։

*Իրապէս այս ընկերութիւնը Պոլսոյ մէջ* 1862*ին կազմուած Անձնուէր ընկերութեան կը նմանի, վասնզի ինչպէս տեսնուեցաւ, Անձնուէր ընկերութիւնը* 1870*ական թուականներուն Մալաթիոյ մէջ ալ ճիւղ մը բացած էր, որ* 1880*ական թուականներուն իր անունը փոխել հարկադրուած էր, սակայն եւ այնպէս չէր կրցած իր գոյութիւնը պահել եւ լուծուած էր։ Սակայն գաղափարը կենդանի մնացած էր, ուստի* 1892*ին, այս անգամ փոխանակ Կ. Պոլսոյ Ամերիկա գաղթող Մալաթիացիները կազմած էին իրենց ծննդավայրին դպրոցներուն Նպաստամատոյց ընկերութիւն մը Ուստրի մէջ, որ դժբախ-*

---

(1) *Ոչ 1890-ին, ինչպէս գրած է Հ. Եփրեմ վրդ. Պօղոսեան՝ անշուշտ հիմնուելով Յակոբ Գ. ստորագրութեան «Պապ Ուխտի»ի մէջ գրած մէկ յօդուածին վրայ (* ***ՊԱՊ ՈՒԽՏԻ***, *Բ. տարի, Թ. 2, էջ 14)։*

*տարար, ինչպէս ըսի 1897ին դադրած էր: Բայց Մալաթիացիք 1862ին եւ 1880ին, Կ. Պոլսոյ եւ 1887ին Ուսթըրի մէջ Մալաթիոյ դպրոցներուն օգնելու համար կազմուած ընկերութիւններու գաղափարը աւելի զօւոր հիմերու վրայ դրուած կազմակերպութեամբ մը իրագործելու համար, 4 Յունուար 1904ին Նիւ Եորքի մէջ կազմեցին ընկերութիւն մը, վաղեմի Մալաթիոյ* **ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ** *անունով, նոր աշխարհի մէջ աւելի կանուխ կազմուած եւ դժբախտաբար շատ կարճ կեանք ունեցող* **ԾԻԱԾԱՆԻՆ** *նպատակով:*

## ՄԱԼԱԹԻՈՅ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

(4 Յունուար 1904ին հիմն · Ամերիկա)

*Վերը տեսնուեցաւ թէ առաջին անգամ Մալաթիացիք Ամերիկայի մէջ կազմած էին* **ԾԻԱԾԱՆ ՄԵԼԻՏԻՆԷԻ** *անուն ընկերութիւն մը ի նպաստ իրենց ծննդավայրին վարժարաններուն, 1892ին:*

*Այդ թուականին Ամերիկայի մէջ Մալաթիացիներու թիւը շատ նուազ էր եւ տակաւին նիւթապէս բարգաւաճ վիճակ մը չունէին:*

*Ի. դարուն սկիզբը իրենց թիւը բաւական շատցած էր, վասնզի Թրքական հալածանքները եւ մանաւանդ 1895ի ջարդէն ետքը, Օսմանեան կայսրութեան ընդգրկած կառավարական հակահայ ուղղութեան եւ գործադրուած հալածանքներուն պատճառով գաղթային հոսանք մը սկսած էր:*

*Այս գաղթականները միշտ պահած ըլլալով իրենց սիրտին մէջ իրենց ծննդավայրին սէրը, օգտակար ըլլալու համար անոր «երկրին մէջ գոյութիւն ունեցող դպրոցներէն աւելի բարձր ազգ. վարժարան մը հիմնել» նպատակ ունենալով, 1904ին Միացեալ Նահանգներու երեք տարբեր քաղաքներու մէջ, իրարու մօտ ժամանակի մէջ, «Կրթասիրաց Ընկերութիւն» անունով նոր ընկերութիւններ կը կազմեն[1]:*

---

*(1) Մեր տրամադրութեան տակ դրուած եւ Կրթասիրաց ընկերութեան Թուղթերէն եւ տոմարներէն քաղուած ընդարձակ աշխատութեան մէջ, որ այս հատորին հետ պիտի հրատարակուի, Պ. Ռաֆայէլ Տէր Յովհաննէսեան, Պոստոնէն, կը հաստատէ թէ* **ՄԱԼԱԹԻՈՅ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ** *նախնական օրօրանը եղած է Նիւ Եորք, ուր 1904 Յունուար 4-ին հիմնուած է ընկերութիւնը: Այս հաստատումին դէմ կը կանգնին «Հայրաղատ» պիտակ կոչումով եւ հիւանդագին մտայնութեամբ անջատողականներ, որոնք ընկերութեան ծննդավայրը Ֆիլատելֆիա կը փոխադրեն, սակայն անոր ծննդեան թուականը 1904 Յունուար 4-էն աւելի առաջ (Յունուար 1, 2, 3) ցոյց տալու վաւերագիր մը չունին: (Ա. Էմինեան, «Ո՞ւր տեղ կազմուեցաւ* **ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԸ**», **ՊԱՊ ՕՒԽՏԻ**, *Գ. տարի, թ. 2. էջ 11):*

*Այդ օրերուն Ուստրի մէջ ալ* **ԿՐԹԱՍԻՐԱՑ** *մը կազմելու միտքը արծարծուած է, որովհետեւ, ինչպէս տեսնուեցաւ, գաղափարին թթխմորը դեռ 1892-ին* **ԾԻԱԾԱՆ ՄԵԼԻՏԻՆԷԻ** *միութենէն մնացած էր բոլորին մէջ, ինչպէս կը ներկայացնէ Ա.*

Հոս այս ընկերութեան աւելի քան յիսուն տարիներու գործունէութեան վրայ պիտի չխօսինք աւելորդ կրկնութիւն ըրած չըլլալու համար, քանի որ մանրամասն պատմութիւն պիտի հրատարակուի այս հատորին հետ:

## ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1907–1915)

Ինչպէս վերը տեսնուեցաւ, Կրթասիրաց Ընկերութիւնը որ 1880ին առաջին անգամ կազմուած էր Մալաթիոյ մէջ, 1895ի ջարդէն վերջ կազմալուծուած էր, սակայն 4 Յունուար 1904ին, Նիւ Եորքի մէջ կազմուած արտերկրեան նոր ընկերութիւն մը նոյն անունով կը գործէր Ամերիկայի մէջ նոյն նպատակով:

1907ին, Մալաթիոյ մէջ ուր Հայերը 1895ի կոտորածէն վերջ քիչ քիչ վերակազմուած եւ զարմանած էին այս վնասները, որոնք կրած էին, խրախուսուած Ամերիկայի Կրթասիրաց ընկերութեան օրինակով, կը հիմնեն նոր Կրթասիրաց Ընկերութիւն մը: Նախաձեռնողները կ'ըլլան.

Յակոբ Թաչճեան
Մ. Չէքէմեան
Լեւոն Գավուզճեան
Կ. Խցիկեան
Գ. Կէմալմաղեան
Ս. Մանուչեան
Վ. Տ. Դուիթեան
Նարոլէոն Ալաճաեան

Ընկերութեան նպատակն էր ըստ հիմնադիրներէն Ստեփան Մանուչեանի (ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, ԺԵ. տարի, Թ. 3–4, էջ 45–46), պատանիներու եւ երիտասարդներու բարոյական մակարդակը բարձր պահել, զարգանալ եւ զարգացնել: Հետզհետէ այս ընկերութեան շարքերուն վրայ աւելցան.

Խօսրով Քէչիչեան
Գ. Տ. Տօնապետեան
Գուրգէն Պօղաճեան
Ա. Գ. Եագրճեան
Մ. Կատիկեան եւ ուրիշներ:

Համիտեան վարչակարգին այս ամենէն խաւարոյն օրերուն կազմուած այս ընկերութիւնը, Ստեփան Մանուչեանի վկայութեամբ կը թուի թէ գաղտ–

---

Լըմընեան (ՓԱՊ ՈՒԽՏԻ, Գ. տարի, Թ. 2):

Այս տարբեր տեսութիւնները ներկայացուած են վերոյիշեալ գործին մէջ: Ես կարծեմ պիտի չյայտնեմ այդ մասին մինչեւ որ տպագրուի այս գործը: Միայն կը ցաւիմ որ բացարձակ ճշմարտութիւններու շուրջ երկու բաժանեալ ճիւղերը ԿՐԹԱՍԻՐԱՑին իրենց օրգաններով (ՓԱՊ ՈՒԽՏԻ 1934-ին եւ ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ 1939-ին հրատարակուելիք սկսած) աւելորդ ճիգ կը սպառեն «վասն ոչինչ»ի, մնայուն խնդիրներուն համար իրար անարգելով:

նի ընկերութիւն մըն էր, վասնզի ինչպէս կը յայտնուի Ստեփան Մանուչեանի գրածներէն ընկերութեան անդամները ամէն կիրակի պաղտնի ժողովներ կ'ունենային թէ տուներու եւ թէ այգիներու մէջ, ուր ընկերութեան անդամներէն մէկը մասնաւոր նիւթի մը շուրջ կը խօսէր։

1908ին Օսմանեան Սահմանադրութեան վերահաստատութեամբ ստեղծուած անկաշկանդ պայմաններէն օգտուելով, այս ընկերութիւնը լաւ կազմակերպուած ազգօգուտ գործունէութիւն մը կ'ունենայ 1908էն 1914 տեւող եօթն տարուան կարճ շրջանին։

Բացի Մ. Զէքիմեանէ եւ Գ. Կէմալմաղեանէ, բոլոր ընկերութեան անդամները, որոնք Մալաթիա մնացած էին նահատակուեցան։

Արտասահման, մասնաւորապէս Ամերիկա գաղթողներէն Վ. Տ. Դաւիթեան, Առաքել Գ. Եազըճեան, Ստեփան Մանուչեան, իրենց ուժերը տրամադրեցին Ամերիկայի Կրթասիրաց Միութեան եւ ծառայեցին իրենց գաղափարականին (ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, ԺԵ. տարի, Թ. 3—4, էջ 45—46)։

## ՄԱՍԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Ինչպէս Կրթասիրաց ընկերութիւնը, նոյնպէս նաեւ այս ընկերութիւնը, հաւանօրէն 1907ին կազմուած պէտք է ըլլայ։ Իր նպատակն էր Մալաթիոյ Հայ ժողովրդեան զարգացման սատարել, հաստատելով լսարան, մատենադարան, մամուլ եւ գիշերային վարժարան։

Եթէ չեմ սխալիր այս ընկերութիւնը կը թուի Կրթասիրաց Ընկերութեան ծոցին մէջ կազմուած ըլլալ եւ 1908էն առաջ ժամանակ մը չարունակելէ ետք հարկադրուած դադրած ըլլալ, իրենց դէմ ռեւէ հալածանքի պատրուակ չտալու համար, վասնզի Դաշնակցականներ էին[1]։

1908ին Օսմանեան Սահմանադրութեան խարէական վերահաստատութենէն յետոյ, այս ընկերութիւնը երեւան եկաւ եւ գործօն դեր կատարեց Մալաթիոյ Հայոց մէջ։

Այս ընկերութեան առաջին հիմնադիրներն էին Գրիգոր Թաչճեան, Համբարձում (ետքը Տ. Կարապետ քհն.) Պէննէեան եւ Ալթունեան (Սենեքերիմ Ափալաքեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 27, էջ 6)։

1909ին ընկերութիւնը ունէր 300 անդամ, իսկ իր հաստատած մատենադարանը՝ 500 գիրք։

Ատենապետն էր Խօսրով Քէչիչեան եւ Ատենադպիրն էր Գրիգոր Արփաճեան։

Ընկերութիւնը կը ջանար ամէն կիրակի դասախօսական, վիճաբանական եւ հրապարակային ժողովներ սարքելով զարկ տալ ժողովուրդի ինքնա—

---

(1) Դաշնակցական Գէորգ Մելիտինեցի իր Նախճիրներուն մէջ (Պոստոն, 1939, էջ 78) գրած է թէ «Դաշնակցութեան կոմիտէն միշտ գործած է «Մալաթիոյ Ընկերութիւն» անուան տակ»։

գարգացման: Այս հաւաքումներուն անխտիր ամէն կուսակցութենէ եւ դաւանութենէ Հայեր կու գային:

Անոնք կը խօսէին, կը վիճէին, բայց ի վերջոյ, սիրով եւ առանց կըրքոտելու կը բաժնուէին իրարմէ:

Այս ընկերութիւնն նաեւ օգտակար կ'ըլլար դպրոցներուն եւ մանաւանդ աղքատ եւ անկարող ուսանողներու (նոյն):

ՄԱՍԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԸ, քօղարկեալ դաշնակցութիւնը, կը գործէր այս անունին տակ: Մամուլ ալ հաստատել ձեռնարկած է եւ 20 Յունուար 1909ին հրատարակած է Ջահ անունով խմբատիպ հանդէս մը (տես վարը):

## ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Հաւանօրէն 1885ին հիմնուած ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ ՍԱՆՈՒՑ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ վերակազմութիւնն է Օսմանեան Սահմանադրութեան 1908ի վերահաստատութենէն ետք, տիրող ազատ կարգերէն օգտուելով:

Իր գործունէութեան վրայ ոչ մէկ տեղեկութիւն ունինք դժբախտաբար:

## ԶՄՇՈՒՏ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (1908)

1908ին Օսմանեան Սահմանադրութեան վերահաստատութեան տարին, Սահակեան Մայր վարժարանի աշակերտներէն մաս մը կը կազմէ ԶՄՇՈՒՏ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆը, նպատակ ունենալով ինքնազարգացում եւ ինչպէս նաեւ ուրիշներու օգտակար հանդիսանալու փափաքը: Սահակ Պէննէեան որ հիմնադիր անդամներէն մէկն է կ'ըսէ. «Հմուտ առաջնորդներու ղեկավարութեանը մենք շարքայիններս շատ օգտուեցանք»:

Մասնաւոր կերպով կը յիշատակէ Սիմուոնին, որ Աստուր Աղայենց տունը կը բնակէր: Ընկերութեան առաջին անդամներն էին Մկրտիչ Թօփալեան, Մկրտիչ Մալաճիկեան, Յակոբ Եողունեան, Յակոբ Թիւթէլեան, Ստեփան Շիրինեան, Սուրէն Նաճարեան եւ Գրիգոր Նաճարեան, որոնք իրենց բնակարանին մէջ պզտիկ սենեակ մը տրամադրած էին ժողովներուն համար:

Այս ընկերութիւնը կը շարունակուէր տակաւին 1911ին (Սահակ Պէննէեան, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, ԺԵ. տարի, Թ. 3–4, էջ 46):

Աշխարհաւեր պատերազմին եւ Թրքական անպատմելի եղեռնին հետ վերջ գտած է:

## . . . . . . . ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

## (1896–1898)

1895 Հոկտեմբեր 22ի ջարդէն քանի մը ամիս ետքը, չորս վերապրող նորահաս երիտասարդներ, իրար կը գտնեն եւ կը կազմեն ընկերութիւն մը, որ երկու տարի կեանք կ'ունենայ:

Այդ չորս երիտասարդներն էին.
1․— Յակոբ Պէննէեան (+1915ի նահատակ)
2․— Յակոբ Թաշճեան (Վառվառին) նոյնպէս նահատակ
3․— Նազարէթ Թորոսեան նոյնպէս նահատակ
4․— Գրիգոր Խանճեան (1915ի եղեռնէն վերապրող, Նիւ Եորք հաստատուած, Ամերիկա)։
5․— Քերովբէ Թաշճեան[1] (1915ի եղեռնէն վերապրող, Նիւ Եորք հաստատուած, Ամերիկա)։

Այս հինգ սրտակից ընկերները որոշած էին ընկերութեան կազմութիւնը գաղտնի պահել իրենց մէջ։ Քերովբէ Թաշճեան կը յիշէ թէ հարազատ եղբայրներու պէս իրարու հաւատարիմ էին։ Իրենց նպատակը ողջայական է։ Անոնք կը խորհէին թէ ի՞նչպէս կրնային վրէժ լուծել։ «Բայց, ցաւալի է, կ'ըսէ Քերովբէ Թաշճեան, որ տիրող կարգերու բերումով մենք չհասանք մեր նպատակին» (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ․ 48, էջ 15)։

## ԲԱՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

1909ին Բարսեղ Շահպազ իր Մալաթիա այցելութեան առթիւ 1908ի Օսմանեան Սահմանադրութենէն վերջ կազմուած հայ ընկերութիւններու շարքին կը յիշատակէ նաեւ ԲԱՆԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ անունով ընկերութիւն մը եւս, որուն ե՞րբ եւ ի՞նչ նպատակով կազմուած եւ ի՞նչ գործունէութիւն ունեցած եւ ե՞րբ դադրած ըլլալը չենք գիտեր։

Ինծի կը թուի թէ այս ընկերութեան անունը ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐԱՑ պիտի ըլլայ եւ ոչ Բանասիրաց, ինչպէս գրած է Բ․ Շահպազ։

Այս ընկերութիւնը Ս․ Յարութեան թաղին մէջ կազմուած էր։

## ՄԱՆԿԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Նոյնպէս Բարսեղ Շահպազէ յիշուած է ՄԱՆԿԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆը, որ Բանասիրացի պէս 1908ին Սահմանադրութեան հռչակումէն վերջ հաստատուած է։

Բարսեղ Շահպազ 1909ին, այս ընկերութեան մասին կ'արտայայտուի սապէս. «Հազիւ Սահմանադրութիւնը կը հռչակուի՝ վրայէ վրայ բազմաթիւ ընկերութիւններ կը սկսին կազմուիլ, ՄԱՍԵԱՑ, ԸՆԹԵՐՑԱՍԻՐԱՑ, ՉԸՄՇՈՒՏ, ԲԱՆԱՍԻՐԱՑ, ՄԱՆԿԱԿԱՆ եւայլն, որոնք բոլորն ալ անկէ առաջ արդէն հաստատուած կրթասիրացին նման իրենք իրենց կ'առաջադրեն աշխատիլ ժողովրդական զարգացման համար։ Այս բոլոր ընկերութիւնները կան

(1) Ծնած է 25 Նոյեմբեր 1880-ին։ Աշակերտ Աւետիս Խորասանճեանի՝ Մայր Վարժարանի մէջ։ Որբացած հօրմէ 1895 Հոկտեմբեր 22-ի ջարդին հետեւանօք։

մինչեւ այսօր եւ կը շարունակեն գործել, իրենց գլուխը ունենալով ՄԱՍԵԱՑը, որ ամենէն զօրաւոր է» (*տես Հ. Եփրեմ Պօղոսեան*, **ՊԱՊ ՈՒԽՏԻ**, *թ.* 58, *էջ* 3):

## ՄԵԼԻՏԻՆԷԻ ՄԻՈՒԹԻՒՆ (1925)

*Հ. Եփրեմ Պօղոսեան (տես* **ՊԱՊ ՈՒԽՏԻ** *թ.* 60, *էջ* 20) *կը գրէ թէ 1925ի վերջերը Ֆիլատելֆիոյ մէջ կազմուած է* **ՄԵԼԻՏԻՆԷ ՄԻՈՒԹԻՒՆ**ը, *նպատակ ունենալով՝ օգնել Մալաթիացի կարօտ ուսանողներու Ամերիկայէն դուրս* (Կրթասիրաց, *Պէյրութ*, 1925, *էջ* 147):

*Այս միութեան մասին Գէորգ Տէր Պաղտասարեան Ֆիլատելֆիայէն գրութիւն մը գրելով* **ԼՐԱԲԵՐԻ** (31 *Օգոստոս* 1944) *այս միութեան բուն նպատակը կը ներկայացնէ Ա) Մալաթիացի հայրենակիցներուն ջանքերը Կրթասիրացէն դէպի Մելիտինէ ընկերութիւնը շեղելով ձախողնեցնել* **ՆՈՐ ՄԱԼԱԹԻՈՅ** *շինարարութիւնը, Բ) Մալաթիացի ուսանողներ պատրաստելու ձեւին տակ Դաշնակցական գործիչներ պատրաստել:*

*Ընկերութեան վարիչները Մալաթիացիներու պարտք դրած են անդամակցելու այս ընկերութեան, որպէսզի բեռնաւորուած Կրթասիրացը քանի որ անկարող է նիւթապէս՝ արտասահմանին օգնութեան կարօտ Մալաթիացի պատանիներու նախապատրաստական կրթութիւն տան եւ ապա ղրկեն Հայաստանի համալսարանը, որպէսզի անկէ շրջանաւարտ ըլլալէն ետք, օգտակար ըլլան Նոր Մալաթիոյ համայնքին: Սակայն երբ ժամանակը եկած է որ ուսանողները Համալսարան մտնէին, ընկերութեան Դաշնակցական հիմնադիրները քաջալերած են զանոնք որ մերժեն Հայաստան մեկնիլ: Ասիկա պատճառ եղած է որ բարեմտաբար խաբուած բազմաթիւ Մալաթիացիներ հրաժարին ընկերութենէն եւ երեք ամիս չանցած լուծուի ընկերութիւնը:*

*Կը թուի թէ այս ընկերութեան կազմութիւնը յառաջաբանը եղած է այն մեծ պառակտումին, որ Մալաթիոյ Կրթասիրացը երկուքի բաժնեց, միեւնոյն անունով, մէկը առնելով «Հարազատ» պիտակ անունը, թէեւ կը պնդուի ոմանց կողմէ թէ* **ՄԵԼԻՏԻՆԷ**ն *կազմուած է Ֆիլատելֆիայի մէջ, բոլորովին անկախօրէն եւ հեռու ոեւէ նենգ եւ չարամիտ առաջադրութիւններէ:*

*Խ. Եսայեան կը հաստատէ (Տես* **ՊԱՊ ՈՒԽՏԻ**, *թ.* 37–38, *էջ* 11), *այս ընկերութեան գլխաւոր հիմնադիրը եւ կազմակերպիչներէն մէկը եղած է Միսաք Կոստիկեան* «որ Ամերիկա գալէն իվեր գլխաւոր ջատագովը եւ գաղափարախօսը եղած է այդպիսի միութեան մը կազմութեան, այն համոզումով, որ ինչպէս Մալաթիոյ մէջ իրենց կազմած «Կրթասիրաց Միութիւնը», այնպէս ալ հոս՝ Ամերիկայի մէջ, սեղմ, մտերիմ ընկերներու շրջանակի մը մէջ կազմակերպուած նոյնանման միութիւն մը կրնայ օգտակար գործունէութիւն ունենալ»: *Եւ այս իբր թէ* **ԿՐԹԱՍԻՐԱՑ**ի *կողմէ լքուած ուսման կարօտ նոր սերունդին օգնելու նպատակը հակառակ իր գանձին մէջ խոշոր գումարներ պատրաստ ունենալու:*

Կը հերքուէր նաեւ ուսանողներու Հայաստան երթալու չկամութիւնը, վեր առնելով Հայաստանի դուռները փակ ըլլալու պարագան։ (Տես **ՊԱՊ ՈՒԽՏԻ**, թ. 37–38, էջ 11)։

Վէճը որ այն ընկերութեան մասին գոյութիւն ունի, կը չահագրգռէ անոնք միայն, որ հաշիւներ կամ քչելիք խօսքեր ունին։

## ՀԱՅ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԻՒՆ

Հայ Բարեգործական Ընդհանուր Միութիւնը որ 1908էն վերջ Թուրքիոյ բոլոր քաղաքներուն մէջ մասնաճիւղեր ունեցած է, քիչ մը ուշ, վերջապէս Մալաթիոյ մէջ ալ իր մասնաճիւղը ունեցած է 1913ին։

Այսպէս Մալաթիացիք ալ բերած են իրենց մասնակցութիւնը համազգային այս մեծ կազմակերպութեան, որուն դերը եւ կարեւորութիւնը աւելորդ կը նկատեմ բացատրել, քանի որ հայ մը չկայ որ չգիտնայ։

Հետեւաբար առանց իմ կողմէս բան մը աւելցնելու, հոս կ՚արտագրեմ այս համազգային մեծ ու օգտակար հիմնարկութեան Մալաթիոյ ճիւղին վրայ գրուած հետեւեալ տողերը.

«1913 Նոյեմբերին, Մալաթիոյ կաթողիկոսական փոխանորդ Գեր. Մեսրոպ վրդ. Երէցեան[1] եւ տեղւոյն ազգայիններէն ոմանք կը մտածեն Հ. Բ. Ը. Միութեան տեղական Մասնաճիւղ մը կազմել, ի յիշատակ հայ տառերու գիւտին, որուն 1500ամեայ յոբելեանը նոր տեղի ունեցած էր հայ ժողովուրդին ընդհանուր խանդավառութեան մէջ։ Այս միտքով հաւաքում մը կ՚ունենան Տոքթ. Լութֆիկ Հալէպլեանի բնակարանը, ուր Տոքթորին նախագահութեամբ առժամեայ մարմին մը կը կազմուի եւ ներկաներէն 15 հոգի անդամ կ՚արձանագրուին։

«1914 Յունուար 1ին տեղի կ՚ունենայ անդամական ընդհ. ժողով մը որ կ՚ընտրէ հետեւեալ վարիչ մարմինը.— Տեարք Տոքթ. Լութֆիկ Հալէպլեան, Ատենապետ, Միհրան Մ. Թերխանեան՝ Ատենադպիր, Տիգրան Սարաֆեան՝ Գանձապահ, եւ խորհրդականներ Յարութիւն Ոսկերիչեան եւ Մանուկ Տամպուրաճեան։

«Այս մարմինը կը սկսի եռանդով աշխատիլ, սարքելով հրապարակային հանդէսներ եւ բանախօսութիւններ։

«Անդամներու թիւը շուտով կը բարձրանայ 26ի, բայց վրայ կը հասնի ընդհանուր պատերազմը եւ մասնաճիւղը կը լուծուի»։

Տես **ՈՍԿԵՄԱՏԵԱՆ ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ**, հրատարակուած Միութեան Արծաթեայ Յոբելեանին (1908–1931) առթիւ, տպագր. Փարիզ էջ 121 ։

---

(1) Ամատունի ալ կոչուած է։

## ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ՀԻՒՍՆԻ ՄԱՆՍՈՒՐԻ

*Մալաթիոյ մէջ տեսնուած մշակութային ջանքերը հաւանօրէն գրգիռ եղած են որ իրեն շրջակայ եւ Մալաթիոյ առաջնորդութեան ենթարկուած վայրերու մէջ ալ նմանօրինակ ձեռնարկներ կատարուին :*

*Այսպէս Հիւսնի Մանսուրի մէջ կը կազմուի* ԱՐԱՄԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ *մը հաւանօրէն* 1880*էն ետքը, վասնզի* 1885 *Մայիս* 26 *թուականով Պոլիս պատրիարքարան ղրկուած նամակի մը մէջ կը հաղորդուի թէ Արամեան ընկերութիւնը խանգարուած է, ինչ որ կանոնաւոր անցեալ մը ենթադրել կու տայ :*

## ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ՀԻՒՍՆԻ ՄԱՆՍՈՒՐԻ

*Մալաթիոյ Առաջնորդութեան ենթակայ Հիւսնի Մանսուրի մէջ* 1891*ին կը կազմուի ընկերութիւն մը* ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ *անունով, եւ կը խնդրեն Պոլսոյ պատրիարքարանէն* 5 *Նոյեմբեր* 1892*ին թուականով նամակով մը անոր վաւերացումը, որ չի ղլացուիր անշուշտ (Պատ. Արձան.) սակայն երկար չէ տեւած այս ընկերութիւնը :*

# Ը.

# ԼՍԱՐԱՆՆԵՐ

*Դպրոցին լրացուցիչն էր Լսարանը, որ մասնաւորապէս* 1879*էն ետք Կ. Պոլսոյ եւ գաւառական բոլոր քաղաքներու մէջ հաստատուեցաւ կենդանի խօսքով լուսաւորելու համար միտքերը :*

*Մալաթիա ալ ունեցաւ իր լսարանները, որոնք գլխաւորապէս դպրոցներու կցուած էին :*

## ԿԻՐԱԿՆՈՐԵԱՅ ԼՍԱՐԱՆ

1886*ին երբ Կրթասիրաց ընկերութիւնը իր սեփական վարժարանը կը հիմնէ, դպրոցը բացուելէն սկսեալ ամէն կիրակի կէսօրէ ետքը, դպրոցին մէջ տեղի կ'ունենային նաեւ բարոյական եւ գիտական բանախօսութիւններ Յակոբ Յովնանեանի կողմէ (Հ. Եփրեմ Պօղոսեան,* ՊԱՊ ՈՒԽՏԻ, *թ.* 57, *էջ* 19) : *Ժողովուրդը հետաքրքրութեամբ կը հետեւէր այս կիրակնօրեայ բանախօսութիւններուն, որոնք շինիչ հանգամանք մը ունէին եւ ժողովուրդը օգտակար գաղափարներու հաղորդ կ'ընէին : Խուռն բազմութիւն մը ներկայ կ'ըլլար (Յակոբ Մուրատեան,* ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, *Դ. տարի, թ.* 1, *էջ* 13) :

. . . . . . . .

1888ին, Մալաթիոյ ՎԵՐԻ ՍԱՆՏԸՂԸՐ թաղին մէջ բացուած վարժարանին (տես վերը էջ 718) ուսուցիչը՝ Եղովբոս . . . . , նմանութեամբ Կըթասիրաց վարժարանին մէջ կատարուած բանախօսութիւններուն, կիրակի օրերը դպրոցին մէջ բանախօսութիւններ կ՚ընէր մեծերու եւ երիտասարդներու (Հ. Եփրեմ Պօղոսեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, թ. 57, էջ 19, Յակոբ Մուրատեան, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Դ. տարի, թ. 1, էջ 13): Որքան ատեն որ տեւած է, ծանօթ չէ:

## ԿԻՐԱԿՆՕՐԵԱՅ ԼՍԱՐԱՆ

Մայր կամ կեդրոնական վարժարանի վերածուած Սահակեան վարժարանի՞ մէջ որ կը գտնուէր Ս. Երրորդութեան եկեղեցիին մօտ, կար նաեւ սրահ մը, ուր կիրակնօրեայ լսարան մը կազմակերպեց Առաջն. Տեղապահ Խաչատուր վրդ. Տէր Ղազարեանը, որ ինչպէս տեսնուեցաւ Մալաթիոյ մէջ արդիւնաւոր գործունէութիւն մը ունեցած է, մասնաւոր կերպով հոգածու կըրթական գործին:

Այս համեստ եւ աշխատասէր եկեղեցականին հաստատած կիրակնօրեայ լսարանը Կիրակի առաւօտները ժամը 6էն 8 կը տեւէր: Հոն տեղի կ՚ունենային կրօնական ընթերցումներ, կը կատարուէին արտասանութիւններ, եւ կը կարդացուէին թերթերու կարեւոր յօդուածները, կամ կ՚ըլլային ճառախօսութիւններ (Արեւելք, Կ. Պոլսոյ, 1901, թ. 4532):

Որոշ տեղեկութիւն մը չունինք թէ այս օգտակար ձեռնարկը որքան ատեն շարունակուած է, բայց կը կարծեմ թէ տեւած է նաեւ Գէորգ վրդ. Արսլանեանի Առաջնորդութեան շրջանին:

1912—13 եւ 14 թուականներուն երբ կարգ մը խորհրդակցական ժողովներով, կրթական գործին համար երեք յարանուանութիւններուն միջեւ համաձայնութիւն մը կնքուեցաւ եւ երեք համայնքներէն առնուած ներկայացուցիչներով խառն Ուսումնական Խորհուրդ մը կազմուեցաւ, այս խառն Յանձնախումբը Կիրակի օրերը կանոնաւորապէս սարքեց լսարաններ աւելի կազմակերպուած եղանակով մը: Անոր իրենց մասնակցութիւնը կը բերէին աչքի զարնող բոլոր ուժերը՝ բանախօսութիւններով ու դասախօսութիւններով: Տարէցներու հետ կը քաջալերուէր նաեւ երիտասարդութիւնը, որ անպատճառ ներկայ կ՚ըլլար այս լսարանական ժողովներուն:

1912—1914 տարիները Մելիտինէի հայութեան համար յառաջդիմութեան ու ծաղկումի շրջան մը եղան:

Լսարանի ղեկավար առաջնորդներն էին Խորոմ Քէչիշեան դեղագործ, չերամարոյծ Ս. Մոմճեան, Ս. Պօնճուգլեան, Մանուկ Խանձեան եւայլն:



Խոսրով Քեսիշեան

*Ջանք չէր խնայուեր լսարանական հաւաքոյթները աւելի օգտակար եւ զբօսիչ դարձնելու համար, մանաւանդ երիտասարդութեան համար (Տոքթ. Միքայէլ Քէչիշեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, թ. 20, էջ 5–6):*

*Այս լսարանին կազմակերպութիւնը կարելի է ենթադրել որ նոյնինքն ՄԱՍԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆը (տես վերը) ըրած է:*

Թ.

# ՄԱՄՈՒԼ ԵՒ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

*Հայերը ուսման ու լուսաւորութեան հետամուտ ժողովուրդ մը եղած են եւ միշտ Արեւելքի մէջ իրենց բնակակից ժողովուրդներէն զարգացած են:*

*Ընթերցումը իբր միջոց լուսաւորութեան Հայերէն չէ արհամարհուած, որքան որ ալ իմաստութեան շատ սէր ունեցած չըլլայ Պատմահօր բացատրութեամբը:*

*Մանաւանդ լրագրութիւնը այլազան պատճառներով, որոնք բացատրել մեզ կրնայ հեռուները տանիլ Հայերը հետաքրքրուած են մամուլով եւ անոր տարածումը տեսակ մը չափանիշ նկատուած է քաղաքի մը կամ գաւառի մը բնակչութեան զարգացման աստիճանը որոշելու համար:*

*Այս տեսակէտով Մալաթիա կը տեսնուի որ բաւական ուշ մնացած վայր մըն էր, վասնզի 1900ին կը ստանար հետեւեալ պարբերականները, իբր ընթերցման նիւթ.*

10 ԱՒԵՏԱԲԵՐ (*կրօնաթերթ, միսիոնարական*)

1 ԱՐԵՒԵԼՔ (*Պոլսական օրաթերթ*)

3 ԲԻՒԶԱՆԴԻՈՆ (*Պոլսական օրաթերթ*)
6 ԲԻՒՐԱԿՆ (*Ազգագրական*)
4 ՍՈՒՐՀԱՆԴԱԿ (*Պոլսական օրաթերթ*)
4 ՓՈՒՆՋ (*լրագիր շաբաթական*)
2 ՄԱՍԻՍ (*գրական շաբաթաթերթ*)
1 ՄԷՃՄՈՒԱՅԻ ԱԽՊԱՐ (*կրօնաթերթ կաթոլիկ*)
1 ՃԷՐԻՏԻԷ ՇԱՐՔԻԷ (*Հայատառ թրքերէն օրաթերթ*)

*Այս ցանկին վրայ աչք նետող մը անմիջապէս կը հասկնայ Մալաթիոյ զարգացման աստիճանը եւ անոր յետադէմ վիճակ մը ունենալը:*

*Ասով հանդերձ 1908ին Օսմանեան Սահմանադրութեան հռչակումէն վերջ Թուրքիոյ ներքին գաւառներուն մէջ երբ արգելքները այլեւս գոյութիւն չունենալուն համար մեծ շարժում մը տեսնուեցաւ ամէն քաղաքի մէջ տեղական լրագրութիւն եւ տպարան ստեղծելու համար, մեր երանելի մոլութեան ալ ցոյց տուաւ ջանք, լրագիր ունենալու 30—40 ընթերցողով:*

*Եւ երբ թէ մէկը չըրաւէր, 2—3 թերթ երեւան եկան:*

*Այսպէս հազիւ վեց ամիս բոլորուած էր Օսմանեան խաբեպատիր Սահմանադրութենէն ետք, երբ 20 Յունուար 1909ին Մալաթիոյ մէջ կը սկսի լոյս տեսնել ՋԱՀ անունով խմորատիպ թերթ մը Մասեաց ընկերութեան ջանքերով (Թէոդիկ* ԱՄԵՆՈՒՆ ՏԱՐԵՑՈՅՑԸ, 1910, *էջ* 14), *կամ աւելի ճիշդը, Դաշնակցութեան անդամներուն ձեռքով:*

1909 *Մարտ—Ապրիլ ամիսներուն, երբ Բարսեղ Շահպազ Մալաթիա կ'այցելէ «ՋԱՀ»ը կը տեսնէ եւ կ'ըսէ թէ* «թէեւ խմորատիպ, բայց յամենայն դէպս իր բովանդակութեամբ շատ աւելի բարձր եւ ներկայանալի է, քան Սեբաստիոյ «Անդրանիկ»ը, *բայց ինչ ընեն, ինչ կրնան ընել տղաք ալ երբ ամէն մէկ պահանջի իրականացում իր հետ կը քաշէ նիւթական մեծ դժուարութիւններ, ինչ որ ընելու ոյժը չկայ սոված ժողովուրդին քով»* (Արեւելք, 1909, *թ.* 7069):

*ՋԱՀի համար թէեւ ըսուած է թէ կը հրատարակուէր Կրթասիրացի կողմէ, բայց ճիշդ չէ, թէեւ ճիշդ է որ Մասեաց ընկերութիւնը Կրթասիրացէն ծնած էր:*

*Կրնայ նաեւ շփոթութեան մը արդիւնք ըլլայ այս հաստատումը, վասնզի այդ թուականներուն Կրթասիրաց ընկերութիւնը կը հրատարակէր շաբաթաթերթ մը (ձեռագիր), խմբագրութեամբ Ս. Մանուչեանի:*

*Իւրաքանչիւր անգամ պարտ էր տանուայն ամիսը անգամ մը դրութիւն մը ունենալ: Ծածկանունի դրութիւնը հաստատուած էր* (ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, *ԺԵ. տարի, թ.* 3—4, *էջ* 45):

*Դժբախտաբար թերթին անունը չէ տրուած: Բայց որովհետեւ գիտենք այլուր (տես* ՊԱՊ ՈՒԽՏԻ, *Դ. տարի, թ.* 4, *էջ* 22), *թէեւ* 1910—1914 *Մալաթիոյ մէջ լոյս կը տեսնէր* ԿՐԹԱՍԻՐԱՑ *անունով խմորատիպ թերթ մը, Եղիա Թօփալեանի խմբագրութեամբ (նոյն) կը խորհիմ թէ Կրթասիրացի շաբաթաթերթը այս էր, կամ անունը շփոթուած է եւ* ԿՐԹԱՍԻՐԱՑ *անունը*

*գրուած է, մինչդեռ պէտք էր ԼՈՒՍՆԱԿ ըլլար, որ տեղեկատուութեան մը համաձայն Կրթասիրացի կողմէն կը հրատարակուէր ՋԱՀԻՆ հետ, որ անկէ ընդարձակ էր ծաւալով: Երկու թերթերն ալ խմորատիպ էին:*

*ՋԱՀԻ խմբագիրն էր հանրային անձնուէր գործիչ Խոսրով Քէչիշեան, որ ամէն հանրային օգտաշատ գործի մէջ ղեկավար դեր ունէր:*

## ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

*Ս. Երրորդութիւն եկեղեցիին քով լսարանին համար շինուած սրահին մէջն էր նաեւ մատենադարանը, որ բաւական հարուստ էր իր պարունակութեամբ:*

*Գէորգ վրդ. Արսլանեան, անոր ճոխացման աշխատած է:*

*Օգտակար դեր կը կատարէր ան:*

*Ուսուցիչներ եւ չափահաս աշակերտներ կը ծառայէին անոր:*

## ԹԱՏՐՈՆ

*Մալաթիա թատրոն չէ ունեցած:*

*Միայն կը յիշուի թէ դպրոցականներ հանդէսի մը միջոցին թատերական ներկայացում մը տուած էին:*

*1906ի դպրոցական տարեշրջանի աւարտումէն անմիջապէս վերջ, ուսուցիչներու օժանդակութեամբ ներկայացուեցաւ ԺԸՆԵՒԻԵՒ թատերախաղը թրքերէն լեզուով:*

*Սրահը խուռներամ լեցուած էր:*

*Ներկայ էին նաեւ շատ մը Թուրքեր: Գոհ ընդունելութենէն քաջալերուած ներկայացումը կրկնուեցաւ (Ստեփան Մանուշեան, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, ԺԵ. տարի, թ. 3—4, էջ 45):*





Պատմական խմբանկար մը, հանգուած՝ Վերի Պաղ Ուխտի ջուրերուն մէջ. – Դէպի ձախ՝ Փրոֆ. Սամուէլ Խաչատուրեան, Փրոֆ. Տ. Ս. Օրբերեան, Խաչատուր Պոնափարթեան, Գաբրիէլ Ենտուրլեան, Սեդրակ Մումճեան, Խոսրով Սարաճեան եւ Յարութիւն Ճեմերճեան:



# Է. ՄԱՍ

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԵԱՆՔ

## Ա.

## ԱԶԳԱՅԻՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԵԱՆՑ ՄԱՏԱԿԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Մինչեւ Կիւլհանէի Խաթթը Հիւմայունի հրատարակութեան (1839) Հայերը, իբր ՌԱՅԱ իրաւունք չունէին խառնուիլ պետական գործերու, եւ իբր պաշտօնատար ծառայելու երկիրին:*

*Միակ առանձնաշնորհը որ ոչ-իսլամ հասարակութիւնները ունէին, իրենց կրօնական-եկեղեցական կազմակերպութիւններն էին, գլխաւորութեամբ եկեղեցական առաջնորդներու, որոնք իրենց թեմերը կը կառավարէին հասարակութենէն քանի մը ազդեցիկ անձեր ունենալով իբր խորհրդական եւ կը մատակարարէին եկեղեցիները, վանքերը եւ անոնց յարակից եւ անոնց մաս համարուած դպրոցները (աւելի հանգամանօրէն բացատրուած է այս բոլորը (ԳԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 1295–1300):*

*Այնպէս մեր Առաջնորդները, որոնք իրենց ՊԷՐԱԹներուն վրայ հիմնուելով կրնային ինքնագլուխ գործել անպատասխանատու, չեն համարձակած այդ բանը ընել, մեր եկեղեցիին ոգւոյն հակառակ ըլլալով կղերական բացարձակապետութիւնը եւ մենատիրութիւնը:*

*Աշխարհականներ միշտ գործակից եղած են հոգեւոր պետերու եւ մեր եկեղեցական առաջնորդները միապետաբար չեն գործած: Միշտ ունեցած են գործակիցներ, որոնք Ազգ. հաստատութիւններու մատակարարութեան գործին մէջ աջակցած են եկեղեցականներու:*

*Հին ատեն Առաջնորդները կը նշանակէին ՄԻՒԹԷՎԷԼԼԻ տիտղոսով մատակարարներ կամ եկեղեցապահներ, իւրաքանչիւր եկեղեցիի եւ վանքի համար:*

*Այս ՄԻՒԹԷՎԷԼԼԻները ընդհանրապէս եկեղեցիին թաղեցիներէն կամ ծխականներէն իրենց օգնականներ կ'առնէին, եթէ ուզէին եւ այնպէս կը տնտեսէին եկեղեցիները եւ անոնց յարակից հաստատութիւնները:*

*Այս դրութիւնը անկանոն էր, վասնզի ՄԻՒԹԷՎԷԼԼԻները կամ այլ կոչումով ԻՇԽԱՆ ԱՂԱՆերը, որոշ օրէնքով մը չէին ընտրուեր, համարատուութեան պարտաւոր չէին եւ որոշ ժամանակէ մը ետքը հրաժարելու ստիպուած չէին:*

*Եկեղեցիները կը մատակարարուէին կամաւոր նուէրներով: Իսկ եկեղեցականները կ'ապրէին նոյնպէս եկեղեցական պաշտամունքներու կամ ծի-*

ակատարութիւններու առիթներով իրենց ստացած նուէրներով : Պնակներու եւ Գանձանակներու հասոյթներն ալ եկեղեցիներու եւ եկեղեցականներու կը պատկանէին :

Ժողովուրդին այս ինքնակամ նուէրները այն ատեն բաւարար հասոյթ կ'ապահովէին, վասնզի ժողովուրդը կրօնասէր էր և ամէն հայ հաւատացեալ գոնէ կիրակի օրերը եկեղեցի երթալը պարտականութիւն կը համարէր :

Երկար ատեն այս էր վիճակը բոլոր կեդրոններու մէջ: 1860էն ետք, երբ Ազգային Սահմանադրութիւնը գործադրուելու սկսաւ, վերջ տրուեցաւ ՄԻՒԹԷՎԷԼԼԻական դրութեան. եկեղեցիներու համար ժողովուրդէն ընտրուեցան Թաղական խորհուրդներ եւ Թեմական կեդրոններու մէջ բոլոր վիճակայիններու կամ Թեմականներու քուէով Գաւառական Երեսփոխանական ժողովներ 20—48 անդամներով իբր համարատու մարմին եւ ընտրող Առաջնորդին եւ վիճակային Քաղ. եւ Կրօն. Ժողովներուն, որոնք խորհրդականներն էին Առաջնորդին եւ միեւնոյն ատեն հսկիչները Թաղային կամ գիւղական Թաղական խորհուրդներուն :

Այսպէս, մտաւ մեծ փոփոխութիւն մը Ազգ. հաստատութեանց մատակարարութեան մէջ եւ ստեղծուեցան բարդութիւններ, ինչպէս նաեւ վէճեր եւ պայքարներ :

Մալաթիա ալ ունեցած է այս բոլորը, միայն թէ որովհետեւ մինչեւ 1830 ական Թուականը հին շրջանի յիշատակները քաղաքին տեղափոխութեան ատեն ջնջուած են, այդ շրջանէն գրեթէ ոչինչ կը յիշուի, եւ անծանօթ կը մնան ՄԻՒԹԷՎԷԼԼԻՆԵՐԸ, ինչպէս նաեւ հին ժամանակներու ՄԵՆԾ-ԱՂԱ-ները, որոնք խորհրդականի դեր կը կատարէին Առաջնորդին քով, որ ամսական չունէր եւ պատահական հասոյթներով կ'ապրէր :

Իրեն վիճակակից էին քահանաները, որոնք նոյնպէս «ժողովուրդին ձեռքը նայելու» դատապարտուած էին: Այս պատճառով, Մալաթիոյ քահանաներն ալ անկեալ վիճակ մը ունեցած են, մինչեւ նոր ժամանակները:

Մալաթիոյ երեք եկեղեցիներու եւ Թեմին միւս քաղաքներու եւ գիւղերու քահանաները, ինչպէս գրեթէ ամէն տեղ առհասարակ անուս մարդեր էին, որոնք իրենց պաշտօնին համար կոչում չունէին, եւ անկարող առաջնորդելու իրենց ծխականները դէպի բարոյական եւ հոգեկան կեանք:

Պէնճէեան Կարապետ քհնյ. որ քիչ շատ պատրաստուած անձ մըն էր, ուսուցչութենէ քահանայութեան կոչուած ըլլալով, Մալաթիոյ քահանայական դասին անկեալ վիճակը չի ծածկեր եւ շատ մութ գիծերով կը ներկայացնէ: Ան իր տեղագրութեան ընդարձակ ձեռագիրին մէջ (էջ 154—156) կը գրէ թէ Մալաթիոյ Հոգեւոր քահանաներէն մէկը ըսած է «Տէրտէրը բամպըկի ԹԱՅ (հակ) է: Ամէն մարդ կը քաշէ, բայց չի ցաւիր», ուրեմն քիչ մ'ալ մենք քննադատենք, եթէ չհարուածենք: Մալաթիոյ քահանաները, յարգելով բացառիկները բնաւ դարուն եւ ժամանակին ոգւոյն չեն համապատասխաներ: Թողունք իրենց բարձր կոչման եւ պաշտօնին անգիտակ եւ Թերացող, հասարակ ընթերցանութիւն եւ ստորագրութիւն մը շիտակ շիտակ գրելու կարո—

ղութենէ զուրկ եղողներ շատ գտնուած են։ Ասոնք ինչ յանցանք ունին, որովհետեւ հերիք է որ շատերը քահանայի գերդաստանէ եւ տէրտէրու տղայ են։ Հերիք է որ այս կամ այն աղային պաշտպանեալը կամ իր արհեստով իր օրապահիկը ճարելու կարողութենէ զուրկ մէկն է, եւ միթէ տէր պաշտպան եղած տղան «մէր պապ» չունի՞։ Անոնց հօրոյն համար «Տէրացուն» պէ՞տք է անտեսել, «Էֆէնտըմ, տա Տէր Յ. ....ին մանծ տղան ԷՖԷՑԻ կարդալ գըտէ. ՀԱՅՆ ալ ԲԷՐԻՇԱՆ, ՄԱՀՍԱՐԱԳՐՈՒԹԻՒՆ մի էնեք, ուք տըւի մեր ֆամուն տէրտէր ձեռնադրել տաքնէ չըլլի՞ր»։ «Ինչո՞ւ չէ, հերիք է որ հանգապըրութեան պէս թուղթ մը ստորագրելով՝ ներկայանայ Ազգ. Առաջնորդարան, ու ահա ամիս մը վերջը փիլոնի տակ է մեր տիրացուն։ Տակաւ կը սովրի աղօթք ու մաղթանք եւ կ՚ընէ կնունք, անմահ պատարագ։»

Ընթերցող, գիտես անշուշտ թէ այսպիսի եկեղեցական ունեցող ժողովուրդի մը վիճակը ուր կը հասնի։

Գիտութիւն ու զատողութիւն որչափ որ մեր նպատակէն դուրս է, սակայն նիւթական անձկութենէ ազատելու համար Տիրացուն տէրտէր ըլլալով, տնտեսապէս ալ աւելի թշուառանալուն, չենք կրնար աս պարագան ալ զանց առնել։ Թէ ինչպէս։

Սկիզբէն ի վեր հոս ալ «Ծխական դրութիւն» կենալով՝ իւրաքանչիւր քահանայ իր ծուխին հոգեւոր պէտքերը, եւ փոխադարձաբար ծուխն ալ իր տան երէցին մարմնաւոր պէտքերը կը հոգար ամէն կերպով։ Քահանան քահանայագործութեան հետ իր աջի արհեստն ալ կը շահագործէր (երբ ոստայնանկ կամ դերձակ մ՚էր), սակայն երբ քաղաքին եկեղեցիները երեքն ալ շինուած են, ժողովուրդը թաղերու բաժնուելով՝ մասնաւոր ծուխ ունենալը վերցուած եւ «իրաւունքը» ըսուած եկեղեցական տուրքի դրութիւնը հաստատուած են, որ կը վճարուի պսակի, մկրտութեան, թաղման եւ այլ հոգեւոր մատակարարութեանց առթիւ։ Ու այս «իրաւունք» տուրքը, եկամուտի իբր գլխաւոր աղբիւր, կը բաղկանայ հետեւեալ կերպով, այն է՝ 30—40 եւ 50 դրշ. պսակէ, 15 դրշ. մատաղէ եւ 7,5 դրշ. թաղումէ եւ մկրտութենէ, որ կը յատկացուի քահանայից, լուսարարի, ժամկոչի, եկեղեցւոյ սնտուկին, երբեմն ալ Կիլիկիոյ Ս. Աթոռին։ Քահանան իրաւունքէ առած գումարին չափ բան մ՚ալ անուղղակի կերպով կ՚ընդունի տնօրհնէքէ, տապանօրհնէքէ, պնակներէ եւայլն։

Յայտնի է ուրեմն թէ Մալաթիոյ քահանաներու նիւթական վիճակն ալ շատ աննախանձելի է։ Որուն համար վերջերս ժողովրդեան՝ մանաւանդ եկեղեցական բարեկարգութեան նախանձախնդիր դասակարգը, «Ազգ. Ընդհ. Տուրք» անուամբ ամսականի դրութիւնը հաստատեց, որպէսզի քահանաներն ալ օգտուելով անկէ, այլեւս խղճմտօրէն կատարեն իրենց պաշտօնն ու պարտականութիւնը։ Սակայն աստ ալ, ժողովուրդը, իբր եկեղեցական հին ու բարեպաշտիկ սովորութեան եւ զգացման հակառակ դրութեան, հակառակեցաւ, անտեսեց ու բնաւ չվճարեց իր վրայ բաշխուած տուրքը։ «Մենք հին դրութիւն կ՚ուզենք» ըսելով, ու եղաւ քահանաներու նիւթական վիճակը «Յե–

տինն» չար քան պառաջինն : «Աստուած շատ քաշել չիտայ» :

Ուստի աւելորդ չէ ըսել թէ քահանաներու նիւթականին բարւոքման եւ եկեղեցական բարեկարգութեան ու ապագային ուսեալ եւ բանիբուն քահանաներ ունենալու համար՝ հիմակուընէ պէտք է գոհացուցիչ դրամ կամ ամսականներ վճարել, ընծայացուներ պատրաստել «ժառանգաւորաց դպրոց»ները ուսանողներ ղրկելով :»

Հօգելոյս Պէնճեան քհնյ․ի այս խիստ դատաստանը չունի բարեբախտաբար Պոլսոյ ՍՈՒՐՀԱՆԴԱԿ օրաթերթին Մալաթիոյ թղթակիցը (հաւանօրէն Խօսրով Քէչիչեան) որ այնքան յոռետես չէ եւ իր թերթին կը գրէ թէ «ինչպէս ուրիշ բաւական վիճակներու, նոյնպէս այս թեմագլուխ քաղաքին մէջ քահանայական դասն ալ վերջին տարիներս իր մէջ ունեցաւ քիչ շատ ուսեալ եւ զարգացեալ անդամներ, որոնց մէկ քանինի[1] դեռ 1—2 տարի առաջ ձեռնադրուեցան Սահակ Կաթողիկոսէն» (Սուրհանդակ թ․ 1906) :

Նոյնպէս Սենեքերիմ Ափալաքեան (Յուշեր եւ Խոհեր, ՊԱՊ ՈՒԽՏԻ թ․ 26 էջ 7) 1941ին իր անցեալ վերյիշումներու մէջ կը գրէ թէ «Մալաթիոյ մէջ կային վեց քահանաներ, որոնցմէ երկուքը յաճախ իրենց անկուշտ բնաւորութեամբ տեղի կու տային գանգատներու եւ անախորժութեանց, բայց չորսը լաւ էին, իրենց կոչումին գիտակից եւ նուիրումով կը ծառայէին ժողովուրդին» :

Այս վկայութիւնը թէեւ նպաստաւոր է Մալաթիոյ քահանաներու համար, սակայն որ աստիճան ճիշդ ըլլալը կը մնայ խնդրական, երբ կայ քահանայ մը որ իր պաշտօնակիցներուն մասին կը վարանի տալու լաւ վկայութիւններ :

Քահանաներէն անցնելով աշխարհականներու, Մալաթիոյ մէջ Սահմանադրական կարգերը շատ ուշ մտած եւ շատ քիչ ճշդիւ գործադրուած են : Գրեթէ Սահմանադրութիւնը Մալաթիոյ գաւառին մէջ կատարեալ չէ գործադրուած եւ շատ կարճ ժամանակամիջոցին սահմանադրական ժողովները կազմուած են :

Գաւառական Երեսփոխանական Ժողովը Սահմանադրութեան հաստատութենէն ետք 23 տարիներ գոյութիւն չէ ունեցած :

Առաջին անգամ Սահմանադրական ժողովներու ընտրութիւնը կատարելու համար Եղեսիոյ Առաջնորդ Խորէն Եպիսկ․ Մխիթարեանը իբր Սահմանադրութեան գործադիր, Պատրիարքարանի հրամանով, Մալաթիա գացած է 1883ին եւ ժողովրդական քուէարկութեամբ Գաւառական Երեսփոխանական Ժողովի ընտրութիւն կատարած է :

Այս ընտրութիւնը հաստատուած է Պոլսոյ պատրիարքարանէն 2 Նոյեմբեր 1883ին :

Կազմուած Գաւառական Ժողովին անդամներուն թիւն էր 32 :

(1) Ընդամէնը երկու հատ են, Գրիգոր Թաշճեան եւ Եղիա Կարապետեան, որոնք 1905-ին ձեռնադրուած էին:

Այս առաջին ժողովին Սահմանադրական օրէնքով, վիճակով դադարեալներու տեղ, 1887ին կատարուած է լրացուցիչ ընտրութիւն մը որ պատրիարքարանը հաստատած է 27 Փետրուար 1888ին:

Այս թուականին երեսփոխաններու թիւը զեղչուած է 32էն 28ի, բայց 1913ին կը տեսնենք որ Գաւառական երեսփոխաններու թիւը կը բարձրանայ 35ի:

Խորէն Եպիսկոպոս Մխիթարեանի նախագահութեամբ Սահմանադրական օրէնքներով ընտրուած առաջին գաւառական ժողովը գաւառին Սահմանադրական առաջին Կրօնական Ժողովը ընտրած է հինգ անդամներով:

1889 Մայիս 30ին Պատրիարքարանը հաստատած է Մալաթիոյ Քաղ. Ժողովին ընտրութիւնը:

Ինչպէս կ'երեւի նոյնիսկ 1883-ին Խորէն Եպիսկոպոս Մխիթարեանին իբր Սահմանադրութեան Գործադիր յատկապէս Մալաթիա ղրկուելէն առաջ ալ հոն բառ երեւոյթին կազմուած էին թերեւս շատ տնավարի եւ անկանոն կերպով Սահմանադրական մարմինները, բայց ժողովները եւ խորհուրդները շատ անկանոն էին: Նոյնիսկ 1900-ին: Այդ թուականին Թղթակից մը կը գրէ Մալաթիայէ թէ անուանապէս Քաղ. եւ Կրօնական Ժողովներ կային եւ սակայն կանոնաւորութեան դրոշմ մը չունէին:

Մալաթիոյ երեք եկեղեցիներու թաղական խորհուրդները «հաշտ եւ համերաշխ չէին, իւրաքանչիւրը իրենը առաջ տանելու բանաւոր եւ անբան ջանքին մէջ, միւսինը անտեսել եւ մինչեւ իսկ վնասել հոգ չէր» ըներ:

Եւ տակաւ երբ այլեւս մեծ-Աղաներու ազդեցութիւնը ջնջուած էր: Բայց նկատելի է որ անոնց պակասը թուլութիւն եւ պառակտում առաջ բերած էր Առաջնորդարանի մէջ, ուր ամէն ինչ անկանոն էր, սակայն զարմանալի է որ կեդրոնը բնաւ ուշադրութիւն չէր դարձուցած մինչեւ 1883, երբ Խորէն Եպիսկոպոս Մխիթարեան ղրկուեցաւ Սահմանադրական մարմինները ընտրելու:

Հակառակ ասոր իբր թէ ամէն ինչ կանոնաւոր ըլլար 1877-ին Մալաթիոյ Առաջնորդ Սրապիոն եպիսկոպոս, իբր թէ ամէն ինչ կատարեալ եղած ըլլար, երբ 4 Մարտ 1877-ին հրահանգ կու տայ ընտրել Կ. Պոլսոյ երեսփոխանական ժողովին, Մալաթիոյ երեսփոխանը. առաջնորդը կը գրէ թէ 1 Ապրիլ 1877-ին «Ազգ. ժողովը գումարելով բոլոր ժողովոյ եւ համայն ազգայնոց հաւանութեամբ, մասնական ժողովոյ պատրաստած հրահանգին համեմատ քուէարկութեամբ քօփալ Վարդանեան Գէորգ էֆէնտին որ Պոլիս կը բնակի, որոշեցինք Ձեր հրամանները կատարելու: Ինքն Մալաքիացի է ու գլխաւոր ազգայիններէն»:

Զարմանալի է որ ուրիշ տեղեկագիրներու նկատմամբ ցոյց տրուած բծախնդրութիւնը առանց ցոյց տալու այնպիսի տնավարի եղանակով կատարուած ընտրութիւնը, Պոլսոյ Ազգ. Ժողովը կը վաւերացնէ (13 Մայիս 1877) առանց ոեւէ առարկութեան եւ Գէորգ Վարդանեան կը դառնայ Ազգ.

*ժողովի մէջ Մալաթիոյ երեսփոխանի աթոռը եւ կը մասնակցի Ազգ. Ժողովի նիստերուն, գրեթէ կանոնաւորաբար (շատ քիչ բացակայ ըլլալով), թէեւ երբեք ոեւէ դեր չի կատարեր եւ անխօս երեսփոխան մը կ՚ըլլայ։ Ան մինչեւ* 1891 *Յուլիս* 26 *կը պահէ իր աթոռը։*

*Այդ թուականին վիճակով դադրած ըլլալով, Մալաթիոյ երեսփոխան կ՚ընտրուի* 19 *Մարտ* 1891*-ին Գաւառական ժողովի մէջ Սարգիս Կիւլպէնկեան, սակայն իր ընտրական տեղեկագրին մէջ տեսնուած ըլլալով որ ընտրութիւնը կատարուած չէր գաղտնի քուէարկութեամբ, ետ կը դարձուի Առաջնորդ Իսահակ եպիսկոպոս Սահակեանի որ օրինական այս պակասը լրացուի։ Ուստի* 25 *Յուլիսին Գաւառական ժողովը* 28 *երեսփոխաններէն* 21*-ին ներկայութեան գաղտնի քուէարկութեամբ* 18 *քուէով, վերստին Սարգիս Կիւլպէնկեանը կ՚ընտրէ։*

*Պոլսոյ երեսփոխանական ժողովը* 9 *Օգոստոս* 1891*-ի նիստին մէջ այս ընտրութիւնը կը վաւերացնէ, սակայն մինչեւ Սուլթան Համիտի կողմէ Ազգ. Ժողովի նիստերուն առկախումը* (4 *Սեպտեմբեր* 1891) *գումարուած երկու նիստերուն բացակայ եղած է եւ այս կերպով բնաւ իր պաշտօնը չէ վարած։*

*Իզմիրլեան պատրիարքի ընտրութեան համար բացառիկ արտօնութեամբ գումարուած* 7 *Դեկտեմբեր* 1894*-ի նիստին, Սարգիս Կիւլպէնկեան մեռած ըլլալով Մալաթիոյ աթոռը թափուր էր։*

1908*-ի Օսմանեան Սահմանադրութեան վերահաստատութենէն ետք երբ Ազգ. Ժողովը վերակազմուեցաւ եւ նոր ընտրուած երեսփոխաններու ընտրական տեղեկագիրները ներկայացուեցաւ Ազգ. Ժողովին, կը տեսնուի որ Տիրան Կիւմիւշկերտան ընտրուած է Մալաթիոյ երեսփոխան (Ատենագրութիւնք Ազգ. Ժողովի, բացում* 1908 *էջ* 3)

*Ժողովը թէեւ կը վաւերացնէ այս ընտրութիւնը, սակայն Տիրան Կիւմիւշկերտան կը հրաժարի, վասնզի Բերայի թաղէն ալ ընտրուած էր եւ ինք նախընտրած էր Բերայի երեսփոխանութիւնը (Նոյն էջ* 14)

*Ուստի պատրիարքարանէն նոր հրահանգ կը ղրկուի Մալաթիա, ուր կատարուելով նոր ընտրութիւն մը, կեդրոնի երեսփոխան կ՚ընտրուի Մալաթիացի Յակոբ Ագըլեան (կամ Ագըլգութուսեան)։* 25 *Նոյեմբեր* 1908 *թուականով ընտրական տեղեկագիրը,* 28 *Դեկտեմբեր* 1908*-ին Քաղ. Ժողովը կը յղէ Ազգ. Ժողովին որ* 16 *Յունուար* 1909*-ին կը վաւերացնէ այս ընտրութիւնը (Նոյն էջ* 194)։

*Երկու տարուան պաշտօնավարութենէ մը ետք Ագըլեան կը մեռնի (տես* 22 *Հոկտ.* 1910*-ի նիստի ատենագրութիւնը)։*

*Մալաթիոյ երեսփոխանին աթոռը թափուր կը մնայ մինչեւ* 1911 *Սեպտեմբեր* 30*։ Նոյն օրուան Ազգ. Ժողովին մէջ կը կարդացուի* 15 *Ապրիլ* 1911 *թուականով տեղեկագիրը Մալաթիոյ Գաւառական ժողովին որ կը հաղորդէր Օննիկ Զայեանի ընտրութիւնը, նախապէս* 20 *Փետրուար* 1911*-ին կատարուած ընտրութիւնը չեղեալ համարելէ վերջ։*

3 *Մայիս* 1913*-էն ետք Օննիկ Զայեանի մահով, նորէն Մալաթիոյ ե-*

րեսփոխանի աթոռը մինչեւ 1914-ի Ընդհանուր պատերազմը բաց կը մնայ, թէեւ 10 Նոյեմբեր 1913-ին Մալաթիոյ Գաւառական Ժողովը երեսփոխան ընտրած էր Յակոբ Սիրունին (Ճօրօլեանը), բայց Կ. Պոլսոյ Քաղ. Ժողովը բեկանած էր այս ընտրութիւնը ընտրեալին օրինական տարիքը չունենալուն համար:

## Բ.

# ԿԱՐՕՏԵԱԼՆԵՐՈՒ ՀՈԳԱԾՈՒԹԻՒՆ

Հին ժամանակներէ սկսեալ Հայերը տնանկներու հոգածութիւնը ազգային իշխանութիւններու պարտականութիւններէն մէկը համարած են: Այնպէս որ միշտ եկեղեցականները զբաղած են աղքատներով:

Ըստ Սահմանադրութեան այս գործը Թաղական խորհուրդներու պաշտօնին մասը կազմեց, սակայն շատ մը տեղեր, Թաղականները փոխանցեցին Աղքատախնամ անունով կազմուած ընկերութիւններու:

Մալաթիա ալ ունեցած է այսօրինակ մարմիններ որոնք զբաղած են կարօտեալներով: Առանց շատ կարեւոր արդիւնքի: Այսպէս կը յիշուի 1905-ի 12 անձերէ բաղկացած Աղքատախնամի մը կազմութիւնը (Բիւզանդիոն թ. 2362), որ յայտնի չէ թէ ի՞նչ գործ տեսած է:

Մալաթիա կրած է բազմաթիւ հարուածներ որոնց հետեւանքով Մալաթիացիք ոչ միայն չեն կրցած ինքզինքնին հոգալ այլ կարօտ եղած են արտաքին աջակցութեան:

1893-ի երկրաշարժը օրինակի համար, զիրենք պարտաւորած է պատրիարքարանէն օժանդակութիւն խնդրելու: Պատրիարքարանը, Կ. Պոլսոյ մէջ հանգանակութիւն մը կատարելով՝ Մալաթիոյ աղէտեալներուն համար նախ 300 ոսկի եւ ապա 1893 Դեկտ. ին 200 ոսկի եւս ղրկած է Մալաթիա, ինչպէս արձանագրուած է Պատրիարքարանի տոմարներուն մէջ: Հանգանակութենէ աւելցած 220,57 Լ. Օ. ի պահ կը դրուի Սարգիս Կիւլպէնկեան հաստատութեան քով:

Նոյնպէս 1895—96 հայկական ջարդերու շրջանին երբ Մալաթիոյ Հայերը հերոսաբար կռուեցան Թուրք խուժանին դէմ եւ նիւթապէս չարաչար վնասուեցան, պարտաւորուեցան դարձեալ արտաքին օժանդակութեան դիմելու:

Պատրիարքարանը 1895-ին 100 ոսկի հասցուցած է անմիջականօրէն Հիւսնի Մանսուր (Պատրիարքարանի արձանագրութիւնք):

Այս առթիւ Ամերիկացի միսիոնարներն ալ իրենց աջակցութիւնը բերած են Մալաթիոյ Հայութեան:

Ըստ պատրիարքարանի արձանագրութիւններուն, 1896 Օգոստոսին Խարբերդի միսիոնարը Պ. Կէյթս եւ Օր. Պուշ կարօտելոց 800 ոսկի նպաստ բաշխած են, եւ 200 ոսկի 50 որբերու համար տուած եւ դպրոցներու եւ եկեղեցիներու շինութեան օգնած են: J. Radel Harris, որ իր աղջկան հետ Մա-

լաթիա գացած էր նպաստ բաշխելու համար, իր 3 Օգոստոս 1896ի նամակին մէջ կը գրէ իր Մալաթիա հասած եւ հոն գտած ըլլալը Օր. Պուշը, եւ միսիօնար Gatesը եւ Եփրատ Գոլէճէն Բրօֆ. Թէնէքէճեանը։

Harris եւ իր աղջիկը Hélène Harris կ՚ուզեն Մալաթիա մնալ տեսնելու համար թուրք ջարդարարներու Մալաթիոյ մէջ ըրածները, կ՚ըսէ թէ Ուրֆան բաղդատութիւն սեպելով, ամէն տեղէ աւելի սաստիկ եղած էր Մալաթիոյ աղէտը, բայց ասով հանդերձ թշուառութիւնը աւելի նուազ եղած է։ Անոնք կը փափաքէին երեք կամ չորս ամիսներ եւս մնալ, որ վստահ ըլլային թէ այդ շրջանին գործերը լաւ ձեռքերու մէջ է։

J. Radel Harris կը յայտարարէ թէ «1139 հոգի այս քաղաքին մէջ օգնութիւն ստացած են։ Այս օգնութեամբ անմիջական դարման պիտի տրուէր հիւանդներուն, վիրաւորներուն, սովեալ անհատներուն եւ մեր բարեկամները դիմադրեցին դժուարութեանց ամենալաւը ընելու համար։ Այս կերպով մանրամասնօրէն քաղաքին վիճակը պիտի հասկնանք»(**Letters from Armenia**, *Լոնտոն*, 1898, 27րդ նամակ էջ 100)։

*Ան նկարագրած է նաեւ Մալաթիոյ ջարդը այնպիսի եղանակով մը, ուր շատ քննադատութեան տարրկայ կրնայ ըլլալ։*

*«Դէպքերը չպատահած մահմետականներու եւ քրիստոնեաներու միջեւ յարաբերութիւնները շատ բարւոք էին եւ ոչ մէկ տեսակ յեղափոխականութիւն ծաւալած էր հոս, նոյնիսկ* Ասիական Թուրքիոյ քաղաքներու մեծ մասին մէջ։ Բայց կրօնամոլութիւնը դիւրին կը բորբոքի, *շարժառիթ ունենալով հայոց բարգաւաճումը։ Սուլթանէն ուղղակի յղուած հեռագիր մը՝ իբր լուցկի դրդութիւն արծարծեց։* Մահմետականները մէկի դէմ հինգ հոգի էին, որով կոտորածին յաջողութիւնը զարմանք չէր պատճառեր, սակայն զարմանալին էր, որ քրիստոնեաները լուսաւորչական եկեղեցիին տանիքէն, յարձակող թուրքերուն վրայ կրակելով, կարողացան քանի մը օր ինքզինքնին պաշտպանել հնօրեայ զէնքերով, *սակայն յարձակողները զինուած էին կառավարութեան կողմէ* Martini—Henri *հրացաններով՝ այս երեք օրուան պարչելի բանտարկութեան հետ պատմելիք նաեւ շատ մը ուրիշ պատմութիւններ կային։ Քրիստոնեայ սպաննուածներուն թիւը կը հաշուուի 2000էն 4000 հոգի։ Բողոքական վարիչներու շատերը ջարդուած էին եւ իրենց մարմինը շուկայի մէջ քանի փարայի ծախու դրուած. այս վերջին անգթութիւնը զոր չորս տարբեր աղբիւրներէ քաղեցի, կը կարծեմ թէ վաւերական չէ[1]։*

*Եկեղեցիի մը մէջ յիսուն հոգի այրեցան, կասկած չկայ որ լուսաւորչական մեծ եկեղեցին Ուրֆայի եկեղեցիին պէս հիմնովին պիտի կործանէր եթէ հերոսաբար դիմադրութիւն ցոյց չտար ժողովուրդը, անշուշտ պիտի բանտարկուէին անոր մէջ։*

*(1) Ընդհանրապէս շատ վաւերական է, վասնզի բաղդատութիւնը աղբիւրներէն հաստատուած է, ինչպէս պիտի տեսնուի վարը։ Բայց այս անհաւատալի հեշտութիւնները չհաւատալ կը կեղծէին այս քրիստոնեաները, որպէսզի «ազնուական» թուրքը շոյելու ութիւնները չփախցնեն։*

Բողոքական եկեղեցին, որ այրեցած էր, այսօր աւերակ պատերու դէզ մըն է լոկ։ Քրիստոնէական Թաղէն 560 տուներ աւերուած էին եւ խեղճ ժողովուրդը վախէն ոչ մէկ շէնք կը վերաշինէր։

Ասոնց վրայ աւելցնենք նաեւ կործանուած տուներէն ինչքերու կողոպուտը։ Եկեղեցիներու եւ դպրոցներու մէջ ամէն ինչ որ կրցած են շալկել, կողոպտուած է։ Իսկ կիները բռնաբարուած (600 հարսեր եւ աղջիկներ առեւանգուած են քիւրտերու եւ Թուրքերու տուները), եւ բնատանիքին այդ մարդը մեռցնելով կործանուած են շատ մը բնատանիքներ։ Մալաթիոյ մէջ ստեղծուած կացութենէն պիտի հասկնաք գաղափարի տարողութիւնը։ Ինչպէս ըսի, կարգ մը բաներու մէջ Ուրֆայէն աւելի գէշ վիճակ մը ունի Մալաթիան։ Ուրֆայի մէջ տուները կարծր քարերով շինուած էին, որոնք հրկիզումէն քիչ տուժեցան, բայց հոս՝ արեւի տակ թրծուած ցեխէ աղիւսներով շինուած էին, եւ տանիքները կաղամախի գերաններով ծածկուած էին, որով այս տուները բաղդատաբար միւս տուներուն, դիւրին պիտի կործանէին։»

Ջարդը պատճառ եղաւ որ Մալաթիոյ Հայերը մատնուէին նիւթական դժուարութիւններու եւ կարօտութիւններ երեւան գան։

Պատրիարքարանը 1895-ի եւ 1896-ի ջարդերու ատեն գրեթէ մեծ բան մը չէ կրցած ընել։

Ամերիկացիք էին որ օգնութեան կը հասնէին գաւառները Իզմիրլեան պատրիարքի խնդրանքներով։ Ասոր հրաժարելէն ետք, Տեղապահ Բարթողիմէոս եպիսկոպոս Չամիչեանի ատեն Պատրիարքարանը բոլորովին խառնակ վիճակ մը կը ներկայացնէր եւ գրեթէ ոչինչ ըրած էր գաւառներու համար։

6 Դեկտեմբեր 1896-ին Օրմանեան եպիսկոպոս, Պատրիարք ընտրուելէն ետք նպաստից գործը կազմակերպեց մասնաւորապէս արտասահմանէն դրամ ճարելով եւ գրեթէ գաղտնի հանգանակութիւններ կատարելով Թուրքիոյ մէջ։

Ամերիկեան օժանդակութենէն զատ որ մխիթարներ ընծայած են Մալաթիոյ Հայոց, պատրիարքարանն ալ օգնութիւն հասցուցած է, բայց ի պատիւ Մալաթիացիներու պէտք է ըսել թէ անոնք դուրսէն դոյզն օգնութիւն մը ստանալէ ետք աշխատած են ինքզինքնին հոգալ եւ ձեռք չերկարել։

Սակայն դժբախտաբար շրջակայ քաղաքները եւ գիւղերը անկարող եղած են իրենց պէտքերը հոգալ, եւ Առաջնորդարանը միայն անոնց համար նպաստ խնդրած է։

Օրմանեան պատրիարք կ՚ըսէ թէ․

«Մալաթիոյ վիճակն կեդրոնէն աւելի իր թեմերն եղած են նպաստի կարօտ, ուստի առաւելապէս Հիւսնի Մանսուրի, Բայղանի, Պէլվէրէնի եւայլն, եւ ոմանց մասնաւորաց անուամբ յղուեցան նպաստներն.— Գլխաւոր մասը առաջին տարի Լ. Օ. 146,30 յղուած է, անկէ ետքը գրեթէ ամէն տարի օգնութիւն մը եղած է, նոյնիսկ այս տարի ալ Լ. Օ. 55. իսկ բոլոր նպաստներուն գումարը եղած է Լ. Օ. 413,56» (Նպաստից յանձնաժողով, Հաշուեցուցակ եւ տեղեկագիր 1897—1908 էջ 30)։

Այսպէս Օրմանեան պատրիարք իր պաշտօնավարութեան տասներկու տարիներու շրջանին իբր նպաստ զրկած է՝

| | | |
|---|---|---|
| 1897-ին | 146·30 | Օսմ. ոսկի |
| 1898-ին | 47·— | » |
| 1899-ին | 52·— | » |
| 1900-ին | ...... | |
| 1901-ին | 67·15 | » |
| 1902-ին | ...... | |
| 1903-ին | ...... | |
| 1904-ին | ...... | |
| 1905-ին | 11·11 | » |
| 1906-ին | 35·— | » |
| 1907-ին | ...... | |
| 1908-ին | 55·— | » |
| գումար | 413·56 | » |

Ասկէ զատ Մալաթիոյ դպրոցին համար զրկած է.

| | | |
|---|---|---|
| 1898-ին | 10·— | Օսմ. ոսկի |
| 1903-ին | 10·— | » |
| | 20·— | » |

1895——1896-ի ջարդերը պատճառ եղան որ հիմնուի որբանոց մը Մոսկուայի Որբախնամներու նպաստով:

Այս որբանոցը որ Մոսկուայի Որբախնամին հիմնած որբանոցներուն երկրորդն էր Պատրիարքարանէն հրահանգ տրուելէ քիչ ետքը, 1898 Դեկտեմբերին, բացուեցաւ քաղաքին մէջ եւ յաջորդ գարնան տեղափոխուեցաւ Ս. Լուսաւորիչ վանքը:

Այս որբանոցին հսկողութիւնը յանձնուեցաւ Հոգաբարձութեան մը, որ 1900-ին կը բաղկանար հետեւեալ անձերէն.

Տ. Ստեփան քհնյ.՝ Նախագահ (Առաջն. Տեղապահ)
Տ. Եղիշէ քհնյ. Խաչատուրեան՝ փոխ-Նախագահ
Պետրոս Որբերեան
Յարութիւն Պըլըղեան
Փիլիպպոս Վարդանեան
Պօղոս Ուսլեան

Տարի մը ետքը, 1901 Ապրիլ 12-ին Մալաթիոյ Ազգ. Որբանոցին համար նոր Հոգաբարձութիւն մը կազմուեցաւ, որուն անդամ ընտրուեցան,

Յարութիւն Ոսկերիչեան
Յովակիմ Յովակիմեան
Գէորգ Պըլըղեան
Յակոբ Թիֆթիկճեան

Իսկ Տ. Եղիշէ քհնյ. շարունակեց իր տեսուչի պաշտօնը (տես ԱՐԵ-

ԽԵԼՔ 1901 Մայիս 11 Թ. 4621)։

Որբանոցին հիմնարկութեան համար նախապատրաստական ծախքերու համար տրուած էր 30 Լ. Օ. եւ որոշուած 15 Լ. Օ. ամսական յատկացնել։

Որբերու թիւը եղած է 50։

Մոսկուայի Որբախնամը այս դրամները Պատրիարքարանի խողովակով կը ղրկէր Մալաթիա (Նպաստից Յանձնաժողով էջ 30)։

Այս որբանոցի համար, Մալաթիա ղրկուած է.

| | | |
|---|---|---|
| 1898-ին | 45.— | Օսմ. ոսկի |
| 1899-ին | 185.56 | » |
| 1900-ին | 181.— | » |
| 1901-ին | 236.44 | » |
| 1902-ին | 165.— | » |
| 1903-ին | 64.— | » |
| Համագումար | 876.— | » |

Որբանոցին մէջ տղաք կը սորվէին նաեւ արհեստ։ Այս նպատակով բացէն նպաստ ալ կը նշանակուի եւ մինչեւ չորս տարիէն քիչ մը աւելի ժամանակ կը շարունակէ որբանոցը գոյութիւն ունենալ եւ կը փակուի 1903 Օգոստոսին (Նպաստից Յանձնաժողով էջ 39)։

Այս որբանոցի արհեստի հետեւող աշակերտներէն տղաք Պոլիս կը տարուին ուրիշ գաւառներէն հոն տարուածներուն հետ,— ամէնը հարիւր տղաք — եւ հոն կը պատսպարուին մինչեւ որ բաւական վարժութիւն ձեռք կը բերեն։ Ապա կը տարուին իրենց տեղերը իբր վարպետներ (Նոյն էջ 40)։

Անկէ զատ Օրմանեան պատրիարքի կարգադրութեամբ Նպաստից Յանձնաժողովը Մալաթիոյ առաջնորդութեան ենթակայ կարգ մը վայրերուն դպրոցներուն համար օգնութիւն ընձեռած է։

Ան կը գրէ թէ.

«Մալաթիոյ վիճակին Հիւսնի Մանսուր կամ Ատըեաման աւանին մէջ նպաստընկալ վարժարան բացուեցաւ 1898 Նոյեմբերին Լ. Օ. 1 ամսաթոշակով սնտուկի հաշւոյն։ Նոյն Մալաթիոյ վիճակի Պէհիսնի աւանին մէջ ալ վարժարան մը բացուեցաւ 1900 Սեպտեմբերին Լ. Օ. 1 ամսաթոշակով Պեդըրբուրգի հողաբարձութեան հաշւոյն։ Մալաթիոյ Իսպիչ գիւղի մէջ Միացեալի ունեցած վարժարանը նոյէն բացուեցաւ 1899 Մայիսին Լ. Օ. 1 ամսաթոշակով սնտուկի հաշւոյն, բայց հսկողութիւնը՝ դիւրութեան համար Եդեսիոյ առաջնորդարանի ձեռօք կը կատարուէր։ — Մալաթիոյ վիճակին մէջ 1901-էն եօթը վարժարաններ բացուեցան նաեւ Անսուր, Մուշովկայ եւ Քեախթա գիւղերուն մէջ, մինչեւ որ բաշխումները բոլորովին առաջնորդարանին տրամադրութեան թողուեցան 1903-ին, Լ. Օ. 5 ամսաթոշակ սահմանուեցաւ, Հեքիմխան գիւղի գաւառափոխական խնդիրը կարգադրուելէն

ճոքը, անոր ալ յատուկ նպաստ սահմանուեցաւ 1904 Սեպտեմբերին Լ. Օ. 1·50 ամսաթոշակով եւ այժմ (այսինքն 1908–ին) Մալաթիոյ վիճակին Հեքիմխանով մէկտեղ Լ. Օ. 2·50 ամսաթոշակ կը շարունակուի: Իսկ բոլոր Մալաթիոյ վիճակին վարժարանական նպաստը եղած է Լ. Օ. 6·345»: (Նըպաստից Յանձնաժողով էջ 47):

Այսպէս Մալաթիոյ թեմին իբր կրթական նպաստ ղրկուած է.

| | | |
|---|---|---|
| 1898–ին | 4·— | Լ. Օ. |
| 1899–ին | 18·— | » |
| 1900–ին | 28·— | » |
| 1901–ին | 38·— | » |
| 1902–ին | 39·— | » |
| 1903–ին | 26·— | » |
| 1904–ին | 42·— | » |
| 1905–ին | 54·— | » |
| 1906–ին | 46·— | » |
| 1907–ին | 30·— | » |
| 1908–ին | 20·— | » |
| գումար | 345·— | » |

Ուրեմն Մալաթիոյ վիճակը 1896–ի ջարդէն ետք, մինչեւ 1908 ստացած էր իբր

| | | |
|---|---|---|
| Նպաստ ժողովուրդի | 413·56 | Լ. Օ. |
| Որբանոցներուն հմր. | 876·— | » |
| Մալաթիոյ դպրոցի | 20·— | » |
| Գաւառին նպաստ. վրժ. | 345·— | » |
| Համագումար | 1654·56 | » |

Նպաստից Յանձնաժողովը Մալաթիա ղրկուած այցելու հովիւի մը եւ օգնականի մը Նպաստից Սնտուկէն տուած է ճանապարհածախքեր, որոնք կերպով մը նպաստ էին, քանի որ Առաջնորդարանը ի վիճակի չէր ինքն հոգալու այդ ծախքերը:

Հոս հարկ է յիշեցնել թէ Մալաթիոյ 1893ի մեծ երկրաշարժէն վնասեալներուն օգնելու համար յատուկ հանգանակութիւն մը կատարուած էր Կ. Պոլսոյ մէջ (այդ գումարէն 220·57 Լ. Օ. մնացած էր հանգուցեալ Սարգիս Կիւլպէնկեանի որդւոց քով, ինչպէս ըսի):

Օրմանեան պատրիարք այս գումարը ամբողջութեամբ գանձելով 1897 Յունիսին (տես Նպաստից Յանձնաժողով էջ 23) հասցուց Մալաթիա գործածուելու համար Մալաթիոյ եկեղեցիներուն եւ դպրոցներուն նորոգութեան (Նպաստից Յանձնաժողով էջ 54):

*Ինչպէս կը տեսնուի, Մալաթիացիք շատ մեծ գումարներ չեն ստացած իբր նպաստ եւ իրենց կարօտութիւնները եւ կարօտեալները տեղական միջոցներով հոգացած են, ինչ որ մեծապէս գնահատելի է։*

## Գ.

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՊԱՅՔԱՐՆԵՐ

*Ստեփան Մանուչեան (ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ ԺԴ. տարի Թ. 4 էջ 15) կ'ըսէ թէ.*

«Շատ հին ատեններէ ի վեր իշխանական դրութիւնը գոյութիւն ունէր։ Կղերներ եւ իշխաններ բացարձակ իշխողներն էին քաղաքին, իսկ մեր ատենները աղաներն ու առաջնորդը»։

*Հակառակ անոր որ շատ պզտիկ հեղինակութիւն մը ունէին այդ իշխանները եւ աղաները, սակայն անոնց դիրքին ցանկացողներ շատ կային, հետեւաբար պայքարներ եւ վէճեր միշտ գոյութիւն ունէին եւ «Երեւելի»ներ իրարու հետ կը մաքառէին, իրենց հեղինակութիւնը յարգել տալու համար։ Հետեւաբար ամէն մէկ «Մեծ Աղա» կ'աշխատէր իր շուրջը համախմբել մարդիկ, որոնք իր անունով կը մաքառէին ուրիշ մեծատունի մը մարդոց դէմ։*

*Դժբախտաբար այս տեսակ պայքարներու յիշատակները չեն հասած, վասնզի քաղաքին տեղափոխութիւնը կարծես թէ ընդհատած է Մալաթիոյ հասարակական կեանքին պատմութիւնը, որուն 1830ական թուականներէն առջի մասին վրայ գաղափար չունինք եւ կարծես թէ միայն անկէ վերջն է որ ան ծնունդ առած է, մինչդեռ այնպէս չի կրնար եղած ըլլալ։*

*Ամէն պարագայի մէջ ԺԹ. դարէն առաջ Մալաթիա ալ ունէր իր ջօջերը, ՄԻՒԹԷՎԷԼԼԻՆերը, աղապետները եւ այլն, որոնք իբր երեւելիներ տէր ու տիրական էին ազգին։*

*Եւ հակառակ անոր որ 1860ին Սահմանադրութիւնը հաստատուած էր, սակայն ան շատ խուլ արձագանգ մը ունեցած էր Մալաթիոյ մէջ, ուր գրեթէ մինչեւ 1900ական թուականները ազգային գործերը կը կառավարէին ԱՂԱ ԷՖԷՆՏԻՆերը իրենց քմահաճոյքով, առանց ոեւէ հաշուետուութեան եւ հակակշռի։*

*Սակայն ասիկա ըսել չէ թէ պայքար գոյութիւն չունէր։ Ընդհակառակը «երեւելիները» իրարու հետ կը մաքառէին եւ կ'ուզէին Առաջնորդարանի իշխանութիւնը իրենց ձեռք առնել։*

*Ժողովուրդին ձայնը խեղդուած էր բացարձակապէս մինչեւ 1880 թուականը, Սահմանադրութեան հաստատութենէն քսան տարի վերջը։ 1880էն վերջն է որ առաջ եկան խմորումներ եւ մեծ աղաներու դէմ դժգոհութիւններ եւ կուսակցական պայքարներ, որոնց համառօտ մէկ պատկերը ներկայացուցած է Աւետիս Աթաչեան իր անտիպ մէկ գրութեան մէջ։*

*Ան կը պատմէ թէ.*

*1881ին Մալաթիա եկած է Յարութիւն Առաքելեան, Մալաթիացի վարդապետը, որ Խրիմեանի աշակերտներէն էր եւ երկար ժամանակ Վան մնացած էր։ Այս վարդապետին առաջին գործը եղած է հիմնել աղջկանց դպրոց մը եւ կանանց ընկերութիւններ, եւ եկեղեցիին թեմերէն քարոզել ժողովուրդին ինքնազարգացման անհրաժեշտութիւնը։*

*Այդ թուականներուն Սրապեան եպիսկոպոս վախճանած ըլլալով, Քէֆսիզեան կաթողիկոս Իսահակ եպիսկոպոս Սահակեանը ղրկած էր իբր առաջնորդ։ Այսպէս քաղաքը ունեցած էր երկու վեղարաւորներ, որոնք կը գործէին քաղաքին բարիքին համար, առանց իրար հասկնալու։ Երկուքն ալ ժողովուրդը կը կազմակերպէին, իրենց հասկցած եղանակաւ, որ իրարու հետ չէր ներդաշնակեր։*

*Յարութիւն վրդ. Առաքելեան, ինչպէս կ'երեւի կ'ուզէր ժողովուրդը արթնցնել իր քունէն եւ դաստիարակութեամբ զայն լուսաւորել կը փափաքէր, մինչ Իսահակ եպիսկոպոս Սահակեան, ինչպէս տեսնուեցաւ, անպատրաստ ժողովուրդին մէջ յեղափոխական գաղափարներու տարածումը կը քաջալերէր։*

*Հետեւաբար սկսաւ պայքար մը, որ սուր հանգամանք առաւ եւ ժողովուրդը բաժնուեցաւ երկուքի։*

*Երկու կուսակցութիւններուն պետերն էին Գրիգոր Աղա Արսլանեան՝ որ Առաջնորդին կողմնակիցն էր եւ Յովհաննէս Էֆէնտի Սարաֆեան, որ իր կողմնակիցներով վարդապետը կը պաշտպանէր։*

*Յարութիւն վարդապետ այն պատրուակով, թէ իբր Էջմիածնի ենթակայ թեմի մը մէջ ձեռնադրեալ չէր կրնար պաշտօնավարել Կիլիկիոյ կաթողիկոսութեան սահմաններուն մէջ, Առաջնորդին պահանջով աքսորուեցաւ Խարբերդ Ճրագալոյցի օրը։*

*Անիկա պատճառ եղաւ որ ժողովուրդը կատղի եւ առաջնորդին դէմ ելլէ։ Առաջնորդը տեղի տալով ետ բերել տուաւ աքսորուած վարդապետը, իբր թէ անոր հետ հաշտուած, վարդապետին կուսակիցները այնքան գրգռուած էին, որ չդադրեցան պայքարելէ առաջնորդին դէմ, մինչեւ որ Սիսի կաթողիկոսը զայն ետ չկանչեց։*

*Իսահակ եպիսկոպոս Սահակեան որ բաւական կազմակերպած էր երիտասարդութիւնը, որ իր օրով երկու յանդուգն քայլեր առաւ, Ա.— Գրիգոր Աղա Զօրաբեանը իր մահիճին սպաննեց[1] եւ Բ.— Պօղային Պապ Ոսկանի պալատին ծառերը կտրեց։*

*Այս քայլերը կ'առնէին Առաջնորդի գիտակցութեամբ եւ նոյնիսկ կը կարծուէր անոր հրամանով։*

---

(1) Սպաննիչն էր Պետրոս Դանիէլեան. անկեղծ ազգասէր մը. Հոկտուակ անոր որ իր մայրը եւ քոյրը խողխողուած էին։ Պետրոս Դանիէլեան քանի մը անուն ունէր. ինչպէս ՔԷՖԷԼ ՕՐՏԷԿ, եւայլն։

Պետրոս Դանիէլեան երիտասարդութեան մէջ կարեւոր դեր մը ունէր։

*Ասոնք ժողովուրդին պառակտումը աւելի կը շեշտէին եւ երկու կուսակցութիւնները կը մաքառէին իրարու դէմ, երբ այլեւս եպիսկոպոսը Սիս գացած էր եւ վարդապետը՝ 1892ին Բալուի մէջ վախճանած:*

*Իրենք գոյութիւն չունէին, բայց իրենց կուսակիցները, գլխաւորութեամբ Գրիգոր Աղա Ասլանեանի, Յովհաննէս էֆէնտի Սարաֆեանի եւ Սարգիս էֆէնտի Թիֆլիզեանի կամ Պապաեանի (հարցաքննիչի օգնական) կը գործէին եւ պայքարը կը շարունակէին:*

*Ասոնցմէ զատ կար երրորդ դէմք մըն ալ որ «Բօստոլ Հաճի» անունով կը ճանչցուէր: Ասիկա Հայաստանցի էր եւ պարսիկ հիւպատոսարանին խաւագն էր: Ասիկա կ'ուզէր ժողովուրդը կազմակերպել, եւ գտած էր ասոր համար իր փնտռած մարդը՝ Պետրոս Դանիէլեանը, որուն քենեկալն եղած էր եւ հաստատուած Մալաթիա, ուր Իսահակ եպիսկոպոսի եւ Յարութիւն վարդապետ Առաքելեանի, ինչպէս նաեւ «Բօստոլ Հաճի»ի սերմանած հունտերը իրենց ծիլերը տուած էին եւ քաղաքը խռոված:*

*Քէֆսիզեան կաթողիկոս կ'ուզէ խաղաղեցնել քաղաքը, ուստի իբր քննիչ հոն կը ղրկէ Պետրոս վրդ. Ներկարարեանը, որ երբ գիշեր մը տուն մը գացած էր կազմակերպուած երիտասարդները վարդապետին գոյքերը կը գողնան:*

*Թիֆլիզեան, օգտուելով իր փոխ-հարցաքննիչի պաշտօնէն, կ'ուզէ արատաւորել հակառակորդ կուսակցութիւնը, ուստի կը թելադրէ անբարոյական անձ մը, որ յայտարարէ թէ ինքն Սապօնճեաններուն հետ միասին գողցած է վարդապետին գոյքերը: Սակայն իր այս թելադրութիւնը կատարած ատեն, Պաղտասար եւ Յակոբ Աթաչեանները լսած ըլլալով, կը վկայեն եւ Սապօնճեանները կ'արձակուին բանտէն, բայց իրենց հայրը բանտին մէջ կը մեռնի:*

*Թիֆլիզեան սակայն կը յաջողի տապալել Գրիգոր Աղա Ասլանեանը, որուն կողմնակիցներն ալ կը տապալեն զինքն ժողովրդային հանրագրութեամբ մը, կառավարութիւնը երկու հակառակորդ կուսակցութիւններէն Ասլանեանը՝ Քաղթէ եւ Թիֆլիզեանը՝ Ատըեաման կ'աքսորէ:*

*Քանի մը ամիս ետքը Գրիգոր աղա Ասլանեան կրցաւ դառնալ Մալաթիա եւ աշխատեցաւ իր հակառակորդները՝ Թիֆլիզեանն ալ բերել տալ, վասնզի վտանգը մեծ էր եւ ջարդի սպառնալիք էր:*

*Այս վտանգին առջեւ կուսակցական կիրքերը հանդարտեցան: Սակայն Գրիգոր Ասլանեան չկրցաւ կոտորածին առջեւը առնելու համար իր ծրագիրը ընդունիլ տալ քաղաքի երեւելիներուն, որոնք իր խորհուրդին անսալով չուզեցին ինքնապաշտպանութեան պատրաստուիլ:*

*Եւ պատահեցաւ ինչ որ կը սպասուէր եւ Մալաթիացիք ջարդին մեծ կորուստ տուին:*

*Այս հարուածը ժողովուրդը ահաբեկեց եւ ատեն մը պայքարները դադրեցան:*

*1908ին Օսմանեան Սահմանադրութեան վերահաստատութենէն ետք,*

*երբ բռնակալութիւնը տապալեցաւ եւ կուսակցականները գործել սկսան, պայքարները վերսկսան ազգային շրջանակի մէջ եւ Առաջնորդարանի շուրջը։*

*Այս վէճերու արծարծման պատճառ եղաւ* 1909 *Յուլիս ամսուն Պալտասար Բաղսարեանի եւ Եսթեր վարժուհիի միջեւ պատահած միջադէպ մը։*

*Այս միջադէպին մէջ Քաղ. Ժողովը անարդար ու կողմնակալ դատաղութեամբ մը յանցաւոր կողմը քաջալերած էր։ Անիրաւուած կողմը դիմած էր պետական դատարան։*

15 *Օգոստոս* 1909*ին* 17 *երիտասարդներ կը դիմեն Առաջ. Տեղապահ Եղիա քհն. Տէր Կարապետեանի եւ կը պահանջեն երկու սուտ վկայութիւն տըւող քահանաներուն պատժուիլը։*

*Երբ Առաջնորդական Տեղապահը կը տեսնէ* 17 *երիտասարդներ, որոնք բոլորն ալ ծանօթ էին, կը հարցնէ թէ ինչ կայ։ Խաչատուր Արքաեան կը պատասխանէ թէ բողոքագիր մը ունին եւ կը ներկայացնէ թուղթը։ Տեղապահը կը խնդրէ որ քիչ մը սպասեն, վասնզի ինքն ժողովի մէջ է։*

*Քառորդ ժամ մը վերջը մաս մը ԱՂԱՆԵՐ կը մեկնին։ Տեղապահը կը լսէ բողոքողները եւ կը յայտարարէ թէ կրնայ սխալ մը գործած ըլլալ։ Ատոր համար պէտք չէ մեղադրել։ Այժմ որ խոստում կ'ըլլայ թեւ եւ թիկունք ըլլալու Առաջնորդարանին, երդում կ'ընէ որ արդարութիւն պիտի գործադրուի։ Յետոյ կը խնդրէ որ մէկ կողմ թողուն երկու քահանաներու սուտ վկայութեան հարցը, որպէսզի ազգային շրջանակի մէջ կարգադրուի, որովհետեւ ենթակաները քահանաներ են, անոնց յանցանքն ամբողջ ազգին կ'ըլլայ նախատինք եւ կ'ընդունի թէ անոնք արժանի են յանդիմանութեան։*

*Յետոյ Առաջնորդարանը կը դիմէ դատարան, բեկանել տալու համար վճիռը։*

*Կառավարիչը բեկանումէն ետք նոր դատավարութեան մը առիթ չտալու համար, յանցաւորին ներողութիւն խնդրել կու տայ, եւ խնդիրը կը փակէ առանց դատի։ Բայց նոյն օրերուն կը պատահի ուրիշ դէպք մը, որ նորէն Աղաներուն դէմ կը հանէ ժողովուրդը եւ մանաւանդ երիտասարդութիւնը։*

*Գաբրիէլ Անսուըլեան, դպրոցին սիրուած տնօրէնը կը պատժէ Պօղոս աղա Առաքելեանի տղան։ Աղան կը սպառնայ ոչ միայն հանել պաշտօնէն զայն, այլ նոյնիսկ քաղաքէն աքսորել տալ տնօրէնը։*

*Սակայն իր նպատակին չի կրնար հասնիլ, վասնզի երիտասարդութիւնը կը տապալէ աղաներու վարչութիւնը, վասնզի այդ աղաները չարաչահութիւններ եւ կողմնակալութիւններ կը կատարէին։ Մասնաւորապէս խնամական հաշիւներով ազգային կալուածները վարձու տուած էին քմահաճօրէն, այնպէս որ Մայր Եկեղեցւոյ կալուածները հազիւ* 150 *օսմանեան ոսկի եկամուտ կը բերէին։*

1909*ին վերջերը երիտասարդութիւնը բողոքեց եւ նոր ընտրութիւն պահանջեց երեսփոխանութեան։ Սաստիկ պայքարէ ետք, տեղի ունեցաւ ընտրութիւնը եւ աղաները Առաջնորդարանէն դուրս վանուեցան։*

*Այս պայքարին մասնակցեցան Հնչակեանները եւ Դաշնակցականները։*

Նորընտիր երեսփոխաններ բարեփոխեցին Առաջնորդարանի վարչութիւնը եւ իր պաշտօնին մէջ վերահաստատեցին Գաբրիէլ Անտուրեանը, ուսուցչական նոր եւ երիտասարդ ուժեր օգնական տալով անոր:

Անուրդով վարձու տուին Եկեղեցիին կալուածները, որոնց եկամուտը բարձրացուցին 150 ոսկիէն 450 ոսկիի:

Ջնջեցին եկեղեցիին մէջ պնակ պտտցնելը, տունօրհնէքի, թաղումի, եւ մկրտութեան վճարումները, եւ հաստատեցին ազգային տուրք:

Որոշուեցաւ թոշակ տալ եկեղեցականներուն:

Առաջնորդը պիտի ստանար 120 ոսկի եւ քահանաները 30ական ոսկի տարեկան (Սեննեքերիմ Ափարաքեան, ՊԱԳ ՈՒԽՏԻ Թ. 25 էջ 19–20): Ազգային տուրքի սակերն էին 10 ղրուշէն մինչեւ 100 ղրուշ, կարողութեան համեմատ:

Քահանաները կարգով 15 օր կը սպասարկէին Առաջնորդարանին մէջ եւ կը կատարէին եկեղեցական արարողութիւնները, պսակ, մկրտութիւն, թաղում եւայլն: Ազատ եղող քահանաները ամէն առտու եկեղեցիին արարողութեան ներկայ ըլլալէ ետք կը գործէին դուրսը, այցելութիւններ տալով իրենց ծուխերուն եւ հոգեւորապէս սփոփելով զանոնք:

Քահանաները պարտաւոր էին թաղական խորհուրդներու տալու զեկուցումներ, իրենց գործունէութեան մասին:

Նորընտիր ժողովականները հաստատեցին կանոնաւոր հաշուետուութիւն: Հաշիւները եկեղեցիին բակը կը կախէին եւ ամբողջ ամիս մը կը ձգէին որ ամէն մարդ տեսնէր:

Սակայն հին ագաները չհամակերպեցան նորերուն ստեղծած բարենորոգումներուն եւ դաւադրեցին անոնց դէմ, բայց չյաջողեցան այլ միայն դժուարութիւններ պատճառեցին:

Նորերը յաջողեցան Մալաթիոյ Հայերու եկեղեցական եւ կրթական գործերը առողջ հիմերու վրայ դնել, սակայն դժբախտաբար համաշխարհային առաջին պատերազմը որ 1914ին պայթեցաւ, ամէն բան տակնուվրայ ըրաւ (Սեննեքերիմ Ափարաքեան ՅՈՒՇԵՐ ԵՒ ԽՈՀԵՐ, ՊԱԳ ՈՒԽՏԻ Թ. 26 էջ 5–8):





# Ը. ՄԱՍ

# ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԵԱՆՔ

## Ա.

## ՄԱԼԱԹԻՈՅ ՄԷՋ ՀԱՅ ԵՒ ԹՈՒՐՔ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՄԻՆՉԵՒ ԺԹ. ԴԱՐՈՒՆ ԿԷՍԵՐԸ

*Մալաթիոյ մէջ տիրող Հայերու եւ Թուրքերու փոխ-յարաբերութիւններուն վրայ շատ քիչ տեղեկութիւններ արձանագրուած են հայ տարեգրութիւններու մէջ, սակայն Թուրքերու մէջ տիրող ընդհանուր վիճակին համապատասխան միայն կրնար ըլլալ Մալաթիոյ Հայերուն կեանքը: Ու յայտնի է թէ ի՛նչքան անտանելի էր քրիստոնեաներու վիճակը Օսմանեան կայսրութեան մէջ: Ասիկա այնքան ակնյայտ իրողութիւն մըն էր, որ նոր ապացոյցներու եւ բացատրութիւններու չի կարօտիր, քանի որ հաստատուած է բազմաթիւ պաշտօնական ու անպաշտօն անժխտելի վկայութիւններով*[1]:

*Ոչ մէկ երկրի տիրող ազգը այնքան փայլուն եղած է հանդէպ տիրապետուած ազգերու որքան Թուրքը, որ իր աշխարհակալած երկիրներուն մէջ, անտանելի խժդժութիւններու, սոսկալի բռնութիւններու եւ կեղեքումներու փարչաձեւ մը ստեղծած էր:*

*Այս անտանելի կերպով ճնշիչ պայմաններուն մէջ հպատակներու ազատ շնչելը իսկ շնորհք մը նկատուած էր եւ ստեղծուած այնպիսի մթնոլորտ մը, որուն մէջ ամէն օր հպատակները կը դղայէին իրենց նուաստ եւ խոնարհ գլուխը հանդէպ Իշխաններու:*

*Այնպէս որ ամէն կասկածէ դուրս է թէ Օսմանեան կայսրութիւնը դժոխք մըն էր, ուր կը տառապէին բազմաթիւ ժողովուրդներ, ի մէջ այլոց Հայերը, քանի որ Մալաթիոյ Հայերը բացառութիւն չէին կրնար կազմել բոլոր Օսմանեան երկիրներու Հայերէն եւ իրապէս օսմանեան լուծին տակ մնալէ ետք ոչ տեւական անդորրութիւն եւ ոչ հանդիստ ժամանակամիջոց*

---

(1) Այս մասին խօսող հրատարակութիւններ այնքան բազմաթիւ են որ անոնց անունները թուել եթէ պէտք ըլլայ, էջեր կրնան լեցուիլ: Հետեւաբար աւելորդ կը նկատենք յիշել անոնց անունները: Հետաքրքիրներ Հայերէն եւ օտար լեզուներով բազմաթիւ գործեր շատ դիւրութեամբ կրնան գտնել:

մը ունեցած են։ Ենթարկուած են տառապանքներու. մէկ կողմէն հալածանքներ եւ կեղեքումներ, միւս կողմէն խռովութիւններ եւ խառնակութիւններ երբեք չէին ձգած Հայերը որ ամուր, տեւական եւ հաստատուն վիճակ մը ունենան եւ ոչ ալ երջանիկ ու խաղաղ ժամանակամիջոց մը։

Յարունակ անոնք եռացող կաթսայի վրայ ապրած են եւ սպառնուած ու չսպասուած հարուածներով անոնք ահաբեկուած եւ իրենց կեանքը վրդովուած եւ միշտ զուլումներու ենթարկուած են։

Մասնաւորապէս իշխանաւորներու կամ տիրապետող դասուն, մեծ եւ փոքր բռնապետներուն հարստահարութիւնները եւ կեղեքումները, եւ բուն իշխանութեան՝ կառավարութեան իսկ հրամայած ջարդերը եւ տեղահանութիւնները հարկադրած են ապրիլ Հայերը՝ ինչպէս այլուր բովանդակ կայսրութեան մէջ՝ նոյնպէս Մալաթիոյ մէջ տառապալից կեանք մը։

Երբ Օսմանցիք նուաճեցին Անատոլուն, երկրին բնակչութեան մեծամասնութիւնը քրիստոնեայ էր։ Պարսկական երկարատեւ պատերազմներու եւ ներքին այդքան խառնակութիւններու, մասնաւորապէս ճելալիներու ապստամբութիւններու զարհուրելի հետեւանքները — բռնագաղթեր, սովեր եւ ժանտախտի համաճարակներ — կրելէ ետք ԺԷ. դարուն կէսերը, Հայաստան ուղեւորող նշանաւոր ճանապարհորդ մը՝ Թավեռնիէ (1605—1689), որ 1632-ին, 1638—1642-ին, 1643—1649-ին, 1652—1656-ին, 1657—1662-ին եւ 1663—1668-ին վեց անգամ Արեւելք այցելած է, կ'ըսէ թէ «Թոզատէն մինչեւ Դաւրէժ՝ երկիրը գրեթէ միմիայն քրիստոնեաներէ բնակուած է, եւ ըստ որում այն ընդարձակ տարածութիւնը նախնեաց Հայաստանի նահանգ կոչուածն է, պէտք չէ զարմանալ եթէ քաղաքներուն եւ գիւղերուն մէջ մէկ մահմետականի փոխարէն յիսուն Հայ կը գտնուի» (**Les six voyages de Jean Baptiste Tavernier, en Turquie et Perse et aux Indes,** Paris, 1713, Ա. հտ., էջ 47—48)։

Եթէ նոյնիսկ այս համեմատութեան մէջ չափազանցութիւն կայ, անուրանալի իրողութիւն մըն է որ Օսմանցիք աննշան փոքրամասնութիւն մըն էին, որ տիրած էին թիւով եւ քաղաքակրթութեամբ իրենցմէ գերազանց այլացեղ եւ բազմակրօն ժողովուրդներու, զորս հնազանդ պահելու համար միայն սուրը ունէին միջոց։ Ուստի իրենց սեփական մենաշնորհը ըրին զինուորականութիւնը եւ կազմեցին տիրող դասը, որ ահաբեկումը եւ կեղեքումը իր միջոց գործածեց՝ հպատակութեան մէջ պահելու համար նուաճուած ժողովուրդները, վասնզի զուրկ սեփական քաղաքակրթութենէ եւ անընդունակ մտաւոր ու մշակութային գործունէութեան, անկարող էին բարոյական միջոցներ կիրարկելու իրենց հպատակները կապելու համար պետութեան միութեան մէջ, ուր այլազան ցեղեր իրենց բոլոր ուժերը տրամադրէին, հաւասար իրաւունքներով եւ պարտականութիւններով։ Ասիկա չէին կրնար ըմբռնել հին Թուրքեր, որոնք կը հանդուրժէին քրիստոնեաներու գոյութեան միայն զանոնք նկատելով իրենց նախիրները (րայա) եւ ստրուկները, որոնք պէտք էր արդիւնաբերէին եւ աշխատէին իրենց համար, առանց ոեւէ իրաւունք վայելելու։

Եթէ քրիստոնեաները խուզելու ընչաքաղցութիւնը եւ երկրին առեւտուրը, երկրագործութիւնը, ճարտարարուեստը պահպանելու իրենց անկարողութիւնը նկատած եւ ասոր համար վարանած չըլլային, հաւանօրէն Օսմանեան պետութիւնը իր այլակրօն հպատակները մէկ անգամէն պիտի բնաջնջէր, ինչպէս մի քանի Թուրք սուլթաններ փորձած էին։

Արդարեւ պատմութիւնը կը յիշատակէ թէ ինչպէս մի քանի յանդուգն եւ անհամբեր սուլթաններ քրիստոնեաները սուրէ անցընելու որոշում տուած են, սակայն չեն յաջողած՝ շնորհիւ քրիստոնեաներու հնարիմացութիւններուն եւ տուած խոշոր կաշառքներուն (հմմտ. Արշակ Ալպօյաճեան, Նշմարներ եւ դրոշմներ, խօսքեր հետաքրքիր երիտասարդութեան ուղղուած, ԱԶԱՏ ՄԻՏՔ շաբաթաթերթ, թ. 14)։

Սակայն միշտ իբր քաղաքականութիւն օսմանեան պետութեան վարիչները չեն դադրած օրինական միջոցներ խորհելէ եւ գործադրելէ, առաջ տանելու համար ՐԱՅԱներու թիւը պակսեցնելու գործը։

Ասիկա կը կազմէր օսմանեան պետութեան վարիչներու ներքին քաղաքականութեան հիմնական մէկ ուղեգիծը, որ զանազան միջոցներով գործադրեցին՝ այսպէս թիւի խնդիրը ի նպաստ Թուրքերուն սրբագրելու համար։

Այս ուղղութեամբ առնուած ամէնէն կարեւոր քայլերէն մին էր Ենիչերի գունդերուն կազմութիւնը, որոնք քրիստոնեայ բնակչութենէն իբրեւ տուրք առնուած եւ իսլամացած մանուկներով կը կազմուէին։ Այս դրութեամբ հարիւրաւոր տարիներու ընթացքին հազարաւոր քրիստոնեաներ թրքացած են։

Իսլամացման առաջնորդող միջոց մըն էր նաեւ գլխահարկը, որ պարտաւոր էր ամէն ոչ-իսլամ վճարել, որպէսզի կարենար ապրիլ իսլամ երկիրի մէջ։ Ասիկա երբեմն ամէն համեմատութենէ դուրս ծանր էր, եւ գանձման եղանակը այնքան դաժան ու անողոք էր որ շատեր իսլամանալով ազատիլ կը նախընտրէին, մանաւանդ որ ջարդի սպառնալիքն ալ կար իրենց գլխուն վրայ, երբ տուրքը չվճարէին։

Ասկէ դուրս բռնի իսլամացման արարքներն ալ միշտ պատահած են Թուրքիոյ մէջ, ուր իսլամական մոլեռանդութիւնը սանձարձակ գործած է։

Մալաթիա ապահովաբար զերծ չէ մնացած ո՛չ Ենիչերիութեան համար գործադրուած մանկաժողովներէն, ո՛չ տուրքերու կեղեքումներէն եւ ոչ բռնի իսլամացման փորձերէն, որոնք դժբախտաբար չեն արձանագրուած եւ անյայտ կը մնան։

Սակայն տխրող իրականութիւնը ցոյց կու տայ թէ բոլոր ասոնք գործադրուած են Մալաթիոյ մէջ։

Ո՜վ գիտէ քանի՛, քանի՛ անգամներ փորձուած են հաւաքական եւ անհատական իսլամացման փորձեր, որոնք դժբախտաբար գրաւոր վաւերագիրներով հաստատել կարելի չէ այսօր, սակայն երեւոյթները որոշ ցոյց կու տան թէ կատարուած են։

Մալաթիա շատ հին ժամանակներէ սկսեալ «Հայոց» քաղաքը ներկա-

յացուած է[1], հակառակ անոր որ Հայաստանի սահմանէն դուրս էր: Արդարեւ Մալաթիա ամենախիտ հայ բնակչութիւնը ունեցած էր, ինչ որ կը հաստատէին իր սրբավայրերը, որոնք այնքան շատ էին:

Մալաթիա վերջին ժամանակներուն նշանակելի է որ իր շուրջը չունէր հայ գիւղեր, ինչ որ անբնական երեւոյթ եղած պիտի ըլլար, եթէ բազմաթիւ փաստեր գոյութիւն ունեցած չըլլային թէ հին ատեն Մալաթիոյ շուրջը բազմաթիւ հայ գիւղեր կային, որոնք Թրքական բռնակալութեան տակ անչքացած էին:

Տոքթ. Միքայէլ Բէշիշեան (տես Նոր ՄԱԼԱԹԻԱ, Ա. տարի Թ. 4, էջ 7) կը պատմէ թէ «Լէնկ-թիմուր Սեբաստիան նուաճելէ վերջ՝ հին Մելիտինէ եւ շրջականներու վրայ յարձակելով քարուքանդ ըրած է քաղաքը, պողոտաներ, մեծամեծ արժէքաւոր շէնքեր քակելով, անոնց քարերը իր զինուորներուն միջոցաւ Եփրատը թափած, ջարդած է քրիստոնեաները ու 40 հայ իշխաններ, որոնց գերեզմանները կարգով շարուած են բլուրի մը վրայ: Այս գերեզմանները կը կոչուին Քառասուն Մանուկք»:

Այս տեղեկութեան պատմականութիւնը առանց կասկածի տակ դնելու դիտելի է որ Սեբաստիոյ մէջ ալ նոյն արիւնկզակ աշխարհակալին գոհ ուրիշ «Քառասուն Մանուկ»ներու յիշատակութիւնը կայ:

Իսկ Թրքական տիրապետութեան տակ անկասկած քրիստոնէից դէմ հալածանքներ գործադրուած են «Մելիտինէի ամբողջ դաշտին եւ շրջապատող անառիկ լեռնաշղթաներու վրայ, կործանուած էին եկեղեցիներ, կոտորուած էր բնակչութեան մեծամասնութիւնը, իսկ մնացածներն ալ դաւանափոխ եղած էին» (Տոքթ. Միքայէլ Բէշիշեան, Նոյն):

Կրօնափոխութիւնները կատարուած էին յարատեւ կերպով եւ այսպէս Հայերու թիւը գաւառին մէջ պակսած էր:

Ըստ Տոքթ. Մ. Բէշիշեանի «Պէկ Տաղի, Աղնա Տաղի, Քեաղտէի եւ Իւզ Օղլիի քիւրտ կամ թիւրք բնակչութեան շատ մը ընտանեկան անուններն ու մականունները հայկական են: Իրենց սովորութիւններն քրիստոնէական, հացի համար շաղուած խմորը եփելու երկար սանը կը խաչանշեն, իրենց ձեռագործները՝ գտակ, կապերտ, շատ մը զարդերու եւ պատկերներու գլուխներն եւ մէջտեղերը խաչի պատկերներով կը զարդարեն» (տես Նոյն):

Ապահովաբար այսպէս իսլամացած են ուրիշ գիւղեր ալ եւ հայ բնակչութիւնը անհետացած է, երեւոյթ որ Թուրքիոյ ամէն կողմերը սովորաբար տեսնուած է եւ միայն Մալաթիոյ յատուկ չէ:

Իսկ անհատները բռնի իսլամացնելու փորձեր անշուշտ, ինչպէս այլուր, կատարուած են նաեւ Մալաթիոյ մէջ: Ասոնցմէ միայն երկու հատին յիշատակութիւնը պահուած է:

Այսպէս կը յիշատակուին երկու Կարապետներ, երկուքն ալ հաւատոյ նահատակ:

---

(1) Օրինակի համար 1269-ին գրուած Աւետարանի մը յիշատակարանին մէջ «Մելիտինէ Հայոց Մեծաց քաղաք» կոչուած է (տես գիրքիս ձեռագիրներու բաժինը):

Առաջինը՝ Կարապետ Մելիտինեցի փակակալ կամ լուսարար, որ հաւատքը չուրանալուն համար նահատակուած է հրով 1524-ին (Զամ.,Գ., 516, Աճառեան, եւ Մանանդեան, Նոր վկաներ. էջ 359, Ազգապատում, էջ 2228, Աճառեան Հայոց Անձնանունների Բառարան, Բ., էջ 610), իսկ երկրորդը՝ Կարապետ Մալաթիացի, որ «ի թագաւորութեան Հագարացւոց եւ ի տեղապահութեան Մելիտինոյ Ղազի շահին, որ էր ազգաւ քուրդ, ի հայրապետութեան Սիսոյ Տ. Յովհաննէս Կաթողիկոսին եւ յեպիսկոպոսութեան Մելիտինոյ Տ. Սահակին, եւ եղեւ չքնաղ եւ զարմանալի նոր մարտիրոս այս Կարապետ: Այս եղեւ ի թ. Հ. ՌՃՀԹ» (= 1724):

Իր վկայաբանութիւնը մտած է Յայսմաւուրքի մը մէջ, որ Սեբաստիա գրուած է ՌՄԿ-ին (1260+551= 1811) ձեռամբ լուսարար Տէր Մարտիրոսին: Այս ձեռագիր Յայսմաւուրքը այժմ կը պահուի Լոնտոնի Բրիտանական Թանգարանին մէջ, ըստ ցուցակագրութեան F. C. Conybere-ի (**Catalogue of the Armenian Manuscripts in the British Museum**, էջ 182),68—6988 թուահամարին տակ (տես Աճառեան-Մանանդեան, Նոր Վկաներ, էջ 1724 եւ Աճառեան, ՀԱՅՈՑ ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ԲԱՌԱՐԱՆ, Բ., էջ 611):

Այս եւ նման դէպքեր, որոնք անպակաս եղած են չարունակ, հայ բնակչութիւնը նուաղեցուցած են օսմանեան պետութեան մէջ:

Նկատի ունենալով բոլոր այս իրողութիւնները, կրնանք անվարան ու անկասկած ըսել թէ օսմանեան պետութիւնը ունեցած է Հայերու համար սպառող, փճացնող եւ ծիւրող նկարագիր մը եւ մեր թիւին պակսելուն պատճառ եղած է:

Նոյնպէս օսմանեան պետութիւնը, որ իր հպատակները անընդհատ հարստահարած եւ տեսակ-տեսակ տառապանքներու ենթարկած է երկրին մէկ ծայրէն միւսը, բնաւ չէ խնայած նաեւ Մալաթիոյ, ուր պատահած են նման դէպքեր, որոնք դժբախտաբար չեն արձանագրուած գոնէ Մալաթիա գրուած ձեռագիրներու յիշատակարաններուն մէջ, որոնք երբեմն փոյթ ունեցած են սովեր, երկրաշարժեր եւ մահտարաժամներ արձանագրելու:

Այնպէս որ ոչ մէկ տարակոյս կայ թէ դժնդակ եղած էր Թուրքիոյ մէջ քրիստոնեայ հպատակներու — ընդ որս Հայերու — վիճակը:

Քանի մը աննշան իրաւունքները, որոնք իրենց տրուած էին, շնորհներ էին, որ անոնք կը վայելէին ի գին այնպիսի նուաստացումներու ու կեղեքումներու, որոնք պարզապէս անտանելի ու անհանդուրժելի էին: Նոյնիսկ կալուած ունենալու եւ կրօնական արարողութիւններ կատարելու պէս տարրական իրաւունքները անոնք ստացած էին սուլթաններու դթութենէն՝ ակարութեան վայրկեաններու մէջ կամ զանազան հնարիմացութիւններով կամ հնչուն փաստով՝ կաշառքով: Իբր «անհաւատ» (կեաւուր) քրիստոնեային խօսքը եւ նոյնիսկ երդումը արժէք չունէր եւ իր վկայութիւնը չէր ընդունուեր: Ասիկա կը նշանակէր թէ օսմանեան լուծին տակ ապրող քրիստոնեաներու համար խիստ դժուար, գրեթէ անհնար բան մըն էր իր իրա-

ւունքը պաշտպանելը մահմետականին դէմ, որ երկու սուտ իսլամ վկայով կրնար քրիստոնեային ինչքին տէր դառնալ:

Կաշառակերութիւնը նուիրագործուած սովորութիւն էր ոչ միայն մանր-մունր պաշտօնեաներու, այլ նոյնիսկ սուլթաններու համար:

Նուիրագործուած սովորութիւն էր նաեւ այն, որ տիրողը, առանց պատճառի անգամ, սպաննել տար «անհաւատ»ը եւ յափշտակէր անոր ստացուածքը:

Անհուն կամայականութեանց թագաւորութիւնն էր օսմանեան կայսրութիւնը, ուր մեծ վեզիրներ անգամ ապահով չէին թէ վաղը ո՞ղջ պիտի մնային: Այս կացութեան մէջ ի՞նչպէս կարող էր ապահով ըլլալ րայան, որուն նկատմամբ ոչ մէկ բռնութիւն, ոչ մէկ անարդարութիւն արգիլուած էր:

Օսմանեան երկիրին մէջ ոչ-իսլամին ապրիլը իսլամին կողմէ եղած շնորհք մըն էր, քանի որ անոր շնչած օդը եւ գործածած ջուրը, որ իսլամին նուիրական իրաւունքն էր, իր անարժան մարմնոյն գոյութեան եւ պահպանութեան համար իսլամին կողմէ կը շնորհուէր:

Շնորհք մըն էր նաեւ անոր ազատօրէն իր կրօնական պաշտամունքը կատարելը իսլամ երկիրին մէջ եւ պղծելը՝ իսլամներու ականջը, քանի որ անիկա հայհոյութիւն կը նկատէր քրիստոնեային աղօթքը, ինչպէս որոշապէս բռնուած է եկեղեցիներու շինութեան հնօրեայ հրովարտակներու մէջ:

Նոյնիսկ ոչ-իսլամին իբր գերեզման տրուած հողը, իսլամին նուիրական երկիրին վրայ, շնորհք եւ գթութեան գործ նկատուած էր, ինչպէս շատ պերճախօսօրէն կը հաստատեն այն թաղման հրամանագիրները, որոնք կը տրուէին քրիստոնեաներու. (ասոնցմէ բազմաթիւ նմոյշներ հրատարակուած են զանազան տեղեր):

Շարունակ ոչ-իսլամին արժանապատուութիւնը կը վիրաւորուէր, վասնզի առօրեայ ընթացիկ կեանքի եւ ամէնօրեայ յարաբերութեանց մէջ քրիստոնեայք ստիպուած էին ենթարկուիլ զրկանքներու եւ նախատինքներու, միշտ ու ամէն վայրկեան իրենց նուաստ վիճակը յիշելու համար:

Փողոցը մայթին վրայ քալելու իրաւունքը իսլամինն էր. քրիստոնեան վարէն կը քալէր: Ոչ-իսլամը ձի նստելու իրաւունք չունէր, շատ շատ կրնար էշ հեծնել:

Քրիստոնեան ազատ չէր իր ուզածը հագնելու, մանաւանդ իսլամին տարազովը զգեստաւորուելու, այլ պէտք էր յատուկ հագուստով երեւար:

Ասոնք խտութիւններ էին, որ հետզհետէ կը ստեղծուէին, եւ մոլեռանդութիւնն էր որ կը յղանար զանոնք:

Քրիստոնեայք ստիպուած համակերպած են բոլոր այդ խտրականութեանց եւ մոլեռանդական քմահաճոյքներուն, վասնզի օսմանեան պետութիւնը այն ատեն անպարտելի ոյժ մը կը նկատուէր, եւ ոչ մէկ պետութիւն կրնար համարձակիլ միջամտել անոր ներքին գործերուն, թէեւ Կ. Պոլսոյ գրաւումէն (1453 Մայիս 29) ետք, մեծ մտադրութիւն մը եղած էր քրիս-

*տոնէութեան համար, օսմանեան պետութեան դէպի կեդրոնական Եւրոպա առաջխաղացութիւնը կասեցնել:*

*Իսկ Արեւելքի քրիստոնեաները ամէն անգամ որ եւրոպական պետութիւններ կը զինուէին կամ կը պատրաստուէին խաչակրութեան մը օսմանեան պետութեան դէմ, անշուշտ ներքուստ կը զգային իրենց տիրապետողներու պարտութիւնը, հոն տեսնելով իրենց վիճակին բարւոքման յոյսը, վասնզի իրենք անզօր էին իրենց սեպհական ոյժերով դէմ կանգնելու այս դժնդակ պայմանները ստեղծող պետութեան, որ ամենազօր էր:*

*Ուրեմն Հայերը, ինչպէս պետութեան բոլոր մասերուն, նոյնպէս Սալաթիոյ մէջ հարկադրուած էին ապրիլ դժնդակ եւ դժխեմ պայմաններու մէջ, որոնք արդարեւ անհանդուրժելի էին:*

*Հայերը հարկադրուած այդ դժողքին մէջ ապրելու, անշուշտ կը փափաքէին իրենց վիճակին բարւոքումը, սակայն միջոցը չէին կրնար գտնել, վասնզի գիտէին թէ որեւէ շարժում կրնար իրենց բնաջնջումը արժել:*

*Ուստի պարտաւորուած էին սպասել լաւագոյն օրերու կամ բարւոքումներու, մղելով գոյութեան կռիւ մը, եւ մտածելով նոյնիսկ անուղիղ եւ ոչ-յանձնարարելի միջոցներ ինքնապաշտպանութեան համար:*

*Նոյնիսկ անոնք յաջողած են երբեմն ազդեցիկ դիրքի մը հասնիլ, դրամին ուժով, իբր սեղանաւոր պետական պաշտօնատարներու փոխատուութիւններ ընելով եւ զանոնք կամակատար դարձնելով իրենց:*

*Նոյնպէս այլ հնարիմացութիւններով, դրամական զոհողութիւններով եւ տկարներու յատուկ հպարումէկ վարպետութիւններով անոնք ազգը ապրեցուցած են:*

*Պէտք է ընդունիլ թէ այս անել կացութեան մէջ միայն ապրելու եւ տեւելու միջոցը գտնելը յաջողութիւն մըն էր, որ Հայերը ունեցած են: Մասնաւորապէս արհամարհուած* Կեաւուրը *մնալով հանդերձ, կարգ մը ազդեցութիւն ձեռք բերած Հայեր կրցած են երբեմն հակազդել բարբարոսութեան, որ մոլեռանդութեան դիմակով կ'արտայայտուէր եւ սանձել խուժանային ախորժակները, որոնք սրուած էին միշտ հանդէպ* Ռայային:

*Այսպէս ազդեցիկ Հայերէն ոմանք ոչ միայն ծառայեցին իրենց ազգակիցներուն, որոշ չափով մը անոնց տառապագին կեանքին մէջ մեղմացումներ առաջ բերելու, մինչեւ որ եկան այն օրերը որ օսմանեան պետութիւնը օտար ճնշումի տակ ընդգրկեց գոնէ արտաքին ձեւերով եւ յաճախ ակամայ եւրոպականացման ուղին եւ քիչ մը բարելաւուեցաւ հպատակներու կեանքը — այլ նաեւ օսմանեան կայսրութիւնը — հոն ներմուծելով այն գաղափարը թէ* Կեաւուրն *ալ մարդ էր եւ ապրելու իրաւունք մը ունէր:*

*Կ. Պոլսոյ կեդրոնին եւ գաւառական բոլոր գլխաւոր քաղաքներու մէջ Հայերը, որոնք իբր վաճառական եւ արհեստաւոր այնքան համբաւուած էին, ունեցած են դրամին ուժով ազդեցութեան եւ դիրքի տիրացած անձեր, որոնք նշանաւոր ծառայութիւններ մատուցած են իրենց ազգակիցներուն, յաճախ*

կեղեքուածներու եւ հարստահարուածներու միակ զէնքը եղող վարպետութիւններու դիմելով:

Ինքնապաշտպանութեան բնազդը շատ բնական է եւ երբ ոյժը չի բաւեր ինքզինքն պաշտպանելու, հոն նենգութիւնը ինքնին կը ծնի: Հայերը ընդհանուր կանոնէն բացառութիւն չէին կրնար կազմել:

Հետեւաբար զարմանալի չէ որ Հայերը նիւթապաշտ եղած են եւ դրամի տիրանալու ցանկացողներ, որպէսզի կաշառքը միջոց գործածեն իրենց փրկութեան համար:

Անոնք քծինքներ եւ շողոքորթութիւններ ալ ըրած են, վասնզի ուրիշ միջոց չունէին, այդ արհաւրալից մթնոլորտին մէջ իրենց կաշին փրկելու եւ իրենց գոյութիւնը տեւականացնելու համար:

Եւ պէտք է ըսել թէ եղան անոնց մէջ այնպիսիներ, որոնք Թուրքը քամեցին եւ այդ «անիրաւ մամոնայէն» բաժին հանեցին իրենց ազգին, իսկ երկիրին ծառայած են անուղղակի կերպով, վասնզի իբր իրաւազուրկ բայա պետական պաշտօնատար չէին կրնար ըլլալ եւ ծառայել պետութեան, բայց արգելք չկար որ իբր բարեկամ եւ խորհրդական կուսակալներու եւ վէզիրներու, անոնց խորհուրդներ եւ թելադրութիւններ չընէին:

Եւ այս ձեւով անոնք եղած են երբեմն շատ օգտակար եւ նոյնիսկ անկարելին ըրած են: Անոնց օրինակները շատ են:

Գտնուած են Հայեր, որոնք ոչ միայն դրամով, այլեւ նրբութեամբ եւ այլ միջոցներով ազդեցութիւն ձեռք բերած են եւ ինքզինքնին պատկառելի ընծայած են, ինչպէս օրինակի համար Թոմարզայի Ս. Աստուածածին վանքին վանահայր Բարսեղ վրդ. Թորոսեանը, որ Տաւրոսեան անցքերու մէջ որջացած Աւշարներուն վրայ այնքան մեծ հեղինակութիւն ձեռք բերած էր որ Թուրք կառավարութիւնն իսկ անոր կը դիմէր յաճախ խօսք հասկցնելու համար անոնց, ինչպէս կը պատմէ Մոլթքէ 1838-ին իր ստացած փորձառութեամբ (տես ԱԶԱՏ ՄԻՏՔ, Թ. 26 եւ ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ, էջ 653):

Այսպէս Հայերը եւ Թուրքերը իբրեւ բնակակից ժողովուրդներ՝ կ՚ապրէին միասին, իբր տիրապետեալ եւ տիրապետող: Հայը համակերպած էր իր վիճակին, վասնզի ոչ մէկ յոյս կամ նեցուկ ունէր իրեն համար, իսկ Թուրքը սանձարձակ կը գործէր, վասնզի ոչ ոք իր ձեռքը կը բռնէր արգիլելու համար որ իր ուզածը չընէ:

Հայերը երկար ատեն տոկացին այս բարբարոս միջավայրին մէջ, իրենց կաշին փրկելու մտատանջութիւնը միայն ունենալով:

Թուրքերն ալ երկար ատեն ազատօրէն չահագործեցին իրենց տիրապետողի դիրքը եւ ամէն տեսակ կեղեքում եւ հարստահարութիւն գործադրեցին, ինչպէս բոլոր քրիստոնեաներու, նոյնպէս նաեւ Հայերու դէմ, սա ապահովութեամբ որ Հայերէն երկիւղ չկար:

Իրականութեան մէջ Թուրքը մասնաւոր քաղաքականութիւն մը չունէր Հայերու նկատմամբ մինչեւ 1860—1880 թուականները, հակառակ անոր որ երբեմն միջադէպեր պատահած էին եւ Հայերը զրպարտող քսութիւններ

կատարուած էին, սակայն միշտ կարելի եղած էր անդորրացնել պետութիւնը անոր կասկածները փարատելով, եւ երբ Հայերու կողմէ ընդվզումի դէպ-քեր կամ դժգոհութեան ցոյցեր կատարուած են (ինչպէս Զէյթունի մէջ) իբր տեղական պատահական մասնաւոր դէպքեր, որոնք ընդհանուր բնոյթ չունէին, բոլոր ազգը կասկածելի չէր դարձած:

Արդարեւ Հայերը գրեթէ բնաւ ըմբոստութիւն ցոյց չէին տուած:

Մալաթիոյ մէջ ալ նոյն էր կացութիւնը, եւ Հայերը հալա–եօլա կ'եր-թային Թուրքերուն հետ, եւ համակերպած էին իրենց վիճակին: Եւ միշտ լաւագոյնին յոյսերով եւ ապագային ակնկալութեամբ կ'ապրէին, քանի որ կը տեսնէին հետզհետէ եւրոպական ազդեցութեան թափանցումը Թուրքիոյ մէջ, ինչ որ կը քաջալերէր զիրենք սպասելու բարւոքում պետութեան մէջ, եւրոպական պետական կարգաւորումներու ներմուծմամբ:

Կատարուած բարեշրջութիւնները եւ փոփոխութիւնները որքան որ աննշան էին, սակայն բաւական տեսանելի էին եւ հանդամանք ունէին ազ-դելու Թուրքերու վրայ, որ կամաց-կամաց կ'ընտելանար անոնց եւ կ'ենթար-կուէր հոգեբանական փոփոխութեան մը:

Ասոնք բարեշրջման քայլեր էին, որոնք դժբախտաբար իրենց բնական ընթացքով չկրցան շարունակուիլ եւ շրջեցան իրենց ուղիէն:

Եւրոպական դիւանագիտութիւնը Թրքական գայլը ընկճելէ եւ տկա-րացնելէ ետք զանոնց դայն սպաննելու անոր մորթը բաժնելու ձեռնարկներ բրած է, որոնք Օսմանեան պետութեան ոչ-իսլամ հպատակ ազգերու վիճա-կին վրայ ամենամեծ ազդեցութիւնը ունեցած են: Արդարեւ քանի որ վար-չական, զինուորական, նաւային, կրթական, տնտեսական եւ հանրօգուտ ամէն ձեռնարկ ուղղակի կամ անուղղակի կապ ունեցած է Օսմանեան պե-տութեան արտաքին յարաբերութիւններու հետ, հպատակ ազգերը մեծապէս շահագրգռուած են Օսմանեան պետութեան Եւրոպայի հետ մշակած յարա-բերութիւններով, որոնցմէ մասամբ կախում ունէին իրենց գոյութիւնը եւ վիճակին փոփոխութիւնները:

Հպատակ ժողովուրդները գիտէին թէ մեծ մասը այն առանձնաշնոր-հումներուն, որոնք դէթ մասնակի բարւոքում մը կը համարէին իրենց վի-ճակին, արդիւնքն էին այդ ազդեցութեան: Եւքը նոյնպէս այդ ազդեցու-թեան շնորհիւ կանոնաւորուեցան եւ պետական օրէնքներու կարգը անցան այդ ձեւք բերուած իրաւունքները՝ 1862-ին Յունաց Պատրիարքարանի կա-նոնագրութեամբ եւ 1863-ին Հայոց Ազգին սահմանադրութեամբ:

Որչափ ատեն որ Օսմանեան պետութիւնը իր բացարձակ եւ անպար-տելի զօրութեան մէջ էր, ոչ մէկ եւրոպական պետութիւն փորձած էր մի-ջամտել անոր ներքին գործերուն եւ գրեթէ մինչեւ 1839 չկար օրէնք մը, որուն հանդէպ հաւասար ըլլային իսլամը եւ բայաճ:

Նոյնպէս որչափ ատեն որ Թուրքիա զօրաւոր էր, ոչ մէկ պետութիւն համարձակեցաւ նոյնիսկ պաշտպանութիւն ընծայել Օսմանեան պետութեան բաղկացուցիչ տարրերէն մէկուն, սակայն Վիեննայի առջեւ Թուրքերու պար-

ութենէն (1683) ետք, կացութիւնը փոխուեցաւ:

Օսմանեան կայսրութեան հողերը ժառանգելու մրցակից եղան Աւստրիա՝ Դանուբը անցնելով եւ Ռուսիա Բիւզանդիոնի ճամբուն հետամտելով եւ 1700—1770 երեք քառորդ դարու շրջանին այս երկու պետութիւնները առաջացան դէպի պետութեան սիրտը (տես 1910, ԸՆԴԱՐՁԱԿ ՕՐԱՑՈՅՑ Ս. ՓՐԿՉԵԱՆ ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻ, էջ 265—268) եւ իրենց յաղթանակներով ձեռք բերին մասնաւորապէս զանազան տարրերու պաշտպանութիւնը կամ կաթոլիկ և օրթոտոքս կրօնքները հովանաւորելու իրաւունքը: Այս կերպով ոչ միայն միջամտեցին Օսմանեան պետութեան ներքին գործերուն, այլեւ անկէ բաժնեցին Մոլտա-Վալաքիան, Յունաստանը եւ Եգիպտոսը (տես նոյն, էջ 269—273) եւ հարկադրեցին նոյնպէս Բ. Դուռը որ իր երկիրը կարգաւորէ եւ բարուոքէ բարեկարգութիւններով, որոնք անկեղծօրէն չգործադրեցին Թուրքերը:

Անուրանալի իրողութիւն է որ 1830-էն ետք, Թուրքիոյ նկատմամբ մասնաւորապէս Անգլ. եւ Ֆրանս. դիւանագիտութիւնը ընդգրկած էր ուղղութիւն մը, որ կը միտէր կարծես Թուրքիան զօրացնել եւ ատակ դարձնել ռուսական ծրագիրներու արգելք ըլլալու:

Ասոր համար Անգլիա եւ Ֆրանսա կը փափաքէին որ Թուրքիոյ մէջ հաստատուէր բարեկարգ վարչութիւն մը, եւ Թուրքիա ըլլար զօրաւոր:

Եւրոպական դիւանագիտութիւնը որոշ գիտէր թէ որչափ ատեն որ կարելի չըլլար երկրին մէջ մտցնել բարենորոգումներ, որոնք վերջ տային ոչ-իսլամներու կեղեքումին, միշտ անոնք օտար պետութեանց գործիք ըլլալու տրամադիր տարր մը պիտի ներկայացնէին. հետեւաբար թելադրեց Բ. Դուռին դժգոհութիւնները բառնալ եւ հաստատել արդարութեան եւ հաւասարութեան սկզբանց վրայ հիմնուած պետութիւն մը:

Այս թելադրութիւններուն արգասիքը եղաւ 1839-ին ԹԱՆԶԻՄԱԹին հռչակումը, որ Օսմանեան պետութեան վերջին աստիճան նեղ դրութեան մատնուած մէկ պահուն կը հրատարակուէր, շահելու համար Եւրոպական պետութեանց, մանաւանդ Անգլիոյ բարեկամութիւնը:

Արդարեւ ԹԱՆԶԻՄԱԹի հրատարակութիւնը փրկեց Թուրքիան Եգիպտական նուաճումէն, վասնզի 1839 Մայիս 11-ին Մեհմէտ Ալի երկրորդ անգամ պատերազմ յայտարարած էր դերիշխան վեհապետին դէմ, եւ յաջողած պարտութեան մատնել Օսմանեան բանակը Նիզիպի մէջ (1839 Յունիս 17) եւ իր դիրքը զօրացնել մասնաւորապէս Օսմանեան նաւատորմիղին Գաբուտան փաշային դաւաճանութեամբ անոր 4 Յուլիս 1839-ին իր կողմը անցնելու հետեւանօք:

ԹԱՆԶԻՄԱԹի հրատարակութեան անմիջական հետեւանքն էր որ Անգլիա նախաձեռնարկ եղաւ Լոնտոնի համաձայնութեամբ (1840 Յուլիս 15), Աւստրիոյ, Ռուսիոյ եւ Բրուսիոյ բարեացակամ չէզոքութիւնը ապահովելու և ի հեճուկս Ֆրանսայի իր նաւատորմիղը շարժման մէջ դնելու ընդդէմ Մեհմէտ Ալիի եւ զայն վանելու Փոքր Ասիայէն եւ Սուրիայէն եւ անոր իշխանու-

թիւնը սահմանափակելու Եգիպտոսի մէջ (1840 Նոյեմբերի դաշինք):

ԹԱՆԶԻՄԱԹը նաեւ կը յուսադրէր Օսմանեան պետութեան բոլոր ոչ-իսլամ հպատակները, ընդ որս նաեւ Հայերը, որոնք շատ բնական է որ սպասողական դիրք բռնեցին կամ թուլցան, յուսալով որ հռչակուած բարենորոգումները անկեղծօրէն պիտի գործադրուէին եւ իրենք իրենց ակնկալած հանդստութիւնը պիտի վայելեն Թուրքիոյ մէջ:

Այս լաւատես ենթադրութիւնը սակայն իրականութիւն չգտաւ եւ շատ քիչ բան փոխուեցաւ թրքական դժոխքին մէջ, եւ նոյնիսկ ԹԱՆԶԻՄԱԹը իսլամական իրաւանց դէմ նկատուելով թուրք զանգուածներու մէջ, հակազդեցութիւն առաջ եկաւ և տեղ-տեղ նոյնիսկ աւելի վատթարացաւ քրիստոնեաներու կացութիւնը եւ առիթ ստեղծուեցաւ եւրոպական միջամտութեանց:

Այս միջամտութիւնները իրենց կարգին խորունկ ազդեցութիւն ունեցան թէ՛ Թուրք պետութեան հանդէպ իր հպատակներուն ընդգրկած քաղաքականութեան եւ թէ՛ հպատակ ժողովուրդներու ընթացքին եւ ուղղութեան վրայ, անոնց ազատագրութեան յոյսեր ներշնչելով:

Եւ այսպէս՝

Ա. Թուրքերը իրենց առաջադրած օսմանեան ընդարձակ կայսրութեան ամբողջութիւնը պահելու.

Բ. Եւրոպական պետութիւնները՝ բարեկարգեալ Թուրքիա մը կերտելով ռուսական յառաջխաղացութիւնը կասեցնելու.

Գ. Թուրքիոյ բաղկացուցիչ տարրերը իրենց ազատութիւնը եւ անկախութիւնը ստանալու ջանքերուն մէջ չյաջողեցան եւ Արեւելքի կացութիւնը աւելի վրդովեցին եւ կնճռոտեցին:

Գործադրուած բոլոր ջանքերը անօգուտ եղան եւ դժբախտութիւններ իրարու յաջորդեցին, ինչպէս 1854–1856 Խրիմի, 1876–1877 Ռուս եւ Թուրք եւ 1912 Պալքանեան պատերազմները, Արեւելեան հարցին լուծման չնպաստեցին դժբախտաբար, եւ հետեւաբար Հայոց չապահովեցին հանդիստ, խաղաղութիւն եւ կեանքի, ստացուածքի եւ պատիւի ապահովութիւնը:

Եւ քրիստոնեաները, եւ նոյնիսկ տիրապետուած իսլամները — ինչպէս Արաբները եւ Քիւրտերը — ընդհանուր կերպով դժգոհ էին Օսմանեան պետութենէն եւ իրենց դժգոհութիւնը զանազան ձեւով կ'արտայայտէին:

## Բ.

## ՀԱՅ ԵՒ ԹՈՒՐՔ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԵԱՆՑ ՎԱՏԹԱՐԱՑՈՒՄԸ

Մինչեւ ԺԹ. դարուն առաջին կէսը Հայ եւ Թուրք յարաբերութիւններու մէջ նշանակելի էր որ գոնէ Թուրքերը անկասկած էին Հայոց հաւատարմութեան մասին: Եթէ Թուրքերը այս համոզումը չունենային Հայերու վե-

ծակը կրկնապատիկ դառն պիտի ըլլար :

Այս հաւատքը որ Թուրքերը ունէին Հայերու մասին դժբախտաբար տեւականօրէն չշարունակուեցաւ եւ Հայ եւ Թուրք յարաբերութիւններուն եկաւ կասկածի թոյնը խառնուիլ :

Այդ կասկածը առաջին անգամ Թուրքերը ունեցան 1828–ին, այն տարին որ Ռուսերը Թուրքիոյ դէմ պատերազմ հրատարակելէ ետք Հայաստան կը մտնէին, ինչ որ Հայերու յոյսեր կը ներշնչէր :

Կարգ մը նախընթաց եղելութիւններ, իրական կամ երեւութական, Թուրքերու կասկածները կ'արդարացնէին · յայտնի էր որ Հայերը օգնած էին 1827–ի Ռուս եւ Պարսիկ պատերազմին մէջ՝ Ռուսերուն կամաւորներ տալով եւ պատերազմէն ետքը ստուար թիւով գաղթելով ռուսական հողեր, նոյնիսկ ռուս պետութեան հրաւէրով :

Հայերու այս քայլերը, որոնք շատ յայտնի չէր որ ինքնաբերաբար թէ հարկադրանքի տակ առնուած էին, բաւական էին որ Օսմանեան կառավարութեան վարիչները կասկածներ ունենային թէ նոյն ընթացքը պիտի ունենային նաեւ Օսմանեան պետութեան մէջ գտնուող Հայերը :

Ասոր վրայ աւելցուցէք այն սոսկալի քսութիւնը, որ Հայ-Կաթոլիկներ վրէժ լուծելու համար հայադաւան կղերին գործադրած հալածանքներուն դէմ, Հայերը ցոյց տուած էին իբր անջատողական ծրագիրներ ունեցող եւ Պոլսոյ Պատրիարքը եւ ամիրաներն ու մեծամեծները մեծ դժուարութեամբ կրցած էին աղէտի մը առաջքը առնել եւ հանդարտեցնել Թուրք կառավարութեան վարիչներուն միտքերը, հակառակ անոր որ իրողութիւններ կային, որ ցոյց կու տային թէ Թրքական Հայաստանի հայ բնակչութեան մէջ ալ ռուս բանակներուն օգնող եւ անոնց լրտեսութիւններ ընող Հայեր գտնուած էին :

Այսպէս, 1828–էն ետք ստեղծուեցաւ կացութիւն մը կամ աւելի ճիշդ մթնոլորտ մը, ուր Հայերը տեսան ԻՐՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ եւ ԿԱՐԵԼԻՈՒԹԻՒՆՆԵՐ, որոնք չէին կրնար անտեսել եւ զանց խորհրդածութեան եւ մտածումի առարկայ չընել :

Անոնք տեսան թէ Ռուսիա, Պարսիկ եւ Թուրք պետութիւններու քրիստոնեայ հպատակները ազատագրելու համար պատերազմ բացաւ այդ երկու իսլամ պետութեանց դէմ եւ ազատագրեց Պարսկական Հայաստանը եւ Յունաստանը :

Ասիկա իրողութիւնն էր :

Նոյնպէս Ռուսիա խոստացած էր Պարսկական Հայաստանէն կազմել ինքնավար Հայկական Նահանգ մը, ինչ որ սակայն չգործադրեց, սակայն կրնար ընել :

Այս ալ ԿԱՐԵԼԻՈՒԹԻՒՆ էր :

Հայերը կը տեսնէին նաեւ ուրիշ իրողութիւններ, որոնք զիրենք անտարբեր չէին կրնար թողուլ : Անոնք կը տեսնէին եւրոպական պետութեանց զերակշիռ ազդեցութիւնը Թուրքիոյ գործերուն մէջ եւ անոնց գործադրած

միջամտութիւնները Օսմանեան կայսրութեան նոյնիսկ ներքին գործերուն մէջ: Անոնք տեսան թէ ինչպէս երեք մեծ պետութիւններ — Ռուսիա, Անգլիա եւ Ֆրանսա — բարեկամական թելադրութիւններէն ետք, երբ անլսելի մնացին, զէնքով հարկադրեցին իրենց կամքը եւ Թուրքիոյ դէմ պատերազմ հռչակեցին եւ զայն հարկադրեցին Էտիրնէի դաշինքով (1829 Սեպտ. 2—14) ճանչնալ Յունաստանի անկախութիւնը:

Այս իրողութիւնները թելադրական եւ կրնանք նոյնիսկ ըսել թէ քաջալերական էին Օսմանեան կայսրութեան բոլոր քրիստոնեայ հպատակներուն համար, որոնք ակամայ պիտի մտածէին որ եթէ իրենք ալ ապստամբելու ըլլային հաւանօրէն ոյժ կամ աջակցութիւն պիտի գտնէին քրիստոնեայ մեծ պետութիւններէն, ինչպէս գտած էին Յոյները:

Հետեւաբար կարելի էր որ այսպէս մտածողներ գտնուած ըլլան Հայոց մէջ:

Բայց նոյնիսկ այսպիսի մտածումի մը արձագանգը մեզի հասած չէ կամ ոեւէ յայտնի կամ թաքուն ձեռնարկի մը մասին գաղափար չունինք, թէեւ անխուսափելի կը համարենք այսպիսի տրամադրութեան մը գոնէ քիչերու մտքին մէջ ծնունդ առնելը, որ սակայն չեմ կարծեր որ մարմին առած ըլլայ, զանազան էական եւ նշանակելի պատճառներով, որոնց գլխաւորը Հայոց կրած յուսախաբութիւնն էր Ռուսիայէն:

Ռուսիա չյարգեց «Հայկական Նահանգ»ի մը կազմութեան համար Ներսէս Աշտարակեցի եպիսկոպոսին տուած իր խոստումը եւ նոյնիսկ զայն աքսորեց Պեսարապիա, Կովկասէն հեռու:

Ռուսիա ո՛չ միայն չյարգեց իր յանձառութիւնը, այլեւ ըրաւ բան մը, որ Հայոց դիւրազգածութիւնը եւ ամենէն փափուկ զգացումները վիրաւորելու հանգամանք ունէր: Ան կազմեց 1836-ին իբր Հայոց եկեղեցւոյ կանոնադրութիւն օրէնք մը, որ Հայ եկեղեցւոյ աւանդութիւններու հետ հաշտ չէր:

Այս երկու արարքները շատ գէշ անդրադարձութիւն մը ունեցան Թուրքիոյ Հայոց վրայ, որոնք Ռուսիոյ յառաջխաղացութեան մէջ հայ ազգութեան եւ կրօնին համար վտանգ մը նշմարել սկսան եւ բաղձալի չհամարեցին ռուսական պաշտպանութիւնը եւ մէկ խօսքով պաղեցան Ռուսիայէն:

Մանաւորապէս Ռուսիայէն յուսահատելու մեծ պատճառ մը եւս ունեցան Հայերը այդ թուականներուն տեսնելով Ռուսիան պաշտպան Թուրքիոյ, հակառակ աւանդական քաղաքականութեան:

Արդարեւ ճգնաժամի մը, որ նոյնիսկ Օսմանեան կայսրութեան գոյութեան կը սպառնար, վասնզի Եգիպտոսի կուսակալը Մեհմէտ Ալի փաշա մինչեւ Պրուսա առաջացած էր իր բանակներով եւ կը սպառնար մայրաքաղաքին, Ռուսիա ձեռք երկարած էր Թուրքիոյ, 1833 Փետրուար 7-ին Վոսփորի բերանը Պէյքոզ, Եուշա լերան վրայ բանակել տալով 10,000 ռուս զօրք, պաշտպանելու համար Օսմանցի Սուլթանին կեանքը եւ գահը:

Հինգ ամիս ետքը 1830 Յուլիս 8-ին Ռուսիա Թուրքիոյ հետ կը կնքէր Հիւնքեար Իսկէլէսիի պաշտպանողական եւ յարձակողական զինակցու-

թիւնը, որով Ռուսիա կերպով մը կ՚ազդարարէր Եգիպտոսի փոխարքային եւ անոր ետին կանգնող ոյժերուն թէ թոյլ պիտի չտար որ անիկա աւելի առաջ երթար։

Մեհմէտ Ալի փաշա կը հարկադրուէր չորս օր յետոյ (1833 Յուլիս 12) կնքելու Քէօթահիայի դաշինքը եւ գոհանալու քիչով, մինչ եթէ ռուսական պաշտպանութիւնը չըլլար, թերեւս Արեւելեան խնդիրը այն ատեն այլապէս լուծում մը գտած պիտի ըլլար։

Այսպէս, 1820—1840 քառասնամեակը, Հելլենական ապստամբութենէն մինչեւ Թանզիմաթի հրատարակութիւնը նշանակելի շրջան մը հանդիսացաւ, ուր Թուրքիոյ բոլոր բաղկացուցիչ ազգերու մտայնութեան մէջ յեղաշրջում մը կը մտնէր եւ ամենէն զգուշաւոր եւ ամենէն տկար եւ այս պատճառով վախկոտ ազգերը — ինչպէս էին Հայերը — խլրտելու տրամադրութիւն ցոյց կու տային եւ կը համարձակէին իրենց դժգոհութիւնները արտայայտել։

Կարնոյ, Պայազիտի, Ալաշկերտի եւ այլ քաղաքներու Հայերուն Ռուսերուն ընծայած օգնութիւնները արդիւնքն էին այս դժգոհութիւններուն, որ անոնք ունէին հանդէպ Թրքական լուծին։

Մալաթիոյ Հայերը, որոնք հեռու էին ռուսական սահմանէն, ինչպէս նաեւ Եգէականի եւ Միջերկրականի ծովեզերքներէն, հեռու մնացին 1828-ի պատերազմէն եւ անհաղորդ։

Գալով Եգիպտական պատերազմին՝ Մալաթիոյ ժողովուրդը շատ աղխուր վիճակի մը մէջ էր այս պատերազմին իսկ հետեւանքով, վասնզի իր տունը եւ տեղը կորսնցուցած էր, եւ ինչպէս բացատրուած է վերը, բռնագուրկ եղած էր իր քաղաքի բնակարաններէն տեղափոխուելով իր ամառանոցի անհաստատ ու թեթեւ կառուցուածքով տուները եւ հոն նոր քաղաք մը կերտած՝ տաժանքով (1833—1839)։ Այս պայմաններուն մէջ բացարձակ անկարելի էր որեւէ շարժում կամ նոյնիսկ պզտիկ դժգոհանք մը արտայայտել, մանաւանդ որ Սուլթան Մահմուտ Բ. Ատիլ Սուլթանը կարծես թէ սկսած էր կորովի քայլեր առնել վերանորոգելու համար իր պետութիւնը։ Բարեկարգիչ Սուլթանը անսալով Մոլթքէի խորհուրդներուն՝ որոշած էր Օսմանեան պետութեան սահմաններուն մէջ գտնուող աննուաճ հողերը, որոնցմէ մէկը Տաւրոս լեռներու ձորամէջերը եւ կատարներն էին իրենց Թուրքմէններով եւ Աֆշարներով, եւ մէկ ուրիշը՝ Տերսիմն էր իր քիւրտ ձորապետներով, նուաճել, ինչպէս նաեւ հնազանդեցնել Հայաստանի եւ հիւսիսային Միջագետքի մէջ գտնուող բազմաթիւ կէս-անկախ իշխանութիւնները, որոնք հեռու էին Մալաթիայէն, մինչ Տաւրոս եւ Տերսիմ՝ շատ մօտ։ Այս վերջիններու մէջ որջացած Թիւրքմէններու, Աֆշարներու, Քիւրտերու դէմ, Ենիչէրիներու բնաջնջումէն ետք ձեռնարկուած զինուորական գործողութիւններու համար իբր բանակատեղի ընտրուած էին Մալաթիան եւ Մեզիրէն, որոնց բնակիչները կը տեսնէին թէ ո՜րքան սաստկութեամբ կը հալածուէին ըմբոստ տարրերը զինուորական գործողութիւններով եւ սահմռկած եւ սարսափահար վիճակ մը ունէին։

*Հետեւաբար Մալաթիոյ Հայերը ոեւէ ծուռ մէկնութեան տեղի չտալու համար հանդարտ մնացած են եւ ոեւէ յայտնի շարժում կամ դժգոհութեան արտայայտութիւն ցոյց չեն տուած, ինքզինքնին չվտանգելու համար։*

*Թերեւս խղձեր կը տածէին, բայց անոնք մնացած են անյայտ։*

*Միայն երբ Թուրքիա արեւմտեան պետութեանց ապաւինեցաւ եւ անոնց պաշտպանութեան դիմեց ընդդէմ Ռուսիոյ, եւ Եւրոպա՝ Թուրքիան զօրացնելով Ռուսիոյ դէմ թումբ մը կանգնելու փորձեր ըրաւ, կարգ մը մեղմացումներ եւ բարենորոգումներ տեսնուեցան, Հայեր յոյսեր տածել սկսան վերանորոգուած Թուրքիոյ մէջ հանգիստ ապրելու։ Այս յոյսը բնական է Մալաթիոյ Հայերն ալ ունեցած են։*

*Մասնաւորապէս Թուրքիոյ բոլոր քրիստոնեաները ոգեւորուեցան երբ* 1854–1855*-ին Ռուսիա Թուրքիոյ դէմ պատերազմ հռչակեց օրթոտոքս քրիստոնեաներու պաշտպանութեան համար։ Անգլիա, Ֆրանսա եւ Սարտենիա անկա պատրուակ նկատելով Թուրքիայէն հողեր կորզելու՝ զայն պաշտպանեցին եւ անոր զինակցեցան, եւ Ռուսիան պարտութեան մատնելով Սեւաստոպոլի մէջ յաջողեցան ձախողութեան մատնել ռուսական նախաձեռնութիւնը Արեւելքի քրիստոնեաները թրքական լուծէն փրկելու համար։*

*Սակայն նկատելով որ Թուրքիոյ քրիստոնեայ հպատակներու անբաղձալի վիճակը միշտ կրնար առիթ ընծայել նոր միջամտութիւններու եւ նոր պատերազմներու, որոնք կրնային յանգիլ Թուրքիոյ անկացման, միջամտութեան առիթը վերցնելու համար, Թուրքիոյ թելադրեցին (իմա պահանջեցին) ինքնաբերաբար յանձնառութիւն մը ստանձնել բարենորոգութիւններ կատարելու։*

*Այս նպատակով է որ Սուլթան Մէճիտ* 6/18 *Փետր.* 1856*-ին հրատարակեց ԻՍԼԱՀԱԹԻ հրովարտակը, որ յիշատակուեցաւ Փարիզի դաշնագրին մէջ* (18/30 *Մարտ* 1856)*։*

*Այս հրովարտակով ԹԱՆԶԻՄԱԹՈՎ եղած խոստումները կը վերանորոգուէին եւ Թուրքիա իր ընդհանուր բարեկարգութեան հարցը ի նպաստ իրեն կը շահագործէր, Փարիզի Վեհաժողովին մէջ մասնաւոր ազգի մը կամ տեղւոյ մը բարեկարգութեան խնդիրը յուզել չտալով։*

*Այս դիւանագիտական խաղը Բ. Դուռը ուրիշ անգամներ ալ խաղաց, ամէն անգամ որ ազգի մը կամ տեղւոյ մը խլրտումին պատճառով եւրոպական միջամտութեան խրտուիլակը ցցուեցաւ իրեն դէմ։*

*Թուրքիա բնաւ անկեղծօրէն չէ ուզած բարենորոգումներ գործադրել ընդհանուր կամ մասնաւոր եւ ասոր համար դժգոհութիւններ եւ ըմբոստութիւններ պակաս չեն եղած։*

*Այնպէս որ* 1856*էն մինչեւ* 1877–1878*ի ռուսական պատերազմ,* 20 *տարուան միջոցին արտաքին միջամտութիւններով կամ ճնշման տակ* 1860*ին Լիբանան ինքնավարութիւն ստացաւ,* 1862*ի եւ* 1867*ի Զէյթունի ըմբոստութիւնները պատահեցան,* 1867*ին Պոսնա եւ* 1866–1868*ին Կրետէ ապստամբեցան եւ Եւրոպա դարձեալ միջամտեց, առանց կտրուկ դարման մը խորհելու*

*վկճելով սկզբունքներու վրայ* (1) *եւ այսպէս ժամանակ տալու Թուրքիոյ որ խոստումներով օրօրէ թէ՛ Եւրոպան եւ թէ հպատակ ազգերը, որոնք տեսնելով ոչինչ կատարուիլը իրր բարենորոգում, խռովութիւններ հանեցին, ապստամբեցան եւ երկիրին խաղաղութիւնը խանգարեցին:*

*Այս կացութիւնը թելադրական էր նաեւ Հայոց համար, որ սկսան անջատողական հակումներ ցոյց տալ կամ իրենք ալ ընդհանուր հոսանքին խառնուիլ:*

*Բաւական խնդրական է թէ հասունութեան մը հետեւա՞նք էր եւ ժողովրդական ինքնաբուխ արտայայտութի՞ւն էր, թէ արտաքին թելադրութիւններու արդիւնքն էին մի քանի տկար ձեռնարկները, որոնք Հայերն ալ կատարած են այդ քաղաքներին մէջ:*

*Առաջինն էր անոնց 1861ին Միքայէլ Նալպանդեանի թելադրութեամբ եւ ՄԵՂՈՒԻ խմբագիր Յարութիւն Սվաճեանի գլխաւորութեամբ կազմուած յեղափոխական գաղտնի մարմինը, որ 1862ի Զէյթունի ապստամբութեան մէջ մասնակցութիւն ունէր:*

*Երկրորդն էր 1872ին Վասպուրականի մէջ կազմուած* «ՕԳՆՈՒԹԻՒՆ ԵՒ ՓՐԿՈՒԹԻՒՆ» *անունով գաղտնի ընկերութիւնը, որ կը ձեռնարկէր պատրաստութիւններու, որոնք շատ սահմանափակ էին եւ արդիւնք մը տալէ շատ հեռու:*

*Ուրիշ յեղափոխական մարմին մը ըլլալ կը թուի Կ. Պոլսոյ մէջ 1873ին հիմնուած ՎԱՐԱԶԴԱՏԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆը Մկրտիչ Փորթուգալեանի նախաձեռնութեամբ եւ իր ատենապետութեամբ (տես* Պատմութիւն Եղեռնի Հայոց, էջ 1087) :

*Այդ չի օրերուն երբ Պալքաններու մէջ սկսած էին յուզումները եւ ազգերու միջման եւ գոյութեան զօտեմարտը այնքան սաստիկ էր, Փորթուգալեան նախաձեռնարկ կ՚ըլլայ կազմակերպութիւն մը ստեղծելու բոտ երեւոյթին ծառայելու Լսարան–ընթերցարաններ հիմնելու համար: Իսկական ծայրայեղ յեղափոխական մը՝ Յարութիւն Շահրիկեան կ՚ըսէ թէ* «Պոլսում տեսել էի լսարան–ընթերցարաններ, բայց «Վարազդատեան»ը պոլսականներին չնմանեցաւ, մի շարք գաւառներ արձագանգ տուին, ամէնուրեք վարազդատեաններին ցանցը պատեց ու դարձաւ մի կազմակերպութիւն՝ իւրաքանչիւրը իւր տեղական ինքնավարութեամբ» (ՔԱՌԱՍՈՒՆ ՏԱՐՈՒԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ, էջ 53) :

*Այս կազմակերպութեան թերեւս անպաշտօն բերանն էր ԱՍԻԱ թերթը արմատական ուղղութեամբ, եւ ջերմ խրիմեանական, որ կը հրատարակէր Փորթուգալեան: Ներսէս Պատրիարք Կրօնական Ժողովի պահանջով խափա–*

---

(1) *Ֆրանսա ընդհանուր բարեկարգութեան պաշտպան դարձած է, մինչ Ռուսիան Կ. Պոլսոյ ռուս դեսպան Կորչաքովի բանաձեւին համաձայն* Autonomie ou Anatomie-ն *(ինքնավարութիւն կամ անդամահատութիւն) իբր սկզբունք ընդունելով կը ձգտէր անդամահատել Թուրքիան:*

նել կու տայ Թուրք պետութեան՝ այս թերթը եւ Փորթուգալեան կը ստիպուի կրկին ուսուցչութիւն ընել եւ աշխատակցիլ մասնաւորապէս իրեն պէս յանդուգն ծրագիրով Կարապետ Փանոսեանի թերթին՝ ՄԱՆԶՈՒՄԷԻ, ուր մասնաւորապէս կը պաշտպանէ սա տեսութիւնը թէ «փոխանակ Հայաստանցին Պոլիս գալու, Կ. Պոլսեցին Հայաստան երթալով, այդ երկիրը զարգացնելու է»:

Գրիգոր Արծրունի այս գործնական գաղափարով եւ անոր հեղինակով կը շահագրգռուի եւ երբ Կ. Պոլսոյ Հայերու մէջ եռանդուն ջանքեր կը կատարուին գաւառներու լուսաւորութեան համար եւ կը կազմուին Արարատեան, Դպրոցասիրաց, Արեւելեան, Կիլիկեան, Ազգանուէր Հայուհեաց եւ Դպրոցասէր Տիկնանց ընկերութիւնները, իր ՄՇԱԿով ոյժ կու տայ անոնց:

Փորթուգալեան որ ԱՐԱՐԱՏԵԱՆին մէջ գործօն դեր ունէր, 15 Ապրիլ 1876ին անոր հիմնուելէն հազիւ երկու ամիս ետքը Յունիս 1876-ին կ'երթայ Կովկաս եւ Արծրունիի հետ խորհրդակցութիւններ կատարելէ վերջ կը դառնայ Պոլիս, ուր ՄՇԱԿի խմբագրին թելադրութիւնները կը ներկայացնէ:

Վանը եւ շրջակայքը կեդրոն կ'ընտրուին եւ կը փնտռուի մէկը որ Վան երթայ յանձն առնէ գործը ուսումնասիրելու համար:

Այդ անձը կ'ըլլայ Փորթուգալեան, որ 1876 Օգոստոսի կէսին կը մեկնի դէպի Վան, Սամսոն-Ամասիա-Եւդոկիա-Սեբաստիա-Խարբերդ-Տիարպէքիր ուղեգիծով չորս ու կէս ամիսէն կը հասնի հոն:

Հաւանօրէն այս անսովոր ուղեգիծով դանդաղ ճամբորդութեան նպատակն էր, Վարժապետեան ընկերութեան մասնաճիւղերուն այցելել, թէեւ դրական փաստ մը չկայ: Եւ որովհետեւ Մալաթիա չէ այցելած, ուրեմն հոն մասնաճիւղ չկար:

Փորթուգալեան, Վասպուրականի մէջ իր կրթական գործունէութեան հետ կը կատարէ յեղափոխական քարոզիչի դեր եւ պէտք է ցաւով նշանակել թէ շատ անխոհեմ քայլեր կ'առնէ, որոնք իր անձին հետ ազգն ալ վտանգելու հանգամանք ունէին (տես Պատմ. Եւդոկիոյ Հայոց, էջ 1090—1095):

Մկրտիչ Փորթուգալեան կարծես թէ բնաւ նկատի չէ ունեցած երկիրին կացութիւնը եւ Թուրք կառավարութեան իր բոլոր քրիստոնեայ հպատակներու դէմ լարուած եւ կասկածամիտ կեցուածքը, քանի որ ապստամբութիւններ բռնկած էին Եւրոպական Թուրքիոյ մէջ, որոնց պետութեան ասիական բաժնի մէջ ալ տարածուիլը Օսմանեան պետութեան քայքայման պատճառ կրնար ըլլալ: Նկատելի է որ 1854—1855ին Եւրոպա պաշտպանած էր Թուրքիան եւ 1870ական թուականներուն տակաւին յոյս ունէր որ կրնար Թուրքիան վերանորոգուելով իր շահերուն ծառայել, մինչ անիկա անկարող էր բարեկարգուելու:

Այսպէս, երբ 1875-ին Պոսնա եւ Հերսէկ ապստամբեցան, Ռուսիա, Գերմանիա եւ Աւստրօ-Հունգարիա միջամտեցին եւ տեղական եւ մասնաւոր բարենորոգումներու ծրագիր մը մշակեցին, որ Բ. Դրան չկրցան մատուցանել, վասնզի ՄԵՄՈՐԱՆՏՈՒՄը մատուցանելու նախընթաց գիշերը Թուրքերը

Սուլթան Ազիզը գահընկէց ըրին եւ դեսպանները Բ. Դրան մէջ ոչ ոք գտան յիշատագիրը տալու համար:

Սուլթան Մուրատ Ե.ի միջոց տալու համար պահ մը եւրոպական դիւանագիտութիւնը չհետապնդեց գործը:

Քանի մը ամիս վերջը Սուլթան Համիտ գահակալեց, երբ արդէն Պուլկարներն ալ ապստամբած էին եւ Կարմիր Սուլթանը իր առաջին նախճիրը գործած էր 20,000 Պուլկարներ ջարդելով:

Եւրոպական դիւանագիտութիւնը դարձեալ պարտաւորուեցաւ միջամտել:

1876 Դեկտեմբերին Կ. Պոլսոյ մէջ գումարուեցաւ դեսպանաժողով մը, որ մշակեց Պոսնայի, Հերսէկի եւ Պուլկարիոյ յատուկ բարենորոգմանց ծրագիրները, որոնք պիտի գործադրուէին եւրոպական երաշխաւորութեան եւ հակակշռին տակ:

Սուլթան Համիտ սպառնական այս կացութեան առջեւ 10–23 Դեկտեմբեր 1876ին Եպարքոս կարգեց Միտհատ փաշան եւ հետեւեալ օրը 11–24 Դեկտեմբեր 1876ին Սահմանադրութիւն հռչակեց, ճիշդ այն պահուն երբ Օսմանեան նախարարները եւ դեսպանաժողովին անդամները նիստ գումարած էին, լսելու համար լիազօրներու ծրագիրները:

Այս ընդհանուր բարենորոգման հսկայ ձեռնարկին առջեւ, որ ազգերու ազատութիւն, հաւասարութիւն, բարօրութիւն եւ երջանկութիւն կը շնորհէր, Եւրոպա դարձեալ տեղի տուաւ եւ դեսպանախորհուրդին ծրագիրը մերժեցաւ, եւ Թուրքիա ալ չփրկուեցաւ, վասնզի Ռուսիա բաւական սպասելէ ետք, Թուրքիոյ դէմ պատերազմ յայտարարեց եւ յայտնի է թէ արդիւնքը ինչ եղաւ: Թուրքիայէն բաժնուեցան Մոլտա–Վալաքիա, Սերպիա, Պուլկարիա եւայլն, Այ–Սթեֆանոյի եւ ապա անոր վերաքննութիւնը եղող Պերլինի վեհաժողովին որոշումով:

Հայ անփորձ վարիչները, տեսնելով որ պալքանեան ազգերու ազատագրութիւնը, ապստամբութեամբ եւ Ռուսիոյ միջամտութեամբ իրագործուեցաւ, առանց նկատի ունենալու Հայերու անպատրաստ վիճակը, իրենք ալ մղուեցան քաղաքական ճամարտակութիւններ կատարելու եւ անարիւն կերպով ձեռք բերելու ազգին ազատութիւնը: Ուստի ապաւինեցան ռուսական բարեացակամութեան եւ դիմեցին Այ–Սթեֆանոյի մէջ Նիքոլա Մեծ Դուքսին եւ ձեռք բերին 16րդ յօդուածը:

Անգլիական դիւանագիտութիւնը եւ Սուլթան Համիտ, որոնք կ'աշխատէին այդ դաշինքով Ռուսիոյ ձեռք բերածը սահմանափակել, թերեւս համաձայնութեամբ կամ Սուլթանը առանձին իր հնարամտութեամբ, պահանջողները շատցնելով հակառակորդներ ստեղծելու համար, մեր ազգին վարիչները — Ներսէս պատրիարք եւ իր մատի վրայ համբուրող խորհրդականները — ծուղակը ձգեց թելադրելով որ Պերլին դիմեն եւ իրենք ալ պահանջներ ներկայացնեն, այս կերպով չէզոքացնելու համար պալքանեան ազգերու եւ անոնց ազատարար Ռուսիոյ առաւելագոյն պահանջները:

Ներսէս պատրիարք եւ իր խորհրդականները դժբախտաբար մանկունակ միամտութեամբ մը դիւանագիտութեան յորձանքին մէջ ինկան եւ փոքրաձեցին ազգին վիճակը բարուոքելու եւ անգլիական նենգամտութեան զոհ եղան, ինչպէս Կիպրոսի դաշինքը որոշ կերպով ցոյց տուաւ ետքը:

Ներսէս պատրիարք, որ Սուլթան Համիտի թելադրութեամբ պատուիրակներ — Խրիմեանի, Նարպէյի, Զերազի եւ Ստեփան Փափազեանի պէս այս գործին անձեռնհաս եւ անյարմար անձեր — ղրկած էր, մերժելով Նուպար Փաշայի ինքնամատոյց յօժարութիւնը, ի վերջոյ յանդգնութիւնը ունեցաւ խրոխտաբար մերժելու իր պատուիրակները ետ կանչելու հրամանը եւ այսպէս դէմ կանգնելու Սուլթանին կամքին, անոր ատելութիւնն ալ շահելու պայմանով:

Աւելորդ է կարծեմ բացատրել թէ ինչպէս Ներսէս Պատրիարք եւ իր շուրջը գտնուող «Պոլսոյ ինքնահաւան խելացիները» — Խրիմեանի բառերով — գործիք եղան Անգլիոյ, որուն դիւանագիտական աճպարարութիւնները մեզի պարգեւ տուին Պերլինի վեհաժողովին մեռեալ տառ մնալու դատապարտուած 61րդ յօդուածը, որ մեծ հիասթափումի մը պատճառ եղաւ:

Գրիգոր Օտեան այն հազուագիւտ հայրենասէրներէն մէկն է, որ ամենէն կանուխ սթափած է եւ տեսած է սպառնացող աղէտը, ըսելով «յաջողեցանք 61րդ յօդուած մը դնել տալ Պերլինի դաշնագիրին մէջ, ԻՑԻՒ ԹԷ ՅԱՋՈՂԷԻՆՔ ՉՆՋԵԼ ԶԱՅՆ», անշուշտ ազդուելով Լորտ Տերպիի անգլիացի ծանօթ պետական մարդուն, որ ծանօթ էր անշուշտ Անգլիոյ կատարած անագնիւ ջանքերուն, հրապարակաւ կատարած յայտարարութեան վրայ, ուր կ'ըսէր «Ենթակաները պաշտպանելէ աւելի հարստահարութեանց աւելնալուն պատճառ պիտի ըլլայ 61րդ յօդուածը»:

## Գ.

# ՀԱՅԵՐՈՒ ԱՆԲԱՂՁԱԼԻ ՎԻՃԱԿԸ ԵՒ ԱԶԴԵՑԻԿ ՀԱՅԵՐՈՒ ԿԱՏԱՐԱԾ ԴԵՐԸ

Մալաթիա զաւառական խուլ շրջանակ մը եղած է, եւ ինչպէս տեսնուեցաւ, 1828ի եւ 1856ի Ռուս եւ Թուրք պատերազմները արձագանգ չեն գտած հոն եւ ոեւէ փոփոխութիւն չէ տեսնուած Մալաթիոյ եւ շրջակայից մէջ, որ Թուրք լուծին ոչ մէկ չարիքէն զերծ մնացած է եւ լուռ համակերպութեամբ կրած է զանոնք, քանի որ ոեւէ բողոք կամ դժգոհութեան արտայայտութիւն չէ տեսնուած, մինչ 1860—1870 տասնամեակին երբ Պալքանեան ժողովուրդներ իրենց դժգոհութիւնները կը յայտնէին Թուրք լուծին դէմ, հայ ազգային մարմիններ ալ ձայն բարձրացուցին եւ մասնակցեցան այդ շարժումին: Խրիմեան, պատրիարք ընտրուելէն (1869) քիչ ետք, իր Նա—

*խաժեռնութեամբ գաւառական հարստահարութեանց խնդիրը յարոյց եւ պահանջեց որ Ազգ. Ժողովը այս հարցով զբաղի:*

*Պոլսոյ Ազգ. Երեսփ. Ժողովը* 8 *Հոկտ.* 1871*ին կազմեց յանձնաժողով մը, որ բերաւ իր տեղեկագիրը* 18 *Փետրուար* 1872*ին:*

*Այս տեղեկագիրը, որ* 1852—1872 *քսանամեակի մէջ հարստահարական դէպքերու առթիւ կառավարութեան մատուցուած եւ մեծ մասամբ անլսելի եւ աննկատ մնացած* 529 *Թագրիրներու յիշատակութիւնը կ'ընէր, կը պարունակէր նաեւ Մալաթիոյ Թեմին Հայերուն ենթարկուած հարստահարութեանց մասին* 10 *Թագրիրներու յիշատակութիւնը, ինչ որ ցոյց կու տայ թէ Մալաթիոյ մէջ այնքան ալ անտանելի չէր դրութիւնը, քանի որ* քսան տարուան մէջ միայն տասը դէպքեր պատահած են բողոքելու արժանի:

*Խրիմեանի հրաժարումէն եւ* 1874*ին Ներսէս Վարժապետեանի պատրիարք ընտրուելէն ետք երբ Պալքանեան Թերակղզիին մէջ ապրող ժողովուրդները գրեթէ մեծ մասամբ ապստամբած էին եւ կը փորձէին իրենց ազատութիւնը ձեռք բերել, Կ. Պոլսոյ Ազգ. Երեսփ. Ժողովը կրկին հարստահարութեանց խնդիրը օրակարգի անցուց եւ դիտել տալով թէ առաջին տեղեկագիրը բնաւ նկատի չէր առնուած,* 1876*-ին Ռուս եւ Թուրք պատերազմին վաղորդայնին կազմեց նոր յանձնաժողով մը, որ Առաջին տեղեկագրին կցելով նոր դէպքեր, այս յաւելուածով Բ. Դրան ուշադրութեան ներկայացուց Հարստահարութեանց խնդիրը եւ դարման խնդրեց:*

*Այս երկրորդ տեղեկագրին մէջ աւելցուած նոր դէպքերէն մէկը միայն կը պատկանի Մալաթիոյ, ուր պատահած էր մոլեռանդական անշնորհք արարք մը, որուն դէմ բողոքած է Ներսէս պատրիարքը* 1 *Սեպտ.* 1876*-ին* Թագրիրով:

*Հոն կը տեսնուէր որ Մալաթիոյ կառավարիչը Մուսթաֆա պէյ, մոլեռանդական ոգիով թոյլ տուած էր որ Թուրք սրիկաներ շան մը վիզը խաչ մը կախելով շուկան եւ փողոցները պտըտին:*

*Ասիկա նշան մըն էր որ Պալքանեան ժողովուրդներու յուզումները եւ անոնց յաջորդող Ռուս և Թուրք պատերազմը, որ քրիստոնեաները ազատագրելու համար կը մղէր Ռուսիա, արձագանգ գտած էին Մալաթիոյ մէջ, ուր ապրող Հայերը իբր քրիստոնեաներ իրենք ալ ատելութեան առարկայ կ'ըլլային:*

*Իսկ աւելի վերջ Հայոց Այ-Ստեֆանոյ եւ Պերլին կատարած դիմումները անշուշտ լսուած են եւ Թուրք մոլեռանդութիւնը գրգռելու նպաստած:*

*Երբ Պերլինի* 61*րդ մեռեալ տառ մնալու սահմանուած յօդուածին հետեւանքով Հայերը յուսախաբ եղած էին եւ երկիւղի մատնուած, Թուրք ժողովուրդին բարբարոսութիւնը եւ Սուլթան Համիտի ատելութիւնը կը սրուէին Հայոց դէմ: Գարեգին վրդ. Սրուանձտեանց, որ Ապրիլ* 1878*-ին Պատրիարքարանէն գաւառները ղրկուած էր քննութեան եւ տեղեկագրութեան համար, նոյն տարին Յուլիս* 26*-ին Մալաթիա կը գտնուէր երբ նոր միւթէսարրֆ մը եկաւ գիշերը եւ իջեւանեցաւ քաղաքին երեւելիներէն Հաճի պէյ անուն Թուրքի մը տունը:*

*Սրուանձտեանց հետեւեալ օրը պարտականութիւն կը համարէր այ-ցելել եւ բարի գալուստ մաղթել:*

*Ըստ Սրուանձտեանցի միւթեսարրըֆը* «ծիտը հաստ, մարմինը գէր, հասակը բարձր, քիչ խօսելու անվարժ, լեզուն ալ Յունաց նման ծեք ծեք թուրքերէն կը խօսէր, կիրթ էր ինքն, եւ Ն. Գարահիսարէն կու գար: Աղէկ ընդունելութիւն ըրաւ, եւ պատմեց գիշերը քաղաքին մէջ իրեն զալըս-տեան միջոցին պատահած հետեւեալ դէպքը:

Թուրքի մը տան առջեւէն կ'անցնէինք, ըսաւ, տանիքէն մարդ մը ին-քինքը վար նետեց եւ ինկաւ ջուրը, քանի մը հոգի ալ տանիքի միւս կողմէն փախան աղաղակելով եւ հրացան կրակելով: Փաշայի մօտիկներէն ոմանք կը կարծեն թէ գողեր են, եւ հարէմն ու աղջիկը կ'ուշաթափին՝ կարծելով թէ փաշան զարնուեցաւ, փաշան ալ կը կարծէ թէ ջուր իյնողն հալածեալ մ'է օգ-նութեան կարօտ այն ինչ ոստիկաններէն մէկն ալ զանի զարնել կ'ուզէր, վեր-ջապէս նա կը յաջողի խօյս տալ, եւ սոսկ սարսափալից բայց անվտանգ կ'անցնին: Առաւօտեան տանիկ կին մը կը ներկայանայ փաշային, թէ «ես այն տանը տէրն եմ, իմ աղջիկս բռնաբարել եկած էին անոնք որ տանիքէն փախան, որոնց պարագլուխն էր Ասլա իւլ Գատիր էֆէնտի ջուր իյնողը»: Քա-ղաքի էն պատուաւոր եւ բարձրաստիճան անձին որդին էր սա, ինքն եւ նոյն-պէս պատուաւոր եւ ատենական մարդ, որուն քանիցս հրաման դրկեց փա-շան, այլ չկրցաւ բերել տալ: Ամէն մարդ մատ խածաւ:

Մենք ալ պատմեցինք փաշային մեր գիտցածները եւ թէ ինչպէս կը նախատուէին, կը հայհոյուէին եւ կը քարկոծուէին Հայեր, իրենց կանայք եւ զաւակները, իրենց հաւատքն եւ պատիւը, եւ թէ ինչպէս քահանայից ու նոյնիսկ Առաջնորդին ետեւէն «Քէշիշ, օշ, օշ» կը պոռային ու քարեր կ'ար-ձակէին, որուն մենք ալ ականատես եղանք, եւ յատուկ *Թագրիր* գրուեցաւ, բայց գործադրուեցա՞ւ, կարծեմ ոչ: Երկու օր վերջն ալ Քրդերը զօրանոցին մօտերը ձիաւոր զօրք մը զարկին եւ քաղաքին մէջ ու դուրսը չարագործներով լցաւ:

Գործերը ելան Դիւոսի գերանին վրայ ընդհանրապէս այս սովորութի-նըն ունին Քրդեր եւ չարագործներ. ամէն նորեկ կառավարիչի մը առաջին օ-րերը իբր փորձ քանի մը չարիք կը գործեն. եթէ եկողը աչալուրջ և կորուկ իշխանութիւն ցոյց կու տայ, կը հանդարտին, եթէ թոյլ ու շուար մնաց, ազատաբար ամենայն ինչ կը գործեն:

Հայոցմէ ոմանք առանձին եղած ատեն շատ բաներ կը պատմէին Տա-նիկ պաշտօնէից եւ բնակչաց բռածներէն, բայց երբ իրարու քով գտնուէին. չէին համարձակեր բան մը խօսիլ, եւ խոհեմութիւն կը համարէին իրենց այս վարմունքն, վասնզի, կ'ըսէին, դատող ու պատժող մը չեղաւ մինչեւ այսօր, եւ եթէ լսեն մեր գանգատ ընելը, պիտի աւելցնեն իրենց չարիքները: Դէպք մը, զոր ամէնքն ալ կը պատմէին զատ զատ, եւ կը ժխտէին միշտ այլոց առ-ջեւ, բայց յայտնի էր թէ ակամայ կը ժխտէին, այս էր, դեռ փոքր միջոց մը առաջ փայտէ խաչ մը կախեր էին շան պարանոցէն, եւ շուկային մէջ շրջե-ցուցած էին Հայոց խանութներու առջեւէն, իբրեւ թէ Ռուսաց նախատինք

ընելու նպատակաւ (1)․ ԽՈՀԵՄ (2) Հայերը լռութեամբ նայեր էին վրան եւ երբ փսփսացեր էին կառավարութեան ականջին, խափանել տուեր էր,, եւ փութացեր էր պատասխանել Հայոց թէ՝ խենթ մ'է եղեր այդ բանը ընողը։ Այլ միթէ շուկայի մէջ բազմող եւ շան եռեւէն քալող այնքան Թուրքերը բոլորն ալ խենթ էին։ Կարի երկիւղով պաշարեալ են Հայք, ոչ իրենց իրաւունքը եւ ոչ իրենց կրօնքը կրնան համարձակ խոստովանիլ։ Եթէ այսպէս ապրին, լաւ է որ չապրին» (Թորոս Աղբար, Ա․, էջ 316–318)։

*Խրիմեան Հայրիկի աշակերտին այս վճիռը շատ ալ ճիշդ չէ։*

*Պէտք էր ժողովուրդը պատրաստել, որ գիտնար իր իրաւունքը պաշտպանել։*

*Սրուանձտեանց, թէեւ աւելի իրատես եղած է քան իր ուսուցիչը՝ Հայրիկ եւ ինչ ինչ պարագաներու մէջ անհամաձայն անոր ուղղութեան, ինքն ալ Եւրոպական պաշտպանութեան ցնորքէն տարուած է, վասնզի այս տողերէն անմիջապէս ետք կը յարէ․* «Այսպիսի քաղաքները եթէ եւրոպական հիւպատոս գտնուի, շատ մեծ տարբերութիւն կ'ընէ ներկայ վիճակէն, դժբախտաբար աղէկ միւթեսարրֆներու ալ արժանացած չեն, բայց գոնէ Հայոց Առաջնորդն ժիր եւ բանիբուն մէկն լինի, գրեթէ կէս միւթեսարրֆ եւ ամբողջ հիւպատոս մը կրնայ համարուիլ, եւ եթէ լուսաւորուի ժողովուրդն, կարենայ ինքզինքը պաշտպանելու, զի գիտութիւն՝ զօրութիւն է» (Թորոս Աղբար, էջ 315–9)։

*Սրուանձտեանց իրաւունք ունէր գանգատելու Հայոց առաջնորդներէն, որոնք պէտք եղած պատրաստութիւնը չունէին, իսկ հիւպատոսներուն վրայ դրուած յոյսը սխալ մըն էր, վասնզի յաճախ անոնց ներկայութիւնը հակառակ արդիւնք առաջ բերած է, հիւպատոսի մը բարեխօսութիւնը օտար միջամտութիւն մեկնաբանելով։*

*Մալաթիացիք, որոնց կարծես թէ ստորագծեալ հեղինակն* ԽՈՀԵՄ *ածականը կը շնորհէ Սրուանձտեանց, իրենց անկարող եւ տգէտ առաջնորդներուն ապիկարութիւնը դարմանած են աշխարհական ազդեցիկ անձերու հեղինակաւոր գործունէութեամբ, որոնք մեծ դեր կատարած են քաղաքին կեանքին մէջ, ուր որքան որ կը թագաւորէր դեռ Թրքական բարբարոսութիւնը, սակայն 1839–1855-ի՝ բարենորոգչական ձգտումները, որոնք Թուրք պետական մարդիկ գէթ ակամայ ցոյց կու տային, բան մը փոխած էին երկրին մէջ եւ այդ պզտիկ բարեշրջումներն իսկ քիչ-շատ բաւարարութիւն կու տային եւ յոյսեր ալ կը ներշնչէին աւելի լաւ օրերու։*

*Իրապէս թէեւ կատարեալ բարեշրջում մը չէր կատարուած Թուրքիոյ մէջ եւ վիճակը վարդագոյն չէր, բայց անուրանալի էր որ 1880ական թուա–*

---

(1) *1 Սեպտ. 1876-ին Ներսէս Պատրիարքի ԹԱԳՐԻՐԻՆ մէջ յիշուած դէպքը (տես վերը, էջ 837)։*

(2) *Այս ստորագծումը Սրուանձտեանցինն է։*

*կաններու Թուրքիան իր պետական կազմակերպութեամբ եւ վարչութեամբ, 1820ական եւ նոյնիսկ 1840ական եւ 1850ական թուականներու Թուրքիան չէր եւ պետութեան բնակիչները — ընդ որս Հայերը — յուսալից էին թէ նոր փոփոխութիւններ ալ պիտի կատարուէին եւ Հայոց ալ վիճակը պիտի բարւոքէր աւելի եւս:*

*Այս տպաւորութիւնը ունեցած ըլլալ կը թուի Մալաթիոյ Հայոց մէջ իբր յայտնի դէմք եւ յարգելի անհատականութիւն, անուն ունեցող Տոքթ. Միքայէլ Քէչիչեան (տես* ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, *Բ. տարի, Թ. 4, էջ 7,* ՊԱՏՄԱԿԱՆ ԱԿՆԱՐԿ ՄԸ ՄԱԼԱԹԻՈՅ ԱՆՑԵԱԼԻՆ ԵՒ ՆԵՐԿԱՅԻՆ ՎՐԱՅ *յօդուածաշարքը):*

*Հոն ան կը նուիրէ սա խանդավառ եւ նշանակելի տողերը իր ծննդավայրին համար, զոր կը ներկայացնէ իբր պատկերը Մալաթիոյ աշխարհական միջավայրին եւ Հայոց հոն ապրած կեանքին, թէ* «Հին Մելիտինէն իր շատ ամուր դիրքերով եւ միլիոններ տեղաւորելու, կերակրելու եւ անոնց ֆիզիքականը պաշտպանելու մեծ համբաւին հետ, բնական գեղեցկութեամբ աշխարհի մէջ մէկ հատիկ է: Ամբողջ քաղաքը անտառի մը երեւոյթը ունի, իր անծայրածիր դաշտը միշտ դալար է, իր սառնանման աղբիւրներով եւ գետերով: Ամէն տուն իրեն յատուկ պաղ եւ մաքուր ջուրը եւ պարտէզը ունի, եւ ամբողջ դաշտը 13 գետերով եւ գետակներով կ'ոռոգուի: Բնակարանները բազմատեսակ պտղատու ծառերով եւ գոյնզգոյն ծաղիկներու մշտադալար թուփերով շրջապատուած են, հոսող արծաթագոյն ջուրերու ձայներուն հետ, մեր պարտէզներու գոյնզգոյն թռչնիկներու անուշ ձայներն, մեր երաժշտութիւնը, մեր նուագը կը կազմեն, եւ դրախտի երեւոյթը կու տան. օտարներ Մալաթիան կը կարծեն ըլլալ հաւանական դրախտը: Պէյրութի Ամերիկեան Համալսարանին համբաւաւոր Փրոֆէսոր Տոքթ. Փոսթ իր երկու բժիշկ զաւակներուն հետ մօտ 25 տարիներ առաջ (այսինքն շուրջ 1915) Մելիտինէ այցելեց: Իր վերադարձին «լէքչըր»ով ներկայացուց զայն աշխարհի ամենահին, ամենէն գեղեցիկ քաղաքը, եւ դրախտը, Եդեմի պարտէզը:

Որեւէ միջավայրի բնակչութեան առողջութիւնը, գեղեցկութիւնը, մտային եւ հոգեկան կարողութիւնը բնական տաղանդն ու ձիրքերը, ճաշակը եւ բոլոր ընդունակութիւնները ծնունդ կ'առնեն եւ կ'ազդուին միջավայրէն: Մեր հին հայրենիքը մեծ չափով ազդած է մեր հայրենակիցներու վրայ: Անոր մաքուր օդն ու ջուրը՝ առողջութիւն, մեր տեսարաններու գեղեցկութիւնը՝ պարգեւած է բոլոր մերայնոց գեղեցկութիւն, բնութիւնը՝ վարդերն ու անուշահոտ ծաղիկները, բազմատեսակ եւ գոյնզգոյն թռչնիկներն ու քաղցրաձայն սոխակը եւ վճիտ աղբերակաց կարկաչը՝ գեղարուեստ նկարչութիւն, բանաստեղծութիւն եւ երաժշտութիւն, եւ մանաւանդ մեր պարտէզներուն մէջ, մէկ շրջապատի մէջ ապրող, ծլող եւ ծաղկող բազմատեսակ եւ այլացեղ պտղատու ծառերը, առանց զիրար վնասելու համերաշխաբար ապրիլը մեզ բոլորիս զիրար սիրել, իրարու մօտ ապրիլ եւ համերաշխութիւն սորվեցուցած են: Մեր հին պապերը մօտաւորապէս մէկ ու կէս դար առաջ,

ըստ մեր տէտէներուն եւ ծերերու տուած տեղեկութեանց, նահապետական սուրբ եւ օրինակելի կեանք մը ապրած են»։

*Իր ծննդավայրին սիրով լեցուն մէկու մը այս հիացիկ տողերը, որոնք կրնան քիչ մը չափազանցուած ըլլալ, սիրով ընդօրինակեցի հոս, իբր բանգէտ եւ հանրային գործունէութեամբ ծանօթ տեղացիի մը վկայութիւնը։ Մասնաւորապէս շատ ուշագրաւ են եւ միանգամայն հրահանգիչ պատմութենէն դաս առնել գիտցողներուն համար իր այն տողերը, ուր Տոքթ. Միքայէլ Բէշիշեան կը հաստատէ թէ իրենց նախնիքը Մալաթիոյ մէջ* «Ապրած են իրարու հետ միշտ հաշտ եւ համերաշխ, սէր ընտանիքի եւ դրացիի հանդէպ, մինչեւ իսկ սիրով՝ դրացի իսլամներու հետ, միշտ յարգած են արժանիք ունեցողները, մանաւանդ ծերերը»։

*Ի՞նչ եղաւ որ այս ընդհանուր հասկացողութիւնը եւ համերաշխութիւնը, որ ազգը ինքն իր մէջ եւ հանդէպ իր դրացի իսլամին ունէր, խանգարուեցաւ եւ ամէն ինչ քարուքանդ եղաւ։*

*Շատ աւելի մոլեռանդ եւ բարբարոս շրջաններու Հայ եւ Թուրք յարաբերութիւնները աւելի քիչ փոթորկոտ ու նուազ գանգատի տեղի տուած են — մասնաւորապէս Մալաթիոյ մէջ — ուր Հայերը քիչ-շատ խաղաղ դրացնութեան մէջ կ'ապրէին մանաւանդ* ԹԱՆԶԻՄԱԹի (1839) *եւ* ԻՍԼԱՀԱԹի (1856) *հրովարտակներու հրատարակութենէն ետք։*

*Այդ եւ նման բարենորոգութեան եւ բարեկարգութեան նպատակով կատարուած ձեռնարկները եթէ չկրցան արմատական սրբագրութիւններ մտցնել երկրին վարչութեան մէջ, գոնէ որոշ չափով Իսլամներու մտայնութեան մէջ փոփոխութիւններ մտցուցին։*

*Իսլամները թէեւ միշտ տհաճութեամբ, գանգատելով եւ դժգոհութեամբ կամաց-կամաց վարժուեցան* ՌԱՅԱ*ներուն ալ հաւասար իրաւունքներ տրուելու հաւանականութեան, քանի որ Սուլթանները եւ պետական մարդիկ կը խոստանային գոնէ։*

*Առերեւոյթ եւ ոչ իրական հաւասար իրաւունքներ հրովարտակներով, յաճախ եւրոպական ճնշումի տակ, կը հրատարակուէին առանց անկեղծօրէն գործադրուելու փափաքով, այլ սպառնացող վտանգ մը անցընելու։*

*Ասով հանդերձ պէտք է ընդունիլ թէ քիչ-շատ բան մը կար փոխուած Օսմ. Պետութեան մէջ* 1839-ի ԹԱՆԶԻՄԱԹ*ի հրատարակութենէն ետք, երբ մանաւանդ Իսլամները տեսնել սկսան* ՌԱՅԱ*ներու պետական պաշտօնատարներ դառնալը եւ աստիճանաւորի համազգեստ հագնիլը ու մէջքին սուր կապելը։*

*Ասիկա առիթ մը եղաւ քրիստոնեաներուն մէջ գոյութիւն առնելուն Ամիրաներէ ետքը պաշտօնատարներու դասակարգի մը եւ գաւառներու մէջ մասնաւորապէս կուսակալին հետ ժողովի նստող վարչական ժողովներու* (ԻՏԱՐԷ ՄԷՃԼԻՍԻ) *անդամներու, որոնք ազդեցութիւն ձեռք բերին եւ օգտակար ալ եղան ազգին։*

*Տոքթ. Միքայէլ Բէշիշեան այս նոր երեւան եկող պետական պաշտօ-*

*Նատար դասակարգին մասին ալ կ'արտայայտուի՝ ըսելով որ* «մօտ դար մը առաջ Մալաթիա քաղաքը ունեցած է մի քանի դեկավար իշխաններ, որոնք ժամանակին պարգեւած ուսմունքովն զարգացած, եւ իրենց բարի սովորութեամբ, մարդասիրական եւ ողորմածութեամբ իրենց ֆիզիքական եւ նիւթական կարողութիւններն ազգին ընդհանուր զարգացման եւ բարելաւման յատկացուցած ըլլալնուն համար, ամբողջ քաղաքի եւ գիւղերու իսլամ եւ ոչ իսլամ բնակչութենէն սիրոյն եւ յարգանաց արժանացած են, եւ իրաւամբ իրենց արժանեաց համար ստացած են իշխան տիտղոսը, իսլամ ժողովուրդն ալ Չէլէպի կը կոչէր զիրենք։ Յաչս կառավարութեան շատ սիրելի եւ յարգելի էին Իշխանները եւ ազդեցիկ, որովհետեւ առ հասարակ ամբողջ բնակչութիւնը իրենց հետ էր եւ անոնց կը հետեւէին։ Մեր իշխան աղաներն իրենց ազդեցութիւնը կը բանեցնէին իսլամ ընտանեաց ներքին կեանքին վրայ, շատ անգամ երկու մեծ եւ ազնուական թուրք ընտանեաց, զոր օրինակ, Հանի Ապտի եւ Սիւլիւկի զաւէներու միջեւ ծագած մեծ վէճերն ու կռիւները մերայնոց միջոցաւ կը կարգադրուէին, հաշտարարի եւ դատաւորի դեր կը կատարէին, լեռնաբնակ ցեղապետներու եւ տարբեր աշիրէթներու միջեւ ծագած պատերազմը շատ անգամ կառավարութեան գործածած ուժերէն աւելի մեր իշխաններու միջոցաւ կը կարգադրուէին» (Նոյն, էջ 3)։

*Տոքթ. Միքայէլ Քէշիշեան նպաստաւոր կերպով կը ներկայացնէ Մալաթիոյ «Իշխան»ներուն գործունէութիւնը եւ կատարած դերը։*

*Ան նոյնիսկ խօսած է անոնցմէ ոմանց վրայ յականէ յանուանէ (տես ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Բ. տարի, Թ. 2, էջ 7)։*

*Այսպէս կը գրէ թէ* «Մեր աչքառու իշխաններն եղած են հետեւեալները. Հանի Միքայէլ Գզըլքէշիշեան, Հանի Կարապետ Աղա Գըլըճեան, Հանի Ստեփան Աղա Թիւթէլեան եւ Պաղտօեան Նափոլէոն էֆ. հայրը։

Վերոյիշեալները վերջին ծայր աստուածավախ կրօնասէր եւ կրթասէր ըլլալով, շուտով երկու հոյակապ եկեղեցիներ եւ անոնց կողքին դպրոցի եւ ուսման յատուկ շէնքեր շինել տուած են։ Ժողովուրդը իր ֆիզիքական եւ նիւթական աջակցութիւնը միացուցած է իշխան Աղաներու մեծամեծ զոհողութեան, շուտով գլուխ հանած են ազգօգուտ այս ձեռնարկները։ Հանի Միքայէլ Աղա Գզըլքէշիշեան բոլորին տարէցն ու նիւթապէս կարողագոյնը ըլլալով շուկայի եկեղեցւոյ շինութեան ծախքը մեծաւ մասամբ իր քսակէն տրամադրած ըլլալուն համար, խորանի առջեւ, երկու զահ շինուած էր, աջակողմեանը՝ առաջնորդ եպիսկոպոսին, իսկ ձախակողմեանը՝ Հանի Միքայէլ աղայի յատուկ։ Եկեղեցին անոնց օրին ունեցած է իր եպիսկոպոսը, իր քահանայից կազմը.— Տէր Մուշեղ (Գզըլ Քէշիշ), կրակոտ կտրիճ քահանայ Գզըլքէշիշեաններէն, Աղա Տէրտէր Քէշիշեան, Արզայեան քահանայ, Հակըբուկեան քահանայ եւայլն։

Բնականաբար այս ատեն բարձր մտաւորականներ չունէին, զոլէճական անունը եւ կրթութիւնը անծանօթ էր. միջավայրի հասցուցած մտաւորականներէն՝ Պեյօ Վարժապետ Կիւրեղեան, Գամպուր Վարժապետ Քէշէ-

նեան, յետոյ՝ Ծերունի Վարժապետ, Թիֆթիկնեան Վարժապետ, ապա՝ Կիւ-րինցի Վարժապետ, յանձն առած էին ուսման գործը եւ եկեղեցիներու շա-րականներ երգելու եւ ուսուցանելու պաշտօնը:

Մեր իշխաններն ազգին բրած իրենց ծառայութեանց համար ամբողջ Հայութեան պաշտելի եւ սիրելի դարձած են, իւրաքանչիւր հայ եւ ընտանիք սիրայօժար բերած է իրեն նիւթական եւ բարոյական աջակցութիւնը: Մե-ծերու հանդէպ մերայնոց յարգանքը այնչափ յառաջացած է, որ կիրակի օրեր երբ իշխաններ եկեղեցի կու գային ամէն անհատ կը ստիպուէր անցք տալ անոնց. եկեղեցւոյ աւարտման՝ խորանին կողմէն իշխաններ երբ կը շարժէին դուրս ելլել՝ հազարաւոր ժողովուրդ երկու կողմի վրայ երկուքի բաժնուած, հանգիստ ճամբայ մը կը բանային որ անցնէին, եւ դուրս դէպի տուն մեկ-նելու ատեն հազարաւորներ լռութեամբ անոնց ետեւէն կը քալէին. բայց իրենց տարիքներու յառաջացման պատճառաւ, իւրաքանչիւրը ապրած ըլլա-լով 80—90 բազմարդիւն տարիներ, յաջորդաբար կը մեկնէին եւ անոնց պատ-ուական մարմինները, ի յարգանս եւ ի վարձատրութիւն իրենց ծառայու-թեանց կ'ամփոփուէին Պապուխտիի վրայ Եօրէն կոչուած եւ իշխանաց յատ-կացուած մասնաւոր շիրիմներու մէջ:



Գրիգոր Աղա Արսլանեան



Յովհաննէս Էֆ. Թիւթելեան

Մեր նախահայրք եղող իշխաններու յաջորդներն եղան հետեւեալները. — Արսլանեան Գրիգոր էֆէնտի, Սարաֆեան Ատուր աղա, Գզըլքէշիշեան Յակոբ էֆ., Գզըլքէշիշեան Համբարձում էֆէնտի (վերջիններս եղբայրներ), Մազմանեան Գէորգ էֆէնտի, Թէրզի Մանուկեան Միքայէլ աղա, Թիւթէլեան Յովհաննէս էֆէնտի, Պաղտօեան Յովհաննէս էֆէնտի, Պաղտօեան Նափոլէոն էֆ., Անսուրլեան Հաճի Յովսէփ էֆ., Պըլըզեան Հաճի Յակոբ աղա, Ճիվէ-լէկեան Համբարձում աղա, Գըլըճեան Մատթիա էֆէնտի եւ կարգ մը ու-րիշներ, ինչպէս Նազարէթ եւ Կարապետ էֆէնտի Գզըլքէշիշեան:

Այս երկրորդ սերունդի աչքառու անձնաւորութեանց փառքի եւ գործունէութեան ժամանակ ես հազիւ 7–8 տարեկան տղայ մըն էի, բայց որովհետեւ իմ հօր Համբարձում էֆէնտիի եւ հօրեղբօրս Յակոբ էֆէնտի Գզըլքէչիշեանի պաշտօնակից եւ ազգային հարցերու համար իրարու գործակից էին, անոնց շատ յաճախ մեր տուներու մէջ ունեցած հաւաքոյթները ու խորհրդածութիւնները իմ վրայ մեծ տպաւորութիւն թողուցած են· որով որոշ կը յիշեմ անոնց դիմագիծերը, վայելուչ եւ ճաշակաւոր հագուիլը, անոնց կեանքն ու կենցաղը, իրարու եւ ընդհանուրի հետ իրենց վեհանձն եւ ազնիւ վերաբերումը: Իրենք այդ ժամանակի արժանաւոր մտաւորականներն ու քաղաքական անձնաւորութիւնք էին· բոլորը լաւ թրքագէտ եւ հայագէտներ էին, իրենց ստացած չափաւոր ուսումը բաւական չսեպելով՝ ինքնազարգացման հետեւող, շատ ընթերցասէր էին այն ժամանակ, հայերէն եւ թրքերէն թերթեր եւ գիրքեր միշտ կը կարդային, իւրաքանչիւրը իր գրադարանը ունէր:



Նափոլէոն էֆ. Պաղտօեան

Իրենց այս կարողութեանց շնորհիւ կառավարութեան բոլոր պաշտօնական վարչական ճիւղերու մէջ բարձրագոյն դիրքերու եւ պաշտօններու անցած էին, Գզըլքէչիշեան Յակոբ էֆէնտի վարչական ժողովի մէջ կառավարիչին չափ ազդեցիկ էր, եղբայրը Համբարձում էֆէնտի բաւական ժամանակ հարցաքննիչ դատաւոր, դատարանին մէջ ընդհանուր դատախազի պաշտօններ վարած եւ իր կարողութեան եւ կառավարելու կարողութեան պատճառաւ կայսերական հրովարտակով եւ ամբողջ Խարբերդի, Մէմուրէթիւլ Ազիզ նահանգի Կուսակալութեան Քաղաքական ժողովրդեան, այսինքն՝ Խարբերդի, Մէզրէի իր բոլոր գիւղերով, Ակն, Արաբկիր, Մալաթիա, Հիւսնի Ման-

տուր, Պեխեսնի, Չմշկածագ, Մաշկերտ քաղաքներու, եկեղեցական, կրթական, ազգային, ներքին եւ արտաքին բոլոր գործերու կարգադրութիւնը իր ձեռքն էր. իր վարչական ժողովի կ'անդամակցէին փրոֆ. Մելքոն, Փրոֆ. Թէնէքէճեան, Փրոֆ. Խաչատուր Նահիկեան, Սարգիս էֆէնտի Մովսէսեան եւ Պր. Աշոտ, ուսուցիչ եւ Եփրատ Գոլէճի քարտուղար:

Մասնաւոր պատուիրակութիւն մը, Սարգիս էֆէնտի Մովսէսեանի միացած Մալաթիա եկաւ ազգապետը տանելու համար. իր պաշտօնատեղին հասած օր, Եփրատ Գոլէճը եւ բոլոր դպրոցները գոցուած, ամբողջ փրոֆէսօրներ, միսիոնարք, քաղաքի, Մէզրէի եւ գիւղերու ժողովուրդը Մէզրէէն քաւական դուրս, ոմանք մինչեւ խան աղբիւր պատուոյ թափօր կազմած դիմաւորած են զինքը եւ Մէզրէ եւ Խարբերդ մուտքի առեն բոլոր զանգակները սկսած են հնչել: Իր պաշտօնավարութիւնը տեւեց մինչեւ 96–ի կոտորածը:

Մազմանեան Գէորգ, Թիւթէլեան Յովհաննէս, Պաղտօեան Նափոլէոն էֆէնտիներ լաւագոյն թրքագէտներ ըլլալով, կառավարութեան մէջ իրենց գրիչի ճկունութեամբ եւ իբր լաւագոյն թրքագէտներ միշտ գրագիտութեան պաշտօն ունեցած են:

Գրիգոր էֆէնտի Չիլ Արսլանեան, գեղեցկադէմ, բարձրահասակ, վըսեմ երեւոյթով անձ մը, վերջին ծայր լուրջ եւ վարպետ քաղաքագէտ եւ ազդեցիկ էր: Միշտ անդամ էր կառավարութեան վարչական ժողովին մէջ:

Ատուր աղա Սարաֆեան, անուշ բնաւորութեամբ, խոհեմ, շատ սիրուած բոլորէն, վերջին ծայր հիւրասէր եւ ողորմած: Իր շքեղ տունը ընդհանուրինն էր, շաբաթ չէր անցներ որ իր տունը մեծածախս խնճոյքներ չսարքէր. ինք եւս Վարչական ժողովի անդամ էր:

Թէրզիմանուկեան Միքայէլ աղա, Ճիւվէլէկեան Համբարձում աղա, Պըլըգեան Հանի Յակոբ աղա, Գյըճեան Մատաթիա աղա եւն. իրենց կարգին շատ յարգելի անձնաւորութիւններ էին, եւ յաճախ կառավարութեան Վարչական Դատարանի, կամ քաղաքապետարանի ժողովներուն կ'անդամակցէին:

Յիշեալներու ժամանակ Մելիտինէի ազգային կեանքը շատ գոհացուցիչ էր, ամէն մարդ ազատ էր եւ ապահով: Մեր լաւագոյն ոյժերու շնորհիւ կարծես բարենորոգում կար, մերայինք ոեւէ դժուարութիւն կամ վտանգ չէին զգար. ապահովութեան պաշտօնատանց մէջ զօմիսէրներ, լաւագոյն ոյժերէ բաղկացած շատ մը շքեղապէս հագուած, զինուած հայ բոլիսներ եւ ժանտարմաներ ունէինք. Հայկական բոլոր թաղերը գիշերները լապտերներով լուսաւորուած, հայ պահակներու հսկողութեան տակ էին:

Այս ժամանակ Հայի–Թուրքի խնդիր չկար, Հայերը կասկածելի ըլլալէ զերծ էին եւ շատ սիրելի: Մեր ազգային երգերն ազատ կերպով կ'երգուէին տուներու մէջ եւ փողոցները. ամէն տուն ազգային երգարան ունէր. հարսանեկան հանդէսներու թափօրներու միջոցին դպրոցական ուսանողք փողոցը կ'երգէին՝ ՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔը, ՍԻՐԷ ՀԱՅԸ, ԹԷ ՀԱՅՐԵՆԵԱՑը եւն.: Ի՜նչ երջանիկ օրեր, աւա՜ղ, շա՜տ աւաղ:

Մեր ժողովուրդն անխի եւ բազմանալ սկսած էր. մեր եկեղեցիներն ու

դպրոցները նեղ կու գային մեր կրօնասէր եւ կրթասէր դասակարգին:»

*Հին սերունդի իշխաններու խոհական եւ շրջահայեաց ընթացքը եւ ինքզինքնին յարգել տալով համայնքին օգտակար ըլլալը այսպէս կը գնահատէ Տոքթ. Մ. Բէշիշեան, որ Մալաթիոյ մէջ, ինչպէս ըսի, շատ յարգուած դէմք մըն էր:*

*Գ. Մելիտինեցի, որ իր գրածներէն դատելով դտնուած է ազդեցութեան տակ անոնց, որոնք աններելի սխալը գործեցին այս ազգը անհաշիւ եւ չմտածուած պայքարի մը մղելու ոչ ոյժ եւ ոչ պատրաստութիւն ունենալով, եւ անխորհրդաբար գրգռեցին Թուրքին գազանային բնազդները, իր ՆԱԽՃԻՐՆԵՐՈՒՆ մէջ (էջ 63) չէ կրցած ծածկել յայտնի իրողութիւններ եւ արտայայտած է ճշմարտութիւններ, որոնք չեն համաձայնիր իր գիրքին ուրիշ մասերուն մէջ տեսնուած բացաչունչ պոռոտախօսութիւններուն — նոյնիսկ կը հակասեն — որոնք այլեւս դոց ըրած է Հայ ժողովուրդը առանց դրական եւ իրական արդիւնք մը տեսնելու:*

*Ան գնահատելի է որ գոնէ յատկատեսութեամբ անվարան, ինքն ալ ազդեցիկ Հայոց կատարած բարեբար դերին վրայ գրած է, գիտել տալով թէ* «քաղաքական դէպքերու ատրինանական զարգացման հետ զուգընթաց երեւան եկած են կարգ մը Հայեր, որոնք իրենց անհատական արտակարգ կարողութեան շնորհիւ, ատեղծեր են լաւ դիրքեր խառն ժողովրդեան մէջ: Ասոնցմէ յիշատակելի են Պաղտօեաններ, Սարաֆեաններ, Թիթէլեաններ, Ատուրաղայաններ, Չիլ Արսլանեաններ, աւելի ուշ Գարօղլանեաններ, Տէր Մուշեղեաններ, Չիթաճեաններ: Այդ խումբէն քաջութեամբ, վեհանձնութեամբ եւ շինարարութեամբ ամենէն աւելի բնորոշ եղած է Գրիգոր Աղա (Չիլ) Արսլանեան, որուն անխոնջ ջանքերուն շնորհիւ եկեղեցապատկան հողերու վրայ շինուած են շատ մը խանութներ — հիներու ծանօթ «ԿԱԼԱԼԻՆՈՑ» անունով — որոնց հասոյթով ոչ միայն հոգացուած է եկեղեցւոյն պիտոյքն, այլ եւ նոյն դրամով զարկ տրուած է կրթական գործին: Գրիգոր աղա կառավարութեան մօտ միակ եւ ազդեցիկ միջնորդը եղած է Հայութեան, եւ յոյսը թշուառութեան մէջ տուայտող, բայց նորէն կառավարութեան հոգեհան տուրքերու համար ձերբակալուող բանտարկեալներուն:

Գրիգոր աղա ըմբոստ ապրումներու եւ ազատ հասկացողութեան միակ մարդն է եղած, որ 1890ական թուականներուն ընթացք տուած է Հնչակեան կուսակցութեան Մալաթիոյ մասնաճիւղին կազմակերպութեան, մինչ ժողովուրդը կը խարխափէր խաւարին մէջ, եւ մաս մը ստրուկ չորպաճիներ կառավարութեան կը մատնէին զինք իբրեւ «Քօմիթէճի», պետութեան դաւաճան:

Գրիգոր Աղա, իբրեւ իր ժամանակի ազդեցիկ եւ ազատատենչ մարդը, միշտ պիտի ունենայ նուիրական տեղ մը բոլոր Մալաթիացիներու սիրտին մէջ անխտիր»:

*Գ. Մելիտինեցիի մտայնութեամբ անած ուրիշներ ալ* «յաւէտ խնկելի անուններ» *կը կոչեն Նափոլէոն Պաղտօեանի, Յակոբ Բէշիշեանի, Գրիգոր*

*Արսլանեանի, Գէորգ Մազմանեանի, Յովհաննէս Պալտօեանի, Յովհաննէս Թիւթճէլեանի, Միքայէլ Թէրզիմանուկեանի, Համբարձում Քէչիչեանի, Յովհաննէս Սարաֆեանի եւ դեռ ուրիշներու անունները*, «որոնք իրենց ազգային ու քաղաքական գործունէութեամբ բարիք եւ օրհնութիւն բերած են Մալաթիոյ հայութեան»: (*Տես ՊԱՊ ՈՒԽՏԻ*, *Թ*. 27, 1941, *Յունիս*, *էջ* 2):

*Եւ «կարգին յեղափոխական» խմբագիրը կը գրէ*·

«Արդարեւ, 1875 թուականներէն մինչեւ 1895-ի Համիտական կոտորածներու սեւ օրերը, Մալաթիոյ Հայութեան այս կարկառուն ներկայացուցիչները հասեր են քաղաքական այնպիսի բարձր դիրքերու եւ պաշտօններու, որ մինչեւ այսօր ալ մեր սիրտերն ու հոգիները կը լեցնեն գոհունակութեամբ ու հպարտութեամբ: Անտարակոյս, որ երէ չըլլար կեդրոնական թուրք կառավարութեան հայադաւ ու հայաջինջ քաղաքականութիւնը, եւ այդ հետեւանքով ալ վրայ չհասնէր 95ի կոտորածը, Մալաթիոյ Հայութիւնը իրեն համար կը ստեղծէր ազգային ու քաղաքական այնպիսի նախանձելի վիճակ մը, որ դարերէ ի վեր չէր ունեցած:

1875-էն մինչեւ 1895-ի շրջանը այնքան բախտաւոր ու բարգաւաճ շրջան մը եղած է Մալաթիոյ Հայութեան համար, որ մինչեւ այսօր ալ Տոքթ. Միքայէլ Քէշիշեան անհուն կարօտով ու երանութեամբ կը յիշէ այդ անդառնալի օրերը: Արձանագրելով այդ փաստը, պէտք է շեշտել սակայն, որ այդ ժամանակաւոր բարգաւաճ շրջանը ստեղծուեր է ոչ թէ թուրք կառավարութեան գիտակցական թոյլտուութեամբ ու բարի կամեցողութեամբ, այլ պարզ անոր համար, որ այդ ժամանակաշրջանին Պոլսոյ թուրք կառավարութեան կողմէ գիտակցական դաւեր լարուած չեն, եւ նամանաւանդ Մալաթիոյ Հայութեան առաջնորդող դէմքերը մօտէն շփման գալով թուրք պաշտօնեաներու, ժողովուրդի եւ անոր աչքի զարնող ներկայացուցիչներուն հետ, իրենց կրթութեամբ, իրենց գիտութեամբ, իրենց բարոյականով եւ վերջապէս իրենց առատաձեռնութեամբ ու գոհողութեամբ բացայայտօրէն գերակշռեր են Թուրքերը, եւ այդ հետեւանքով ալ ստիճանաբար զանազան դիրքերու տիրանալով, իրենց եւ իրենց ազգակիցներուն համար ստեղծեր են տեղական աւելի գոհացուցիչ ու տանելի պայմաններ:

Կ'արժէ նշել այստեղ որ ժամանակաւորապէս այս երեւոյթով աւելորդ անգամ մը եւս կը հաստատուի այն նշմարիտ տեսակէտը, որ հայը իր կրթութեամբ, գիտութեամբ, բարոյականով ու մշակոյթով միշտ բարձր եղած է Թուրքէն, եւ նոյնիսկ անհաւասար պայմաններու մէջ փոխադարձ շփման ու մրցման գալու կարճ շրջաններուն, յաջողեր է ստիճանաբար իրեն ենթարկել Թուրքը: Այս նշմարտութեան բաւարձակ գիտակցութեամբ չէ՞ր որ Թուրքը դարերու ընթացքին իր հպատակներու ֆիզիքական բնաջնջումը ընտրած էր իբրեւ պետական քաղաքականութիւն, եւ անշեղ հետեւողականութեամբ մը զայն գործադրած էր ամէն 20—25 տարին անգամ մը:

Դժբախտաբար, Մալաթիոյ Հայութեան վիճակուեր էր նոյն անողոք ու անկարեկիր ճակատագիրը:

1870—1894 թուականներու համեմատական խաղաղ եւ նոյնիսկ կարելի է ըսել բարգաւաճ շրջանին յաջորդեր էին 95-ի կոտորածի սեւ օրերը, երբ Կարմիր Սուլթանի հայաջինջ քաղաքականութեան զոհ գացեր էին ոչ միայն Պաղտօեաններու, Թիւթէլեաններու, Արսլանեաններու, Քէչիշեաններու, Մազմանեաններու, Եաղուպեաններու, Սարաֆեաններու նման սքանչելի առաջնորդներ, այլ եւ Մալաթիոյ Հայութիւնը թէեւ հերոսաբար կռուած էր ինքնապաշտպանութեան համար, բայց ի վերջոյ տուած էր հարիւրաւոր անմեղ զոհեր, կորսնցուցած էր իր ամբողջ հարստութիւնը եւ մոխիրներու վրայ նստած էր ողբալու համար իր նզովուած ճակատագիրը:

Բայց նորէն պէտք է շեշտել որ բարբարոս Թուրքը իր կոտորածներով չէր կրցած մահացնել Հայու ոգին: Կարճ դադարէ մը յետոյ, սկսուած ազգային կրթական գործը նորէն շարունակուած էր նորահաս թարմ ուժերու կողմէ, դարձեալ վերաշինելու համար աւերակները եւ դարձեալ ծաղկեցնելու համար մոխիրներու տակ թաքնուած հունտերը:»

*Այս տողերը, որ արտագրեցի, ցոյց կու տան թէ* «ՄԱԼԱԹԻՈՅ ՀԱՅՈՒԹԻՒՆԸ 1895ի կոտորածէն առաջ ապրած է 15—20 տարիներու հասնող ժամանակաշրջան մը, ուր վայելած է տեղական համեմատական ազատութեան մը բարիքները» (*ՊԱՊ ՈՒԽՏԻ*, *Թ*. 30, 1942, *էջ* 1):

*Այդ «համեմատական ազատութիւնը» թող ըսած ըլլայ Թուրք կեդրոնական կառավարութեան բարեփոխութենէն կամ Հայոց Հանդէպ որդեգրուած նոր քաղաքականութենէն* (*տես* նոյն), *սակայն կար այս ազատութիւնը, որուն գոյութեան մէջ դեր կատարած էին ազդեցիկ եւ գործունեայ Հայեր*:

«Իրողութիւն է որ Մալաթիոյ Հայութիւնը մասնաւորապէս 1880—1894 տարիներուն ապրած է համեմատականօրէն աւելի տանելի կեանք մը, բայց այդ կեանքը ստեղծուած է իր տաղանդաւոր զաւակներուն անսպառ ջանքերուն եւ ստեղծագործ աշխատանքին շնորհիւ, եւ ոչ թէ Թուրքի հոգեբանութեան բարեփոխման պատճառով: Եւ հոս է որ մեր աչքերուն առջեւ աւելի կը բարձրանան տիտանեան հասակները 1895ի կոտորածէն առաջուան այն առաջնորդող սերունդին, որոնց անբաժանելի անդամներն եղան Նահիոյէնն Պաղտօեան, Յովհաննէս Պաղտօեան, Յովհաննէս Թիւթէլեան եւ Յովհաննէս Սարաֆեան:

Առանք եղած են Հայոց ամենէն երեւելի անդամներն, եկեղեցւոյ եւ դպրոցի պաշտպանները, խեղճերուն ու թշուառներուն օգնողները, հայ անունի. վանքի ու պատիւի պաշտպանները, ազգային զանազան գործերը ղեկավարողները:

Անտարակոյս որ այս հանրածանօթ դէմքերու գործունէութիւնը երբէ սահմանափակուէր միայն հայ կեանքին մէջ, անոնք չպիտի նրնային հասնիլ իրենց փառքի գագաթնակէտին. որով իրենց ունեցած օգտակար ծառայութիւններն ալ պիտի սահմանափակուէին: Բարեբախտութիւն է, որ անոնք շնորհիւ իրենց ստացած կրթութեան, շնորհիւ իրենց բնածին յատկութիւն–

ներուն, տիրապետելով թուրքերէն լեզուին վարած են կառավարական խիստ կարեւոր պաշտօններ, իրենց համար ստեղծած են բարձր դիրք ու լայն շըրջանակ, եւ ժամանակի ընթացքին ձեռք բերելով անվիճելի հեղինակութիւն, ծառայած են իրենց ժողովուրդին ու եկեղեցւոյն հաւատարմօրէն: Առանց դոյզն կերպով նսեմացնելու իր ընկերներուն անունն ու յիշատակը, այս խումբին մէջէն պէտք է մատնանշել մասնաւորապէս Նափոլէոն Պաղտօեանը, որ իր հեղինակութեամբ թէ՛ հայ եւ թէ թուրք ժողովրդեան մէջ մեծ հռչակի տիրացած է, եւ Պաղտօեան անունը տարածած է Մալաթիոյ եւ շրջակայքի ամենախուլ անկիւնները: Ան իր կատարած հանրային շինարար գործերով, որպէս դատարանի օրէնսգէտ անդամ իր տուած արդար դատավճիռներով այնքան ժողովրդականութիւն շահած է, որ Պոլսոյ թուրք կառավարութիւնը անոր շնորհած է սուր մը եւ զայն կրելու իրաւունքը: Որպէս կառավարական դատարանի օրէնսգէտ անդամ, իր խօսքն ու կարծիքը եղած է հեղինակութիւն միւս անդամներուն, ու նոյնիսկ միւփթիին համար, եւ ըստ այնմ ալ անգնահատելի օգտակարութիւններ մատուցած է իր ազգակիցներուն:

Շատ ու շատեր դիմած են իր խորհուրդին, եւ շատ ու շատեր վայելած են անոր արդարակորով պաշտպանութիւնը թուրք դատարանին մէջ:

Նափոլէոն Պաղտօեան շնորհիւ իր բնածին տաղանդին, տիրապետելով թուրքերէն եւ հայերէն լեզուներուն, անվիճելիօրէն եղած է իր ժամանակուան դատարանական օրէնքներու մեկնաբանողը, եւ որպէս օրէնսգէտ, իր հեղինակաւոր խօսքն ու ազդեցութիւնը ունեցած է իր պաշտօնավարութեան տարիներու բոլոր գործերուն վրայ:

Յովհաննէս Պաղտօեան թէեւ չէ ունեցած իր փոքր եղբօր ուսումն ու գիտութիւնը, եւ ոչ ալ վարած է կառավարական պաշտօններ, բայց եղած է քաջ եւ յանդուգն, եղած է տան մատակարարն ու Պաղտօեան կալուածներու վարիչը, նամանաւանդ եղած է յանդուգն առաջնորդը Պաղտօեան անուանի ու հռչակաւոր կարաւանին: Պէտք է հոս շեշտել որ, Պաղտօեան կարաւան ըսել այն ատեն կը նշանակէր Պաղտօեան փառքը փառաբանել: Եղած է ժամանակ մը, որ այդ կարաւանի ջորիներուն թիւը բարձրացած է մինչեւ քառասունի, եւ անոր զանգակներու ղօղանջը Մալաթիայէն տարածուած է մինչեւ Ատիեաման, Պեհեսնի, Ուրֆա եւ Հալէպ, Մալաթիայէն մինչեւ Խարբերդ, Ակն, Արաբկիր, Սեբաստիա եւ մինչեւ Սամսոն:

Երբ նկատի ունենանք որ այս կարաւանի ծնունդն ու զարգացումը տեղի ունեցած է երկրի մը եւ այնպիսի պայմաններու մէջ, որ թուրք բարբարոս կառավարութիւնը խորշակի մը պէս խամրեցուցած է ամէն ծիլ ու ծաղիկ դեռ արեւ չտեսած, այն ատեն վստահօրէն կրնանք ըսել որ Հայու ձիրքն ու տաղանդը միայն կրնան ստեղծել նման գործեր համեմատական կարճ ժամանակուայ մէջ: Բայց այսքանով չի վերջանար Պաղտօեան եղբայրներու փառքը: Անհրաժեշտ է յիշատակել անոնց օրհնուած նոխ սեղանը, որ բաց եղած է անխտիր բոլորին առջեւ: Այդ նոխ սեղանէն կերած են

խարուստն ու մանուանդ աղքատը, գործաւորն ու արհեստաւորը, հաւասարակ Հայը, Թուրքը եւ Քիւրդը անխտիր: Հռչակաւոր եղած են մասնաւորապէս Պաղտօեան տան մէջ սարքուած խրախճանքները, ուր ըմպելիները հոսած են ջուրի պէս, ուր երգն ու նուագը ելեկտրականացուցած են բոլոր ներկաները, եւ ուր թրքական ամենաբարձր պաշտօնեաներ ըմբոշխնած են իրենց կեանքին մէջ չտեսած ուրախութիւնները, աւա՜ղ, քանի մը տարի ետք թըրքայատուկ վայրագութեամբ ՆԱՄԵՐՏՕՐԷՆ յօշոտելու համար իրենց սեղանակիցները:

Յովհաննէս Թիւթէլեան եւ Յովհաննէս Սարաֆեան եղած են Մալաթիոյ հայ երեւելիներէն, վարած են ազգային եւ եկեղեցական զանազան պաշտօններ, թուրք կառավարութեան եւ թուրք հասարակութեան մէջ ունեցած են ազդեցութեան որոշ շրջանակ, եւ խղճմտօրէն ծառայած են իրենց ազգին եւ Հայաստանեայց Եկեղեցւոյ լուսազարդման համար: Ազգային բոլոր հարցերու լուծման մէջ անոնք եղած են անբաժան խորհրդականներ, զոհած են իրենց լաւագոյնը բարենպատակ գործերու համար, օգնած են հայ հասարակութեան իրենց ուժերու ներած չափով, եւ իրաւամբ արժանացած են Մալաթիոյ Հայութեան *երեւելիները* կոչուելու տիտղոսին:

Սակայն, աւա՜ղ, որ երազի մը պէս կարճ եղած է այս հանրածանօթ դէմքերու գործունէութեան շրջանը:

Պաղտօեան եղբայրներ, Թիւթէլեան եւ Սարաֆեան հազիւ իրենց 35—40 տարիքը թեւակոխած, երբ իրենց համար ստեղծած էին բարձր դիրք եւ հեղինակութիւն, երբ անոնք գործնական կեանքի իմաստութեան մէջ թրծուած պատրաստ էին եւ կրնային աւելի մեծ ծաւալով բարենորոգչական գործերու ձեռնարկելով, աւելի մեծ ծառայութիւններ մատուցանել իրենց ժողովուրդին, աւելին, երբ անոնք իրենց մտքի ու հոգիի լոյսովը կը յուսային նոյնիսկ լուսաւորել թուրք առաջնորդներու խաւար էութիւնը, աւա՜ղ... վրայ կը հասնին 95ի կոտորածի սեւ օրերը, Ն. Պաղտօեան եւ Յ. Թիւթէլեան զարշելի դաւադրութեամբ մը կը հրաւիրուին կառավարիչին մօտ, եւ հոն դաւաճանօրէն կը սպաննուին իրենց պաշտօնակիցներուն աչքերուն առջեւ: Յ. Պաղտօեան եւ Յ. Սարաֆեան անվեհեր յանդգնութեամբ դիրքէ դիրք կը մասնակցին 95ի ինքնապաշտպանութեան կռիւներուն[1]:

Բայց, ՄԱՀ ԻՄԱՑԵԱԼ ԱՆՄԱՀՈՒԹԻՒՆ է: Մալաթիոյ հայոց տեղական պատմութեան մէջ յաւէտ անմոռանալի պիտի մնան եւ միշտ պիտի ապրին Նափոլէոն Պաղտօեան, Յովհաննէս Պաղտօեան, Յովհաննէս Թիւթէլեան եւ Յովհաննէս Սարաֆեան:»

*Ահա խոստովանութիւններ որոնք կը հաստատեն թէ այդ հին մարդիկը շրջահայեաց իմաստութեամբ մը եւ Թուրքիոյ կեանքին կատարեալ գիտակցութեամբ գործելով շատ աւելի օգտակար եղան են քան ազգին ճակատագրին հետ արկածախնդիր ճամարտակութիւններով խաղացողները:*

---

(1) *Յ. Սարաֆեան կը նահատակուի հերոսական մահով, իսկ Յ. Պաղտօեան կ'ազատի, բայց քանի մը տարի ետք կը վախճանի:*

## Դ.

# ՊԵՐԼԻՆԻ ՎԵՀԱԺՈՂՈՎԻՆ ՉԱԽՈՂ ԱՐԴԻՒՆՔԸ ԵՒ ՀԱՅ ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆՑ ԿԱԶՄՈՒԹԻՒՆԸ

*Լորտ Տերպիի նախատեսութիւնը իրականացաւ: Պերլինի դաշինքին 61րդ յօդուածը Հայերը պաշտպանելէ աւելի հարստահարութեանց աւելնալուն պատճառ եղաւ եւ Հայերու վիճակը հետզհետէ աւելի վատթարացաւ Օսմանեան Պետութեան մէջ, վասնզի այդ յօդուածը յուսախաբութիւն մը եղաւ եւ Հայերու համար աղէտ մը, քանի որ զայն ձեռք բերելու համար ազգային պաշտօնական մարմիններու ջանքերը կը համոզէին Սուլթան Համիտը եւ իր կառավարութիւնը թէ Հայերը անտարակուսելի կերպով իրենք ալ անջատողական տրամադրութիւններ ունէին:*

*Այլեւս Հայերը դադրեցան ըլլալէ «Հաւատարիմ ազգ» — ինչպէս կը կոչէին Թուրքերը երբեմն մեզ — եւ Թուրք կառավարութիւնը սկսաւ նկատել Հայերն ալ վտանգաւոր տարր մը, որ Թուրքիայէն բաժնուիլ կ'ուզէ, ուստի համապատասխան միջոցներ ձեռք առնել սկսաւ արգիլելու համար այս նոր վտանգը:*

*Թերեւս քաղաքակիրթ պետութիւն մը պիտի աշխատէր գանգատի պատճառները բառնալով Հայերուն տանելի վիճակ մը ստեղծել եւ սիրաշահիլ, սակայն Թուրքերը այդ ըմբռնումը ունենալէ շատ հեռի էին: Ուստի իրենց ծանօթ մեթոտներուն դիմեցին եւ Հայերը ընկճելու համար հարստահարութիւններու սկսան եւ իրականացուցին Լորտ Տերպիի նախատեսութիւնը:*

*Հայերը դժբախտաբար չտեսան այս վտանգը, որ Գրիգոր Օտեան տեսաւ եւ համապատասխան միջոցներ ձեռք չառին հանդարտեցնելու համար Սուլթան Համիտի զայրոյթը:*

*Ընդհակառակը զայն աւելի գրգռեցին սխալ ըմբռնուած հայրենասիրութեամբ մը:*

*Կասկածի տակ դնել չեմ ուզեր այդ ձախող քայլերը առնողները: Անոնցմէ ոմանց հայրենասիրութիւնը եւ ազգասիրութիւնը ամէն տարակոյսէ դուրս են, սակայն նոյնպէս անտարակուսելի են նաեւ անոնց անգիտակցութիւնը, համբակութիւնը, անխորհուրդ անշրջահայեացութիւնը եւ անհեռատեսութիւնը:*

*Անոնք կը կարծէին որ մեր անպատրաստ եւ անգիտակ ժողովուրդը*

*իրենց մոգական շունչով պիտի կարենար իր Թմրութենէն արթննալ եւ հրաշքով մը խորտակել իր գերութեան շղթաները։*

*Այս միամիտներու եւ երազատեսներուն գլուխն էր Խրիմեան, որ Հայաստանի իրական կացութեան ամենէն մօտէն տեղեակ եղող մարդերէն մէկը եղած է, բայց ինչպէս կ'երեւի, չէ կրցած երկրին վիճակը եւ անոր մէջ Հայոց դիրքը եւ մանաւանդ ոյժը հասկնալ եւ ըմբռնել։*

*Եւ որովհետեւ Պերլինի մէջ ըսուած էր իրեն եւ իր պատգամաւոր ընկերներուն թէ զէնքով կրնար ստացուիլ ազատութիւնը,* 1878*էն ետքը քարոզել սկսած էր «երկաթէ շերեփ»ներ՝ զէնքեր պէտք են «հերիսա»ն՝ ազատութիւնը ձեռք բերելու համար։*

*Խրիմեանի կ'օժանդակէր Վանայ մէջ Մկրտիչ Փորթուգալեան — իրեն նման խանդավառ մը — որ քաղաքին լսարաններուն մէջ բանախօսութիւնով Վասպուրականի հայ ժողովուրդը կը գրգռէր ընդդէմ Թուրքերուն եւ Քիւրտերուն՝ հակառակ պետութեան յայտնի քաղաքականութեան։*

*Այդ օրերուն Վանի մէջ ապրող եւ Խրիմեանի հիացող եւ Փորթուգալեանի աշակերտներէն Փանոս Թէրլէմէզեանը (յայտնի նկարիչը), գնահատելի անկեղծութեամբ մը գրած է թէ* «Հայերս անտակտ էինք մեր հայրենասիրական ցոյցերուն մէջ, որոնք ի հարկէ չէին վրիպեր կուսակալի ուշադրութենէն։ Հայրիկն (իմա՛ Խրիմեան) անգամ, որ Վարագի վանահայրն էր, կարծես թէ կը քաջալերէր այդ ցոյցերը...։ Ազգային Սահմանադրութեան տօնակատարութիւնները շատ վրան-բաց էին...։ Տասը հազար մարդով կ'երթայինք Վարագ, ազգային դրօշակներ պարզած, հայրենասիրական երգեր երգելով... Փորթուգալեանն ալ ջահելութիւններ կ'ընէր։ Քննութիւններու ժամանակ, կուսակալի ներկայութեանը, աշակերտները Գամառ-Քաթիպայի թրքատեաց ոտանաւորները կ'արտասանէին...» (*տես Միքայէլ Վարանդեան*, Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, *Ա. հտ., Փարիզ*, 1922, *էջ* 30)։

*Այս անօգուտ եւ յիմար ցոյցերը ոչ մէկ օգուտ ունէին եւ ոչ մէկ դարման կը բերէին Հայաստանի հայ բնակչութեան դառն վիճակին, այլ ընդհակառակը աւելի կը ծանրացնէին Հայոց դժբախտ վիճակը։*

*Մկրտիչ Փորթուգալեան — Փանոս Թէրլէմէզեանի բացատրութեամբ — իր «ջահելութիւն»ներով եւ անխորհուրդ եւ խելար քարոզութիւններով ամենէն առաջ անկարելիութեան մատնեց իր Վանի կրթական գործունէութիւնը, որ օգտակար էր։*

*Ուրիշներ հայրենասիրաբար կամ խաչապաշտաբար ետ չէին ուզեր մնալ նման քարոզչութիւններ կատարելէ եւ երբեմն ալ գործադրելէ կարգ մը արարքներ, որոնք Հայոց կացութիւնը աւելի կը ծանրացնէին։*

*Միւս կողմէ Պերլինի* 61*րդ յօդուածը, իբր ստացուած իրաւունք նկատելով, Ներսէս Պատրիարք եւ իր շրջապատը, լուրջի առին Եւրոպայի շահագրգռութիւնը, եւ Հայաստանի հանդէպ դրական տրամադրութիւն մը տեսնել կարծեցին եւ այդ* 61*րդ չարաղէտ յօդուածէն օգուտ ակնկալեցին եւ*

գիմումներ կատարեցին թէ՛ Բ. Դրան եւ թէ՛ Պերլինի դաշնագիրը ստորագրող մեծ պետութիւններու, որոնք պարբերաբար եւ ձեւականօրէն յիշատակագիրներ կը ներկայացնէին Բ. Դրան, մինչ Սուլթան Համիտ գիտակ եւրոպական պետութեանց խաղերուն, կ'արհամարհէր անոնց սպառնալիքները եւ ոչ միայն չէր գործադրեր բարեկարգումները, այլեւ Քիւրտերը կը գրգռէր եւ անոնց միջոցաւ հարստահարութիւնները կը սաստկացնէր Հայերու դէմ:

Ներսէս Պատրիարք որ յեղյեղուկ քաղաքականութիւն մը վարած էր չէր կրցած ուղղութիւն պահել, ծայրայեղ թրքասիրութենէն ռուսասիրութեան անցած եւ ռուսատեացութենէն անգլիասիրութեան մղուած եւ միամիտ գործիք մը եղած էր Կ. Պոլսոյ անգլիական դեսպանին ձեռքը, շփոթութեան մատնուեցաւ երբ Կիպրոսի դաշինքը երեւան եկաւ եւ Անգլիա դարձաւ պաշտպան Թուրքիոյ:

Ներսէս Պատրիարք եւ իր խորհրդականները դիւանագիտական փորձառութիւններ ըրած էին, երկու լարի վրայ խաղալով. Պերլինի վեհաժողովէն վերջ Հայաստանի կացութեան աւելի ծանրանալը տեսնելով, այս անգամ ալ փորձեց Բ. Դրան դիմումներ կատարելով դայն պարտաւորել գործադրելու 61րդ յօդուածը, յոյս դնելով եւրոպական դիւանագիտութեան աջակցութեան վրայ, որ դժբախտաբար չյացուեցաւ:

Ռուսական բանակներու Հայաստանէն քաշուելէն ետք հոն ստեղծուեցաւ դժնդակ կացութիւն մը: Թուրքերու եւ Քիւրտերու վրէժխնդրութիւնը եւ սովը մեծ տագնապի մը մատնեցին Պատրիարքը եւ վարչութիւնը:

Ներսէս Պատրիարք տեսնելով Բ. Դրան անտարբերութիւնը, որ շատ բնական էր, քանի որ Կիպրոսի դաշինքով ապահովուած էր, ձեւական հրաժարականով մը ուզեց ազդել, անշուշտ միշտ յոյս դնելով եւրոպական միջամտութեան վրայ:

Այս վարչական ժողովները այս հրաժարականը օգտագործելով դիմում կը կատարեն պատգամաւորութեամբ մը Եպարքոսին եւ կը խնդրեն վերջ տալ հարստահարութեանց, որոնք պատրիարքական հրաժարականին պատճառն էին:

Եպարքոսը՝ ինչպէս կ'երեւի՝ պատգամաւորութեան Ազգ. Ժողովին մատուցած տեղեկագիրէն (տես ԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ ԱԶԳ. ԺՈՂՈՎԻ, 1878, էջ 344) խելք վերջ պատգամաւորութեան բաւական կծու դիտողութիւնները, որ շատ յարմար չէին պարագային, ինքն ալ դառնութեամբ արտայայտուած է:

Անիկա ըսած է թէ «շիտակն ըսելու համար թէ՛ մէկ կողմէն եւ թէ միւս կողմէն շատ բաներ կ'ըսեն ինձ. դժբախտաբար թէ՛ մին եւ թէ միւսը չափազանցութիւններով լեցուած են: Ես թէեւ նոր եկած եմ այս պաշտօնին եւ կատարեալ տեղեկութիւն մը ունենալ այս բաներուն վրայ շատ դժուար է ինձ համար, սակայն ես պաշտօնեայ մ'եմ որ ամէն հասարակութիւն հաւասար նկատելով ամէնուն հանգստութիւնը եւ բարելաւութիւնը հաւասարապէս պիտի մատակարարեմ, իմ ճիգերս պիտի պսակուի՞ն, իբաւ որ չեմ

գիտեր, բայց սա պէտք է գիտնալ որ ասանկ ծանր ժամանակի մը մէջ այս երկրին օսմանեան ամէն կարգի հասարակութիւնները, կ'ուզէ Հայ ըլլայ, կ'ուզէ Արաբ, կ'ուզէ Թուրք եւայլն, պարտաւոր են կառավարութեան ջանիցը օգնել եւ ոչ թէ դժուարութիւններ յարուցանել· դժբախտաբար ինձ տըրուած տեղեկութիւններն այնպէս կը ցուցնեն թէ Հայոց ազգը, որ իր դարաւոր հաւատարմութեամբը միշտ օգտակար հանդիսացած է Օսմանեան պետութեան, սոյն միջոցին շեղած է այս շաւղէն, ինչպէս ուրիշ Օսմանցիներ ալ, եւ կը դիմէ օտար աղբիւրներու եւ անոնցմէ շահ կը սպասէ· օտարը ի՞նչ կրնայ ընել, օտարը իր շահերուն համեմատ կը թելադրէ զմին կամ զմիւսը: Պէտք է գիտնայ Հայոց ազգը, որ օտարներուն ամէնն ալ համաձայն չեն Օսմանեան կայսրութեան օգտին ու շահուցը· ուստի պէտք չէ անոնց գործիք ըլլալ, այլ ընդհակառակը պէտք է գիտնալ թէ այս աղէտից դարմանը Օսմանեան կառավարութիւնը միայն ի գործ պիտի կրնայ դնել, որուն ամէն կարգի հասարակութիւնք պէտք է գործակից ըլլան, որպէսզի կառավարութեան գործը դիւրանայ· այս նպատակաւ ահա երկու քոմիսիոն կարգեցի մէկը Եւրոպական Թուրքիոյ համար, որուն նախագահը քրիստոնեայ փաշա մըն է, եւ միւսը Ասիական Թուրքիոյ համար, որուն նախագահը հարուստ[1] եւ արդարասէր թուրք փաշա մըն է· ասոնց լիազօր իշխանութիւն պիտի տամ որ մանրակրկիտ կերպով այդ չարեաց պատճառները քննեն եւ հեղինակները գտնելով, անմիջապէս եւ առանց աչառութեան պատժեն եւ այն բաները, որոնց քննութիւնը կեդրոնին կը վերաբերի, պիտի տեղեկագրեն մեզ» *եւայլն*:

*Բոլոր այս խօսքերը խօսք մնացին եւ ոչ մէկ բարւոքում տեսնուեցաւ, վասնզի Թուրք կառավարութիւնը այլեւս Հայերը հալածել սկսած էր եւ Հայերը ոչ մէկ ջանք կ'ընէին գոյացած խրամը գոցելու համար, այլ ատելութիւնը կը սաստկացնէին հրապարակով պոռպռալով Պերլինի* 61*րդ յօդուածին գործադրութեան համար Ազգ. Ժողովին մէջ:*

*Այնպէս որ Հայաստանի կացութիւնը անտանելի դարձաւ եւ Հայերը մղեց յուսահատական միջոցներու եւ անխորհուրդ քայլեր առնելու:*

*Այսպէս, թէ՛ հայ պաշտօնական մարմինները եւ թէ՛ անպաշտօն եւ անպատասխանատու եւ իրենց ըրածը եւ անոր հետեւանքները նախատեսելու կարողութենէն զուրկ անհատներ, գրութիւններով եւ բանախօսութիւններով մղեցին ազգը դէպի ապստամբութիւն, առանց ոեւէ նախապատրաստութեան:*

*Առանց հաշուելու Պերլինի վեհաժողովէն առաջ* 1861–1862 *Թուականներու Միքայէլ Նալպանդեանի եւ Յարութիւն Սվաճեանի կազմած գաղտնի մարմինը, որ* 1862*-ի Զէյթունի ապստամբութիւնը կազմակերպեց եւ* 1872*-ին Կ. Պոլսոյ մէջ կազմուած եւ գաւառները տեղաւորուած վերոյիշեալ* Վարագդատեան Ընկերութիւնը *եւ անոր ժամանակակից նոյնպէս* 1872*-ին Վասպու–*

---

*(1) Յատկանշական է այս բառը: Կ'երեւի թէ եպարքոսը կ'ուզէ ըսել թէ յղփացած է դրամով եւ կաշառք չ'առներ...:*

*րականի մէջ ծնունդ առած «ՄԻՈՒԹԻՒՆ Ի ՓՐԿՈՒԹԻՒՆ» գաղտնի ընկերութիւնը «ՄԱՀ ԿԱՄ ԱԶԱՏՈՒԹԻՒՆ» նշանաբանով, որուն մասին գրեթէ բան մը չենք գիտեր, 1882-ին արդէն գործել սկսած էր Կարինի մէջ «ՊԱՇՏՊԱՆ ՀԱՅՐԵՆԵԱՑ ԳԱՂՏՆԻ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ ԲԱՐՁՐ ՀԱՅՈՑ»ը եւ 1885-ին «ՓՈՔՐ ՀԱՅՔԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆԸ», որուն նախնական օրօրանը Մարզուանի Գոլէճն էր:*

*Առանցմէ զատ կային միութիւններ եւ յեղուզակային խումբեր, գրեթէ անկազմակերպ եւ պատահական, որոնք պատասխանատու քայլեր կ'առնէին եւ ապա կը վտանգէին, յանդգնութեամբ եւ ինքնագլուխ:*

*Ճիշդ սոյն Թուականներուն Օսմ. կառավարութիւնը կը դիմէր հակամիջոցներու՝ 1885-ին տարագրելով Վանէն նախ Մկրտիչ Փորթուգալեանը եւ ապա հեռացնելով Խրիմեանը:*

Հայոց Հայրենասիրական Միութիւնը, *որ անուն մըն է սոսկ, չափաւոր առաջադրութիւններ ունէր, վասնզի կը բաղձար* «Վարչական բարենորոգումներ մտցնել Թիւրքահայաստանի մէջ, հայ ժողովրդի տեղական պէտքերին համեմատ»:

*Հակառակ անոր որ անոնք չէին ներկայացներ յեղափոխական կազմակերպութեան մը նկարագիրը, դժգոհ իրմէն՝ իր վարկաբեկուելէն ետք բաժնուեցան եւ Վասպուրականի մէջ կուսակցութեան մը վերածուեցան:*

*Փորթուգալեանի չափաւորութենէ եւ անձնիշխան գործունէութենէն դժգոհ, ինչպէս երկիրին յուսահատ դրութենէն ազդուած, երեւան եկան ուրիշներ եւս, որոնք աւելի յեղափոխական մտայնութեամբ գործունէութեան մը լծուիլ փորձեցին:*

*Այսպէս, Գաբրիէլ Կաֆայեան (Շմաւոն) եւ Ռուբէն Խանազատեան նախաձեռնարկ կ'ըլլան կազմելու յեղափոխական կուսակցութիւն մը (տես Խանազատի ՅՈՒՇԵՐԸ, ՀԱՅՐԵՆԻՔ Ամսագիր, 1927):*

*Նազարբէկ, որ Լեռենց ստորագրութեամբ կ'աշխատակցէր ԱՐՄԵՆԻԱ-ի, ուրիշ քանի մը ռուսահայ ուսանողներու հետ, որոնք նոյնպէս դժգոհ էին Փորթուգալեանի սեղմ ու մեղմ ծրագիրէն, միացան նոր կազմուած մարմինին, Փորթուգալեանը մինակ ձգելով իր համեստ ծրագիրին հետ:*

*Այս նոր խումբը, ինչպէս նաեւ ուրիշ մի քանի երիտասարդներ (Մինաս Ջերազ, Կարապետ Յակոբեան, Միհրան Սրվաձը եւ այլ) հետզհետէ սկսան հրատարակել հայերէն, ֆրանսերէն եւ անգլերէն թերթեր:*



# Ե.

# ՀԱՐՍՏԱՀԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ ՄԱԼԱԹԻՈՅ ԵՒ ՇՐՋԱԿԱՅԻՑ ՄԷՋ

*Մալաթիա իբր հայաբնակ քաղաք մը զերծ չէր կրնար մնացած ըլլալ այս հազարումէկ տեսակ հարստահարութիւններէն եւ կեղեքումներէն, որոնց ենթարկուած էին բոլոր Հայերը Թուրքիոյ մէջ:*

*Այդ հարստահարութիւնները, որոնք ընդհանրական հանգամանք մը ունէին 1839-ի* ԹԱՆԶԻՄԱԹԷՆ *եւ 1856-ի* ԽՍԼԱՀԱԹ*ի հրովարտակէն առաջ եւ կը գործադրուէին գրեթէ Օսմանեան Պետութեան բոլոր բաղկացուցիչ տարրերու նկատմամբ — նոյնիսկ բացառութիւն չընելով իսլամներուն, կամաց-կամաց կեդրոնացան Ասիական Թուրքիոյ եւ մասնաւորապէս արեւելեան մասին՝ այսինքն Հայաստանի հայ բնակչութեան վրայ:*

*Այս մասնաւորումի գլխաւոր պատճառն այն էր որ Անատոլուի մէջ Հայերը իբրեւ ամենէն առաջընթաց ազգը ամենէն կանուխ արթնցած եւ ամենէն առաջ բողոք բարձրացուցած էին Թուրք կառավարութեան դէմ:*

*Հոս պէտք չկայ կարծեմ Հայկական Խնդրոյն ստեղծուելուն բոլոր ծալքերը ներկայացնել, վասնզի շատ ծեծուած նիւթ մըն է, որ շատերու կողմէ հանգամանօրէն բացատրուած է:*

*Միայն երկու բառով բացատրելու համար խնդիրը՝ ըսեմ թէ հետզհետէ աւելի մեծցաւ խնդիրը եւ անդարմանելի դարձաւ:*

*Մէկ խօսքով Հայերը մաքառեցան օրէ օր աւելի մեծ ճիգերով օսմանեան կայսրութեան դէմ՝ զայն հարկադրելու համար որ Հայոց կեանքը, ինչքը եւ պատիւը ապահովէ բարենորոգումներով, եւ Բ. Դուռը հետզհետէ աւելի խիստ ճնշումներով ուզեց Հայոց բողոքը խեղդել եւ զանոնք ճնշել:*

*Մասնաւորապէս Կարմիր Սուլթանը Համիտ Բ., որուն գահակալութեան սկիզբէն իսկ «Հայկական Խնդիր»ը ստեղծուեցաւ եւ եւրոպական դիւանագիտութեան կողմէ շահագործուեցաւ, անշուշտ ի նպաստ իրենց, ընդգրկեց որոշ ծրագիր մը նախընթաց փորձառութիւններու վրայ, եւ աշխատեցաւ սաղմին մէջ խեղդել խնդիրը եւ տեղի չտալ Հայերու պատճառով եւրոպական միջամտութիւններու եւ չարծարծելու խնդիրը, որպէսզի օր մը Թուրքիայէն հող մը չանջատուէր Հայաստան մը կազմելու համար:*

*Սուլթան Համիտ կամ իր դիւանագիտական խաղերուն խորհրդականը Սայիտ փաշա, երբեմն իր Ա. քարտուղարը եւ ետքը նեղ օրերու Եպարքոսը, որուն հետ խնդիրներ ալ ունեցաւ, մինչեւ անգլիական դեսպանատան ապաստան փնտռել տալու աստիճան, բանաձեւեցին «ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՐՑԷՆ ԱԶԱՏԵԼՈՒ ՀԱՄԱՐ ՀԱՅԵՐԷՆ ԱԶԱՏՈՒԵԼՈՒ Է» սկզբունքը եւ ամէն բան ըրին ատանց իրարանցում առաջ բերելու, եւ ատանց աղմուկ հանելու, (որպէսզի Եւրոպա չմիջամտէ)՝ իրագործելու այս ծրագիրը:*

Ասոր համար հետզհետէ աւելի կազմակերպուած միջոցներով մաքառեցան, ջլատելու համար Հայերու ապագայ հաւանական ապստամբութիւնը, որ պարզապէս մղձաւանջ մը եղաւ Սուլթան Համիտի համար։

Այս վիճակին իբր հետեւանք Հայերը սկսան արտագաղթի, ինչ որ գոհունակութեամբ կը դիտէր Սուլթան Համիտ, որ իր պետութեան մէջ Հայերու թիւը նուազագոյնին իջեցնելու կ'աշխատէր։

Նոյնպէս Սուլթան Համիտ սկսաւ տնտեսապէս կեղեքել եւ աղքատացնել հայ տարրը՝ անոնց նիւթական բարօրութեան դէմ արգելքներ յարուցանելով։

Հետեւաբար ընդգրկուեցաւ անխտիր Հայերը հարստահարելու քաղաքականութիւն մը առանց նկատի առնելու թէ այս հալածանքները աւելի զայրոյթ առաջ կրնային բերել եւ ըմբոստական արարքներու տեղի տալ, ինչ որ անխուսափելի էր, քանի որ յեղափոխական գործունէութիւնը հակառակ սահմանափակուելու՝ աւելի կ'արծարծուէր։

Օսմանեան պետութեան վարիչներու այս ներքին քաղաքականութիւնը իր անդրադարձութիւնը ունեցաւ նաեւ Մալաթիոյ Հայոց, հակառակ անոր որ Մալաթիոյ մէջ ոեւէ յեղափոխական շարժում չէր եղած եւ արթնութեան ոեւէ նշան չէր տեսնուած։ Մալաթիոյ մէջ ժողովուրդը բոլորովին անպատրաստ եւ թմրած վիճակ մը ունէր, հակառակ անոր որ հոն ալ Հայերը հալածանքներու առարկայ եղան, նոյնիսկ հայկական խնդիր մը կամ հարստահարութեանց դէմ Հայերու կողմէն դժգոհութիւններու սկիզբ առնելէն առաջ։

Մալաթիա այն հազուագիւտ վայրերէն մէկն էր, որուն Հայերը կա՛մ այդ հարստահարութիւնները շատ բնական եւ սովորական բան մը նկատելով Կ. Պոլսոյ Պատրիարքարանին գլուխը ցաւցնել չեն ուզած, կա՛մ Թուրք կառավարութիւնը Մալաթիոյ Հայերով զբաղելու պէտք չէ տեսած։

Որովհետեւ ի՞նչ կերպով կարելի է մեկնել սա իրողութիւնը թէ Թրքահայաստանի հարստահարութիւններու պատկանող գրեթէ հարիւրամեայ շրջանի մը (1801—1888) պատկանող հարստահարութեանց վաւերագիրներու ճոխ հաւաքածոյի մը մէջ (տես ԴԻՒԱՆ ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ, Գիրք ԺԳ., ՀԱՐՍՏԱՀԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ ՏԱՃԿԱՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ, տպ. 1915 Թիֆլիս) մէկ հատ բողոք գոյութիւն չունի Մալաթիացիներու կողմէ։

Իսկ 1872ին Խրիմեանի եւ 1876ին Ներսէս պատրիարքի ներկայացուցած հարստահարութեանց տեղեկագիրները, որոնց վրայ վերը երկարօրէն խօսեցայ, կը հաստատէին որ թէեւ Մալաթիոյ մէջ այնքան չեշտուած չէր հայահալած միջոցներու կիրարկումը, սակայն անիկա միշտ գոյութիւն ունեցած էր հոն, քանի մեր բողոքները աւելի բարձրաղաղակ ներկայացուցած եւ քանի աւելի աղմուկ հանած էին, այնքան աւելի շատ ճնշիչ միջոցներ ձեռք առնուած էին Թուրք կառավարութեան կողմէ։

Անշուշտ ի վիճակի չեմ հոս բոլոր հարստահարութեանց հետզհետէ աւելի յաճախ եւ աւելի սաստիկ դէպքերը ներկայացնել, սակայն գրեթէ բո-

*լրումին անծանօթ մնացած եւ չհրապարակուած կարգ մը դէպքերու ծանօթացած եմ՝ օգտուելով պաշտօնական վաւերագիրներէ, որոնք հոս պիտի ջանամ ներկայացնել՝ հաստատելու համար թէ Մալաթիա ալ Համիտական դաժան վարչաձեւին տակ ենթարկուած է այն հարուածներուն, որոնք կ՚ահաբեկէին բոլոր Թուրքիոյ Հայերը:*

*Այսպէս, Կարապետ քհն. Պէննէեան իր Մալաթիոյ համառօտ տեղագրութեան մէջ (տպ. Պէյրութ, էջ 39) կը պատմէ թէ 1866ին* «անուանի հազարապետ Ռահիմ պէկ գալով», *Աղճատայի* «Քիւրտերը նուաճած եւ հին առուն[1] նորոգել ու բարեփոխելով 18 ժամուան տեղ ջուր իջուցած, եւ այլեւայլ գիւղերէ մարդիկ բերելով շատ մը գիւղեր հաստատած է: Շինած է նաեւ քաղաքէն յարեւմուտք 6 ժամ հեռաւորութեան վրայ ընդարձակ զօրանոց մը, որ հիմա Դ. զօրաբանակի (*օրտու*) իրաւասութեան տակ Չիֆթլիկի Հիմայուն (*Արքունի Ագարակ*) անունով ծանօթ է»:

*Պէննէեան քհնյ. իր այս տողերէն ետք կը յարէ թէ* «այս ագարակը խիստ նպաստամատոյց եղած է Մելիտինեցւոց, առատ բրինձ, ցորեն եւայլն արտադրելով»:

*Նման տողեր ունի Նահատակ քահանան իր ընդարձակ ձեռագիր տեղագրութեան մէջ, սա պզտիկ յաւելուածով: —* «Այս ագարակը հիմա Միլֆիյէի անցած ըլլալով գրեթէ փլելու վիճակին հասած է» (*էջ* 41):

*Բրոֆ. Որբերեան նաեւ իր տեղագրութեան մէջ (տես* Բիւրակն, 1900, *էջ* 69) *կը խօսի այս ագարակին վրայ, ճշդելով անոր դիրքը եւ մանաւանդ տարածութիւնը, որ 20 մղոն երկայն եւ 18 մղոն լայն տարածութիւն մը ունէր: Անոր մէջ 30ի չափ գիւղեր ցրուած էին:*

*Սուլթան Սույուն գլխաւոր գետակն էր, որ կը ջրէր արտերը եւ որուն եզերքը, գեղատեսիլ դիրքի մը վրայ, զինուորական պաշտօնեաներու բնակարանները, ախոռները, ամբարները, ջրաղացքները շինուած են, վասնզի ագարակը Դ. զօրաբանակին հսկողութեան տակ կը գտնուէր:*

*Բրոֆ. Որբերեան ալ անշուշտ առ ահի կը յարէ թէ* «Մալաթիոյ համար մեծ օրհնութիւն մը եղած է ան»:

*Մինչ իրականութիւնը այն է որ այդ ագարակը Սուլթան Համիտի անձնական գանձուն սեփականութիւնն էր եւ 1891ին կատարուած պաշտօնական տեղեկագրութեան մը համաձայն 1876ին հաստատուած էր Դ. զօրաբանակէն: Անիկա կը բաղկանար 50 կտորէ աւելի արտերէ, 160,000 ոսկեդրամ դահեկան արժէքով, գրեթէ ամբողջովին Հայերէն գրաւուած:*

*Սուլթան Համիտի գահընկեցութենէն վերջ իր յաջորդը Սուլթան Մուհամէտ Րէշատ, այս ագարակը դարձուց պետութեան (Գեր. Անդրէաս վրդ. Ալեքսանդրեան,* Պատմութիւն Սեբաստիոյ, *էջ* 397), *բայց ոչ անոնց, որոնց*

---

(1) *Հին առուն Սապրի Մուսթաֆա փաշայէ շինել ձեռնարկուած է եւ կէսկատար ձգուած:*

հողերը բռնագրաւելով խլրացուցած էր Համիտ:

Թուրքերը սահմանադրական շրջանին մէջ ալ ահա այսպէս կը գործադրէին արդարութիւնը:

Չէ մի՞ որ կեաւուրին մալը իսլամին հելալ էր:

1890ական Թուականներէն ետք երբ այլեւս Հայերը դարձած էին բոլորովին կասկածելի, Մալաթիա, ուր տակաւին այնքան ծանր դէպքեր չէին պատահած, կը սկսի որոշ կերպով հալածանքը, որուն առաջին ազդանշանը կ՚ըլլայ Սուլթան Սույուի ագարակին հողերուն գրաւումը:

Իսկ Մալաթիայէն 26 Ապրիլ 1895 Թուականով Ազգ. Պատրիարքարան ուղղուած նամակէ մը կը տեղեկանանք որ չորս (4) խանութներ, որոնք ազգային կալուած էին, այրեցուեր ըլլալէ ետք չինուած էին, սակայն Իտարէի ժողովի անդամ եւ Թաղապետական փոխ-նախագահ Պէթրօ-զատէ Ահմէտ 5—6 ամիս առաջ այդ կրպակները բռնութեամբ եւ առանց փոխարինութեան քանդած եւ հրապարակի վերածած էր:

Նոյնպէս 1896ին Պատրիարքարան տեղեկագրուած է որ Սամոսատի Հայերէն 70 տուն իսլամացած են, անշուշտ ջարդի սպառնալիքին տակ:

Նոյնպէս 1896 Դեկտեմբեր 19 Թուականով, նամակով մը կը տեղեկագրուի թէ Հեքիմ խանէն 70 տուն Հայեր, որ նախապէս ջարդի ատեն իսլամութիւնը ընդունած էին, յարած են կաթոլիկութեան:

Նոյնպէս 13 Մարտ 1896ին Մալաթիայէն Ղեւոնդ վրդ. Հեքիմեան կը գրէ թէ Օրտուզեցի Խրիկին օղլու Հանէս, Ատանա տարած եւ 150 լիրայի ծախած է Հեթում Թագաւորի Աւետարանը, որ Մայր եկեղեցիին սեփականութիւնն էր, եւ ո՞վ գիտէ ինչպէս ձեռք անցուցած էր: Նոյն տարուան 27 Փետրուար 1897ի ջարդին Պեհեսնէի Պէլվէրէն գիւղէն 15 տունի չափ Հայեր բռնի կրօնափոխ եղած են ջարդերու ժամանակ եւ չեն համարձակիր դառնալ կրկին քրիստոնէութեան, հակառակ կառավարութեան տուած ազատութեան, վասնզի 350 Քիւրտերու մէջ կը գտնուէին: Ասոնք ամէնքն ալ ջորեպան էին եւ կը փափաքէին Ատանա կամ Այնթապ փոխադրուիլ, ազատօրէն քրիստոնէութեան դառնալու համար եւ Օրմանեան պատրիարքի դիմում կ՚ընէին:

1900 Յունուարի զինուորական տուրքերու համար անօրինակ խստութիւններ կը գործադրուէին Մալաթիոյ, ինչպէս նաեւ Հիւսնի Մանսուրի մէջ: Այս վերջին քաղաքին մէջ շատ մը Հայեր կը բանտարկուէին (12 Յունուար 1900ին գրուած նամակի մը համաձայն) և Հայերուն ապրանքները եւ կարասիները կը գրաւուէին (20 Յունուար 1900ի նամակ):

Կարապետ քհնյ. Ժամկոչեան եւ Գրիգոր քհնյ. Տէր Ներսէսեան 26 Յունուար եւ 8 Փետրուար 1900 Թուականով նամակներով կը տեղեկացնեն թէ այս արտասովոր հալածանքներուն վարիչն էր Մալ Միւտիրի Հաճի Մուհամէտ Հիլմի:

Հիւսնի Մանսուրի Հայոց երեք հոգեւոր պետերը հաւաքական գիրով այդ արարքներուն համար Հայոց Պատրիարքարանին, Հայ Կաթոլիկ Պատրիարքարանին եւ Բողոքականաց Ազգապետարանին դիմում կը կատարեն:

Օսմանեան պատրիարք այս խնդրին համար կը դիմէ Կայսերական Պալատ եւ Ներքին գործոց նախարարին, բայց ի՞նչ արդիւնք ունեցած ըլլալը չենք գիտեր։

Պատահօրէն ձեռք անցուած այս նամակներուն պէս ապահով եմ ուրիշ բազմաթիւ նամակներ գրուած են առանց նկատողութեան առնուելու կառավարութենէն, այնպէս որ միշտ շարունակուած են հարստահարութիւնները նոյնիսկ քաջալերութեամբ կառավարութեան, որ հակահայ իր հալածանքները այնքան առաջ տարած է որ ինչպէս յայտնի է, 1895—1896ին Անատոլուի բոլոր քաղաքներուն մէջ ջարդեր կազմակերպած է։

Մալաթիան, ինչպէս պիտի տեսնուի, անկէ ալ դերծ չէ մնացած եւ 15 Նոյեմբեր 1895ին սկսած ջարդի մը, հակառակ գեղեցիկ ինքնապաշտպանութեան մը, որ հինգ օրեր տեւած է, 1000 զոհեր տուած է։

Այնքան նուիրագործուած սովորութիւն եղած էր Հայերը կեղեքել, հարստահարել եւ նոյնիսկ սպաննելը որ 1908ին հռչակուած խաբեպատիր Սահմանադրութենէն վերջն ալ շարունակուած են այս հարստահարութիւնները։

Պալքանեան պատերազմէն վերջ երբ Արեւելեան խնդիրը եւրոպական դիւանագիտութեան սեղանին վրայ եկաւ եւ Ամենայն Հայոց Կաթողիկոսի կողմէ Պօղոս Փաշա Նուպարի նախագահութեամբ կազմուած Ազգային Պատուիրակութիւնը դիմումներ կատարեց, այդ առթիւ ցոյց տալու համար թէ Օսմանեան Սահմանադրութիւնը բնաւ չէր կրցած Հայերու կեանքը, ստացուածքը եւ պատիւը պաշտպանել, կազմուած են վաւերագիրներու հաւաքածոներ այն հարստահարութիւններուն, որոնք 1908էն ետք գործադրուած են եւ տպագրուած են ֆրանսերէն ինը տետրակներու շարքով մը (La situation des Arméniens en Turquie exposée par des documents, 1908—1912)։

Անոնց մէջ կը տեսնուի որ Ա. 10 Փետրուար 1908ին հաղորդուած է թէ «Մեր բոլոր յոյսերը զինուորական տրոց կանոնաւորման անկէ կախուած են։ Այս տուրքը կը պահանջուի վերջին ծայր խստութեամբ, առանց բնաւ հաշիւ առնելու գոյղն չափով ժողովուրդի թշուառութիւնը։ Նոյնիսկ անոնք, որ հացի կտոր չունին ուտելու համար, կ՚առաջնորդուին ոստիկաններով բանտ» (5 տետր., էջ 36)։

Բ. Յուլիս 1908ին Քեախդէի Հալպիչ գիւղին մէջ սպաննուած են երկու Հայեր, քիւրտ Սիլէ մոլլայի, Ալի Ռամազանի, Օսման Պեքիր եւ Սիլէ Մահմուտի կողմէ, թելադրութեամբ Նարինճացի Հաճի Ապուզար Աղայի որդի Վեհաբի եւ իր եղբօր Սապրիի։ Սպանութիւնները կատարուած են այն յարձակման առեն, որ գիւղին վրայ եղած է գիւղը աւարի տալէ առաջ (Դ. տետր, էջ 16)։

Գ. Մալաթիոյ մօտ Նարինճա գիւղէն Առաքել Ստեփանեան կը կողոպտուի Եփրատի եզերքը գտնուող Հալիս գիւղին մէջ Պիրհանցի Ահմոյէն եւ իր ընկերներէն։ Այս Ահմօն տարի մը առաջ սպաննած էր Ասորի եպիսկոպոսը եւ իր սպասաւորը։

Դ. 2 Յուլիս 1908ին Մալաթիոյ Նարինճա գիւղին մէջ երկու ցեղախումբերու կռուի ընթացքին երբ զօրք եւ ոստիկան-զինուորներ կը հասնին տեղւոյն վրայ, ցեղախումբերու անդամները եւ զանոնք հետապնդողները կը հաստատուին Հայոց տուները եւ ամէն տեսակ դէշ վարմունքի կ'ենթարկեն զանոնք, կը հարկադրեն նոյնիսկ կերակրել զիրենք, տղաքը կերակրելու յատկացուած հաճարի հացով (4տետր., էջ 37)։

Ե. 31 Օգոստոս 1908 Սահակ Կաթողիկոս Խապայեան կը հաղորդէ թէ կեանքը, պատիւը եւ ինչքը հայ ժողովուրդին Մալաթիոյ եւ շրջակայ գիւղերուն մէջ, կեղեքումի եւ անիրաւ հարկահանութեան ենթարկուած են միշտ (Նոյն, էջ 37-9)։

Զ. 19 Սեպտեմբեր 1908ին տեղեկագրուած է Քեախտէէն որ 25-30 քիւրտ գիւղերու ցեղապետները, որոնք եօթը տարիներէ ի վեր իրարու դէմ կը կռուին եւ որ իրենց հետ խառնուած են պարզապէս քաշքշելով Քեախտէի 200 տուն Հայերը, կը զոհեն նախ զանոնք։ Իւրաքանչիւր կողմ իր մարդոց նախ Հայերուն նշան առնել կը յանձնարարեն։ Հայոց եպիսկոպոսը կը գրէ թէ «մէկ տարուան ընթացքին, տեսայ, իմ սեփական աչքերովս, 10 Հայեր այսպէս սպաննուած» (Նոյն, էջ 38)։

Է. 28 Հոկտեմբեր 1908ին Մալաթիայէն հաղորդուած է որ Հիւսնի Մանսուրի շէյխը, որ պետն է արիւնկզակ աւազակախումբի մը, հրաւիրած է շրջակայ քիւրտ պէկերը, ինչպէս Համիկ աղան, որ բանտէն փախած է, երթալ Հիւսնի-Մանսուր, ջարդելու համար Հայերը։ Համիկ աղա, 50 ձիաւորներու գլուխը անցած, պատասխանած է հրաւէրին։ Շէյխը բացարձակ յայտարարած է... «Մենք կ'երթանք ջարդելու Հայերը»։ Հիւսնի-Մանսուրի Հայերը օգնութիւն եւ պաշտպանութիւն կը խնդրէին (Նոյն, էջ 39)։

Ը. 17 Հոկտեմբեր 1908ին, Պեհլիվանիէն Ապէտին պէյ եւ Աղճատաղի Քիւրտերը ցոյցեր կատարած են Հայերը ջարդելու փափաք յայտնող. ժողովուրդը կը փախի քաղաք (Նոյն, էջ 39)։

Թ. 18 Հոկտեմբեր 1908ին Մալաթիայէն կը տեղեկագրեն որ բոլոր անոնք որ 25 տարիէ ի վեր ենթարկած են այս շրջանը ամէն տեսակ հարստահարութեանց եւ յափշտակութեանց, են հետեւեալ ցեղապետները. Հաճի պէյ զատէ Համիկ աղա, Զէյնէտ պէյ, Հաճի Ահմէտ պէյ զատէ Համիկ աղա եւայլն Ռէզուան ցեղախումբին պետերը։ Էմին Աղազատէ Վէյսի, Հաճի Ապուղէր Աղազատէ Սալահ, Շիւքրի եւ Հաճի Ալի Աղազատէ Հաճի եւ Ահմէտ՝ Միրտէզ ցեղախումբին պետերը, Հաճի Օսման փաշազատէ Ապտուլլա եւ Օսման, Կավող ցեղախումբին պետերը, Քէօրօղլու զատէ Օսման աղա, Քիավ ցեղախումբին պետը (Նոյն, էջ 39)։

Ժ. 30 Ապրիլ 1909ին կը հաղորդուի թէ 4 Ապրիլին Քիւրտերը զինեալ քաղաք մտան, Հայերը ջարդելու մտադրութեամբ։ Հայերը 4 օր չէն կրցած բանալ իրենց խանութները։ Զինուորականներու միջամտութիւնը, ինչպէս նաեւ Դաշնակցութեան քոմիթէին եւ Իթթիհատի անդամներուն, արգիլած է սպանդը (տետր 5, էջ 39)։

ԺԱ. 3 Յունիս 1910ին Մալաթիայէն կը հաղորդուի թէ Օսման փաշա եւ Պետիր աղա, որոնք իրական բռնակալներ են Քեախդէի մէջ, ձերբակալուած ըլլալով, գործին նախաքննութիւնը վստահուած է Հայու մը՝ Գէորգ Էֆէնտի Պօղոսեանի, որ միեւնոյն ատեն անդամ է դատարանին: Արդ, Պետիր աղայի թելադրութեամբ, իր քիւրտ ծառան Գէորգ Էֆէնտիի վրայ կրակած է: Բարեբախտաբար գնդակը միայն հագուստը ծակած է, եւ դատաւորը չէ վիրաւորուած: Այսքան քարչելի մահափորձ մը իշխանութիւնները անտարբեր կը թողու (6 տետր., էջ 27):

ԺԲ. 22 Յունիս 1911ին կը հաղորդուի թէ երկրորդ կարգի միւտիր մը, Ֆեհմի, որ առեւանգած է դեռատի աղջիկ մը Սառա անուն, փոխանակ պատիժի՝ վարձատրուած է անուանուելով Քիահմէի մէջ առաջին կարգի միւտիրիէթի մը պետ ըլլալու:

Կիւելէնճիքի միւտիրը, որմէ Հայերը եւ Քիւրտերը կը գանգատէին եւ որ ծեծած էր Հայոց քահանան, կոչուած է քարտուղար Պեհիսնիի քաղաքային վարչութեան (7 տետր., էջ 27):

Եւ այսպէս անվերջ եւ անվախճան շարունակուած է Հայոց հարստահարութիւնը Թրքական ամէն վարչաձեւերու ներքեւ, կայսրութեան վարիչները, հոգ չէ թէ հին կամ նոր եղած ըլլան:

Այս անվերջ հարստահարութիւնները, անխուսափելի էր որ Հայերը պիտի մղէին դժգոհութիւն արտայայտելու եւ նոյնիսկ առանց շատ բարակը մտածելու եւ հետեւանքները կշռելու նետուելու յախուռն արարքներու, առանց ոեւէ բարեբար արդիւնքի մը յոյսը ունենալու:

Միւս գաւառներու մէջ տեսնուած շարժումներն ալ իրր օրինակ անշուշտ իրենց թելադրական ներգործութիւնը պիտի ունենային Մալաթիոյ մէջ եւ հոն ալ խմորումներ պիտի պատահէին անխուսափելի կերպով:

Եւ եղաւ ինչ որ կը սպասուէր, հոգ չէ թէ բաւական ուշ:

## Զ.

## ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ ՄԱԼԱԹԻՈՅ ՄԷՋ

Արդարեւ տեսնուեցաւ թէ 1872ին կազմուած Վարազդատեան Ընկերութիւնը, որ շատ մը գաւառներու մէջ մասնաճիւղեր ունեցած էր, Մալաթիոյ մէջ չէր հաստատուած, վասնզի եթէ գոյութիւն ունեցած ըլլար մասնաճիւղ մը, Փորթուգալեան դէպի Վան իր ճամբորդութեան ընթացքին պիտի հանդիպէր Մալաթիա եւս, քանի որ այնքան մօտէն կ՚անցնէր անոր:

Իսկ ուրիշ տեղերու մէջ անջատ-անջատ կազմուած մարմիններուն պէս Մալաթիոյ մէջ ալ խումբի մը գոյութիւնը չէ յիշուած:

Որչափ ատեն որ հայ յեղափոխական կուսակցութիւնները իրենց գործունէութեան չէին սկսած, ինչպէս տեսնուեցաւ, Մալաթիոյ Հայերը կ'ապրէին 1880–1890ական թուականներուն, ինչպէս ամէն գաւառի գիւղեր կը հաստատէին, բաւական անդորր եւ հանգիստ վիճակի մէջ՝ շնորհիւ հայ ազդեցիկ անձնաւորութիւններու, որոնց վրայ խօսուեցաւ վերը:

Եւ ինչպէս բացատրուեցաւ, լարուածութիւն մը առաջ եկաւ, որ հետզհետէ շեշտուեցաւ, եւ Պերլինի վեհաժողովով ստեղծուած յուսախաբութիւնը պատճառ եղաւ որ Հայերու մէջ ծնի այն համոզումը որ զէնքով միայն կարելի է ազատութիւն ձեռք բերել:

Միւս կողմէն ժողովուրդին գիտակցութիւնը կ'արթննար եւ ինքնապաշտպանութեան կը դիմէին Հայերը կամ պետական հալածանքի դէմ իրենք ալ միջոցներ ձեռք կ'առնէին:

Եւ ինչպէս տեսնուեցաւ, երեւան եկաւ այդ տեսակ մարմին մը նաեւ Փոքր Հայքի մէջ 1885ին, Մարզուանի Ամերիկեան Գոլէճը կեդրոն ունենալով (տես վերը էջ....):

Այս խումբը ինքնապաշտպանութեան համար կը ջանար զինել ժողովուրդը: Ողբ. Բարսեղ Օհանեան կը պատմէ թէ Փոքր Հայքի մէջ «ուզածիդ չափ կառավարական զէնք եւ փամփուշտ կարելի էր ձեռք բերել: Մարթինի հրացանը՝ հատը 8ը մէճիտիէյի կը ծախուէր, եւ որովհետեւ ծախողը կառավարական պաշտօնեայ մըն էր կամ ոստիկան մը, մեզմէ աւելի շահ ունէր գաղտնիքը պահելու:

Այսպէս քաղաքներ, գիւղեր հետզհետէ կը կազմակերպուէին: Մինաս օղլուի խումբը, որ առերեւս աւազակային խումբ մըն էր, այդ (այսինքն Փոքր Հայքի) կազմակերպութեան մէկ ձեռակերտն էր: Ես ճանչցայ Յովհաննէս Մինաս օղլուն եւ այն գործելակերպը, որ ինծի պատմեց, հիացում կ'ազդէ: Թուրքը միւս կողմէ կը դողար թէ Հայն ալ կրնար զէնք գործածել եւ կը սկսէր ակնածիլ:

Տասնեակ մը տարիներ յետոյ պայթած Հայ Յեղափոխութիւնը այլապէս արդիւնաւոր հսկայ բան մը պիտի ըլլար եւ Հայը պիտի ներկայանար ոչ թէ ոչխարի պէս մորթուող ժողովուրդ մը, այլ զէն ի ձեռին ազատութիւնը պահանջող դիւցազներու խումբ մը, անհունօրէն քաջ, շատ աւելի լաւ կազմակերպուած քան յունական ապստամբները, եւ դիւանագիտութիւնը, որ իրականութեան եւ բիրտ ուժին առջեւ միայն կը խոնարհի, փոխանակ ջարդուող ժողովուրդի մը, իր կողմը ունենալ պիտի ուզէր կտրիճ ուսեալ ազգ մը՝ քան անգրագէտ, չարտադրող, կոշտ, մոլեռանդ թուրք ժողովուրդը» (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 1345):

Այս տողերուն մէջ շատ թէական կէտեր կան եւ խոշոր լաւատեսութիւն, սակայն կը պարունակեն նաեւ որոշ չափով ճշմարտութիւններ:

Հազիւ Կարնոյ դէպքը պատահած՝ 1889ին Սուլթան Համիտ սկսաւ իր մեթոտով պատժամիջոցներու:

Եւ հակառակ անոր որ Մալաթիոյ մէջ նոյնիսկ կուսակցական կազ-

մակերպութիւն գոյութիւն չունէր, Մալաթիոյ Հայերն ալ պատուհասուեցան, տնտեսական հարուածով մը, որպէսզի ցնցուին եւ իրենց մասնակցութիւնը չբերեն հայ ըմբոստական շարժումին, որ ծայր տալ սկսած էր:

Թրքական այս մեթոտը շատ ,մը քաղաքներու մէջ գործադրած էր Սուլթան Համիտ, զանազան քաղաքներու շուկաները այրելով, որպէսզի ժողովուրդը «մոխիրի վրայ նստի» եւ պարտաւորուի միայն ապրուստի հոգերով զբաղիլ:

Այս դժպատեհ ձեւը կիրարկուած էր արդէն ուրիշ մի քանի քաղաքներու մէջ, երբ Մալաթիա ալ այդ դժբախտութեան ենթարկուեցաւ երկու անգամ՝ ըստ Յ. Ն. Շեքերճեանի:

Առաջին անգամ 8 Նոյեմբեր 1889ին շուկայի մէջ մեծ հրդեհ մը պատահեցաւ, աւելորդ է ըսել դաւադրաբար, բայց կ'երեւի թէ ասիկա գոհացում չէ տուած այս ոճիրը գործադրող հրէշներուն, որոնք 1890 Հոկտեմբեր 24ին երկրորդ անգամ կրակի տուին Մալաթիոյ շուկան, նիւթական խոշոր վնասի մը ենթարկելով Մալաթիոյ Հայութիւնը, որ Փոքր Հայքի կազմակերպութեան մէջ եւ մանաւանդ Եաֆթայի յիմարական գործին մէջ մասնակցութիւն չէին ունեցած, բայց նախքան Հնչակեան կուսակցութիւնը կազմուած Փոքր Հայքի կազմակերպութեան հետ հաւանօրէն կապ ունեցող Մինաս օղլուի եւ Թորոս Ծառուկեանի եւ իր քանի մը ընկերներէն կազմուած Ձելլօ ընդհանուր անունին տակ իբր Թուրք հրոսակներ գործող եւ իրենց հայութիւնը ծածկած հայ էֆէներուն նման ինքն ալ ունեցած էր էֆէ մը, որ Մալաթիոյ շրջանակին մէջ կատարած էր Մինաս օղլուի եւ Ձելլօներու նման գործունէութիւն մը:

Մինաս օղլուի պէս «անհատական քաջութեամբ եւ յանդուգն գործելով ժողովրդեան գովքին» արժանացած էին՝ ըստ Գ. Մելիտինեցիին (Նախճիրներ, էջ 65) Ատիեամանցի Սարգիս եւ Սաման Եէմէզ:

«Առաջինն իրեն գործունէութեան դաշտ ունենալով Մալաթիոյ անմիջական սահմանները, ընդհարումներ կ'ունենայ մանաւորապէս թուրք աւազակներու հետ, որոնք հայ բնակչութեան սարսափը դարձած էին եւ քանի անգամներ կ'ազատէ առեւանգուած հայ աղջիկներ:

Ատիեամանցի Սարգիս օր մը ճամբորդութեան ատեն, երբ առուի մը եզերքը նստած կ'ուզէ քիչ մը հանգչիլ, դիմացի ծառին վրայ կախուած կը տեսնէ տէրտէրի մը դիակը, դեռ նոր սպաննուած: Անակնկալ պատահարը ուժգնապէս կը ցնցէ Սարգիսի ողջ կազմը: Անզէն ու ալեւոր ծերունի մը ըսպաննուած ու բարբարոսօրէն ծառէն կախուած... Ի՞նչպէս կարելի է մարդկային խիղճը հաշտեցնել այս անլուր ոճիրին հետ :

Անոր խռովոտ ոգին պահ մը կ'ընկրկի հազար ու մի վատ նախազգացումներու տակ, կուրծքը կը փլի ցեղին տառապանքին ետին, բայց տէրտէրի ալեխառն մօրուքէն քամուող արեան կաթիլները նոր միտք մը կը զարթնեցնեն իր մէջն՝ «Քանի որ արիւնը ցամքած չէ, ապա ուրեմն մարդասպանն ալ շատ հեռու չէ» պէտք է շտապել: Հազիւ կէս ժամ վերջ Սարգիս կը հասնի

կարաւանին եռեւէն գնացող զինուած չէրքէզի մը: Իր կասկածները տակաւ
առ տակաւ կը հիմնաւորուին խօսակցութեան ընթացքին: Չէրքէզը երբեք չի
կասկածիր Սարգիսին թրքութեան մասին: Այդ զուլումի օրերուն ի՞նչպէս
կարելի է որ Հայը, «րայան» զինուած պտըտի լեռներուն մէջ: Ան սոնքալով
կը պատմէ իր օրուան ոճիրները, որոնց կարգին եւ «քէշիշին» սպանութիւնը,
անոր արծաթազարդ ծխատուփին տիրանալու համար, եւ կը խնդրէ նոր զի-
նակցին օգնութիւնը ակնկալուած կարաւանը կողոպտելու: Սարգիս մեծ ըզ-
գուշութեամբ կը խեղդէ ցաւն ու զգացումները սրտին մէջ: Իբրեւ քաջ տեղեակ
նոյն ճամբաներու անցուդարձին, կը հակաճառէ որ սխալ էր կարաւանի ա-
կընկալութեանը, եւ կը համոզէ զայն որ ետ վերադառնան միեւնոյն ուղիէն:
Հինգ վայրկեան վերջը կը հասնին գործուած ոճիրին տեղը ու առուին եզեր-
քը կը նստին հանգստանալու համար․․․: Սարգիս առիթը ձգելով կը խլէ հա-
կառակորդին զէնքը, հինգ քայլ հեռաւորութեան վրայ կը պատմէ անոր իր
ինքնութեան մասին, եւ վերջին անգամ յիշեցնելով քահանային տմարդի ըս-
պանութիւնը, կը զնդակահարէ զայն, իբր արդար եւ աստուածահաճ փոխ
վրէժ:

*Գալով Սամոն Նէմէզին*[1] *աւելի յանդուգն եւ անուանի եղած է անիկա*,
«որ միշտ ապրած եւ գործած է Մալաթիոյ սահմաններէն դուրս, իր երկսայ-
րի սուրը ուղղած մասնաւորապէս հարուստ կարաւաններու եւ կառավարա-
կան պաշտօնեաներու դէմ»: Փախստականութեան առաջին տարիներուն իսկ
իր գործերուն արձագանգը կը հասնի յայտնի աւազակապետ Չելլոյին: Ինք
եւս կը լսէ առասպելական քաջագործութիւններ անոր մասին․ «Նմանն զնը-
մանը կը գտնէ»: Զուլումէն ու ցաւէն ծնունդ առնող, ու հասկցած ձեւով,
բռնութեան դէմ ծառացող երկու ըմբոստներ շուտով զիրար կը գտնեն, եւ
արեան ուխտ կը կատարեն անդաւաճանօրէն եւ կը հաւանին որ իրենց իսկու-
թիւնը (*Հայ ըլլալը*) պէտք է մնայ գաղտնի, աւելի համարձակ գործելու եր-

*(1) Իսկական անունը ոմանք ՅՈՎՀԱՆՆԷՍ եւ այլք՝ ԱՒԵՏԻՍ ՍԷՓԷԹՃԵԱՆ կը ներկայացնեն: Յեղափոխական անունը եղած է նաեւ Երկաթ:*

*Մալաթիացի, ծնած 1860ական թուականներու վերջերը: Նախակրթութիւնը ա-
ռած է իր ծննդավայրի մէջ, երիտասարդութեանը լեցուած բռնապետութեան դէմ պայ-
քարի հուրով, կ'ուզէ միանալ Չելլոյի խումբին: Գործով փերեզակ՝ կը մտնէ Մալա-
թիոյ շրջակայ հայ եւ թուրք գիւղերը եւ յեղափոխական ոգի տարածել կ'աշխատի:
Վերջապէս կ'երթայ կը միանայ Չելլոյին եւ կ'ըլլայ անոր զինակիցը եւ անոր հետ
Գաղտասի Թղթատարը կը զարնէ եւ մինչեւ Չելլոյի ձերբակալութիւնը անոր քով կը
մնայ, ապա կ'անցնի Թոգատ եւ հոն ալ կը մասնակցի փոստան զարնելու գործին:
Մատնուած, իր թաքստոցին մէջ կը պաշարուի, եւ հերոսական դիմադրութենէ մը վերջ
կը ձերբակալուի եւ կը տարուի Թոգատի բանտը, ապա Սեբաստիա, ուր կը տարուի եւ
101 տարուան կը դատապարտուի եւ Սինոպ բերդարգել կը մնայ: 96ի ջարդին, երբ կը
փորձեն բանտարկել Հայերը եւ սպաննել՝ Աւետիսի ղեկավարութեամբ դիմադրութիւն
մը կ'ընեն Հայերը եւ ի դերեւ կը հանեն այդ ծրագիրը: Այս պատճառաւ զնտան կը
նետուի, ամենախիստ պայմաններու տակ եւ աւելի տանջանքներով, եւ 16 տարի շա-
րունակ կը չարչարուի բանտին մէջ: 1908-ին կ'արձակուի եւ կը դառնայ Մալաթիա,
ուր կը մնայ մինչեւ իր մահը (ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՒԴՈԿԻՈՅ ՀԱՅՈՑ, էջ 1151):*

նարաւորութիւններ ունենալու համար: Այս գաղտնապահութեան տխուր արդիւնքը այն եղաւ, որ անոնց ծածկանունները այնքան խորացան ու արմատացան ժողովրդեան մէջ, որ երկուքի մահերէն վերջն ալ անյայտ մնացին անոնց իսկական անունները լայն հասարակութեան համար: Աւելին, Թուրքերը այսօր ալ կը հաւատան, որ Ջէլլօն թուրք էր, իսկ Սաման Եէմէզի մասին իրենց կարծիքը փոխեցին անոր տարիներու բանտարկութենէն վերջ:

Երկու ըմբոստ աւազակներ կարաւանի բանուկ ճամբաները կ'ընտրեն իրենց կռուի դաշտը, եւ այնքան անակնկալօրէն ու մեծ յանդգնութեամբ կ'իրագործեն իրենց ծրագիրները, որ կարճ ժամանակէն կառավարութեան յատուկ ուշադրութիւնը կը գրաւեն իրենց վրայ: Բայց, ի՜նչ փոյթ, մինչ ոստիկաններ ներքին ահուսարսափով, Մալաթիայէն–Սեբաստիա ճամբաներու մէջ կը փնտռեն անոնց հետքերը, նոր կողոպուտի եւ նոր սպանութեան լուրեր կը ստանան Հալէպ–Տիարպէքիրի ճամբաներէն» (*նոյն*, *էջ* 67–68):

*Գ. Մելիտինեցիի այս հաւաստիքը թէ Սաման Եէմէզ* «միշտ ապրած եւ գործած է Մալաթիոյ սահմաններէն դուրս» *կը հերքուի այն պատմութեամբ որ ներկայացուած է Ստեփան Մանուշեան* (*տես* ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ *պարբերաթերթին մէջ*, *ԺԱ. տարի*, 1949–1950, *թիւ* 1–2, *էջ* 29) *հետաքրքրական դրուագով մը*, *որ չէ ճշդուած թէ ո՞ր թուականին կատարուած է: Մանուշեան*, *որ հիմա կը մնայ Լոս Անճէլըս*, *կը գրէ թէ* «Սաման Եէմէզենց Յովհաննէսը կապոյտ աչքերով, դեղին մազերով, բարձրահասակ եւ ուժկու կազմուածքով անձ մըն էր: Իր աղքատիկ հիւղակը Մնաւոր փողոցի մէջ էր — Մանուշ օղլենց Գասպար Ամուի տան դիմաց:

Անոր մասին կը խօսուէր թէ՝ կառավարութեան նամակի բեռնակառքը կողոպտող Ջէլլոյի գործակիցներէն մին էր:

Ոչ ոք գիտէր թէ՝ ինչ գործով կը զբաղէր: Միայն ամեն առտն ճկնավաճառութեամբ կը զբաղէր Զոպինենց տան կից Այմելենց Կարապետի խանութին առջեւ:

Յուլիսի տաք երեկոներէն մին էր: Մեր անկողինները դուրսը՝ բակին մէջ տարածած խոր քունի մէջ էինք:

Դրան զօրաւոր բախումէն արթնցանք: Եղբայրս հրացանը ձեռքը առած գնաց դէպի դուռը, ես վախէս գլուխս անկողինի մէջ մխեցի, հայերէն ձայն մը լսեցի որ կ'ըսէր — «Թորոս, դուռը բաց: Ես եմ — Սաման Եէմէզենց Յովհաննէսը»: Գլուխս գաղտագողի անկողնէն դուրս հանելով ուշադրութեամբ դիտեցի: Զորս զինուած Քիւրտեր ներս մտան եւ դուռը գոցուեցաւ: Քիչ վերջ հօրս սենեակի ճրագը վառուեցաւ եւ երբ Քիւրտերը հաղորդուելով մեկնեցան եւ անոնցմէ մէկը մնաց մեր տան մէջ: Դա հանելուկ մ'էր ինձ համար. երա՞զ թէ իրականութիւն: Քունս առաւ:

Առտուն, երբ արթնցայ, արեւը արդէն կը շողշղար. կարծես մոռցած էի գիշերուան պատահարը: Պաղ աղբիւրէն լուացուելէ վերջ ներս վազեցի՝ նախաճաշի պանիր հացս առնելու: Սակայն իսկոյն ապշահար մնացի, եղբօրս կնոջ քով գտնելով սեւաչեայ վառվռուն մի օրիորդ, հագիւ քսան տա–

բեկան: Եղբօրս կինը՝ Եղիսաբէթ զայն ինծի ծանօթացուց իբր իր հեռաւոր մէկ ազգականը, որ կը կոչուէր Վարդուհի: Այս յանկերգը կը կրկնէր նաեւ դրացիներուն: Վարդուհին մեզ մօտ մնաց ամիս մը: Ան շատ քիչ կը խօսէր եւ երբեմն ժամերով կ'առանձնանար սենեակին մէջ:

Կէս գիշեր էր: Հրացանաձգութեան ձայներ կը լսուէին: Լուրը տարածուած էր թէ՝ աւազակներ Թէրզի Եաղուպենց Մինաս աղայի տունը շրջապատած էին: Վարդուհին քիւրտի տարազով ծպտուած եւ զէնքը խլած դուրս նետուած էր: Քիչ յետոյ հրացանաձգութիւնները սաստկացան եւ ապա մարեցան: Յաջորդ օրը միեւնոյն յանկերգը եւ անկէ ետք աւազակներ չէին երեւիր: Հոն, Հայատեաց Օսման Չավուշ մահացուօրէն վիրաւորուելով, քիչ վերջ հուրիներու աշխարհը, իրեններուն քով գացած էր:

Վարդուհի, իր նշանածի՝ Տիգրանի՝ եղբօր՝ Պետոյի հետ և Յովհաննէս իր փէտայիներով, ՄԱՁԷ ԿԱՄՈՒՐՁի քարայրներէն միոյն մէջ ապաստանած հրահանգի կը սպասէին եւ գիշերները ահ ու սարսափի կը մատնէին թիւրք մեծամեծները: Կառավարութեան շրջանակները Զէյթունցի յեղափոխականներուն կը վերագրէին այս արարքները եւ զանոնք խուզարկելու ձեռնարկեցին հայ տուներուն մէջ եւ կասկածելի պանդուխտներ ձերբակալելով բանտարկեցին:

Այս քօթաքեր լուրը հայ մեծաւորին հասաւ թուրք լրտեսներէն միոյն միջոցաւ, որու դրդումով Հայերու քով գտնուած վնասակար գրքերը, կա՛մ այրուեցան եւ կա՛մ թթեղիններու խոռոչներուն մէջ պահուեցան:

Թուրք երեւելի պէյերէն՝ Արիֆ պէյ կռահեռվ լրտեսին արարքը բացառնացած էր անոր: Լուրը Յովհաննէսի խումբին հասած էր եւ անոնք կէս գիշերին Պէյին բնակարանը մտնելով՝ կապած էին անոր բերանը եւ դուրս տարած զայն: Վարդուհի ճանչնալով հրէշը եւ վագրի մը նման խոյանալով, իր դանակը մխած էր անոր բերնին մէջ եւ օղի լեցնելով, լքած զայն իր բակին մէջ: Առտու գտնուած էր դիակը եւ լուր տարածուած էր թէ Արիֆ պէյ գինովցած, անձնասպան եղած էր:

Վարդուհին իր վրէժը լուծած էր:

Որովհետեւ սա այն հրէշն էր, որ խումբով, Ալպիստանի գիւղերէն, հայ գեղապետի մը տունը մտնելով՝ սրախողխող սպաննել տուած էր տնեցիները եւ առեւանգած՝ Վարդուհին: Իսկ անոր նշանածն ու եղբայրը, փախուստ տալով, ազատուած էին եւ գաղտագողի կը հետեւէին աւազակներուն: Յովհաննէսի խումբը, հանդիպելով աւազակներուն, զանոնք փախուստի մատնած էր, իսկ Վարդուհին, ինքզինք ձիէն վար նետելով, փրկած էր իր կեանքն ու պատիւը»:

*Սաման Եէմէզի այս յանդուգն գործը, ինչպէս նաեւ Ատիեամանցի Սարգիսի առասպելական արարքները կը կարծեմ թէ Զելլօններու գործերուն ժամանակակից պէտք է ըլլան և շատ մեծ հաւանականութեամբ 1890էն ետք, վասնզի Փոքր Հայքի մէջ յեղափոխական շարժումի մը նշանները զգալի կ'ըլլային այդ թուականէն ետք: Ըստ Գ. Մելիտինեցիի* «1890ին Մալաթիա

կը հանդիպի յայտնի աւազակապետ Ջելլօն եւ իր ինքնութիւնը կը յայտնէ Յ. Զիթաքեանի թէ ինք Հայ է, թէ սուտ են իր թրքութեան մասին շրջան ընող խօսքերը: Լուրը ժողովրդեան մէջ ալիք առ ալիք կը տարածուի, ու կը սկսի խլրտում մը համր բերաններու մէջ, բայց դժբախտաբար շուտով կառավարութիւնը կ'իմանայ ամէն ինչ, եւ Ջելլօ խոյս կու տայ Մալաթիայէն, առանց թողելու շօշափելի արդիւնք մը»:

*Նոյնպէս այդ Թուականին* (1890) *է որ* «Գումգաբուի ցոյցը կազմակերպելէ յետոյ 1890ին Շմաւոն Կաֆաեան կու գայ Մալաթիա Հնչակեան կազմակերպութիւնը կազմակերպելու» (*ԵՐԻՏԱՍԱՐԴ ՀԱՅԱՍՏԱՆ*), *ինչ որ հակառակ է ճշմարտութեան, վասնզի ոչ մէկ նշան կայ թէ Շմաւոն 1890ին կամ առաջ կամ ետքը այդ Թուականէն՝ այցելած է Մալաթիա:*

*Նոյնպէս շատ կասկածելի է ճշդութիւնը Հնչակեան նոյն թերթին մէջ Խաչատուր Ստեփանեանի տուած այն տեղեկութեան թէ Հնչակեան կուսակցութիւնը Մալաթիոյ մէջ մուտ գտած է 1890ին կամ քիչ առաջ: Եւ իբր թէ առաջին գործիչը եղած է Թորոս Ծառուկեան (Ջելլօ) անունով ծանօթ հերոսը, որ գացած է Մալաթիա եւ կազմակերպած Հնչակեան կուսակցութիւնը:*

*Աւելի վստահելի տեղեկութիւններու համաձայն Հնչակեան կուսակցութեան Մալաթիա մուտքը աւելի ուշ եղած պիտի ըլլայ:*

*Ուրեմն եթէ ճիշդ է ուրիշ տեղ մը տրուած այն հաւաստիքը թէ Սաման Եէմէզ հնչակեան էր, այն ատեն Մալաթիոյ ջարդէն հազիւ 1–2 տարի առաջ պէտք է ըլլան իր գործերը:*

*Ինչպէս կը տեսնուի,* «հիմնովին տարբեր է զոյգ ըմբոստներու գործունէութիւնը հասարակ աւազակներու կողոպուտէն ու սպանութենէն: Իբրեւ վեհանձն ու խիզախ մարդիկ, երբեք չեն վնասեր հասարակ ճամբորդին, չեն սպանններ յանձնուող ոստիկանը եւ ամենէն զովելին՝ իրենց ապաստանած գիւղերու աղքատ բնակչութեան կը բաժնեն ունեցած հարստութիւնները: Զոյգ ըմբոստներուն առնական կեցուածքը, անսահման ժողովրդականութիւնը, եւ ցնցող քաջութիւնները պատճառ կը դառնան որ իրենց անունին շուրջ երգեր ու հազար ու մի առասպելներ հիւսուին:

Դէպք մը կը սատկացնէ հալածանքը անոնց դէմ: Անվախ ու յանդուգն զինակիցները կառավարական փոսթան կը կանգնեցնեն քաղաքի կէս ճանապարհին, եւ կը պահանջեն որ իրենց յանձնուի փոխադրուող ոսկեդրամը: Պահապան զոյգ ոստիկանները եւ կառապանը զէնքի կը դիմեն: Իզուր կ'անցնին Ջելլոյի եւ Սաման Եէմէզի յորդորները, որ պարապ տեղը արիւն չթափեն: Թուրք ոստիկաններ յոխորտանքով, լկիրշ հայհոյանքներով կը պատասխանեն իրենց ուղղուած զգաստութեան խօսքերուն: Կէս ժամուան կատաղի կռիւէ ետք կառապանը եւ ոստիկաններ կը սպաննուին: Երկու զինակիցները իբրեւ նոր կռիւի հրաւէր, անոնց հագուստը հանելով խռչափողներէն կը կախեն կառապանին նստած տեղը ու ձիերը կը մտրակեն դէպի քաղաք:

Կառավարութիւնը մահուան վճիռ արձակելով, մեծ գումարներ կը խոստանայ անոնց գլխին վրայ: Խաղաղ ժողովրդեան գլխին աստուածացող իրէշ ոստիկաններ թափուած արիւնին ի տես կ'ընկրկին ու կը սարսափին այս վտանգաւոր հակառակորդներէն:

Բայց սրբազան ուխտը, արեան ուխտը կը փոխուի երկու զինակիցներուն միջեւ, Զեյլոյի անարի արարքովը· կարաւանի կողոպուտէ մը վերջ Զեյլօ կը լքէ ընկերը եւ ինք խոյս կու տայ կռիւէն: Սաման Եէմէզ կը ձերբակալուի: Բանտի մէջ շղթայակիր կ'ենթարկուի թրքական ոճրածին ուղեղի յատուկ բոլոր դժոխային տանջանքներուն, որպէսզի մատնէ իր ընկերներուն անուններն ու թաքստոցները, նաեւ խոստովանի անհաշիւ ոսկեդրամներուն (կառավարութիւնը հասարակ աւազակի տեղ կը դնէր զանոնք եւ չէր հաւատար թէ անոնք իրենց դրամները բաշխած են ապաստան տուող գիւղերու աղքատ բնակչութեան) թաղուած տեղերը: Բայց ի զո՜ւր: Տանջանքները աւելի կը խստացուին, կարմրցուած սանի վրայ կը պտըտցնեն: Աքցանով եղունգները կը քաշեն, գլխուն տաք մոմիրով պարկ կ'անցընեն, բայց նորէն ի զուր: Սաման Եէմէզ կը մնայ խրոխտ ու անսասան, նման իր հայրենի լեռներուն: Կառավարութեան ճիւաղ պաշտօնեաները իրենց բարբարոսութեան մէջ ընկրկած կը դիմեն տարբեր միջոցներու, թրքավայել շողոքորթութեամբ հազար ու մի խոստումներ կը հասցնեն անոր ականջին, մատնութեամբ ազատուելու նորանոր միջոցներ ցոյց կու տան, բայց դարձեալ ի զուր: Ան կը նախընտրէ բանտի զնտանն ու ժանգոտած շղթաները, քան դաւաճանութիւնը, վատհոգի մատնութիւնը:

Տարիներ վերջ ԱՖԸ ՇԱՀԱՆէով ազատ կ'արձակուի, խոստանալով որ հայրենիք (Սաման Եէմէզ գործած է Խարբերդ, Տիարպէքիր, Կեսարիա, Հալէպ՝ ճամբաներու մէջ) պիտի դառնայ, Մալաթիա եւ հոն պիտի անցընէ իր մնացած օրերը:

Ժողովուրդը իր ըմբոստ զաւկին արտաքին ցոյցեր չ'ըներ, նոյնիսկ շատեր կը խուսափին անոր հետ յարաբերութիւն ունենալէ, կառավարութեան եւ Թուրքերու աչքին խորթ չերեւալու համար:

Դժբախտաբար ճիւաղ ոստիկաններու տանջանքները մէկ կողմէն, բանտի բորբոսած խոնաւութիւնը միւս կողմէն, ներքնապէս հիւծած քայքայած էին առիւծասիրտ մարդու երկաթէ կազմը: Երբեմն սար ձորերու, բարձրաբերձ լեռներու անվախ պահակը կը դատապարտուի երկարատեւ հիւանդութեան: Մահուան անկողնին, հիւանդութեան ճիրաններուն մէջ տառապած ատեն իսկ երազելով իր ազատ օրերու ազատ ապրումները՝ չի մոռնար իր զինակցին պատճառած կսկիծը, որ *խորապէս խոցած էր իր սիրտը, տարտ էր եղած իր հոգուն*:

Ու հոգեկան տանջանքներու ազդեցութեան տակ կառավարութեան որեւէ մի բանտ չխոստովանող հսկան, իր մահուան նախագիտակ՝ հոգեկան ցաւի ազդեցութեան տակ աշուղ դարձած, կ'երգէ հին վէրքը·

«Հանիյէ պէնիմ իլէն փուքայը սոյանլար,
Իւչ արշընլըք չուխա շալվար կէյէնլէր,
Սէն էօլմէտէն պէն էօլիւրիւմ տիյէնլէր:

Ավ իլէն ավլանտըմ ֆիմէ նէ տիյէմ,
Կէյտիմ գարալար, տէօֆտըմ գումաշը,
Կէօզիւմտէն ագըյօր գան իլէն եաշը
ՈՒՆՈՒԹՏԸՆ ՍԷՆԻՆ ԻԼԷ ԵՕԼՏԱՇԸ[1]:

Ավ իլէն ավլանտըմ ֆիմէ նէ տիյէմ,
Գըր աթ սէնի չօզ եէրլէրէ կէզտիրտիմ,
Կէնն էօմրիւմիւ օրալարտա չիւրիւթտըմ,
Ձելլօ տետիֆլէրի նամա եալտըրտըմ
Ելիմ իլէն էթտիմ ֆիմէ նէ տէյիմ:

Դեռ երկար է շարքը անոր յօրինած այս երգերուն, բայց այս հակիրճ տողերն ալ բաւ են ըմբռնելու համար անոր անսահման վիշտը, իր ընկերոջ անարի կեցուածքին հանդէպ:

Սաման Նէմէզ մեռաւ անկողնոյ մէջ, բայց ինչպէս Թուրքը, նոյնպէս եւ մահը չկրցան խոնարհեցնել անոր ճակատը. ան կեանքի համար չաղերսեց, իր հոգին մնաց միշտ խիզախ ու ըմբոստ:

Սաման Նէմէզ եթէ բախտաւորութիւնը ունենար իյնալու լաւ յեղափոխականներու շրջանին, անտարակոյս կը դառնար ազգային լաւագոյն հերոսներէն մին, աւաղ որ ան *լուռ* ընկերը եղած է յայտնի աւազակապետ ՁԵԼԼՕյին եւ իր *լուռ* գործով մեծապէս սատարած անոր հռչակին ու ժողովրդականացման» (ՆԱԽՃԻՐՆԵՐ, էջ 69–72):

*Այս երկու յանդուգն անձերու Հնչակեանութեան հետ կապը այնպէս կը թուի թէ տարակուսելի է եւ տեղական էֆէներ են, որոնք այն օրերուն Փոքր–Հայքի մէջ տիրող մթնոլորտին ներշնչման տակ այդ յանդուգն քայլերը առած են, առանց Հնչակեան կուսակցութեան հետ կապ ունենալու:*

*Ռուբէն Խանազատ թէեւ կը գրէ թէ 1890ին Շմաւոն (Գաբրիէլ Կաֆեան) Պոլսոյ Հնչակեան կազմակերպութիւնը ուժեղացնելէ, Գում Գաբուի ցոյցը կազմակերպելէ ետք մեկնած է դէպի Սեբաստիա, եւ կազմակերպած է Մարզուան, Ամասիա,* ՄԱԼԱԹԻԱ, *Ակն, Խարբերդ եւ ուրիշ տեղեր* (Երիտասարդ Հայաստան), *սակայն կը խորհիմ թէ ճիշդ չէ Շմաւոնի Մալաթիա երթալը:*

*Գ. Մելիտինեցի* (ՆԱԽՃԻՐՆԵՐ, էջ 74) *կը հաւաստէ թէ Գրիգոր Աղա Արսլանեան եւ Սահակ եպիսկոպոս դեռ* 1890*ական թուականներուն դարձած են* «կեդրոնական դէմքեր, ժողովուրդի յափշտակուած իրաւունքին պաշտ–

(1) *Միշտ իր ընկերոջ Ձելլոյի կ'ակնարկէ (Գ. Մելիտինեցի)*:

պան ներկայացուցիչներ» (ՆԱԽՃԻՐՆԵՐ, էջ 75) *եւ յանդգնութիւնը ունեցած էին կազմակերպելու Հնչակեան առաջին մասնաճիւղը, եւ իրենց զօրաւոր անհատականութիւնը ի սպաս դրած էին կուսակցութեան ամրացման (Հմմտ.* Նախճիրներ, էջ 74)։

*Գ. Մելիտինեցի կ՚ըսէ թէ* «անարի մարդիկ ժամանակին, մութ հաշիւներէ գրգռուած, հերքած են եւ դեռ կը հերքեն համանուն կուսակցութեան մասնաճիւղին գոյութիւնը: Անոնք կը վախնան իրենց սեւ արարքներու քօ-ղազերծումէն, ցաւագին մղձաւանջը ունին որ անցեալը թաղուի, անյայտանայ անցեալի փոշիներուն մէջ: Բայց բարեբախտաբար պատմական փաստերն ու կենդանի վկաները ոչ թէ միայն կ՚ապացուցանեն Հնչակեանութեան գոյութիւնը 95ի կոտորածէն առաջ, այլեւ կը պարզեն անոր գործունէութիւնը, յանդուգն որոշումները պատժելու բոլոր հայանուն դաւաճանները, որոնք ժողովուրդի ներքին գաղտնիքները կը մատնէին կառավարութեան յանուն դիրքի ու սեփական կաշիի փրկութեան» (ՆԱԽՃԻՐՆԵՐ, 74–5), *բայց այս տողերը ճիշդ չեն եւ կարծես թէ տխուր հաշիւ մը ունին իրենց տակը պահուած*։

*Հնչակեան* ԵՐԻՏԱՍԱՐԴ ՀԱՅԱՍՏԱՆԻ *մէջ Խաչատուր Ստեփանեան ոչ թէ 1895էն ետքի կը ձգէ կուսակցութեան կազմակերպութիւնը, այլ 1890ին կամ քիչ առաջ, ինչ որ նոյնպէս հաւանական չէ։ ՊԱՊ ՈՒԽՏԻ խմբագիրը* (1942, *Թ.* 31, *էջ* 1–29) *աւելի իրականութեան մօտեցած ըլլալ կը թուի երբ կը հաւաստէ թէ քաղաքական դէպքերու զարգացումը եւ հայ կուսակցութիւններու գործունէութիւնը Հայաստանի եւ Փոքր Հայքի մէջ իր արձագանգը գտած ըլլալով Մալաթիոյ Հայերուն մէջ, հոն ալ կազմուած են հայ կուսակցութիւններու ճիւղերը բաւական ուշ, վասնզի ինչպէս ըսուած է* «վերջնականապէս ստուգուած եւ անհերքելի փաստ մը չունինք ձեռքի տակ, բայց ըստ ցարդ ձեռք բերուած տեղեկութիւններուն 1892ին է որ Հնչակեան կուսակցութեան առաջին մասնաճիւղը սակաւաթիւ անդամներով կազմուած է Մալաթիոյ մէջ, գլխաւորապէս Գրիգոր աղա Ասլանեանի եռանդուն եւ յանդուգն ջանքերով եւ Սահակ եպիսկոպոսի թաքուն, այլ գաղափարական առաջնորդութեամբ, (ՊԱՊ ՈՒԽՏԻ, 1943, *Թ.* 31, *էջ* 1–2)։

*Գրիգոր աղա Արսլանեան, մեծ-Աղա մը, սակայն գործող եւ չինող, ժողովրդանուէր անձ մըն էր, որ կառավարութեան կամ անհատ Թուրքերուն կողմէ հալածուողներուն պաշտպան էր, յանդուգն, արդար դատի և իրաւունքի համար անվհատ պայքարող մը եւ յեղափոխական մը իր ժամանակին ըմբռնումով, ինչպէս ըսած է Խ. Եղիայեան* (*ՊԱՊ ՈՒԽՏԻ*, *Թ.* 25, *էջ* 10), *որ կը պատմէ թէ* «1895ի կոտորածէ առաջ կեանքի փորձառութեամբ եւ քաղաքական սուր հոտառութեամբ կը նախատեսէ գալիք աղէտը, մաս մը երեւելիներ կանչելով իր քով կը պարզէ վատ նախազգացումները, թէ Թուրքերը հաշտ աչքով չեն դիտեր Հայոց ազգային վերազարթումը, թէ Թուրքերը կրնան ոեւէ ժամանակ Սուլթանին գաղտնի հրամանով կոտորած սարքել Հայերը բնաջնջելու համար եւայլն: Այն կը յայտնէ նաեւ այն միտքը թէ հայ

մատնիչ մը կառավարութեան մէջ իր դիրքը ամրացնելու համար ազգային գաղտնիքները կը հաղորդէ Թուրքերուն, ապա կ'առաջարկէ երկու հազար ոսկիի փոնտ մը գոյացնել, որուն կէսը յատկացնել Աղճատաղի Ղզլպաշ քիւրտ աշիրաթապետերուն հետ դաշինք մը կնքելու գործին, որպէսզի անոնք օգնութեան գան Հայոց, երբ Թուրքերը կոտորած սարքեն: Ներկաները կ'ունենան թեր ու դէմ մտքերու փոխանակութիւն, բայց վերջնական եզրակացութեան մը չեն կրնար գալ:

Գրիգոր աղա Զոլագեան այս խորհրդակցութիւնը իմանալով կը մատնէ կառավարութեան, որ կը սկսի աչալուրջ հսկել Հայոց վրայ: Դրուած արգելքներուն եւ մասամբ ալ ժողովուրդի տգիտութեան ու անհեռատեսութեան պատճառով Գրիգոր աղա Արսլանեան չի յաջողիր իր այնքան գեղեցիկ ու օգտակար առաջադրութեան մէջ » (*Նոյն*):

*Առանց կարենալու հաստատել այս գեղեցիկ ծրագրի համար պատմուածներու վաւերականութիւնը իր բոլոր մանրամասնութիւններուն մէջ, հարկ է ըսել թէ եթէ Գրիգոր աղա Արսլանեան այս տեսակ ծրագիր մը մըշակած էր, իրապէս ճշմարիտ հայրենասէր մը եղած է եւ այս ծրագիրին իրագործման համար շատ հաւանական է որ ինքը Առաջնորդ Սահակ եպիսկոպոսի հետ նախաձեռնարկ եղած է կազմակերպութիւն մը ստեղծելու:*

*Այս մարմինը թերեւս ուղղակի Հնչակեան կուսակցութեան մէկ մասնաճիւղը չէր, այլ ուրիշ քաղաքներու մէջ եղածին նման տեղական մարմին մը, նման Մարզուանի, Փոքր Հայքի, Կեսարիոյ եւայլն կազմուած մարմիններուն որոնք հետզհետէ ձուլուեցան Հնչակեան կուսակցութեան մէջ:*

*Այդ մարմինին առաջին անդամները կ'ըլլան ըստ Խաչատուր Ստեփանեանի* (ԵՐԻՏԱՍԱՐԴ ՀԱՅԱՍՏԱՆ)՝

*Կարապետ Երքէկեան*
*Պետրոս Դանիէլեան*
*Աւետիս Սամանեէմէզեան*
*Հաճի Պապիկ Ուռլեան*
*Յակոբ Տէյլինեան*
*Սարգիս Սուքիասեան*
*Մուրատ Պալապանեան*
*Յակոբ Աթաչեան*
*Գրիգոր Անանիկեան*
*Գրիգոր Մարտիկեան:*

*Իսկ Գ. Մելիտինեցի* (ՆԱԽՃԻՐՆԵՐ, *էջ* 75) *կը հաւաստէ թէ Հնչակեաններու թիւը բարձրացած է 75ի, տասնեակներու բաժանումով, որոնք իրենց հրահանգները կը ստանան յատուկ տասնապետներէն, եւ վերջիններն ալ իրենց կարգին տեղական կեդրոնէն:*

*Եւ կու տայ իբրեւ եռանդուն ու գործօն անդամներ, անունները հետեւեալներուն.*

*Մ․ Տարպօեան*
*Ս․ Սուքիասեան*
*Գ․ Նազարէթեան*
*Մ․ Չէքէմեան*
*Ն․ Սուքիասեան*
*Ս․ Գալուստեան*
*Յ․ Շահրիկեան*
*Գ․ եւ Խ․ Զիթաղեան*
*Խօրտէկ Պետրոս*

*Իսկ աւելի վերջերը՝*

*Գ․ Ոսկերիչեան*
*Ն․ Պաղտասարեան*
*Գ․ Քէնտէրեան*

*Ասոնցմէ Յակոբ Շահրիկեան — կեղծ անունով Պապօ — իբրեւ սուրհանդակ Մալաթիոյ եւ Արաբկիրի երկու մասնաճիւղերու միջեւ յարաբերութիւնները կը պահէր* (նոյն, էջ 75)։

*Եւ ինչպէս Գ․ Մելիտինեցի կ'ըսէ* «իր բերած թարմ տեղեկութիւններով կը բոցավառէ նորընծայ անդամները։ Պահ մը Հնչակեան մասնաճիւղի տեղական խորհուրդը Գ․Արսլանեանի եւ Սահակ եպիսկոպոսի առաջնորդութեամբ խօսքէն կ'անցնի գործի։ Գաղտնի ժողովի մը մէջ Գ․ Զոլաքեանը տերորի ենթարկելու որոշումը կու տան մատնութեան արարքի մը համար։ Վիճակ կը ձգեն չորս տերորիստներու միջեւ։ Խօրտէկ Պետրոսին կ'իյնէ սեւ թուղթը․ քանի մը օր անց, ան յաջողութեամբ կը գործադրէ մահուան վճիռը առանց ձերբակալուելու[1]։ Առաջին ու յաջող փորձէն վերջ, *տերորի* որո–

---

(2) *Խ. Եղիայեան* (*ՊԱՊ ՈՒԽՏԻ, թ. 25, էջ 11*) ՏԵՐՈՐԻՆ *կատարուած թուականը կը դնէ 1892 կամ 1893։ Խօրտէկ Պետրոսի տեղ ձերբակալուած է Կարապետ Էրքէքեան, որ 15 տարուան բանտարկութեան կը դատապարտուի եւ Պատրումի բերդին մէջ իր բանտարկութիւնը լրացնելէ ետք կը դառնայ Մալաթիա։*

*Հոն իրեն պատմել տուած են դէպքը, որ գրի առած է Խ. Եղիայեան։ Այդ պատմութենէն կը հասկցուի որ Գրիգոր Աղա Արսլանեան հաւանօրէն իր եւ Սահակ եպիսկոպոսի ստեղծած մարմնին անդամներուն հետ եղած է այս տերորին կազմակերպիչը։ Առաջ առաջարկուած է գործը Կարապետ Էրքէքեանին, բայց անիկա մերժած է եւ յանձնարարուած Պետրոս Դանիէլեանը (այլ անունով Խօրտէկ Պետրոս), որ կրցած է առանց ձերբակալուելու սպաննել Գրիգոր Աղա Զոլաքեանը։*

*Այս առթիւ ոստիկանութիւնը կը ձերբակալէ բոլոր կասկածելի Հայերը, ընդ որս Կարապետ Էրքէքեանը, որ ոստիկանութեան աչքին իբր արատաւոր անձ համբաւ ունէր։ Կարապետի տունը կը խուզարկուի, ուր կը գտնեն զոյգ մը շեշխանէ ատրճանակ, խանչեր մը, տեվրիշի խոշոր հատերով համրիչ մը, ըէպեր մը, քէշկիւլ մը եւ եղնիկի մորթ մը, որոնց համար բացատրութիւն մը չի կրնար տալ։ Դատավարութեան ատեն Կարապետ ոչինչ կը խոստովանի, ծանր խոշտանգումներու եւ չարչարանքներու կ'ենթարկուի, կը դատապարտուի 15 տարուան բանտարկութեան ի Պատրում։ Դուրսը Գրիգոր Արսլանեան եւ իր համախոհները շատ կ'աշխատին զինք ազատելու, բայց չեն յաջողիր։ Գրիգոր Աղա Արսլանեան գաղտնի եւ անուղղակի միջոցներով կը խնամէ իր*

շումները կը տրուին ուրիշ ճանի մը հատերուն եւս, երբ վրայ կը հասնի 95ի կոտորածը եւ վերջ կու տայ Հնչակեան կուսակցութեան մասնաճիւղի այնճան յաջող սկզբնաւորութեան» (ՆԱԽՃԻՐՆԵՐ, էջ 75–76)։

*Սենեքերիմ Ափալաքեան* (*ՊԱՊ ՈՒԽՏԻ*, *Թ*. 26, *էջ* 7) *Հնչակեաններու թիւը կը բարձրացնէ* 150*ի*։

*Յայտնի չէ թէ այս մարմինի հետ կապ ունէ՞ր Տ. Եղիշէ քհնյ. Խաչատուրեան, որ Մալաթիոյ մէջ անկասկած ունեցած է յեղափոխական գործունէութիւն մը, ինչպէս կը հաստատէ Ստեփան Մանուչեանի մէկ վկայութիւնը* (Մոռցուած դէպք մը. *տես* *ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ*, *ԺԴ. տարի*, 1952, *Թ*. 4, *էջ* 12–3)։

*Հոն կը տեսնուի թէ Տ. Եղիշէ քհնյ. Խաչատուրեան ղեկավարի դեր մը կը կատարէ խումբ մը երիտասարդ երդուընցնելով եւ զանոնք կարգ մը ձեռնարկներու մղելով*։

*Անիկա սա կերպով կը միացնէր ուխտադիր երիտասարդները*. «Մենք ամէն բանէ առաջ հայ քրիստոնեայ ենք, կը սիրենք մեր ազգը։ Դուք թերեւս անտեղեակ էք Թուրքերու ունեցած ոճրածին ատելութեան հանդէպ մեր ազգին, եւ ամէն օր կը գործադրուի հոս ու հոն։ *Մենք չենք կրնար կառավարութեան դէմ ելլել, սակայն գաղտնի միջոցներով կարող կ՚ըլլանք մասամբ մեղմացնել զանոնք*։ Ես պիտի խնդրէի ձեզմէ բացարձակ գաղտնապահութիւն եւ ինձ տեղեկացնել մասնակի ոճիրներ, առեւանգումներ եւ գողութիւններ, ձեր գործունէութեան հրահանգները միայն ինձմէ առէք։»

*Այս յօդուածին մէջ կը յիշուին մի քանի դէպքեր ալ գործադրուած իբր անուղղակի մաքառում*։

*Հաւանօրէն Տ. Եղիշէ Քհնյ. Խաչատուրեանի կազմակերպած այս խումբը կամ տասնեակը, որուն ղեկավարը ինքն էր, մէկ մասն էր Հնչակեաններու*։

*Դժբախտաբար կը պակսին Հնչակեաններու Մալաթիոյ կազմակերպութեան մասին ուրիշ տեղեկութիւններ*։

*Նոյնիսկ անոնց իբրեւ կազմակերպութիւն իրենց կատարած դերը երկբայելի է*, 1895*ի ջարդին առեն։ Թերեւս Հնչակեան անհատներ մասնակցած են ինքնապաշտպանութեան, սակայն Հնչակեանները չեն մասնակցած՝ անոր իբր կազմակերպուած ույժ եւ նոյնիսկ հաւաստողներ կան որ ան ջարդէն առաջ կամ ջարդէն անմիջապէս ետքը կազմալուծուած եւ քայքայուած էր*։

*Այսպէս Յ. Գոճապաշեան* (*ՊԱՊ ՈՒԽՏԻ*, *Թ*. 31, *էջ* 9) *կը գրէ թէ* «մինչեւ հիմա ալ ոեւէ բան լսած չունիմ թէ Ս. Դ. Հնչակեան Մալաթիոյ Մասնաճիւղը ի՞նչ բաժին ունեցած է 1895–ի կոտորածի օրերուն, ինքնապաշտպա–

---

*ընտանիքը։ Կարապետ Էրքէքեան իր բանտարկութիւնը լրացնելէ ետք կը դառնայ Մալաթիա, ուր իր մտած օրը զարմանալի զուգադիպութեամբ մը կը մեռնէր Պետրոս Դանիէլեան, Գրիգոր Չիլաքեանի իրական սպանիչը։*

*Կարապետ Էրքէքեանի մասին 27 Յուլիս 1895 թուականով նամակ մը ղրկուած է Պատրիարքարան, անոր համար ներում ձեռք բերելու համար։*

նութեան կռիւներուն մէջ, եւ կամ 95-ի կոտորածէն մինչեւ Սահմանադրութեան հռչակումը, անոնք ունեցա՞ն ոեւէ կազմակերպական գործունէութիւն»։

*Գ. Մելիտինեցիի կարծիքով* (ՆԱԽՃԻՐՆԵՐ, էջ 76) *առաջին անգամ կազմուած Հնչակեան մասնաճիւղին քայքայուելէն ետք* 1908–էն (1) *վերջ Փարամազ* (2) *եւ Նալպանդեան* (3), *երկու Հնչակեան գործիչներ եկած են Մալաթիա եւ վերակազմած են Հնչակեան մասնաճիւղը*, «բայց իրենց մեկնումէն վերջ, բացի անուանական գոյութենէ, որեւէ դրական աշխատանք կատարուած չէ» (ՆԱԽՃԻՐՆԵՐ, էջ 76)։



**Սեդրակ Առաքելեան (Հնչակեան, 1896)**



**Բարսեղ Շահպազ**

*Մալաթիա ալ վայելեց Դաշնակցական գործիչներու ներկայութիւնը։*

*Դաշնակցական Բարսեղ Շահպազ առաջինն է անոնցմէ որ Մալաթիա կը հասնի* 1908–*ին վերջերը։*

*Բարսեղ Շահպազ, որ ծնած էր* 1883–*ին, Կ. Պոլիս*, 25 *տարեկան վառվռուն տարիքին մէջ էր երբ Մալաթիա գնաց։ Այս երիտասարդը, որ իր նա–*

---

(1) *Ապահովաբար 1908 պէտք է տպուած ըլլայ եւ ոչ թէ 1900, ինչպէս եղած է վրէպով։*

(2) *Ափալաքեան* (*ՊԱՊ ՈՒՏԻ*, *Թ.* 26 *էջ* 8) *կը ներկայացնէ* «Համակրելի, ազգասէր եւ յեղափոխական»։ «Անոր այս յատկութիւններուն իբր հետեւանք, Դաշնակցութեան առաջնորդները զինքը կանչեցին իրենց ակումբին մէջ խօսելու համար։ Փարամազ չմերժեց. իր նիւթն էր կրօնը եւ կղերականութիւնը»։ *Ափալաքեան կը պատմէ թէ բանախօսութենէն ետք դաշնակ կոմիտէն իրեն հետ խորհրդակցութիւն մը ունեցած է եւ Խօսրով Թեշիշեան կարծիքներու փոխանակութիւն մը ունեցած է* (նոյն)։

(3) *Ափալաքեան* (նոյն) *Նալպանդեանի համար կ'ըսէ թէ* «Լաւ տպաւորութիւն չթողելով պառակտում առաջացուց եւ շուտով մեկնեցաւ. անոր դէմ հրապարակային ատենախօսութիւն ունեցաւ Տոքթ. Պոնափարթեան, որ փոխանակ պառակտումի, սէրն ու միութիւնը, ալա ճշմարիտ յեղափոխութիւնը փառաբանեց»։

*Ափալաքեան սխալմամբ Փարամազի տեղ Շահպազը կը յիշէ* (*տես ՊԱՊ ՈՒՏԻ*, *Թ.* 26, *էջ* 7)։

խակրթութիւնը եւ երկրորդական ուսումը իր ծննդավայրին մէջ առնելէ վերջ Վենետիկ Մուրատ–Ռափայէլեան վարժարանի մէջ լրացուցած էր իր ուսումը, Վենետիկ ապրած երկու տարիներու ընթացքին Աճարոնեանի մէկ այցելութեան առթիւ՝ Դաշնակցութեան շարքերը կը մտնէ։

Երբ Պոլիս կու գայ, Միքայէլ Նաթանեանի ԾԱՂԻԿ–ին խմբագիր կ՚ըլլայ եւ 1903–ին Դաշնակցականներու կողմէ կազմակերպուած Օսմանեան պատրիարքի դէմ կատարուած մահափորձին հետեւանօք կը հարկադրուի Պոլսէն հեռանալ փախչելու ըլլալով։

Կ՚ապաստանի Եգիպտոս, ուր կը մնայ հինգ տարի (1903—1908)՝ խառնուելով հոն յուզուող սահմանադրական պայքարին, հրատարակութիւններով եւ բանախօսութիւններով, որոնք շատ բուռն ոճ մը ունէին։

Այդ միջոցին Եգիպտոս էին Երուանդ Օտեան եւ Լեւոն Լարենց, որոնց հետ ալ գործակցած է սահմանադրական պայքարին մէջ։ Այդ առթիւ կը հրատարակէ ԿՐԱԿ անուն լրագիր մը (2 թիւ միայն), ՄՏՐԱԿ կիսամեայ հանդէսը եւ ՀԱՇԻՒՆԵՐ խորագրուած թռուցիկներ եւ պզտիկ գրքոյկներ, ամէնքն ալ Փանջունիական ոճով (1)։

1908–ին Օսմանեան Սահմանադրութեան վերահաստատութենէն ետք Կ. Պոլիս փութացող գործիչներէն մէկն ալ ինքն էր։ Դաշնակցութիւնը զայն ղրկեց Մալաթիա, որ անկոխ դետին մըն էր։

Հոն անիկա իր կրակոտ եւ գրգռիչ բանախօսութիւններով շարժում առաջ բերաւ եւ խանդավառութիւն ստեղծեց եւ յաջողեցաւ հոն կազմակերպել Հ. Յ. Դաշնակցութեան կոմիտէ մը, առաջին անգամ ըլլալով (2)։

Նոր կազմակերպութեան հիմնադիրները կ՚ըլլան.

Սեդրակ Մոմճեան,
Գրիգոր Անսուրեան,
Գաբրիէլ Անսուրեան,
Մանուկ Խանճեան,
Խոսրով Քեչիչեան,
Սիմոն Ուլուհոճեան,
Վիքթոր Ո. Պունճուզլեան,
Տոքթ. Միքայէլ Քեչիչեան,
Տոքթ. Խաչատուր Պոնաբարթեան

(1) Ըսողներ կան, մօտէն գիտցող, թէ Երուանդ Օտեան, որ Աղեքսանդրիոյ մէջ մօտէն ճանչցած էր Բարսեղ Շահպազը, իր ԸՆԿԵՐ ՓԱՆՋՈՒՆԻ գրած ատեն իր աչքին առջեւ ունեցած էր զայն իբր տիպար, եւ գիծերը խտացնելով կերտած էր Ընկեր Փանջունիի տիպարը, ինչ որ շատ հաւանական է:

(2) Սեներքերիմ Ափալաքեան (ՊԱՊ ՈՒԽՏԻ, թ. 26, էջ 7) եւ Գ. Մելիտինեցի (Նախճիրներ, էջ 78) կ՚ըսեն թէ լսած են թէ 1908-էն առաջ Մալաթիոյ մէջ Դաշնակցական կոմիտէ գոյութիւն ունեցած է սակաւաթիւ անդամներով, բայց խիստ գաղտնի պահուած է, խուսափելու համար կառավարական հետապնդումներէ:

Սակայն հաւանական չի թուիր այս հաւաստումը, ինչպէս հաւանական չէ ՊԱՊ ՈՒԽՏԻ (թ. 31, էջ 2) այն միւս պատմութիւնը թէ «Հ. Յ. Դաշնակցութիւնն... մուտք գտած է Մալաթիոյ մէջ մօտաւորապէս 1912 Թուականներուն»:

եւ ուրիշներ, որոնց անունները անծանօթ կը մնան։

Վիքթոր Պունճուգլեանի հայրը Սենեքերիմ, որ նախապէս եղած էր Հնչակեան, Ամերիկայէն դառնալէն վերջ կը յարի Դաշնակցութեան եւ կ՚ըլլայ կոմիտէին ամենագործօն անդամներէն մէկը։

Սենեքերիմ Ափալաքեան (Յուշեր եւ խոհեր, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 26, էջ 7), Դաշնակցութեան այս առաջին յայտնի անդամները կը ներկայացնէ նախապատերազմեան տարիներուն Մալաթիոյ Հայութեան քաղաքական, կրթական ու ազգային գործերու առաջնորդները, եւ անոնց առանձնայատուկ նկարագիրները կու տայ, այսպէս Սեդրակ Մոմճեանը «Վարչագէտ», Սենեքերիմ Պունճուգլեանը «սիրաշահող» ու «համակրելի», Մանուկ Խանճեանը՝ «զոհող ու գործերը լաւագոյն կերպով դասաւորող», Սիմոն Ուլուհոճեանը՝ «գիտակից, զոհաբերող ու միշտ դիմացինը համոզող», Տոքթ. Միքայէլ Քեչիչեանը՝ «ատենախօս ու հեռատես», Խօսրով Քեչիչեանը՝ «հոետոր եւ ազգային միութեան ջերմ պաշտպան», Գաբրիէլ Անսուրլեանը՝ «անկաշառ դատախարակիչ, անվախ, տաղանդաւոր առաջնորդ», Տոքթ. Խաչատուր Պօնափարթեանը՝ «հռետոր, անվախ եւ պայքարող» եւայլն կոչելով։


Մանուկ Խանճեան


Տոքթ. (Քեփթըն) Խ. Պօնափարթեան

Սենեքերիմ Ափալաքեան, այս տեղեկութիւնները տալէ ետք, կ՚ըսէ թէ «1908-ին երբ Օսմանեան Սահմանադրութիւնը հռչակուեցաւ, մենք տեսանք որ վերոյիշեալ անձնաւորութեանց գործօն մասնակցութեամբ Հայ Յեղափոխական Դաշնակցութեան կոմիտէ մը կազմուած է»։

Բարսեղ Շահպազ՝ կուսակցական բացատրութեամբ «կազմակերպելէ» ետք կը դառնայ Պոլիս, ուրկէ կը ղրկուի այս անգամ Պուլկարիա եւ ապա Եգիպտոս, ուր 1912-ին ամուսնանալէ վերջ կ՚անցնի Ֆրանսա եւ կը մտնէ Փարիզի Իրաւագիտական համալսարանը, առանց հրաժարելու կուսակցականու-

թենէ և կը գործակցի Մ. Վարանդեանի Pro Armenia-ի հրատարակութեան գործին եւ կ'աշխատակցի դաշնակցական մամուլին:

Իր վկայականը ստանալու մօտ էր երբ Ա. Համաշխարհային պատերազմը ծագեցաւ եւ Տաճկաստան Վիքթոր Պէռառի կողմէ իրեն վստահուած պաշտօնով մը, — ըստ Թէոդիկի — Պոլիս եկաւ եւ Թակարդը ինկաւ եւ 24 Ապրիլի զոհերէն մէկը եղաւ:

Իր Մալաթիա հասնելէն առաջ կամ իրեն հետ հոն եկած են նաեւ Սեբաստացի Մուրատ ծանօթ հերոսը, Կարօ, Աւօ եւ Տիգրան Աստիկեան (այս վերջինը Ամերիկայէն):

Ասոնց քարոզութիւններուն ազդեցութեան տակ շատեր կը յարէին այս կազմակերպութեան եւ Դաշնակցականներուն թիւը կը հասնի 475—500ի, ունենալով 40 խմբապետներ եւ 40 օգնականներ:

Զանազան շրջաններու մէջ կազմած մարմիններ կը գումարէին ժողովներ եւ կազմուած էին ինքնապաշտպանութեան զանազան խումբեր (Սենեքերիմ Ափալաքեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 26, էջ 7):

Դաշնակցութիւնը ամէն տասնեւհինգ օրն անգամ մը կ'ունենար հրապարակային եւ դասախօսական ժողովներ (նոյն):

Այսպէս, Դաշնակցութիւնը հակառակ իր ուշ թափանցման, աւելի խորունկ արմատ ձգած է Մալաթիոյ մէջ, աւելի տարածուած է եւ ունեցած է այնպիսի չօշափելի գործունէութիւն մը, որ ծանօթ է բազմաթիւ Մալաթիացի վերապրողներու (տես ՊԱՊ ՈՒԽՏԻ, 1942, Թ. 21, էջ 2):

Դաշնակցութիւնը իր Մալաթիա բոյն դնելէն քիչ ետք կ'ունենայ իր սեփական ակումբը, ուր ամէն իրիկուն կը կատարուէին դասախօսական եւ վիճաբանական ժողովներ, ընթերցումներ եւ երգեցողութիւններ:

Կը հաստատուի իր ակումբին մէջ գրադարան մը, յեղափոխական գաղափարներ հրահրող գիրքերով:

Դաշնակցական կոմիտէն կը սարքէ Մալաթիոյ մէջ լսարանական ժողովներ, ուր կը դասախօսէին եւ կ'ատենախօսէին զանազան անձեր, հրահրելու համար հայրենասիրութիւնը ժողովուրդին, զոր խանդավառելու համար ազատագրի շատ շողշողուն հեռապատկերներ կը ներկայացուէին, այնպիսի ատերասան յանդգնութեամբ մը եւ սանձարձակ լեզուով մը, որ իբր թէ իրենց գլխուն վրայ չգտնուէր կառավարութիւն մը եւ հետեւող չըլլար իրենց շարժումներուն եւ ծրագիրներուն:

Դաշնակցականք հակառակ անոր որ խոհեմութիւնը ունեցած էին իբր յեղափոխական մարմին մը չներկայանալու Թուրքերուն եւ կոմիտէն ինքզինք քօղած էր «ՄԱՍՆԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ» անունին տակ, սակայն իր ատենաբանները եւ դասախօսները բնաւ չունեցան այնքան մը շրջահայեցութիւն եւս եւ սկսան իրենց լեզուին եկածը դուրս տալ եւ գրգռիչ արտայայտութիւններ ընել, որպէս թէ հայկական կառավարութեան մը հովանիին տակ կը բանախօսէին:

Զգտնուեցան մարդիկ, որոնք մօտաւորապէս այդ թուականէն դար մը

առաջ ապրող Պօղոս Խտրնեցի պատրիարքին պէս, երբեմն–երբեմն յիշեցնէին, ինչպէս այդ պատրիարքը իր քարոզներուն մէջ կ'ընէ եղեր, ահեղագոչ ձայնով մը ըսելով թէ «ՄԻ ՄՈՌՆԱՔ ՈՐ ԹԱԳԱՒՈՐԸ ՏԱՃԻԿ Է»։

Ընդհակառակը, ինչպէս շատ մը ուրիշ գաւառներու մէջ, Մալաթիոյ մէջ ալ արտառոց ցուցադրութիւններ ըրին։

Գ. Մելիտինեցի (ՆԱԽՃԻՐՆԵՐ, էջ 78) մէկը այդ կուսակցութեան «հաւատացեալ»ներէն եւ կ'երեւի ամէնէն կոյր հետեւողներէն, որ հիանալի կերպով խրացուցած է անոնց լոզունգները իբր «կարգին պատատենչ» կը հաստատէ թէ դաշնակցական նորակազմ կոմիտէի ներքին գործունէութեան տանցքը կը կազմէ «հնարաւոր բոլոր միջոցներով աշխատիլ ժողովուրդը գինել գալիք անակնկալները քաջութեամբ դիմագրաւելու համար»։ Եւ ասոր համար Թուրքերու աչքին տակ եւ անոնց գիտակցութեամբ կը ձեռնարկէին զինուելու միջոցներ որոնել։

Թուրքերու աչքէն անշուշտ չէին կրնար խուսափիլ այս պատրաստութիւնները եւ չէին կրնար անտարբեր մնալ եւ չգրգռուիլ։

Հայերը, անուրանալի է որ իրաւունք ունէին բնաւ չվստահելու Թուրքերուն, քանի որ չարաչար յուսախաբ եղած էին քանի քանի անգամներ Թուրքերուն խոստումներուն հաւատալով եւ յուսախաբ ըլլալով։

Եւ մանաւանդ փրկութեան իբր գերագոյն միջոց Օսմանեան Սահմանադրութեան վերահաստատութիւնէն ինը ամիս հազիւ անցած պատահեցաւ Կիլիկիոյ եղեռնը եւ անկէ ետքն ալ ոչ մէկ բարուոքում տեսնուեցաւ Հայոց վիճակին մէջ, եւ 1911–1912 տարիներուն Հայաստանի մէջ Համիտական շրջանի յատուկ կեղեքումները, հարստահարութիւնները եւ ջարդի սպառնալիքները շարունակուեցան թերեւս աւելի յաւելեալ եւ ճոխացեալ, Հայերը որոշ տեսան թէ խաբէութիւն մը եւ կեղծիք մըն էին այդ Սահմանադրութիւնը եւ երկրին մէջ արդարութիւն եւ ապահովութիւն հաստատելու խոստումները, որոնք Թուրքերը կ'ընէին։

Արդարեւ ոչ մէկ բարեշրջում տեսնուեցաւ երկրին վարչութեան մէջ, ուր «ՄԻԼԼԷԹԻ ՀԱՔԻՄԷ» (տիրող ազգի) իրաւունքներէն ճառել սկսան Թուրքերը, քրիստոնեաներ սպաննած ըլլալու համար քանի մը իսլամի կախաղան բարձրանալը, իսլամութեան դէմ անարգանք եւ Հիւսէյն Հիլմիի դահլիճը արտաքոյ խորհրդարանին տապալեց, Համիտեան շրջանի յափշտակութիւններէն ոչ մէկը արդարութեան համար իրենց օրինաւոր տէրերուն չդարձուեցան, Քիւրտերու աւարառութիւններու և հասցուցած չարիքներուն արդելք չեղան եւայլն։

Ասոնք բոլորը Հայերը յուսահատութեան մատնած էին եւ ընդհանուր դժգոհութիւն կար, երբ 1912–ին Պալքանեան պատերազմը ծագեցաւ։ Թուրքերը քրիստոնեաներու դէմ ատելութեամբ լեցուեցան եւ անոնց գէշ աչքով նայիլ սկսան։

Այդ ատելութիւնը, ինչպէս վերը բացատրուեցաւ, աւելի չեշտուեցաւ

երբ 1912 Պալքանեան պատերազմին հետեւանօք Արեւելեան Հարցը Եւրոպական դիւանագիտական բանակցութեանց առարկայ եղաւ եւ Հայերն ալ անխուսափելի կերպով եւ հարկադրաբար ջանքեր ըրին Պերլինի դաշնագիրին 61րդ յօդուածը վերակենդանացնելու:

Ասիկա պատճառ եղաւ որ Օսմանեան կառավարութիւնը Թուրք խուժանը գրգռէ ընդդէմ Հայերուն՝ հնարաւոր սքօղեալ միջոցներով, մինչեւ որ 1914-ին Համաշխարհային պատերազմը պայթեցաւ եւ վերապահութեան ոեւէ պատճառ չմնալով, այլեւս սկսաւ Հայերը ջնջելու եղեռնական ծրագիրը ամենազարհուրելի եղանակով մը եւ սաստկութեամբ գործադրել:

Մինչ այդ Հայերը տեսնելով որ Թուրք ժողովուրդին եւ կառավարութեան տրամադրութիւնը փոխուած է հանդէպ իրենց, զինուելու գործին ոյժ տուին, առանց սակայն պէտք եղածին չափ զգոյշ քայլերով գործելու:

Ուրիշ տեղեր պատահածին պէս, Մալաթիայի Հայերն ալ իբր թէ կոմիտէներու ջանքերով զինուեցան, առանց նկատի առնելու թէ իրենց ձեռք բերած զէնքերը բոլորովին անբաւական էին զինուելու համար պէտք եղածին պէս:

Ասով հանդերձ, աշխատած են զէնքեր ձեռք բերելու: Գ. Մելիտինեցի կը յայտնէ թէ զէնքերու փոխադրութեան մէջ անգնահատելի ծառայութիւն մատուցած են կառապաններ Յովհաննէս Թերխանեան (Արթին Զաւուշի տղան) եւ Մելքիսեդեկ Տէր Պաղտասարեան(1):

Սակայն ասոնք բոլորն ալ զուր ջանք եւ անօգուտ վաստակ եղան, վասնզի անպատրաստ ժողովուրդը զանոնք գործածելու տեղ յանձնեց Թուրք ոստիկանութեան եւ ոչխարներու պէս մորթուելու գնաց խումբ ոստիկաններու առաջնորդութեամբ, շնորհիւ յեղափոխական կուսակցութիւններու թերի ու պակասաւոր կազմակերպութեան եւ ժողովուրդը գրեթէ բնաւ պատրաստած չըլլալուն:

---

(1) Մելքիսեդեկ Տէր Պաղտասարեան ոչ միայն զէնքի փոխադրութեան վտանգաւոր գործը կը կատարէր, այլ նաեւ հարիւրաւոր զինուորական տարիքի մէջ գտնուող հայ երիտասարդներ գաղտնի մինչեւ Սամսոն բերելով առանց վտանգի նաւը կը դնէր, որպէսզի Ամերիկա մեկնին (Յ. Գոճապաշեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, թ. 31, էջ 10): Իսկ անոր անմիջական գործակիցներուն մէջ յիշուած Խաչատուր քհն.ի ո՞վ ըլլալը չէ կրցած Գոճապաշեան հասկնալ, սակայն շատ որոշ է թէ նոյնինքն Տ. Եղիշէ քհն. Խաչատուրեանը պիտի ըլլայ:



## Է.

# ՄԱԼԱԹԻՈՅ 1895-Ի ՋԱՐԴԸ ԵՒ ՀԱՅՈՑ ԻՆՔՆԱՊԱՇՏՊԱՆՈՒԹԻՒՆԸ

Մալաթիոյ Հայերուն քաղաքական կեանքին մասին վերոգրեալ տեղեկութիւնները թերի պիտի մնային եթէ չխօսուէր նաեւ անոր աղետալի հետեւանքներուն եւ Մալաթիոյ Հայերուն անէջացման վրայ։

Թուրք կառավարութիւնը շատ կանուխէն իր ընտրութիւնը ըրած էր ՐԱՅԱներու շարժումներուն դէմ իր ձեռք առնելիք միջոցներուն համար։

Ան ընդգրկած էր մասնաւորապէս քրիստոնեաներու թիւը պակսեցնելու բազմաթիւ միջոցներ (տես ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 631–633)։

Եւ պէտք է ըսել թէ Օսմանեան պետութեան վարիչները յաջողած էին իրենց ներքին քաղաքականութեան հիմնաքարը կազմող «Թիւի խնդիրը» լուծելու, սպիտակ եւ կարմիր ջարդերով, երբոր առիթը ներկայացած էր։ Այսպէս, Օսմանեան պետութեան ամէն մասերուն մէջ ընդհանուր կարգախօսի մը համաձայն բռնի Իսլամացման փորձեր միշտ կատարուած են, այլակրօն տարրերը իսլամացնելով թրքացնելու համար։ Նոյնպէս ՐԱՅԱներու արտագաղթը միշտ հաճոյքով դիտուած է պետութեան կողմէ։

Իսկ ամենէն զարհուրելին ու ամենէն վայրագը այն միջոցներուն ընդհանուր ջարդերն էին, որոնք կը գործադրուէին զանազան պատրուակներով եւ ձեւերով։

Մասնաւորելով մեր խօսքը Հայաստանի եւ Հայերու վրայ, մենք բացառութիւն չէինք կազմեր ընդհանուր կանոնէն եւ մենք ալ ենթարկուած էինք դարերով, թրքական վարչութեան տակ, այն սոսկալի բռնութիւններու, որոնք ի գործ կը դրուէին ՐԱՅԱներու թիւը, որքան հնար է, նուազեցնելու համար։

Jean Baptiste Tavernier (1605–1689) Ֆրանսացի ուղեւորը, որ ԺԷ. դարուն 6 անգամ (1632, 1638–1642ին, 1643–1649, 1652–1656ին, 1657–1662ին եւ 1663–1668ին) Արեւելք ուղեւորուած է եւ կու տայ շատ հետաքրքրական տեղեկութիւններ, շատ կարեւոր վկայութիւն մը տուած է, որ կը հաստատէ թէ Թուրքերը ԺԷ. դարէն սկսեալ ինչպէս նուազեցուցած են Հայերու թիւը նոյնիսկ իրենց բնիկ երկիրին մէջ։

Թաւերնիէի վկայութեան համաձայն, «Թոգաթէն մինչեւ Դաւրէժ, երկիրը գրեթէ միմիայն քրիստոնեաներէն բնակուած է եւ ըստ որում այս ընդարձակ տարածութիւնը նախնեաց Հայաստան կոչուած նահանգն է, պէտք չէ զարմանալ եթէ քաղաքներուն եւ գիւղերուն մէջ ՄԷԿ ՄԱՀՄԵՏԱԿԱՆԻ ՓՈԽԱՐԷՆ ՅԻՍՈՒՆ ՀԱՅ ԿԸ ԳՏՆՈՒԻ» (**Les six voyages de Jean Baptiste Tavernier en Turquie, en Perse et aux Indes**, Paris, 1713, Ա., էջ 47–48)։

*Թուական այս համեմատութիւնը եթէ նոյնիսկ որոշ չափով մը չափազանցուած ալ ըլլայ, ցոյց կու տայ թէ ժէ. դարուն կէսերուն ունէր իսկապէս հայ մեծամասնութիւն մը, որ տիրական էր երկիրին մէջ։*

*Յաջորդ դարերու այս վիճակը չէր պահուած եւ Հայերու թիւը շատ պակսած էր, անշուշտ ջանքերով պետութեան, որ ոչ մէկ օրինաւոր եւ ապօրէն միջոցի առաջ կանգ չէր առներ ոչ-իսլամ տարրերը աննշան փոքրամասնութիւններու վերածելու համար ընդարձակածաւալ Օսմանեան Պետութեան մէջ։*

*Այսպէս, չորս-հինգ դար ամէն տեսակ խժդժութիւններ գործադրուեցան՝ բովանդակ երկիրին մէջ ապրող բնիկ այլազան ցեղերը եւ կրօնքները իսլամութեան եւ թրքութեան մէջ ձուլելու համար։*

*Այսպէս վարուած են Թուրքերը ոչ միայն հին բարբարոս ժամանակներու, այլ նոյնիսկ նոր ժամանակներու մէջ, երբ եթէ ոչ անկեղծօրէն գոնէ ձեւականօրէն ընդօրինակել կը կեղծէին Եւրոպական կարգ ու սարքը։ Բայց շատ դժբախտաբար ԹԱՆԶԻՄԱԹԻ* (1839) *եւ ԻՍԼԱՀԱԹի հրովարտակին* (1856) *հրատարակութենէն ետքն ալ չեն հրաժարած իրենց բարբարոս ուղղութենէն եւ գործադրած են ընդհանուր ջարդեր։ Այսպէս, Յոյները* 1818–1828 *դրեթէ անընդհատ զարհուրելի ջարդերու ենթարկուեցան Օսմանեան Պետութեան սահմաններուն մէջ, մասնաւորապէս Հելլադայի եւ Արշիպեղագոսի կղզիներուն մէջ, եւ* 1876*-ին Պուլկարները ջարդուեցան զանգուածային կերպով։*

*Մասնաւորապէս Սուլթան Համիտ, որ իր նախահայրերու զազանային բնազդներով օժտուած հրէշ մըն էր, քաղաքագիտական ձիրքերով ալ օժտըւած, իր հպատակները զսպելու համար Պուլկարներու դէմ այս մեթոտը ընդգրկելէ ետք, հայ յեղափոխական կուսակցութեանց կազմակերպութիւններէ ետք, նորէն նոյն պատժական միջոցը կիրարկել սկսաւ եւ* 1895–1896 *տարիներու Տրապիզոնէ սկսեալ բոլոր հայաբնակ քաղաքներու մէջ ջարդեր կազմակերպել տուաւ Անատոլուի քննիչ Շաքիր փաշայի ձեռքով, եւ զգալի կերպով պակսեցուց Հայոց թիւը իր պետութեան մէջ։*

*Մալաթիա ալ զերծ չմնաց այս աղէտէն։ Հոն ալ հայ բնակչութիւնը ջարդել փորձեցին։ Բայց ի պատիւ Մալաթիացիներու պէտք է ըսել թէ անոնք հինգ օրերու հիանալի ինքնապաշտպանութեամբ մը կրցան ցոյց տալ թէ Հայը միայն չի ջարդուիր եւ գիտէ նաեւ ջարդել ոչ յանուն բարբարոսութեան, այլ ինքնապաշտպանութեան համար։*

*Եւ յաջողեցան ծունկի բերել Թուրքերը, որոնք ծանր կորուստներ ունեցան։*

1895*-ի ջարդը, որ ինչպէս բացատրուեցաւ, Եըլտըզի Պալատին մէջ ծրագրուած Հայկական ընդհանուր ջարդերուն մէկ մասն էր, ինչպէս Համիտ կ'ուզէր հաւատալ Եւրոպայի, իսլամ մոլեռանդութեան պոռթկումը չէր, հետեւանք գրգռութեան եւ զայրոյթի, այլ պարզապէս վերէն թելադրուած եւ հրահանգուած էր։ Այս ճշմարտութիւնը հաստատուեցաւ նոյնիսկ ինքնա-*

*պաշտպանութեան կռիւներուն ընթացքին, երբ տեղական Թուրք առաջնորդները մէջ ջարդը շարունակելու մասին երկուութիւն առեղծուեցաւ։ Մոլեռանդ ու արիւնածարաւ ոճրագործներ կը պահանջէին որ կռիւը շարունակուի մինչեւ Հայոց վերջնական բնաջնջումը, մինչ չափաւոր Թուրքերը կը հակառակէին անոնց այն պատճառաբանութեամբ թէ* «Կեդրոնական կառավարութեան (*Համկյեր Սուլթան Համիտի*) ջարդի հրամանագիրը միայն 24 ժամուան համար է» (*ՊԱՊ ՈՒԽՏԻ*, *Թ*. 21, *էջ* 1)։

*Մալաթիոյ Թուրքերը Հայերու կորովի դիմադրութեան բնաւ չէին սպասեր։*

*Հայերը թէեւ անակնկալի եկած քիչ մը շփոթեցան, բայց անմիջապէս ինքզինքնին ժողվեցին, ցոյց տուին հերոսական ինքնապաշտպանութիւն մը։ Տ. Եղիշէ քհն. Խաչատուրեան* «Կռիւի առաջին իսկ ազդանշանին խաչն ու Աւետարանը մէկ կողմ դնելով, սուրն ու զէնքն է խլած, եւ առանց վախի, առանց տատանման առաջին հակահարուածն է տուած մոլեգնած թուրք խուժանին, կրակ տեղալով շուկային ու Մայր Եկեղեցւոյ մօտիկը գտնուող Տէր Պաղտասարենց (ծանօթ Տէտըքեօյենց) դիրքէն, իրեն հետ ունենալով միայն քուռ մը քաջեր։

Կոտորածի առաջին ազդանշանին այս դիրքէն մղուած կռիւը ունեցած է հետեւեալ ճակատագրական օգտակարութիւնները.

ԱՌԱՋԻՆ. Արգիլած է թուրք խուժանը Հայոց թաղերը խուժելու սանձարձակօրէն։

ԵՐԿՐՈՐԴ. Փշրած է թուրք խուժողին առաջին կատաղութիւնը զոհեր խլելով անկէ, եւ մասամբ զգաստացնելով զայն թէ անպատիժ կերպով չի կրնար արիւն թափել։

ԵՐՐՈՐԴ. Վճռակամութեամբ վերջ տուած է Հայոց տատանումներուն եւ ժամանակ շահելով պատեհութիւն տուած է անոնց որ պահուած զէնքերը թաքստոցներէն դուրս հանեն, եւ նոր դիրքեր գրաւելով կռիւի պատրաստուին։

ՉՈՐՐՈՐԴ. Ժամանակ եւ առիթ տուած է անզէն ժողովուրդին՝ ծերերուն եւ մանուկներուն, որ առանց խուճապի ապաստանին Հայ Կաթողիկէ եւ Սուրբ Երրորդութեան եկեղեցիներու մէջ, որոնք քանի մը օր յետոյ պիտի դառնային վերջին եւ անխորտակելի դիրքերը 1895ի ինքնապաշտպանութեան կռիւներուն։

Տ. Եղիշէ քահանայ այս առաջին դիրքէն կռիւը շարունակած է, որքան որ կարելի եղած է թուրք գերազանց ուժերուն դէմ. ապա գիշերանց նահանջած է Անանեաններու դիրքը, ուր կը կռուէր Մալաթիոյ Հայութեան այլ հոյակապ դէմքերէն մին — Գրիգոր Աղա Ալանեանը, ապա անկէ ալ նահանջելով իր առիւծասիրտ զինակիցներուն հետ, ապաստանած է Հայ-կաթողիկէ եկեղեցին եւ կռիւը շարունակած է մինչեւ վերջին վայրկեանը, երբ զինադադար կնքուած է խաղաղասէր թուրք առաջնորդներու միջամտութեամբ ու երաշխաւորութեամբ։

Ըստ ականատեսներու վկայութեան, Տ. Եղիշէ քահանայ հինգօրեայ կռիւներու ընթացքին անօթի եւ անքուն, առանց վայրկեան մը իսկ իր հանգիստի մասին մտածելու, ոչ թէ միայն անդադար կրակ տեղալով եւ շպրտած է մոլեռանդ թուրք ու քիւրտ խուժանի անվերջանալի գրոհները, այլ եւ միշտ դիրքէ դիրք վազելով, խրախուսած ու քաջալերած է հայ կռուող մարտիկները, որ առանց յուսահատելու շարունակեն անհաւասար կռիւը:

Տ. Եղիշէ այնքան տարուած է կռիւով, որ յաճախ լուացողական հայհոյանքներ նետած է անարիօրէն փախչող թուրք խուժանին, եւ այդ առթիւ երբ վարդապետ մը դիտողութիւն ըրած է թէ «կղերականին չի վայելեր հայհոյել», Տէր Եղիշէ անայլայլօրէն պատասխանած է «վարդապետ, հիմա քարոզի ժամանակ չէ, կռիւի ժամանակ է»:

Դարձեալ ականատեսներու վկայութեամբ կը հաստատուի, թէ ինչպէս որ Տ. Եղիշէ եղած է առաջին զինակ արձակողը, նոյնպէս ալ ան եղած է վերջին կռուողը, որ զէնքը վար դրած է, ու երբեք, երբեք չէ հաւատացած Թուրքին խոստումին ու գթասրտութեան» (*նոյն*):

*Այնպէս Տ. Եղիշէ քահանայ Խաչատուրեան եւ իրեն հետ կռուող ինքնապաշտպանութեան միւս հերոսները, իրենց դիւցազնական պայքարով կերտեցին փառք հիւսեցին Մալաթիոյ Հայութեան, որ հպարտ է անով եւ պարծանք մը կը նկատէ զայն իրեն համար:*

*Մալաթիացի Հայերը բոլորն ալ այդ հերոսական ինքնապաշտպանութիւնը կը նկատեն իրենց «յիշատակի արժանի» գործը, եւ անպատճառ անոր մասին ակնարկութիւն մը, եւ խօսք մը ունին ըսելիք եւ որ աւելին է՝ անոր մօտէն կամ հեռուէն մասնակցութիւն մը ունենալու փառքին կը ցանկան:*

*Գրեթէ բոլոր Մալաթիացի գրիչ բռնողներ այս նիւթը շօշափող տողեր ունին անպատճառ:*

*Այս պատճառաւ բազմաթիւ ձեռագիր յուշերէ զատ, որոնք մեզի տրամադրուած են, կան բազմաթիւ տպագրեալ գիրքերու եւ թերթերու (մանաւորապէս ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ-ի եւ ՊԱԳ ՈՒԽՏԻ-ի մէջ) հրատարակուած հատուածներ եւ յօդուածներ, որոնք այս դիւցազնամարտին վրայ կը խօսին:*

*Այս գրութիւնները կարելի չեղաւ համադրել, վասնզի քաղաքին հայաշխարհ բոլոր թաղերուն մէջ միաժամանակ պատահած դէպքերուն լիակատար պատկերացումը տալու անկարելիութեան առջեւ, գրողները իրենց տեսածները կամ լսածները ներկայացուցած են: Եթէ ասոնք բոլորը իրենց ամբողջութեամբ առնուէին, կրկնութիւններ պիտի ըլլային, եւ նոյնիսկ թերեւս հակասութիւններ եւ իրար հերքող մասեր, եւ անճշդելի տարբերութիւններ, եւ ինչպէս նաեւ հաւանօրէն նպատակաւոր եւ դիտումնաւոր տողեր, որոնք կողմնակալ ոգիով գիրի առնուած՝ խրողութիւններ՝ որոնք այլափոխէին պզտիկները եւ բարեկամներ հերոսացնելու կամ իրենց անձը՝ եւ իրենց սիրած անձերը դերակատարներ ցոյց տալու համար:*

*Կը ցաւիմ ըսելու թէ անոնցմէ մէկ մասը այնքան անխնամ կերպով գրուած էին որ կարելի չէր այդքան անփութութեամբ խմբագրուած տողերու*

*վաւերականութեան վստահիլ:*

*Հետեւաբար վարանումի մատնուեցայ եւ խոհեմութիւն համարեցի դիմել այնպիսի անձի մը, որ բոլոր Մալաթիացիներու վստահութիւնը վայելէր եւ նոյնիսկ իր գաղափարի հակառակորդներուն յարգանքը վայելէ իբր պարկեշտ քաղաքացի:*

*Իր ուղղամտութիւնը ամէն կասկածէ վեր այս անձնաւորութիւնը բազմաթիւ Մալաթիացիներու վկայութեամբ կը հանդիսանայ Դր. Խոսրով Պօնաբարդեան, որուն դիմեցի, խնդրելով որ ինքն գրի առնէ 1895-ի Մալաթիոյ ջարդին եւ ինքնապաշտպանութեան պարագաները հնարաւոր ամբողջութեամբ, բայց ամփոփ:*

*Դր. Խոսրով Պօնափարթեան ազնուութեամբ ընդառաջ երթալով իմ դիմումիս գրի առաւ խտացեալ կերպով Մալաթիոյ պատմութեան այդ պատուաբեր դրուագը, զոր նոյնութեամբ հոս կը ներկայացնեմ: —*

# 1895-Ի ՄԱԼԱԹԻՈՅ ԿՈՏՈՐԱԾԸ(*)

**Գրեց՝ ԽՈՍՐՈՎ ՊՕՆԱՓԱՐԹԵԱՆ**

«1895 Հոկտեմբեր 20 Ուրբաթ օր, (1) Հայեր շուկայի փողոցներու մէջ, սովորականէն ստուար թիւով զինուած Թուրքեր եւ Քիւրտեր կը նշմարեն, ինչ որ սարսափ կ'ազդէ: (2) Գուշակելով որ միջօրէի աղօթքէն ետք Թուրքերը պիտի յարձակին իրենց վրայ, երբ խուժանը կը լեցուի մզկիթները, Հայերն պատեհութենէն օգտուելով կը գոցեն իրենց խանութները եւ կը մեկնին իրենց տուները: Թուրքեր երբ իրենց աղօթատեղիներէն դուրս կու գան եւ Հայերու խանութները փակ կը տեսնեն, կառավարիչը հրահանգ կու տայ որ ցրուին: Քիւրտ ցեղապետներուն կ'ազդարարուի որ իրենց հետեւորդներուն ըսեն որ Երկուշաբթի առաւօտ գան ջարդը եւ աւարառութիւնը սկսելու համար: Օրեր առաջ արդէն կառավարութիւնը թուրք եւ քիւրտ գիւղերը իր պաշտօնեաներու ձեռքով զինուորական զէնքեր եւ ռազմամթերք ցրուած էր, որպէսզի երբ իրենց կոչ ըլլայ, Սուլթան Համիտի հրահանգով եւ հրամանով կողոպտեն եւ ջարդեն քրիստոնեաները (3):

Կառավարութիւնը Շաբաթ օր անմիջապէս զինուորներու ընկերակցութեամբ պաշտօնեաները կը ղրկէ Հայոց թաղերը, որպէսզի հրահանգեն ժողովուրդին որ ամէն մարդ իր գործով զբաղի, եւ շուկայէն չբացակայի եւ անոնք որ իրենց խանութները փակ պահեն Երկուշաբթի օր, կառավարութիւնը իբր խռովարարներ պատիժի պիտի ենթարկէ: Նոյնպէս Հայ Առաքելական, Բողոքական, Կաթողիկ կղերականներու հրահանգ կը տրուի, որպէսզի Կիրակի օր յայտարարեն ժողովուրդին, որպէսզի ոեւէ մէկը իր սովորական շուկայի

(1) *Ծանօթագրութիւնները տեսնել Դրն. Խ. Պօնափարթեանի այս գրութեան վերջաւորութեան:*

կամ այլ զբաղումէն հեռու չմնայ։ Կառավարիչը Ալի Րիզա փաշա, կը խոստանայ բոլոր Հայերուն կեանքը եւ ինչքը պաշտպանել, եւ կը սպառնայ պատժել բոլոր անոնք, որոնք անսաստեն իր հրահանգը։ Շաբաթ օր շատ քիչ Հայեր իրենց խանութները կը բանան, սակայն Երկուշաբթի օր փոքր բացառութեամբ, կառավարիչին քաջալերական խօսքերէն խաբուած, շատեր իրենց խանութները կը բանան։

Երկուշաբթի օր Միութասարիֆը հայ պաշտօնեաներ ժողովի կը հրաւիրէ եւ մասնաւորապէս երկու զինուորներ կը ղրկէ Յովհաննէս էֆէնտի Թիւթելեանի եւ Նափոլէոն էֆէնտի Պաղտօեանի որպէսզի կառավարիչին հրահանգը յայտնեն եւ անոնց ընկերանալով կառավարչատուն բերեն։

Գրիգոր Աղա Ասլանեան կը մերժէ կառավարիչին ժողովի հրաւէրը։ Գրիգոր Աղա Մալաթիոյ ազդեցիկ եւ յարգուած Հայերէն մին էր։ Իր տունը շուկայ տանող պողոտային վրայ ըլլալով, շուկայ դիմող Հայերուն կը խրատէ, որպէսզի ետ դառնան իրենց տուները· կ'ըսէ թէ «Այդ օրուան շահը մեզի պէտք չէ»։ Նոյնը կը թելադրէ Թիւթելեանի եւ Պաղտօեանի, սակայն անոնք չեն անսար իր ազդարարութիւններուն։ Թիւթելեան եւ Պաղտօեան էֆէնտիներ երբ կը հասնին կառավարչատունը, կը ձերբակալուին միւս ներկայ եղող հայ պաշտօնեաներուն հետ։

Կառավարչատուն կ'ապաստանին նաեւ քառասունի մօտ Հայեր — անոնց մէջ էին Թիւթելեանի եւ Պաղտօեանի երկու երիտասարդ զաւակները — շուկայի խռովութիւնները նշմարելով։

Ձերբակալուած այս հայ պաշտօնեաները եւ հոն ապաստանող բոլոր Հայերը առաջին զոհերը կ'ըլլան ջարդին։ Թիւթելեան Յովհաննէս էֆէնտի եւ Պաղտօեան Նափոլէոն էֆենտիի կ'առաջարկեն որ իսլամանան։ Անոնք կը մերժեն եւ կը նահատակուին։

Գասապ պաշի մսագործը Նափոլէոն էֆենտիի մարմինը կտոր-կտոր ընելով, Սաման պազար կոչուած հրապարակին վրայ մսավաճառի կեռերէն կախելով կը սկսի պոռալ «Նափոլէոն էֆենտիի միսը 10 փարայի կը ծախուի»։ Ի՜նչ վայրագութիւն եւ անգթութիւն։

Թուրք եւ Քիւրտ խուժանը կոտորածի կը սկսի հետեւեալ կերպով։

Կառավարիչը իր մօտ կը հրաւիրէ Հաճի Եաղուպ օղլու Մահմուտ ծանօթ սրիկայ մը եւ կը հրահանգէ որպէսզի շուկայ իջնելով Հայու մը հետ վէճի բռնուի եւ սպաննէ։ Այս հրէշին առաջին զոհը կ'ըլլայ, Մալաթիոյ հանրածանօթ վաճառականներէն Եազմաճի Սարգիս Աղա Եազմաճեան։ Անոր սպանութենէն ետքը կը սկսի վեցհարուածով զնդակահար ընել հանդիպած Հայերը։ Ասիկա ազդանշան մը կ'ըլլայ որ խուժանը սկսի Հայերու ջարդը եւ թալանը շուկայի մէջ։ Հոս իրենց գործը լրացնելէ ետք կը սկսին յարձակիլ շուկայի թաղերուն վրայ, ուր կը գտնուէր Մայր եկեղեցին։

Տ. Եղիշէ Խաչատուրեան ([4]) անմիջապէս կը կազմակերպէ շուկայի մօտ թաղերու Հայութիւնը եւ հոս կը սկսին Հայերու ինքնապաշտպանութեան կռիւները։ Հայերը կռուելով հետզհետէ կը նահանջեն Սարաֆեաններու ([5])

տունը, որ Մալաթիոյ հանրածանօթ ընտանիքներէն մին էր:

Երկուշաբթի ամբողջ օրը կը դիմադրեն եւ Թուրքերը բաւական կորուստներ կու տան. այդ օրը իր թեւէն կը վիրաւորուի Տ. Եղիշէ քահանայի կռուող ընկերներէն Կիրակոս Ափալաքեան: Թուրքերը մօտակայ շէնքերը կը հրդեհեն: Երբ բոցերը իրենց կը մօտենայ, գիշերուան մութէն օգտուելով կը նահանջեն եւ կ'ապաստանին կաթողիկներու քարաշէն եկեղեցին, որ աւելի յարմարութիւններ ունէր ինքնապաշտպանութեան կռիւները շարունակելու:

Շուկայի թաղի աւելի ներսի կողմերը Չէքմէճեանները եւ Անանեաններու տուներէն բուռն կռիւներ կը մղուին Թուրք եւ Քիւրտ խուժանին դէմ: Այս կռիւներուն կը մասնակցի Գրիգոր Աղա Ալանեան: Չէքմէճեան տան մէջ կռուողները տեղի կու տան թշնամիին, իսկ Գրիգոր Անանեան (5ր) իր հետ ընկեր ունենալով Գրիգոր Մարտիկեանը ամբողջ Երկուշաբթի եւ Երեքշաբթի օրը կը կռուին: Թշնամիին անյաջող յարձակումներէ յուսահատ՝ կրակի կու տայ շէնքը եւ այս երկու քաջասիրտ հայորդիները կրակի բոցերուն մէջ կը մեռնին:

Երկուշաբթի առաւօտ երբ շուկայի կոտորածի լուրը տարածուեցաւ, Հայեր տարբեր շրջաններու մէջ, համոզուելով որ կառավարութեան պաշտպանութենէն ռեւէ յոյս չկայ, ինքնապաշտպանութեան միջոցներ ձեռք առին: Խարազայի յարձակումները սկսեցին Զաթալպենտի կողմէ:

Երբ հրացանաձգութիւններու ձայները լսուեցան, Պետրոս Պօնափարթեան որ Պօնափարթեան եղբայրներու երիցագոյնն էր, առանց ժամանակ կորսնցնելու զէնք ի ձեռին, Խարազայի թաղը շրջելով, կոչ ըրաւ որպէսզի իրեն միանան Թուրքերու մուտքը արգիլելու Հայոց թաղերը: Իր կոչին պատասխանեցին Զնգուշցի Նալպանդ Պալօ, Էքմէքճի Յակոբ, Գէորգ Մարգարեան (հայրը Կրթասիրացի հիմնադիրներէն Մարգար Մարգարեանի), Կոստուրանի Կիւրեղ Կիւրեղեան, Միտ. Գէորգ Թաշճեան:

Խարազայի թաղին մէջ ոստիկան զօրաց պահականոց մը կար, ոստիկան զօրքերը վախնալով Հայերու վրէժխնդրութենէն, Երկուշաբթի առաւօտ փախուստ տուին, լքելով հոն մաս մը զինուորական զէնքեր եւ փամփուշտ: Վերոյիշեալ խումբը գրաւեց հրացանները եւ այսպէս փոխան որսի զէնքերու, ունեցան շատ աւելի լաւ զինուորական մաւզէրներ: Այս խումբը մասնակցեցաւ Զաթալպենտի Եազմաճեաններու տունէն, եւ նոյնպէս Պաղտօեաններու շէնքէն մղուած կռիւներու: Այս երկու շէնքերն ալ Թուրքերը կրակի տուին: Խարազայի եւ մօտակայ թաղերու բնակչութիւնը ապաստանեցաւ բողոքականներու եկեղեցին եւ դպրոցը, ուր դիրքեր պատրաստուեցան, պատուհաններէն եւ շէնքերէ — հողէ, աղիւսէ շինուած բլլալով — ծակեր բացին հրացանի դիրքեր պատրաստելով:

Գասպար Աղա Պօնափարթեանի երկյարկանի շէնքին պատուհանները, որոնք կը հսկէին Զաթալպենտի եւ Շուկայի թաղերուն վրայ, ամրացուցին: Միքայէլ Էֆենտի Թերխանեանի երկյարկանի շէնքի պատուհաններէն դիրքեր պատրաստեցին եկեղեցիի թաղը պաշտպանելու համար:

Մինչեւ Երեքշաբթի օր պաշտպանեցին եւ Թուրքեր անկարող եղան խաբազայ թաղը մտնելու։ Երեքշաբթի կէսօրէ վերջ, երբ Թուրքեր աւելի յառաջացան, որոշեցին նահանջել եւ ապաստանիլ Կաթոլիկներու եւ Սբ. Երրորդութեան քարաշէն եկեղեցիները։

Եկեղեցին իր մօտ եղող երկրաշարժէն փլած բաղնիքը գնած էր, որու մէկ դռնէն ապահով ժողովուրդը փախուստ տուաւ դէպի եկեղեցիները։ Մերինները իրենց դիրքերուն վրայ մնացին եւ արգիլեցին Թիւրքերու եւ Քիւրտերու յառաջացումը։ Նոյնպէս տեղ տեղ ճանապարհին վրայ դիրքեր բռնած էին Հայերը եւ կ՚ազդարարէին որպէսզի ժողովուրդը պատերու մօտէն քալեն եւ տողանցքէ դուրս չ ելլեն։ Այս նահանջին մէջ միայն մէկ վիրաւոր եւ մէկ մահացած ունեցան Հայերը։

Պոնճուզլեաններու թաղը նաեւ կը պաշտպանուի եւ թշնամիին յառաջխաղացումը կ՚արգիլուի։ Մինչեւ Երեքշաբթի օր ինքնապաշտպանութեան կռիւներուն մէջ կարեւոր դեր կը կատարեն Պեքմեզեան, Դանիէլ Արփանեան, Ստեփան Ոսկերիչեան։

Ս. Յարութեան եկեղեցիի շրջանը բնակող Հայեր թուրք թաղերու մօտ ըլլալով, անոնք եւս առաջին յարձակումները կրեցին (5գ)։ Այդ շրջանի ([6]) հայեր, երբ թուրքերու յարձակումները սկսան, ապաստանեցան Մալաթիոյ հանրածանօթ մեծ ընտանիքներէն Չթաղեան Յովհաննէս աղայի տունը. իր տան մէջ կ՚ապրէին նաեւ իր ամուսնացած քաջ երեք զաւակները, Յակոբ (այլ անուամբ Ակօ պապա), Գէորգ, խաչատուր կամ խաչօ, որոնք հերոսաբար կը կռուին թշնամիին դէմ։

Երբ թուրք եւ քիւրտ խուժանը ([7]) կը յարձակի իր տան վրայ, Յովհաննէս աղա կը քաջալերէ կռուողները հետեւեալ խօսքերով. «Տղաք ամրացուցէք դիրքերը, մինչեւ ձեր վերջին շունչը կռուեցէք, թող պատուով մեռնինք, կռուելու պաշար եւ 300 այր եւ կին կերակրելու համար վեց ամիս բաւելիք պաշար ունիմ»։

Կռիւը կը շարունակուի թշնամիէն խլելով շատ մը զոհեր, սակայն երբ հրդեհը կը մօտենայ իրենց դիրքերուն, գիշերուայ մութէն օգտուելով, տան ուտելիք պաշարէն մաս մը ջորիներու վրայ բեռցնելով, զինեալ խումբ մը կիներ եւ աղջիկներ իրենց մէջտեղ առնելով կը մեկնին։ Խումբը երկուքի կը բաժնուի։ Յովհաննէս աղան կ՚ապաստանի կաթոլիկներու եկեղեցին եւ խումբին մեծամասնութիւնը կ՚ապաստանի Սբ. Երրորդութիւն եկեղեցին։ Աթաշեան եղբայրներ նաեւ կը մասնակցին այս ինքնապաշտպանութեան կռիւներուն։

Այս շրջանի ինքնապաշտպանութեան կռիւներու մէջ խիստ կարեւոր դեր կը կատարեն Շիրոցի Եաղուպ Պետրոս, Պարսիլոս եղբայրներ, որոնք քաջասիրտ, լաւ նշանառու վարպետ զինագործներ էին եւ նոյնիսկ կարող էին զինուորական մաւզերներ շինել։

Խանձեաններու տունէն նոյնպէս դիրքեր բռնելով կը կռուին, սակայն երեքշաբթի օր իրենց վառօդը կը հատնի, յարձակողները՝ տունը կը հրդեհեն

եւ բոլոր կռուողները կը մահանան հրդեհին մէջ: Այս կռիւներու հերոսը կը հանդիսանայ Յովհաննէս Սամուրգաշեան:

Սարգիս Սուքիասեան համբաւաւոր իր քաջութեամբ, հերոսաբար կը կռուի իր տան վրայ յարձակող խուժանին դէմ: Երբ Թուրքերը չեն կրնար զինք ընկճել, նենգամիտ միջոցներու կը դիմեն: Իր ընտանեաց անդամներուն կը դիմեն որպէսզի Սարգիսը համոզեն որ զինաթափ ըլլայ, յայտարարելով թէ «մենք լաւ դրացիներ ենք, բնաւ պիտի չուզենք որ Սարգիսի պէս քաջ երիտասարդ մը մեռնի, մենք պիտի խնայենք եթէ յանձնուի»: Վերջ ի վերջոյ իր կնոջ եւ ընտանեաց անդամներու պաղատանքին եւ պնդումներուն տեղի կու տայ եւ կը յանձնուի: Զինք կը տանին դրացիներէն մէկին տունը յաջորդ օր իր 12 տարեկան տղուն հետ դաւաճանօրէն կը սպաննեն (8):

Նոյնպէս Թորոս Թայեան եւ իր ընկերները երկյարկանի տան մը մէջ ամրացած կը դիմադրեն յարձակող թուրք եւ քիւրտ խուժանի դէմ, քանի մը օր դիմադրելէ վերջ դժբախտաբար իրենց ռազմամթերքը կը հատնի, թուրք պաշտօնեաներ կը համոզեն որպէսզի յանձնուին՝ խոստանալով որ իրենց կեանքը պիտի խնայեն: Թորոս Թայեան սակայն լաւ գիտնալով Թուրքին դաւաճան եւ խաբեբայ նկարագիրը, վեցհարուածով ինքնասպան կ'ըլլայ, 28 տարեկան հասակին մէջ, իր ետին թողելով կինը եւ վեց մատաղ զաւակները:

Յիշատակութեան արժանի է նաեւ Թէք Զեշմէի շրջանին Հանի Պապօ Թիւթելեանի, Ստեփանեան եղբայրներու, Հանի Աբրահամ Ուռլեանի (կեղծ անունով Քէօռ Մախաթ) ինքնապաշտպանութեան հերոսական կռիւները:

Աբրահամ Ուռլեան հինգ ընկերներով երեք օր կը դիմադրէ թուրք եւ քիւրտ խուժանին յարձակումներուն, իր ընկերներով գիշեր ատեն կը յարձակին աւարներով բեռնաւորուած տուն դարձող Քիւրտերու վրայ: Քիւրտեր այս անակնկալ յարձակումներէն բաւական թիւով զոհեր կու տան: Վերջ ի վերջոյ իր ընկերներով, Մալաթիայէն ինը ժամ հեռու իրեն քիւրտ բարեկամին տունը կ'ապաստանի եւ երբ կոտորածը կը դադրի, ապահով տուն կը դառնայ իր ընկերներովը:

Այսպէս, տարբեր-տարբեր շրջաններու մէջ եղած ինքնապաշտպանութեան կռիւները պատեհութիւն տուին հայ բնակչութեան, որպէսզի ապահով ապաստանի կաթոլիկ եւ հայ առաքելական Ս. Երրորդութեան եկեղեցիները:

Կաթոլիկ եկեղեցի հասնող Հայերէն նոյն եկեղեցւոյ անդամ Քարզըզեան Առաքել աղան առաջինը կ'ըլլայ եկեղեցւոյ մէջ ինքնապաշտպանութեան համար դիրքեր պատրաստող (9): Տ. Եղիշէ քահանայ խաչատուրեանի եւ շատ մը զինեալ Հայերու հոն ժամանումով առաւել եւս կը զօրանան դիրքերը: Թուրքեր երբ անկարող կ'ըլլան ընկնել եւ գրաւել եկեղեցին, կրկին կը դիմեն իրենց սովորական նենգամիտ դաւերուն: Սուտ եւ խարդախ համաձայնութիւն մը կը կնքեն խորխոռունի Ղեւոնդ Գերապայծառի հետ, ան ալ խաբուելով, շատեր զինաթափ ընելով զէնքերը ամբարը կը լեցնէ. մաս մը կռուողներ, ինչպէս Տ. Եղիշէ քահանան, կը պահեն իրենց զէնքերը: Եկեղեցի ապաստանող շատ մը Հայեր (10) կ'ապաստանին Մուսեղեան Նազարէթ աղայի

տունը։ Չորեքշաբթի առաւօտ թուրք եւ քիւրտ խուժանը այլեւս ապահով զգալով կը յարձակի եկեղեցիին վրայ եւ կը սկսին դռները կոտրել։ Տ. Եղիշէ քահանան անմիջապէս կ՚ոչ կ՚ընէ, որպէսզի կրակ բանան թշնամիին վրայ։ Հերոս քահանային զինակներուն շատ մը Թուրքեր գոհ կ՚երթան։ Այս կռիւներուն մէջ նաեւ կը սպաննուի խուժանին առաջնորդ Հանի Եաղուպ Մահմէդ, Թորոս Պեքմեզեանի զինակով. թէեւ ոմանք կը խորհին թէ այս դահիճը սպաննուեցաւ Տ. Եղիշէ քահանայէն։

Յարձակող ամբոխը իրենց առաջնորդի սպանութենէն սարսափահար փախուստի կը մատնուի։

Հինգշաբթի օր Թուրքեր կրկին խաղաղութեան բանակցութիւններ ընել կը սկսին։ Հայեր այլեւս դիմադրութիւնը շարունակել խոհեմութիւն չեն նկատեր, համոզուելով որ ջարդերու վերջ տալը Սուլթանի հրամանովը գործադրութեան կը դրուէր։ Հայեր իրենց զէնքերը թուրք զինուորականութեան կը յանձնեն եւ անոնց պաշտպանութեան տակ զօրանոցը կը փոխադրուին ([11])։ Ս. Երրորդութեան եկեղեցոյ գմբէթը՝ 1893 Փետր. 17-ի երկրաշարժէն քանդուած էր եւ գմբէթի շինութիւնը մինչեւ 1895-ի կոտորածը կիսկատար մնացած էր կարծես Նախախնամական կարգադրութեամբ, որովհետեւ եկեղեցւոյ տանիքին վրայ նոյն քարերով դիրքեր շինուեցան եւ այդ դիրքերէն կռուելով հազարաւոր Հայերու կեանքը փրկուեցաւ։

Յարձակող թուրք եւ քիւրտ խուժանը եկեղեցին գրաւելու անյաջող փորձերուն մէջ հարիւրաւոր զոհեր տուաւ։

Մալաթիոյ հայ բնակչութեան մեծամասնութիւնը եւ կռուող լաւագոյն ոյժերը, որ քանի մը հարիւրի ([12]) կը հասնէին, այս եկեղեցիին մէջ հաւաքուեցան։ Ժողովուրդի պարենաւորման եւ կերակրելու գործը կը յանձնուի Տ. Վահրամ քհն.ի, որ Ս. Երրորդութեան եկեղեցւոյ քահանաներէն մին էր, իսկ ինքնապաշտպանութեան ղեկավարութիւնը կը յանձնուի Գէորգ Պօզոյեանի։ Արթին Չաւուշի կինը դիրքէ դիրք վազելով կը քաջալերէ կռուողները եւ անոնց ուտելիք եւ ջուր կը մատակարարէ։ Իրեն օգնականներ կ՚ունենայ բաւական թիւով կամաւոր կիներ, որոնք կերակուրները կը պատրաստեն եկեղեցւոյ բակին մէջ։

Առհասարակ ուտելիքի պաշարը կը բերուէր մօտակայ տուներէն, որ թշնամին յաջողած չէր դեռ աւարի տալ։ Թուրքեր երբ եկեղեցին պաշարման ենթարկեցին, անմիջապէս խմելու ջուրը կտրեցին. ժողովուրդը ստիպուեցաւ փողոցէն հոսող աղտոտ առուի ջուրը գործածել։

Եկեղեցւոյ դիմացի փողոցին վրայ շինուած էր երկյարկանի նորաշէն դպրոցը, ուր եթէ Թուրքեր մտնէին, պիտի վտանգէին եկեղեցի ապաստանող ժողովուրդի ապահովութիւնը։ Երկու Թուրքեր գաղտագողի վերջապէս կը յաջողին ներս մտնել, սակայն բարեբախտաբար Օյմայեան խենթ Պօղոսը կը նշմարէ եւ լուր կու տայ։ Այս մարդը խելագար էր եւ միշտ փողոցները կը թափառէր եւ բնաւ չէր խօսեր ոեւէ պարագայի տակ, սակայն այդ վայրկեանին հրաշքով լեզու ելաւ եւ փրկեց կացութիւնը։ Մերինները անմիջապէս կը

յարձակին եւ զերի կը բռնեն երկու Թուրքերը եւ կը բերեն եկեղեցիի բակը: Ասոնցմէ մէկը իբր պատանդ կը պահեն, եւ միւսն ալ ամէն գիշեր դրամ առնելով ուտելիք կը բերէ եկեղեցին:

Երբ կը տեսնեն որ դպրոցը իրենց դիրքերուն վտանգ պիտի սպառնայ, երբ զրաւուի քշնամիին կողմէ, Հայեր իրենց ձեռքով կ'այրեն դպրոցը: Չորեքշաբթի օր Թուրքեր մասնաւոր պատուիրակ կը ղրկեն, որպէսզի Հայեր իրենց զէնքերը վար դնեն եւ յանձնուին խոստանալով ապահովութիւն, սակայն Հայերը կը մերժեն եւ կ'որոշեն մինչեւ վերջին զնդակը կռուիլ: Այդ օր թշնամին զրոհ տալով կը յարձակի, սակայն խոշոր կորուստով ետ կը քաշուի: Հինգշաբթի առաւօտ Թիւրքեր իրենց կորուստներու վրէժը կ'ուզեն լուծել աւելի զօրաւոր յարձակողականով մը, սակայն Հայեր մեծ կորուստով ետ կը մղեն ([13]), եւ խումբ մը երիտասարդներ յարձակելով կը հալածեն զիրենք: Այդ կռիւէն ետք կռուողներ բաւական հանգիստ կ'ունենան ([14]):

Հինգշաբթի օր Եաղուպ փաշա, քարեսիրտ զինուորականը, պատուիրակ մը կը ղրկէ, յայտնելով որ կ'ուզէ ինքը անձամբ գալ եւ խաղաղութեան բանակցութիւններ կատարել: Հայեր կ'ընդունին իր առաջարկը: Եաղուպ փաշա երբ կը տեսնէ ժողովուրդին ծայր աստիճան թշուառութիւնը, արտասուալից աչքերով կը խոստանայ բոլորին կատարեալ ապահովութիւն, հաստատելով նաեւ որ ջարդի հրամանը Սուլթանին կողմէ միայն 24 ժամի համար տրուած էր եւ ինք եկած էր Սուլթանին ջարդը դադրեցնելու հրամանը գործադրութեան դնելու: Հայեր վստահելով իր անկեղծութեան՝ կը խոստանան իրենց զէնքերը յանձնել եւ յանձնուիլ իր պաշտպանութեան: Այդ օր ուշ ըլլալով կ'որոշուի Ուրբաթ առաւօտ այս համաձայնութիւնը գործադրութեան դնել: Եաղուպ փաշա անմիջապէս կը ցրուէ թուրք եւ քիւրտ ամբոխը: Ուրբաթ առաւօտ Հայերը կը փնացնեն իրենց զինուորական հրացաններբը եւ կը յանձնեն մնացեալ զէնքերն ու վառօդը: Ժողովուրդը զինուորներու հսկողութեան տակ ապահով կը փոխադրուի զինուորական զօրանոցը եւ մաս մըն ալ կը տեղաւորուի շուկայի պանդոկներուն մէջ: Կառավարութիւնը կը կերակրէ զիրենք չափազանց խեղճուկ անմարսելի հացով ու կերակուրով:

Չորս օրուան կռիւներուն մէջ Հայերը միայն կ'ունենան երեք կորուստներ՝ Պետրոս Միրաքեան, Յովհաննէս Պըլըգեան, Յակոբ Մօրտոյեան:

Հայեր ինքնապաշտպանութեան կռիւներուն մէջ շատ թեթեւ կորուստներ միայն ունեցան: Ամենամեծ կորուստները ունեցան նախ շուկայի մէջ, ուր անզէն ժողովուրդը անխնայ ջարդուեցաւ:

Երկրորդ, կարճիկտանց թաղը հարսանիք մը կար, որ Ուրբաթ օր սկսած էր: Այս շրջանը Թուրքերու թաղին մօտ ըլլալով յանկարծակի կը պաշարուին Թուրքերէն եւ անզէն ժողովուրդը անխնայ կը կոտորուի: Կիներ, հարսներ, երիտասարդ աղջիկներ նախ կը կողոպտուին իրենց զարդերէն եւ հագուստեղէններէն եւ շատեր կը պղծուին եւ կ'առեւանգուին: Առնուազն 150 տղամարդ եւ երկու քահանաներ Թուրքերու բարբարոսութեան զոհ կ'երթան ([15ա]):

Երրորդ խոշոր կորուստը ունեցան Հայերը Նազարէթ աղա Մուսեղեանի տան մէջ: Նազարէթ աղա կը դիմէ իրեն մօտիկ բարեկամ եւ դրացի Սիլիկ Մուհամէտ աղայի պաշտպանութեան: Մուհամէտ աղա ոչ միայն կը խոստանայ զինք եւ իր ընտանեաց անդամները պաշտպանել, այլեւ կը թելադրէ որպէսզի իր բոլոր ազգականները եւ բարեկամները իր տունը հրաւիրէ, ուր իր պաշտպանութեան տակ բոլորն ալ ապահով պիտի ըլլային: Այս Թուրքը Մալաթիոյ ազդեցիկ հարուստ մեծամեծներէն մին կը նկատուէր: Իր այս որոշումը հաստատող գրութիւն մը կու տայ, որպէսզի Նազարէթ աղան իր դուրսի տան վրայ փակցնէ եւ թուրք ու քիւրտ խուժանը տեսնէ եւ հեռանայ: Կաթոլիկ եկեղեցիէն շատեր ալ աւելի ապահով նկատելով կ'ապաստանին այդ տունը: Թուրքեր երբ կ'իմանան Հայերու զինաթափ ըլլալը, կը յարձակին եւ բոլորը անխնայ սուրէ կ'անցընեն: Այդ դժբախտ զոհերէն մին կ'ըլլայ Գրիգոր Աղա Ասլանեան ([15]բ) պատուական Հայը:

Խումբ մը զինուած երիտասարդներ Երեքշաբթի գիշեր հեռացան Մալաթիայէն, այն համոզումով թէ քանի որ Արաբկիրի մէջ զօրաւոր եւ լաւ կազմակերպուած յեղափոխական կազմակերպութիւն գոյութիւն ունի, հոն առնուազն ապահով վայր մը պիտի ըլլար ապաստանելու, քան Մալաթիա:

Այս խումբին նախ քան Արաբկիր հասնիլը, Քիւրտերու կողմէ պաշարուելով բոլորը կոտորուեցան:

Եղան կարգ մը բարեսիրտ Թուրքեր, որոնք իրենց մօտ ապաստանած Հայերը պաշտպանեցին, ինչպէս Զարմուզեցի Մստօն, իր տան մէջ ապաստանող 35 Հայերու կեանքը փրկեց: Հակառակ Թուրքերու ճնշումներուն եւ բռնաբարումներուն չյանձնեց Հայերը, հակառակ անոր որ իր եղբայրը սպանուած էր Հայերու կողմէ ինքնապաշտպանութեան կռիւներուն: Թուրքերը երբ այս պարագան իրեն ուշադրութեան կը յանձնեն, հետեւեալ պատասխանը կու տայ. «Եղբայրս մարդասպանութեան եւ աւարառութեան համար գնաց եւ արդար պատիժը գտաւ»:

Հաճի Ապտուլահ աղան, որ Սաման պազարի հրապարակին վրայ Մալաթիոյ ամենախոշոր եւ լաւ պանդոկին տէրն էր, հոն ապաստանող Հայերը զէնքի ուժով պաշտպանեց եւ չթողուց որ խուժանը պանդոկէն ներս մտնէ Հայերը կոտորելու համար:

Նաեւ Տէտըրկոյենց պանդոկին մէջ ապաստանող Հայերը ազատած են Հաճի Հիւսէյն պապա Պարսիկի մը ջանքերով:

Քըզըլպաշ «Ալիական» (այսինքն Շիի) Քիւրտերը առ հասարակ կ'ատեն Թուրքերը և ինքզինքնին շատ աւելի մօտ կը զգան Հայերուն: Այս քիւրտ աշիրէթներու մօտ գտնուող կարգ մը առեւտրականներ եւ արհեստաւորներ պաշտպանուեցան այս Քիւրտերէն եւ նմանք նոյնիսկ ջորիներու վրայ բեռնաւորուած կահկարասիներով եւ ուտելիքներով — որոնք քիւրտ բարեկամներ նուիրած էին — իրենց տուները վերադարձան կոտորածէն ետքը:

ՄԱԼԱԹԻՈՅ ԱՅՍ ԴԻՒՑԱԶՆԱԿԱՆ ԿՌԻՒՆԵՐԸ ՀԵՏԵՒԱՆՔ ՉԷԻՆ ՈԵՒԷ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՆ ՄԸ ՋԱՆՔԵՐՈՒՆ ԵՒ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ ([16]):

Առ հասարակ բոլոր այն առեւտրականները եւ արհեստաւորները, որոնք քիւրտ լեռնականներու հետ գործ ունէին եւ յաճախ անոնց գիւղերը կ'այցելէին, լաւ պատեհութիւն կ'ունենային անոնց հետ որսորդութեան երթալու եւ նշանառութեան վարժուելու: Հայերը քիւրտ աւազակներէ ինքզինքնին պաշտպանելու համար առհասարակ զինուած կը ճամբորդէին: Մալաթիոյ տուները ընդարձակ պարտէզներով օրհնուած էին, այս պարտէզներուն մէջ յաճախ հայ երիտասարդներ որսորդութիւն կ'ընէին եւ իրենց հրացանները գործածելու պատեհութիւն կ'ունենային: Մալաթիոյ մէջ ունէինք լաւ հայ զինագործներ, որոնք նոյնիսկ լաւ զինուորական մաւզէրներ կը շինէին: Բընակչութիւնը շատ քիչ բացառութեամբ որսի հրացաններ ունէին իրենց տան մէջ:

Թուրքերու եւ Հայերու կորուստին մասին որոշ տեղեկագրութիւններ կը պակսին. ամենայն հաւանականութեամբ Հայերու կեանքի կորուստը 1000—1500 հոգի կը հաշուուի եւ Թուրքերու կորուստը 500—600 անձ ([17]): Ըստ ոմանց Հայերու կորուստը շատ աւելի մեծ եղաւ:

Բաւական թուով Հայեր կոտորածի միջոցին մահուան սպառնալիքի տակ իսլամութիւն ընդունեցան ([18]), սակայն շատ քիչ բացառութեամբ երբ խաղաղութիւն հաստատուեցաւ, անոնք կրկին դարձան իրենց Մայրենի Եկեղեցին: Շատեր ալ նահատակուեցան: Նախընտրեցին մահը քան ուրանալ իրենց քրիստոնէական հաւատքը:

Հետզհետէ զօրանոցը եւ պանդոկները ապաստանող Հայեր դարձան իրենց քանդուած եւ թալանուած տուները ([19]): Ոմանք կարօտ պատառ մը չոր հացի, իրենց եւ զաւակներուն քաղցը յագեցնելու համար ստիպուեցան շուկայի փուռերուն առջեւ կանգնիլ Թուրքերէն հաց մուրալու համար: Կարճ ժամանակէն Խարբերդի միսիոնարութեան կողմէ դրամական օգնութիւն հասաւ որը կարօտեալներու բաժնուեցաւ Պատուելի Մարտիրոս Կիրակոսեանի ձեռամբ, նոյնպէս դրամական նպաստներ հասան Պոլսոյ պատրիարքարանէն, որոնք մեղմացուցին ժողովուրդին թշուառութիւնը ([20]):

Ստեղծագործ ժրաջան հայ ժողովուրդը կարճ ժամանակին վերաշինեց իր քանդուած տուները եւ բարուոքեց իր տնտեսութիւնը:

Տէտիքոյենց ընդարձակ երկյարկանի շէնքը շուկայի մօտ ըլլալով, Թուրքերը այրած չէին, վախնալով որ հրդեհը կրնայ տարածուիլ դէպի շուկան: Այս շէնքին մէջ կ'ապրէին բաւական թուով ընտանիքներ, որոնց տուները մոխիրի վերածուած էին: Հոս կը բնակէին նաեւ Տ. Եղիշէ Քահանայ Խաչատուրեան եւ Պետրոս Պոնափարթեան, երկուքն ալ ջերմ հաւատացող զէնքի ոյժին, անոնց համար զէնքը եւ վառօդը այնքան անհրաժեշտ էին, որքան հացը: Երկուքը խորհրդակցելով որոշեցին դիմել Պատուելի Մարտիրոսին, որպէսզի նպաստի դրամէն մաս մը բաժին հանուի զէնք եւ վառօդ գնելու համար:

Պատուելին զովելի իմաստութեամբ չմերժեց իրենց խնդիրը: Զէնքերու շինութեան գործը յանձնուեցաւ Պարսիլոս եւ Եաղուպ եղբայրներու: Պատ-

բաստուած զէնքերը բաժնուեցան վերապրող եւ իրենց քաջութեամբ համբաւ ունեցող Հայերու :

Արդէն փորձը ապացուցած էր որ Հայեր միայն զէնքի ուժով կրնային պահովել իրենց գոյութիւնը, ո՛չ թէ թուրք կեղծաւոր, խաբեբայ պաշտօնեաներու բարեացակամութեամբ եւ խոստումներով :

1895ի Մալաթիոյ ինքնապաշտպանութեան հերոսամարտը ազգային պատմութեան էջերուն վրայ իր արժանի տեղը պէտք է գրաւէ իբր յուշարձան հայ հերոսական ոգիին, եւ թէ ի՛նչպէս 500 տարիներու բռնակալութեան ջարդերը, հալածանքները կարող եղած չեն մեռցնելու ազգային ըմբոստ եւ խիզախ ոգին :

Յարգանք մեր կռուող քաջերուն եւ բոլոր անոնց, որոնք իրենց ազգային նուիրական հաստատութիւններու եւ կրօնքին համար նահատակուեցան :

Դժբախտաբար 1895ի Մալաթիոյ ջարդի մասին ժամանակակից արձանագրութիւններ կը պակսին եւ կարելի չէ այսօր թուել շատ մը անուններ, որոնք գնահատելի դեր կատարած են ինքնապաշտպանութեան կռիւներուն մէջ : Յարգանք այս անծանօթ եւ մոռցուած հերոսներու յիշատակին :»

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ

*Պր. Խոսրով Պոնափարթեանի այս գրութիւնը, ինչպէս կը տեսնուի, ամբողջական գաղափար մը կու տայ 1895-ի ջարդին մասին : Բայց նկատելով որ Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւնը իր տրամադրութեան տակ ունէր կարգ մը գրութիւններ պատրաստուած զանազաններու կողմէ, ոեւէ շահեկան տեղեկութիւն դուրս չձգելու համար, աւելորդ չդատեցի, առանց ճշդութիւնը երաշխաւորելու, ծանօթագրութիւններու ձեւին տակ զանոնք ներկայացնել :*

*Անոնցմէ զատ, 1895-ի կոտորածին վերաբերեալ արդէն իսկ հրատարակեալ գրութիւններ եւս կային, որոնք կը պարունակէին ինչ ինչ մանրամասնութիւններ, որոնց յիշատակութիւնը ընել աւելորդ չնկատեցի, իբր լրացուցիչ տեղեկութիւններ, ծանօթութիւններու ձեւին տակ :*

*Հոս հարկ կը դատեմ դիտել տալու թէ մեր ձեռքը գտնուող տպագիր եւ ձեռագիր աղբիւրները առհասարակ իրարու համաձայն են, շատ քիչ տարբերութիւններով :*

*Մասնաւորապէս պէտք է յիշել թէ Գ. Մելիտինեցի իր ՆԱԽՃԻՐՆԵՐԻՆ մէջ (էջ 82–94) դէպքը ներկայացուած է բաւական կատարեալ եւ խղճամիտ կերպով, միայն չեշտուած կուսակցականութեամբ մը, հռետորական ոճով, աւելորդ տեսութիւններով, որոնց նպատակը միայն կուսակցական քարոզչութիւն է : Նոյնպէս առատ երեւակայութիւն կայ : Տ. Եղիշէ քահանայ Խաչատուրեանին տրուած է Ղեւոնդ Երէցի դերը եւ անոր բերանը դրուած է ճառ մը, որ հաւանօրէն բնաւ արտասանած չէ (տես էջ 90–91), վասնզի*

*որքան կ՚երեւի, Տ. Եղիշէ քահանայ Խաչատուրեան գործնական մարդ էր եւ հռետորութիւն չունէր։*

*Այդ չռայլաբանութիւններէն եւ աւելորդաբանութիւններէն անջատելով միայն դէպքերու չարահիւսութիւնը, կը տեսնուի թէ եթէ ոչ կէտ առ կէտ, այլ գրեթէ մեծ մասամբ Պր. Խոսրով Պոնափարթեան եւ Գ. Մելիտինեցի համաձայն են իրարու։*

*Ահա այդ ծանօթութիւնները, որոնք Պր. Խոսրով Պոնափարթեանի գրութեան մէջ նշանակուած են.—*

*(1) Գ. Մելիտինեցի ջարդին նախորդող դէպքերուն վրայ խօսած ատեն Նոյեմբեր 12-ի օրը կատարուած կը ներկայացնէ 20 Հոկտեմբեր, Ուրբաթ օրը պատահած անցուդարձերը։*

*Գ. Մելիտինեցի ջարդին սկիզբը կը նշանակէ Նոյեմբեր 15 Երկուշաբթի օրը, մինչդեռ ջարդը սկսած է Հոկտեմբեր 23 Երկուշաբթի օրը (տես* ՆԱԽՃԻՐՆԵՐ, *էջ* 84)։

*Յարութիւն Ն. Շեքերճեան, որ Պր. Խոսրով Պոնափարթեանի պէս ժամանակակից մըն է, կը հաստատէ թէ ջարդը սկսած է Հոկտեմբեր 23-ին եւ տեւած է 5 օր։*

*Խ. Եղիայեան, որ բաւական ընդարձակ գրութիւն մը ունի (տես* ՊԱՊ ՈՒԽՏԻ, *Դ. տարի, Թ. 1. 2. 3.,* ՄԱԼԱԹԻՈՅ ՀԱՅՈՒԹԵԱՆ 1895-Ի ԻՆՔՆԱՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ ԿՌԻՒՆԵՐԸ,) *կը հաստատէ նոյնը. բազմաթիւ են այլ վկայութիւններ, որոնք նոյնը կը հաստատեն։*

*(2) Այս սարսափը յանկարծական տպաւորութեան մը արդիւնքը չէր։ Մալաթիացիք լսած էին թէ արդէն մօտաւոր քաղաքներու մէջ ջարդեր տեղի ունեցած էին եւ կ՚ենթադրէին թէ Մալաթիա ազատ չէր կրնար մնալ անկէ։ Այս պատճառով արդէն Հայերը եռուզեռի մէջ էին։ Գաղտնի ժողովներ կը գումարէին թաղերու մէջ։ Ամբողջ քաղաքը, հայ զինեալ երիտասարդութիւնը բաժնած էր շրջանակներու որոնք կը կառավարուէին կեդրոնէ մը։*

*Շշուկներ կային թէ «Քեռին» (Ռուսը) պիտի գայ։ Իրիկունները իւրաքանչիւր թաղի երիտասարդները տուն մը հաւաքուելով փամփուշտներ կը պատրաստէին սիկարէթի թուղթերու մէջ եւ մարզանքներ կը կատարէին որոշուած յիսնապետի մը առաջնորդութեամբ։ Օրերը կ՚անցնէին եւ սակայն «Քեռին» չէր գար (հմմտ. Ս. Մանուշեան,* ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, *Ժ. տարի, Թ.* 1—2, *էջ* 22)։

*(3) Կարապետ քահանայ Պէննէեանի* «ՄԱԼԱԹԻՈՅ ԿՈՏՈՐԱԾԸ» *խորագիրով մէկ ձեռագիրին մէջ ըսուած է թէ շրջակայ գիւղերէն կառավարութեան հրաւէրով քաղաք եկած էին* 100.000*էն աւելի Թիւրքեր եւ Քիւրտեր։*

*Յիշատակելի է Մալաթիոյ շրջակայ գիւղերէն Պալլիան եւ Քիւրնա կոչուած Աղճատաղի աշիրէթները Ղըզըլպաշ ըլլալով, հակառակ կառավարութեան հրաւէրին, աւարի չէին եկած։ Իսկ Քիւրէճիկ կոչուած աշիրէթը Սիւննի ըլլալով միացած էր այլ շրջաններէ եկած ու թալանի տենչէն գազանացած քիւրտ ու թուրք խուժանին, որոնց թիւը կը գնահատուէր աւելի քան*

20·000։ Բացի ասոնցմէ դեռ կար 1·200ի հասնող կանոնաւոր զօրքը, որ մասնակցած էր շուկայի մէջ գտնուող անզէն մարդոց կոտորածին, ապա Հայապատկան բոլոր խանութներու թալանին (տես Խ· Եղիայեան, ՄԱԼԱԹԻՈՅ ՀԱՅՈՒԹԵԱՆ 1895Ի ԻՆՔՆԱՊԱՇՏՊԱՆՈՒԹԵԱՆ ԿՌԻՒՆԵՐԸ, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ· տարի, Թ· 2, էջ 5)։

(4) Ըստ Գ· Մելիտինեցիի (ՆԱԽՃԻՐՆԵՐ, էջ 85) Տ· Եղիշէ քահանայ շուկայէն փախուստի պահուն, կ'ենթարկուի Հաճի Ճէրճիզ կոչուած Թուրքի մը կրակին, բայց անվնաս կ'ապաստանի Տէր Պաղտասարեաններու տունը, ուր զէնք բռնելով կը սկսի կրակել ամբոխը։

Խ· Եղիայեան (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ· տարի, Թ· 2, էջ 6) կը պատմէ թէ Տ· Եղիշէ առաջին անգամ կռուիլ սկսած է Տէտիքոյեաններու տունէն, յետոյ ապաստանած է Սարաֆեաններու տունը, ուր արդէն զէնք բռնած էր Ափայաքեան։

(5ա) Գ· Մելիտինեցի Աստուր Սարաֆեան կը կոչէ։

(5բ) Գ· Մելիտինեցի Անանեան անունով կը յիշէ։

(5գ) Ս Յարութեան թաղի Թուրք երեւելիներէն Սըտըք պէյ, իր հօրեղբօր որդիները Հիւսէյին ու Ալի պէկերը, տեսնելով որ այս թաղին մէջ մօտ 150-ի չափ հայ երիտասարդներ զինուած են ու պիտի կռուին, նենգութեան կը դիմեն· կը խոստանան զանոնք պաշտպանել եւ սակայն կը սպաննեն։ Այդ 150-էն կ'ազատի միայն Յ· Ծերիկեան, որ Տէրմիսի գետակը նետուելով կը փրկուի այս սպանդէն (Խ· Եղիայեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ· տարի, Թ· 2, էջ 5)։

(7) Մեծահարուստ Թուրք ընտանիքէն սրիկայ մը այս խուժանի գլուխը անցած եկած է Զթաքեաններու այգիի կողմէն եւ աշխատած է տունը կրակի տալ եւ այրել մէջի գտնուողները։ Յովհաննէս ապա Զթաքեանի երեք զաւակները կը յաջողին սպաննել սրիկան եւ ցրուել փախցնել հետեւորդները, ըստ Յակոբ Այաշնեանի։

(8) Խ· Եղիայեան (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ· տարի, Թ· 2, էջ 5) կ'ըսէ թէ անձնասպան եղած է ։Աւետիս Աթաչեան ալ սպաննուած ցոյց կու տայ, քանի մը օր Թուրքի մը տան մէջ պահելէ վերջ։

(9) Առաքել Գալֆա Գարապետեանի հետ կը յիշուի իր գործակից՝ Պետրոս Լմբիկեան (տես ՈՍԿԵԳԵՏԱԿ, Գ· հտ·, էջ 427)։ Այս երկուքը կառուցած են եկեղեցիի ներքնայարկէն սանդուխներ, որպէսզի կռուողները հնարաւորութիւն ունենան անվտանգ տանիք ելլելու եւ կռուելու իրենց դիրքերէն։

(10) Կաթոլիկներու եկեղեցին ապաստանողներուն թիւը աւելի քան 3500 հոգի կը կարծուի(Խ· Եղիայեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ· տարի,Թ· 3, էջ 14)։

(11) Կաթոլիկ եկեղեցիէն կռուողներու հետ էր եւ կազմակերպողներէն մէկն էր իր թէ նաեւ Միքայէլ Վրդ· Խաչատուրեան, առաջնորդ Գերապայծառ Ղեւոնդ Եպս· Խորխոռունիի (1897) օգնականը, որ ետքը անոր յաջորդած է եւ 1915-ին նահատակուած անասելի տանջանքներով։

Միքայէլ Վրդ· Խաչատուրեան իր զինեալ դիմադրութեան մասնակից

կը յիշէ Նշան Պէփէնէկեանը, եւ անոր «Բաշարի» տետրակն ալ կու տայ (տես ՈՍԿԵԳԻՏԱԿ, Գ. հտ., 1948, էջ 428), մինչ կը տեսնուի որ կառավարութեան կողմէ դաւի մը զոհ պիտի երթային եթէ Տ. Եղիշէ քահանայ արթուն չգտնուէր:

Պէնէնէեան քահանայ չեմ գիտեր թէ որքան ճիշդ է, գրած է թէ «Երեքշաբթի (Հոկտեմբեր 24) կաթոլիկներու եկեղեցին մի անգամ անձնատուր կ'ընեն ու կը տանին Գարագաշ օղլու թուրք մեծատան տունը, որ մօտը կը գտնուի նոյն եկեղեցւոյ (կառավարութեան պաշտօնեայք եւ զօրքը հոն կեդրոնացած էին արդէն), բայց կը տեսնեն որ Ս. Երրորդութիւն եկեղեցին անձնատուր չ'ըլլար, զանոնք ալ ետ կը դարձնեն, որպէսզի ամբողջ միահաղոյն ջարդեն»:

Պէնէնէեան կաթոլիկ եկեղեցիի մէջ պատահած անցքերուն մասին ունի յաւելուածական տեղեկութիւններ, որոնք հոս կը ներկայացնեմ.

«Եկեղեցիէն այր մարդ դուրս չէր կրնար ելնել: Մինչեւ իսկ կառավարիչին ղրկուած պատգամաւոր կիներէն շատերը նամբան մեռան ու վիրաւորուեցան: Անգամ մը միայն 3—4 ոստիկանք գալով դրսէն յուսադրեցին թէ «այս գիշերն ալ համբերեցէք, առաւօտուն գալով ձեզ թէսլիմ պիտի առնենք եւ երբ քիւրտերը ձեզ նեղելու ըլլան, զանգակը զարկէք: Մենք ալ փող հրնչեցնելով կու գանք օգնելու»: Այս խոստումը, արդարեւ առաջին անգամուան համար կատարուեցաւ, բայց ասիկա ալ դաւ է եղեր, ինչու որ անկէ ետքը ամէն անգամ ալ նեղուելու զանգակ կը հնչեցուի, փոխանակ օգնութեան հասնելու «ՎՈՒՐ ԳՕՐՈՒՄԸ» կը զարնեն (այդ նշանը քանի մը հայեր կը հասկրնային) եւ խուժանը դրացնի նոյնութիւնը պէս կը տեղան եկեղեցւոյն վրայ:

«Չորեքշաբթի միանգամ եւս յարձակելով կաթոլիկէ եկեղեցւոյն վրայ, մէկ կողմէն հրձիգ կ'առնեն, միւս կողմէ դռները խորտակելով ներս կը պարպեն դէպի ներս: Այդ տեղի խեղճ Հայերը կը շուարին, բայց մէկ քանի հայ կտրիճներ եւ մնացած 3—4 հրացաններով կ'արգիլեն զանոնք եւ մէկ երկուքը գետին կը փռեն ու ձայն կու տան զօրքին թէ «մենք արդէն անձնատուր ենք, ահա խուժանը մեզ կը ջարդէ» եւ դեռ զօրքը չեկած արդէն շատ Հայեր կը մեռնին, ոմանք գաւիթին մէջ ոմանք ալ փախչելու ատեն: Ինչ որ է, ալ զօրքը գալով առնենք թէսլիմ կ'առնէ եւ զօրանոց կը տանի եւ դարձեալ գիշեր է իրենք ալ կը հանգչին»:

(12) Գ. Մելիտինեցի (ՆԱԽՃԻՐՆԵՐ, էջ 88) 250—300 կը հաշուէ:

(13) Ս. Երրորդութիւն եկեղեցին հաւաքուող Հայերու թիւը Խ. Եղիաեան եւ Պէնէնէեան Կարապետ քահանայ հաստատապէս 6000 կը նշանակեն:

Խուժանին այս եկեղեցիին վրայ վերջին գրոհը կատարուած է Հինգշաբթի (Հոկտեմբեր 26) առաւօտուն, եւ ինչպէս կ'ըսէ Պէնէնէեան քահանայ «ամբողջ զօրութիւնին կը թափեն այս եկեղեցիին վրայ:

Հրացաններու պայթիւնը ականջ կը խլացնէ, եւ ներսի 5—6000 Հայոց ողբն ու հառաչը, նիչն ու աղաղակն՝ քարերը կը լացնէ, ի՜նչ աղեկտուր եւ

սրտաճմլիկ տեսարան: Ոտեստաքարդէն սպառած են, թշնամիք դրսէն ջուրը կը կտրեն, շատերը անսուաղ եւ պասքեալ ու ծարաւէ նուաղեալ կ'իյնան: Տաճարը անբնակելի դարձած է՝ այնքան բազմութեան շունչէն բոլորովին ապականելով: Միայն մխիթարական բան մըն էր զինակիր Հայերու անվեհեր արիութիւնը, որոնք իրարու սիրտ տալով կը քաջալերէին յուսահատ ժողովուրդը, որ չվախնան, եւ իրենք շուրջանակի պարտէզներն նստած՝ հրացանով կը պատասխանէին Հայոց արեան ծարաւի խուժանին եւ այնպէս որ իրենց գնդակներէն բնաւ թշնամին չէր ազատեր. երբոր աչքի զարնուէր, անմիջապէս տապաստ կը փռուէր: Թշնամիք զինու զօրութեամբ ներս մտնելէ ճարահատեալ խորհուրդ կ'ընեն եւ ամէն ճիգ կը թափեն որ կերպիւ իւիք տաճարը կործանեն կամ քարիւղ լեցնելով բոլորը մէկէն այրին ու մրրկին: Սակայն անկարելի կը լինի գործադրել այդ անզգամ մտադրութիւնը»: *Բայց իրենց ջանքերը ապարդիւն ելան, Թուրքերը դարձեալ անձնատուութեան հրաւէր ըրին Մատենցի մանկաբարձ Մարիամ անուն կնոջ մը միջոցաւ նամակ մը ղրկելով:*

*Այս նամակին պատասխանեցին Առաջնորդական Տեղապահ Ստեփան քահանայ Տէր Պաղտասարեան, Պատուելի Մարտիրոս Կիրակոսեան եւ ուրիշներ (Խ. Եղիայեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ. տարի, Թ. 3, էջ 16): Նոյն ատեն կ'որոշեն երկու կին ղրկել կաթոլիկ եկեղեցիէն ոչ հեռու գտնուող Թուրք ծանօթ ընտանիքներէն Գարագաշ օղլուներու տունը, ուր հաւաքուած էին Թուրք երեւելիներէն շատերը: Այս երկու յանդուգն ու սրտոտ կիները՝ Տիկին Նազելի Մազմանեան եւ Վարդեր Ֆօսեան իրենց գլուխը ճերմակ ձգելով կաթոլիկներու եկեղեցիի փողոցէն յառաջանալով կ'երթային Թուրքերուն տունը: Թուրք կռուողները կը պահանջեն այդ հայ կիներէն, որպէսզի սպաննուած խուժանի առաջնորդ եւ արինարբու Հաճի Եադուպ օղլի Հաճիի դիակը յանձնեն: Երկու կիները առանց իրենց պաղարիւնութիւնը կորսնցնելու, դիակը քաշելով կը յանձնեն Թուրքերուն եւ կ'երթան Գարագաշ օղլուի տունը, ուր կը յանձնեն իրենց տրուած Թուղթը, որով կ'առաջարկուէր բանակցիլ (Նշան Քէփէնէկեան, ՈՍԿԵԳԵՏԱԿ, Գ. հտ., էջ 428):*

*Հաւանօրէն այս միջոցին Կ. Պոլսոյ հետ հեռագրական հաղորդակցութեան մտած է Եադուպ փաշա եւ կրցած է ջարդը դադրեցնելու հրաման առնալ: Եւ ուղղակի ինքն անձամբ միջամտած է:*

([14]) *Պ. Յակոբ Ալաչաճեան իր յուշերուն մէջ կ'ըսէ թէ* «երբեմն բարձրաձայն աղաղակներ կը լսուէին, «օ եկան, եկան օդապարիկով օգնութեան հասան փրէնկները,» մինչ երկուստեք հրացանաձգութիւններ կը փոխանակուէին»: *Պ. Ալաչաճեան այս աղաղակները* «Հայ ցաւագար մտայնութեան արգասիքը» *կ'որակէ և կը մեղադրէ Հայերու միշտ քրիստոնեայ աշխարհէն օգնութիւն յուսալը: Ինծի կը թուի թէ ուրիշներէ չհաստատուած այս պատմութեան մէջ սխալ մը պէտք է ըլլայ: Կը կարծեմ թէ Խ. Եղիայեանի կողմէ գրուած սա տողերու մէկ տարբերակն է ասիկա: Ահա թէ ի՞նչ կը գրէ ան.* «Սբ. Երրորդութիւն եկեղեցիին կռիւը առաջնորդողներ գիտակցաբար սուտ

լուր մը կը տարածեն թէ «Զէյթունը օգնութեան պիտի հասնի շուտով»։ Դիրքերու մէջ կռուողները աւելի քաջալերուած այս լուրէն նոր թափով եւ առանց վարանումի կը շարունակեն ետ մղել իրարու յաջորդող խուժանային յարձակումները, ահաւոր կորուստներ պատճառելով անոնց» (*տես ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ. տարի, Թ. 3, էջ* 261)։

(15ա) *Կարճիկտանց Թաղի հարսնիքը դրեթէ բոլոր ջարդը նկարագրողները կը յիշատակեն։ Այս Թաղը կը կոչուէր Զուգուր Տէրէ։ Կարապետ քահանայ Պէննէեան «ՄԱԼԱԹԻՈՅ ԿՈՏՈՐԱԾԸ» խորագիրով իր ձեռագիրին մէջ հոն բազմաթիւ Հայեր երկու քահանաներով սպաննուած ըլլալը կը հաստատէ, իսկ Համբարձում Տէր Միքայէլեան, որ ականատեսներէն մէկն է ջարդին, իր գիրի առնել տուած յուշերուն մէջ այդ հարսնիքին մէջ մեռնողներուն թիւը* 500*–ի կը բարձրացնէ՝ թերեւս չափազանցութեամբ։*

(15բ) *Գրիգոր Աղա Ասլանեան նախապէս վիրաւոր կաթոլիկ եկեղեցին նետած էր ինքզինքը եւ անկէ անցած էր Նազարէթ Տէր Մուշեղեանի տունը, ուր շատերն ալ գացած էին խաբուելով։ Հոն սպաննուած է։*

(16) *Եթէ մեր կուսակցութիւնները հոն այդ թուականին իրենց հետեւորդները ունենային, շատ հաւանօրէն դիւցազնամարտին փառքը իրարմէ պիտի խլէին եւ թերեւս առանձին–առանձին պիտի կռուէին եւ ինքնապաշտպանութեան գործին պիտի վնասէին։ Բոլոր այս դէպքին վրայ խօսողներ բնաւ խօսք չեն ըրած կուսակցականներու, հետեւաբար ճիշդ է թէ Հնչակեանութիւնը կազմալուծուած էր* 1895*–ին, բայց կ'երեւի թէ Փոքր Հայքի կազմակերպութեան պէս տեղական մարմին մը կար, վասնզի Աւետիս Աթաշեան իր տեղեկութիւններով հարուստ յուշերուն մէջ կը պատմէ թէ ինչպէս Մալաթիոյ Հայերը նախատեսելով վտանգը, որ կը սպառնար, կազմակերպուելու փորձեր ըրած են։*

*Զղուրտէրէյի Թաղին երիտասարդութեան գլուխը անցած էր Սարգիս Սուքիասեան, օգնական ունենալով Պաղտասար Աթաշեանը, Մայր եկեղեցիին Թաղին ղեկավարն էր Գրիգոր Մարտիկեան՝ օգնական ունենալով Գրիգոր Անանիկեանը, իսկ Ս. Երրորդութեան Թաղին վարիչն էր Պապօ Թիւթելեան եւ Իսրայէլ* (*) *եւ շատ մը անձեր։ Ասոնք պիտի աշխատէին շուտով զէնք հայթայթել եւ ժողովուրդը զինել։ Բայց ինչպէս կ'երեւի, դրամ չկար, ուստի հարուստներու կը դիմեն։*

*Աւետիս Աթաշեան սպառնալիքով դրամ պահանջելու փորձի մը պատմութիւնը ըրած է, որ հետաքրքրական է.—*

*Զղուրտէրէի խորհուրդը կ'որոշէ դիմել Մանուկ աղա Մելքիսեթեանի, որ յայտնի էր իր հարստութեամբ, եւ կը պահանջեն նախ* 20 *ոսկի, երբ կը մերժէ՝ կը պահանջեն* 40, *եւ երբ դարձեալ կը մերժէ* 120 *ոսկի կը պահանջեն «ՏԷՐՈՐ»ի ենթարկելու սպառնալիքով։ Որովհետեւ երրորդ դիմումին ալ չէր պատասխանած, կ'որոշուի «ՏԷՐՈՐ»ի ենթարկել Մանուկ աղան։ «ՏԷՐՈՐ»ը պիտի կատարէին Պաղտասար Աթաշեան՝ օգնական ունենալով Յակոբ Աթաշեանը եւ Սարգիս Սուքիասեանը։ Հոկտեմբեր* 23*–ին կը ներկայանան Մանուկ*

(*) *Ընթերցման վստահ չեմ։* Ա. Ա.

*աղային, որ կ՚ըսէ թէ իր տղան ղրկած է բերելու համար դրամը եւ երդում կ՚ընէ որ ոեւէ դաւ չկայ։ Բայց յանկարծ զէնքերու ձայն կը լսուի դուրսէն։ Պաղտասարի եղբայրը Յակոբ կը պոռայ. «Պաղտասար գործը գործէն անցաւ, շուտ դուրս եկուր»։ Պաղտասար դուրս կը վազէ։ Մանուկ աղային 120 ոսկին առնել կարելի չ՚ըլլար։*

*Այս երկու իրողութիւններէն զատ, որոնք կազմակերպութեան մը գոյութիւնը կը մատնանշեն, Մ. Յ. Դաւիթեան (տես ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, ԺԲ. տարի, Թ. 3, էջ 12) 1895-ի ինքնապաշտպանութեան նուիրուած յօդուածի մը մէջ սա տողերը կը գրէ.* «Մեր քաղքն մէջ գոյութիւն ունէր Հնչակեան խումբ մը, որոնցմէ կը յիշեմ հետեւեալ անունները, Գրիգոր Անանեան (Քրքըլ), Գրիգոր Աղա Ասլանեան, Գրիգոր Մարտիկեան (Քէլը), Չէքէմեան եղբայրներ, Կարապետ (աչքը մանր), Գրիգոր եւ Մարտիրոս Չէքէմենց, Մղտեսի Յակոբը եւ հայրս Յակոբ Քէօլէ Դաւիթեան»։ *Թէ ո՛ր աստիճան արժանահաւատ է այս տեղեկութիւնը, չեմ գիտեր։*

([17]) *Այս մասին համաձայն չեն տրուած տեղեկութիւնները, Գ. Մելիտինեցի, Հայոց կորուստը մօտաւորապէս 750—800 կը ներկայացնէ, որուն համաձայն է նաեւ Խ. Եղիայեան (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ. տարի, Թ. 3, էջ 17)։ Իսկ Թուրքերունը՝ 450—500 (համաձայն Խ. Եղիայեանի՝ 550)։ Համբարձում Տէր Միքայէլեան ալ Թուրքերուն կորուստը 500-ի շուրջ կը ներկայացնէ, «ՄԵԾ ՄԱՍԸ ՔԻՒՐՏ ԵՒ ԳԻՒՂԱՑԻ»։ Կռուող եւ զէնքով դիմադրութիւն ընող Հայերէն միայն 40—50 անձ զոհուած է կամ առաւելագոյն՝ 80 անձ, ինչպէս ըսած է Խ. Եղիայեան (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ. տարի, Թ. 3, էջ 17), մնացեալները նենգութեամբ եւ խաբէութեամբ խողխողուած են, շուկայի եւ Թուրք տուներու մէջ (ՆԱԽՃԻՐՆԵՐ, էջ 94)։ Յարութիւն Ն. Շեքերճեան երկուստեք 1000ական մեռեալ կը նշանակէ իր ձեռագիր ջարդի համառօտ նկարագրութեան մէջ։*

*Պատուելի Կիրակոսեանի կազմած մէկ արձանագրութեան համաձայն զոր Պր. Յ. Ն. Շեքերճեան ընդօրինակած է, կորուստները սապէս ներկայացուած է.*

| | |
|---|---|
| *Մալաթիոյ ընդհանուր բնակչութիւնը ջարդէն առաջ* | 13230 |
| *Հայ եւ Թուրք մեռեալներ* | 2249 |
| *Կրօնափոխ եղողներ* | 969 |
| *Առեւանգուածներ* | 106 |
| *Այլիացեալներ* | 375 |
| *Նիւթական կորուստ 10·226 օսմանեան ոսկի* | |
| *Հայ Աւետարանական եկեղեցւոյ վնաս 8770 օսմ. ոսկի* | |
| *Ներկայ (ջարդէն ետքը) հայ բնակչութիւնը* | 10012 |
| *Կրօնափոխներ վերադարձած* | 285 |
| *գումար* | 10297 |

*Այս էր պատկերը, 1895-ի ջարդէն ետքը Հայոց վիճակին, ըստ Պատուելի Մարտիրոս Կիրակոսեանի։*

Պէննէեան քահանայ ունի հաշիւ մը սա կերպ.—12230 բնակիչ։ Դէպքին ժամանակ մեռնողներ՝ 3000 կամ 3500։

| | |
|---|---|
| Կրօնափոխ | 969 |
| Առեւանգեալ | 180 |
| Նիւթական կորուստ լիրա օսմանեան | 2·000·000 |
| Այրուած բնակարանք | 7—800 |
| Եկեղեցւոյ նիւթական կորուստը՝ լիրա օսմանեան | 8000 |

(18) Պատուելի Մարտիրոս Կիրակոսեան իր յուշատետրին մէջ գրած է թէ 200 Հայեր իսլամացած են առ ահի։ Ասոնք ետքէն մեծ մասամբ իրենց մայրենի եկեղեցին դարձած են քիչ բացառութեամբ։

(19) Պատուելի Մարտիրոս Կիրակոսեան կը վկայէ թէ ամբողջ Հայոց տուները կողոպտուած էին, եւ 200 տուներ ալ այրած։

(20) Կարապետ քահանայ Պէննէեան կը հաւաստէ թէ ջարդէն ետք Պատրիարքարանէն ամէն շաբաթ 120—200 ոսկի նպաստ ղրկուած է, սակայն 2000 տուն թշուառներու անբաւական էր այդ նպաստը, ինչպէս ղրկուած հաշուետները։

***

Պ. Խոսրով Պոնափարթեանի վերոյգրեալ տողերը, որոնք գրուած են զգուշաւոր, զուսպ եւ համեստ ոճով մը, կը ներկայացնեն ինքնապաշտպանութեան այս պատուաբեր դրուագը, եւ ինչպէս կը տեսնուի, բաւական ամբողջական գաղափար մը կու տան իր համաքաղաքացիներու հերոսական պայքարին մասին։

Բայց որովհետեւ զայն գրի առնողը Հայ մըն է եւ թերեւս կասկածը կը ներշնչէ օտարներու թէ անիկա իբր Հայ թերեւս չափազանցութիւններ ըրած է զգացումէ տարուած, այս տողերուն կը կցեմ օտար պետական մարդու մը պաշտօնական տեղեկագրութիւնը։ Այդ տեղեկագիրը 1895-ի Մալաթիոյ ջարդին մասին տրուած է Խարբերդի այն օրերուն Բրիտանական Դեր-Հիւպատոս Ռաֆայէլ Ա. Ֆոնդանայէն։

Մալաթիոյ ջարդը տեղի ունեցած է այս տեղեկագրին համաձայն 1895-ի Հոկտեմբեր 4—9-ին (1)։

Այս տեղեկագիրը մասը կը կազմէ այն Հաւաքական Տեղեկագրին, զոր 1896 Յունուարին պատրաստեցին Կ. Պոլսոյ վեց մեծ պետութեանց դեսպանատուններու թարգմանները միասին, հայկական նահանգներու (Էրզրում, Վան, Պիթլիս, Տիարպէքիր, Խարբերդ, Սվազ, Կիլիկիա, Տրապիզոն եւ Հալէպ) մէջ 1895-ին տեղի ունեցած ջարդերուն եւ կողոպուտներուն համար։

Այս հաւաքական տեղեկագիրը հրատարակուած է «Կապոյտ Գիրքի»ն մէջ (Turkey Նօ. 2, 1896)։

---

(1) Ապահովաբար սխալ մը կայ կամ թիւրիմացութիւն մը, վասնզի Մալաթիոյ ջարդը 23 Հոկտեմբերին կատարուած է։

*Կ. Պոլսոյ Բրիտանական դեսպանը Սըր Ֆիլիփ Քըրի Կ. Պոլսէն 28 Սեպտեմբեր 1896–ին գրած է Անգլիոյ Արտաքին գործոց նախարար Սալըզպըրիին, հետեւեալ նամակը եւ անոր ներփակ Խարբերդի դեր–հիւպատոսին տեղեկագիրը 28 Օգոստոս 1896 Խարբերդէն դեսպանին ուղղուած:*

*Ահա պատճէնը այն երկու պաշտօնագիրներուն.—*

Կ. Պոլիս, 28 Սեպտեմբեր, 1896

Իմ Լորտս,

Պատիւ ունիմ ներկայացնելու հետեւեալը դրկելով օրինակ մը այն հաղորդագրութեան, զոր ստացած եմ Ն. Վեհափառութեան Խարբերդի դեր–հիւպատոսէն, որ լիակատար մանրամասնութիւններ կու տայ ի մասին այն կոտորածին, որ անցեալ տարի աշնան կատարուեցաւ Մալաթիոյ մէջ:

Ձերդ՝
ՖԻԼԻՓ ՔԸՐԻ

## ՄԱԼԱԹԻՈՅ 1895–Ի ԿՈՏՈՐԱԾԸ

Խարբերդ, Օգոստոս 28, 1896

Տէր,

Պատիւ ունիմ ներկայացնելու հետեւեալ Տեղեկագիրը ի մասին վերջին խռովութեան ([1]), որ տեղի ունեցաւ Մալաթիոյ մէջ, եւ որուն ընթացքին 1500 Հայեր, ամենապակաս հաշուով, կորսնցուցին իրենց կեանքերը: Այս հաղորդագրութեան մէջ տրուած մանրամասնութիւնները հաղորդուած են ինծ քանի մը անուանի թուրք պարոններու (gentlemen) կողմէ, որոնց ծանօթացայ երբ Մալաթիա կը գտնուէի, եւ որոնք միջոց հանդիսացան փրկելու քրիստոնեաներ եւ անոնց ինչքերը ջարդի ընթացքին: Հետազային, այս տեղեկութիւնները, իմ ներկայութեան հաստատուեցան զանազան քրիստոնեայ համայնքներու պետերուն, եւ նոյն քաղաքի մէջ գտնուող այլ անուանի Հայերու կողմէ:

Խռովութենէն պոռթկումէն քանի մը օր առաջ Հայերը մեծ անձկութեան մը կը մատնուին այն զրոյցներուն պատճառով թէ զանազան մահմետական թաղերու մէջ պահուած են դրացի շրջաններէն եկած մեծ թիւով Քիւրտեր, եւ թէ հրացաններ կը բաշխուին մահմետական բնակչութեան:

Քրիստոնեաները կը սկսին իրենց ինչքերը փոխադրել եւ պահել Հայ Կաթողիկ եւ Գրիգորեան (լուսաւորչական) եկեղեցիներուն, եւ Կաթողիկ Ուխտի շէնքերուն մէջ: Միւթեսարիֆը, սակայն, կը վստահեցնէ նամակով մը կաթողիկ Եպիսկոպոսը, թէ տեղիք չկար անձկութեան, եւ թէ ոչինչ պիտի պատահէր իր համայնքին:

Խռովութեան պատճառի մասին թուրք պաշտօնական բացատրութիւնն այն է թէ՝ սափրիչ մը, ՍԱՐԳԻՍ անունով, կտրած է վիզը Քիւրտի մը՝ զայն ածիլելու ատեն: Անունը Քիւրտին, որու համար կ'ըսուի թէ այսպէս սպան–

(1) *Sessional Papers* (*1897*), *էջեր 62–65*, *Turkey*, *թիւ 3*:

նուած է, բոլորովին անծանօթ է: Իսկ Սարգիսը սպաննուած է խողովութեանց ընթացքին: Այս պատմութիւնը կը ծաղրուի իմ տեղեկատուներէն, որոնք կը վստահեցնեն զիս թէ խողովութիւնը ծագում առած է հետեւեալ պարագաներէն.—

«ԵԱԶՄԱՃԻ»ի մը, այլ խօսքով ձեռքով նկրկուած ապրանքներու վաճառականի մը, անունով ԿԱՐԱՊԵՏ, որ իր առեւտուրը կը շարունակէր շուկային մէջ այդ ժամանակ, կը մօտենայ գիշերապահի մը, թուրք մը, անունով Հանի Եաուպ Օղլու (Hadji Yaub Oghlou), որ կը պահանջէ քանի մը փուշիներ որոշ գինով մը: Կարապետ կը մերժէ ըսելով թէ այդ գնով ինք դրամ պիտի կորսնցնէ: Գիշերապահը, սակայն, կը պնդէ իր պահանջին վրայ, եւ Կարապետի նոր մերժումին վրայ, կը քաշէ ատրճանակը, աղաղակելով. «էյ անհաւատ, հրամա՞ն կու տաս ինծի», եւ գնդակահար կը սպաննէ զայն: Ասոր վրայ, կարծես թէ նշան մը տրուած ըլլար, Թուրքերը դուրս կը խուժեն ամէն կողմէ եւ կը յարձակին Հայերու վրայ, նախ քան վերջիններըը ժամանակ ունենան փակելու իրենց խանութները: Շուկան նոյն ատեն պաշարուած էր զափթիէներով ու պաշիպոզուքներով, որոնք յետ կը դառնան ու կը կրակեն փախչողներուն վրայ:

Մօտ 50 Հայեր, սակայն, որոնց խանութները մօտ էին կառավարական շէնքին, կը վազեն այնտեղ ապաստանելու, եւ կը հաւաքուին բակը: Քիչ յետոյ, անոնցմէ 18 հոգի կ'երթան վեր՝ Միւթեսարրըֆին սենեակը եւ կը խընդրեն անկէ որ պաշտպանէ զիրենք:

Միւթեսարրըֆը թոյլ կու տայ որ անոնք մնան քանի մը չգրաւուած սենեակներու մէջ, մինչեւ որ, իրիկուան դէմ կը հասնի Հանի Օղլու Ապտուլլահ, նախկին անդամ մը Վարչական Խորհուրդին (իտարէ մէճլիսի), եւ որուն ակնարկուած է իմ անցեալ Մայիս 19-ի նամակին ([1]) մէջ, ընկերակցութեամբ Սուլուք Օղլու Մէհմէտի, Հանի Օղլու Ալի պէյի, եւ թապուր Աղասի Րեշիտ էֆէնտիի, բոլորն ալ հրացան ի ձեռին: Անոնք կը յանդիմանեն Միւթեսարիֆը Հայերը պաշտպանելուն համար, եւ կ'ըսեն անոր թէ ամբոխը պիտի յարձակի կառավարական շէնքին վրայ, երբ ան յամառի պատսպարելու զանոնք:

Միւթեսարրըֆը, ահաբեկած, անմիջապէս կը հրամայէ որ ապաստանեալները դրկուին բակը, ուր Քիւրտերն ու զափթիէները արդէն կրակ բացած էին այնտեղ հաւաքուած Հայերուն վրայ:

Երիտասարդ մը, անունով Սիմոն Ճինճիլեան, որ հետագային բանտարկուեցաւ, կը պահուի Միւթեսարրըֆին կողմէ անոր այն խնդիրքին վրայ թէ՝ ինք գիտէր Ֆրանսերէն, եւ օգտակար կ'ըլլար թարգմանութիւններու համար: Մնացեալները կը քշուին բակը եւ անմիջապէս կ'ենթարկուին յարձակման:

Կառավարական Շէնքին մէջ ապաստանած 50 անձերէն կ'ազատին միայն 6 հոգի: Անոնց անունները են. Սիմոն Ճինճիլեան, Գարեգին Թիւթելեան, Սահակ Կեզերեան, Ստեփան Թիւթելեան, Ստեփան Պաղտոյեան եւ Նիկողոս Թիւթելեան:

(1) Turkey, Թիւ 5 (1896), էջ 195:

վերջին երեքը, սակայն, հետագային կը սպաննուին քաղաքին մէջ:

Սահակ կեզերեան կ'ազատուի Եազուպ փաշայի[1] կողմէ, ակնարկուած իմ Յունիս 15ի հաղորդագրութեան մէջ, որ ապահովաբար կը գտնուէր Մալաթիա, եւ որ ճիշդ ժամանակին կը հասնի կառավարական Շէնքը, փրկելու տղուն կեանքը:

Ներփակ ցանկը կը բովանդակէ անուններն գրեթէ բոլոր անոնց, որոնք կոտորուեցան կառավարական շէնքի բակին մէջ:

Սպանդի ահռելի տեսարանը պատկերաւոր կերպով նկարագրուած է ինծի երկու Թուրքերու կողմէ, որոնցմէ մին ճիշդ այդ պահուն կանգնած է եղեր կառավարական շէնքի դրան մօտ գտնուող պահնորդի խուցին մօտ, իսկ միւսը գտնուած է ճիշդ դիմացը գտնուող տուն մը: Այլ մահմետական մը, որ Միւթեսարըֆին մօտ եղած է, կը պատմէ ինձ թէ ինք տեսած է Հայերուն աստիճաններէն վար քշուիլը եւ բակին մէջ խողխողուիլը:

Մարմինը Նափոլին Պաղտոյեանի, ակնաւոր մալաթիացի հայ մը, որ սպաննուած էր երբ կը փորձէր վերոյիշեալ դռնէն փախչիլ, կը կախուի մազործի մը խանութին առջեւ եւ խնդուքով՝ անոր միսը կ'առաջարկուի օխան 5 փարայի[2]:

Թապուր Աղասին կ'ամբաստանուի թէ իր իսկ ձեռքով սպաննած է պա–

(1) Turkey, թիւ 2 (1896), էջ 246: Այս նամակին մէջ կ'ըսուի որ Եազուպ փաշա, թրքական բանակի հանգստեան կոչուած զինուորականներէն, կ'ազատէ Պեհեսնիի Հայերը ստոյգ կոտորածէ:

(2) Եփրատ Գոլէճի մալաթիացի ուսանողները կը պատմէին նոյն բանը, եւ կ'աւելցնէին թէ երբ Միւթէսարըֆին դիմող Հայերը, որոնցմէ մին էր Նափոլէոն Պաղտոյեան, շատ կ'աղերսեն անկէ պաշտպանելու զիրենք, եւ Միւթէսարըֆը անտարբեր կը մնայ, Պաղտոյեան կ'ըսէ. «Հերիք է, տղա՛ք, չ'արժեր կեանքի մը համար այսքան աղերսել», եւ կը սկսի սանդուխներէն վար իջնել, ուր անմիջապէս կը սպաննուի վերէն արձակուած գնդակներով:

Ուսանողներէն մին էր իր որդին Եդուարդը, իմ մտերիմ ընկերն ու դասընկերը, որ նոյն ճակատագրին ենթարկուեցաւ 1915-ի կոտորածին: Վերջին անգամ իրմէն իմացայ Երզնկայէն, ուր ղրկուած էր սպայութեան պատրաստուելու, բայց չդիմանալով հայատեաց թուրք զինուորականներու ընթացքին, խումբ մը այլ սպայցու երիտասարդներու հետ փախած էր:

Եդուարդը Եփրատ Գոլէճի տաղանդաւոր շրջանաւարտներէն մին էր, մանաւանդ իբրեւ երաժիշտ. սքանչելի ջութակահար էր եւ Գոլէճի օրքեսթրայի ղեկավարը մէկ-երկու տարի: Մէկ քանի շաբաթէն կը տիրապետէր երաժշտական ոեւէ գործիքի: Երկու երեք շաբաթէն այնքան լաւ կը նուագէր սրինգով, որքան քանի մը տարուան վարժուածները: Նոյնը նաեւ երգեհոնի ու դաշնակի պարագաներուն:

Արտասահմանի մէջ՝ ան կը դառնար մեծ երաժիշտ մը եւ ջութակահար: Այս էր կարծիքը ամենուն, որոնց մէջ էր Փրոֆ. Սամուէլ Խաչատուրեան, որ Գերմանիոյ մէջ կատարելագործած էր իր երաժշտական ուսումը, եւ որ այժմ կը գտնուի Եգիպտոս, ուր 1921-էն ի վեր հաստատած է իր երաժշտանոցը: Ուսանողութեան վերջին տարին ան թարգմանեց Շէյքսփիրի «ՍԻՄՊԵԼԻՆ»ը, որ մնաց ձեռագիր ու հաւանաբար փճացաւ այլ ձեռագիրներու նման, իրենց տէրերուն հետ: Եդուարդի քոյրը, Պայծառ, որ եղբօր հետ միասին աւարտեց Եփրատ Գոլէճը, եւ ազատեցաւ կոտորածէն, այժմ կ'ապրի Սան Ֆրանսիսքօ:

տանի Աստիփան (Ստեփան) Պաղտոյեանը[1] (Նափոլէոնի եղբօրորդին), մին կառավարական շէնքը ապաստանածներէն։

Խռովութեանց ծագումէն քիչ յետոյ մօտ 1500 Հայեր, այրեր, կիներ եւ մանուկներ, կ'ապաստանին հայ կաթոլիկներու Մայր Եկեղեցին։ Անոնցմէ մօտ 20 անձեր զինուած կ'ըլլան հրացաններով եւ ատրճանակներով։ Մեծ ու սպառնալից ամբոխ մը շուտով կը հաւաքուի եկեղեցիին շուրջ, բայց լսելով թէ զինուած մարդիկ կան ներսը, չի համարձակիր յարձակելու։ Յետոյ, Միւթեսարրըֆին կողմէ հրաման կը ղրկուի Եպիսկոպոսին՝ հաւաքելու եւ յանձնելու եկեղեցիին մէջ գտնուած զէնքերը իշխանութեանց, օգնութիւն խոստանալով այնտեղ ապաստանածներուն, եթէ հնազանդէին այս հրամանին։ Խնդրոյ առարկայ զէնքերը, ըստ հրամանին, կը յանձնուին երեքշաբթի երեկոյ, բայց յաջորդ առաւօտ ամբոխը դարձեալ կը պաշարէ եկեղեցին, կոտրելով կը բանայ դռները եւ կը սկսի կրակել այժմ առանց պաշտպանութեան մնացած Հայերու վրայ, քաջալերութեամբը Եազուպ Օղլու փաշա անունով «Պեքճի»ի մը։

Այսուհանդերձ, Հայերը մեծ մասով կը յաջողին փախչիլ ետեւի դռնէ մը և կը խուժեն բազմութեամբ Գարագաշ Օղլու Մէհմէտի տունը, ուր ներս կ'առնուին եւ կը պատսպարուին։ Այպա՝ անոնք իրենց հիւրընկալին կողմէ կը տարուին զօրանոց պաշտպանութեան համար, ուր կը մնան հինգ օր։

Ամբոխը, եկեղեցին մտնելէ ու կողոպտելէ յետոյ, կը փորէ գաւիթին մէջ գտնուող երկու շիրիմները, դուրս կը քաշէ դիակները կողոպուտի համար։ Այպա՝ կրակի կու տայ եկեղեցին, բայց մասամբ միայն կը յաջողի վնասել զայն։

Նոյն ատեն, 2000 Հայերու խումբ մը փախած ապաստանած էր Գրիգորեան (Լուսաւորչական) եկեղեցին։ Անոնցմէ ոմանք զինուած էին, եւ երբ ամբոխին կողմէ կատաղի փորձ մը կ'ըլլայ կոտրտելով բանալու դռները, ապաստանեալներու ամենէն վճռականները կը բարձրանան տանիքի պատնէններուն վրայ եւ կը սկսին կրակի բռնել յարձակողները։ Եկեղեցին երեք օր պաշարուած կը մնայ։ Երրորդ օրուան երեկոյին, Հայերը կտրուկ հրաման մը կը ստանան Միւթեսարրըֆէն թէ՝ յանձնելու են իրենց զէնքերը, որմէ յետոյ իրենց պաշտպանութեան համար պահակախումբ մը պիտի ղրկուի։ Տաները չէին ուզեր հնազանդիլ այս հրամանին, բայց անոնք վերջապէս տեղի կու տան մեծամասնութեան։ Ասոր վրայ՝ երկու մարդիկ յուսահատօրէն անձնասպան կ'ըլլան գնդակով. այս երկուքէն մին նախապէս փորձած էր սպաննել իր կինը։

Յաջորդ առաւօտ եկեղեցին դարձեալ կը պաշարուի, խոստացուած պահակախումբը երեւցած չըլլալով, բայց Պեհեսնիէն եկած Եազուպ փաշա–

(1) Ստեփան Պաղտոյեան 1893–95-ին կ'ուսանէր Խարբերդի Եփրատ Գոլէճը։ Կոտորածի վախին պատճառով այդ տարի մնացած էր Մալաթիա։ Տասնեակ տարիներ յետոյ իսկ իր ուսուցիչները եւ իր դասընկերները յուզումով կը նկարագրէին անոր կազմական ու իմացական շնորհները։ Թ.Ր.Գ.Մ.

յին ճիշդ ժամանակին հասնիլը կը փրկէ կացութիւնը: Կը թուի թէ ան իրեն հետ տարած էր Միւթեսարըֆը, եւ յաջողած էր ապահով կերպով տանիլ Հայերը, խառնիխուռն, դէպի զօրանոց ուր արդէն հաւաքուած էին 3000 Հայեր:

Այսպէս, Մալաթիոյ զօրանոցին մէջ, 5000է աւելի Հայեր կը մնան քանի մը օրեր, սեղմուած իրարու, խեղճօրէն սնանելով ամենէն հասարակ ու կոշտ հացով, առանց բաւարար չափով խմելու ջուրի, եւ ամենամեծ վախի ու սարսափի մէջ: Կաթոլիկ Ուլստի Պետը, նախապէս ակնարկուած, որ ըստիպուած էր ապահովութեան համար զօրանոց փախչիլ Ուլստի շէնքերէն, մինչ անոնք կ'այրէին իր վերեւ, շատ տխուր կերպով կը պատմէ ապաստանեալներու տառապանքը այդ քանի մը ահեղի օրերու ընթացքին: Մանուկներ կը ծնին, մանուկներ կը մեռնին· տեղ չկար շարժելու, եւ ոեւէ տեսակի առողջապահական կարգադրութիւն չկար:

Հետեւեալ դէպքերը կը կազմեն, թերեւս, Մալաթիոյ խռովութեան ամենասեւ կէտերը:

## 70 ՀԱՅԵՐՈՒ ՋԱՐԴԸ ՍԸՂԸՐԼԸՔ ՋՈՒՔՈՒՐԻ ՄԷՋ

*Այս Հայերը փախած ու ապաստանած էին Հաճի Սըրթըք Պէյ անունով Թուրքի մը տունը: Հարիճ Օղլու Ապտուլլահ, ընկերակցութեամբ Ալի Պէյի, որոնց մասին խօսուած է Կառավարական Տան դէպքի առընչութեամբ, կու գան այստեղ երկու օր յետոյ, եւ կը ստիպեն որ ապաստանեալները թլփատուին, խոստանալով զանոնք ապահով առաջնորդել դէպի զօրանոց, որու ճանապարհին, Հայերը յարձակում կը կրեն Ապտուլլահի ու Ալի Պէյի հրահանգով գործող խումբ մը մահմետականներէն Սըղըրլըք Ջուքուր կոչուած վայրին մէջ, որ կը գտնուի ճիշդ դէմը Միւթեսարըֆին անձնական բնակութեան: Բոլոր Հայերը, մինչեւ վերջին մարդը, կը կոտորուին:*

## 50 ՔՐԻՍՏՈՆԵԱՆԵՐՈՒ ՍՊԱՆԴԸ

*Ասոնք կը կոտորուին ճիշդ այն պարագաներուն ներքեւ որ կոտորուեցան Գըզըլ Քեչիչեանի տունը գտնուողները: Միայն կ'ազատի Փիլիպպոս անունով պատանի մը, որ կը յաջողի նետուիլ փողոց:*

*Այլ տխուր դէպք մըն էր մորթոտումը երկու թոռներուն Սուլթան Մկրտիչ անունով ծեր կնոջ մը, որ ուրիշ ոչ մէկ ողջ ազգական ունէր: Երբ խռովութիւնը կը սկսի շուկային մէջ, պառաւը կը կղպէ խանութին դուռը եւ իր հետ առնելով երկու տղաքը, 12 եւ 14 տարեկան, կը բարձրանայ տանիքը ու կը պահուըտի անոնց հետ ծխնելոյզներուն ետին: Խանութը բռնի կերպով կը բացուի ու կը կողոպտուի, եւ կողոպտիչները, տունը խուզարկելէ յետոյ, վերջապէս կը գտնեն Սուլթանն ու իր թոռները, սեղմուած իրա–*

*րու՝ տանիքին վրայ։ Շուքուր Օղլու Վարհապ անունով մարդ մը, կը բռնէ մանուկները, եւ հակառակ ծեր կնոջ արտասուքներուն ու աղաչանքներուն, կը կտրէ անոնց կոկորդները։ Սուլթան Մկրտիչ այժմ բոլորովին անոք է։*

*Երեք Հայեր, որ բանտը կը գտնուէին խռովութեանց ժամանակ, կը սպաննուին այնտեղ։ Անոնց կոկորդները կտրուած են պատուհանի ապակիի մը կամ թիթեղի կտորով մը։ Անոնց անուններն էին․ Սարգիս Մարտիկեան, Ատիեամանցի Նաթուրեան (Նէտիրեա՞ն) եւ Հէքիմխանցի Սարգիս։*

*Մահմետական պարոն մը, որ քննած է մարմինները, կը վկայէ այս ոճրի մասին։*

*Խիստ մեծ են թշուառութիւնն ու ամայութիւնը, որ այժմ կը տիրեն Մալաթիայի մէջ։ Կաթոլիկ Ուխտը, Հայ եւ Բողոքական եկեղեցիները քանդուած են եւ Հայ-կաթոլիկ եկեղեցին մեծ չափով վնասուած է։ Հայկական թաղին մէկ մեծ մասը աւերակ է։ Համաձայն ցանկի մը, որ խնամով պատրաստուած է Պր․ Կէյթսի (1) կողմէ, որ նպաստի գործով Մալաթիա կը գտնուէր երբ ես այնտեղ էի, կան աւելի քան 1600 որբեր եւ առնուազն 510 այրիներ քաղաքին մէջ։*

*Այս դէպքերու գլխաւոր պատասխանատուութիւնը կը ծանրանայ Միւթեսարըֆին վրայ, որուն դիրքը սկիզբէն մինչեւ վերջը կը թուի եղած ըլլալ վարանոտ ու երկչոտ։ Ան թոյլ տուած է որ հրացաններ բաշխուին մահմետականներուն՝ խռովութեանց ծագումէն առաջ, իր երկչոտութեամբ թոյլ տըւած է անարգ սպանդը իր պաշտօնական բնակութեան պատերէն ներս․ ան պատասխանատու է ջարդերու համար, որոնց զոհերը ինք զինաթափ ըրած էր՝ պաշտպանութիւն խոստանալով, ապա լքելով զանոնք ամբոխի կատաղութեան․ եւ ինք անձամբ պատճառ եղած է սպանութեանը Սարաֆեան Օհաննէս անունով երիտասարդի մը, ստիպելով որ ան վերադառնայ եկեղեցի եւ զէնքեր փնտռէ այնտեղ, երբ արդէն զէնքերը յանձնուած էին եւ ամբոխը բռնի կերպով ներս մտած էր։*

*Քիչ յանցանք կարելի է վերագրել զինուորական հրամանատարին, որ Սվազէն հասաւ դէպքերու ծագումէն առաջ, եւ տկար էր այն ժամանակ։*

*Ժողովուրդին մէջէն, խռովութեան ընթացքին գլխաւոր պարագլուխն եղած է Հարիճի Օղլու Ապտուլլահ, որուն անունը այնքան յաճախ կ՚երեւի այս տեղեկագրին մէջ։ Ան մարդիկ ղրկած էր զանազան քիւրտ ցեղերու, հրաւիրելով զանոնք որ մասնակցին Մալաթիոյ աւերումին։ Ան օգնած էր մարթիններու բաշխումին, որոնցմէ 15 հատ հաւաքուեցան հետագային միայն մէկ Թրքական թաղի մէջ ինձ ծանօթ Թուրքի մը կողմէ, եւ ան ա-*

(1) Կէյթս այդ ժամանակ Եփրատ Գոլէճի նախագահն էր, յետոյ եղաւ նախագահ Ռոպէրթ Գոլէճի։ Նափոլէոն Պաղտոյեանի (որ բողոքական մըն էր եւ հաւանաբար մօտ ծանօթ մը Կէյթսի) դիակին Թուրքերու կողմէ վաճառուիլը տեսնող այս միսիոնարը վերջին 25 տարուան ընթացքին եւ անկէ առաջ ամէն բան ըրաւ Ամերիկայի ծանօթացնելու «Ճէնթըլմէն» Թիւրքը։ ԹՐԳՄ.

*ռաջնորդող դեր մը ունեցած է այնպիսի արիւնահեղ տեսարաններու մէջ, որոնց նմանը գրեթէ չկայ։*

*Հաքիմը, որ այժմ պաշտօնազրկուած է, եւ Թապուր Աղասի Բէչիր էֆէնտի մեծ միջոց հանդիսացած են Հայերու դէմ իրենց մահմետական հայրենակիցներու մոլեկրօնութիւնը գրգռելու մէջ։*

*Պահանջած եմ Շաքիր Փաշայէն (1) որ պաշտօնանկ ընէ եւ պատժէ Միւթէսարըֆը եւ Թապուր Աղասին, եւ ձերբակալել տայ գլխաւոր ոճրագործները ժողովրդական տարրերու մէջ։ Մարշալը կը վստահեցնէ զիս թէ Միւթէսարըֆը պիտի խայտառակուի, բայց կը թուի թէ չուզեր այլ քայլ առնել, վախնալով թէ պիտի գրգռէ մահմետական ժողովուրդը։*

*Կ՚ըսուի թէ Մալաթիոյ մէջ կողոպտուած գոյքերու մէկ մեծ մասը պահուած է Թապուր Աղասիի, Հարիճի Օղլու Ապտուլլահի, Ալի Պէյի եւ Գարագաշ Օղլու Մէհմէտի տուներուն մէջ։ Միւթէսարիֆը, որ մեծ հարստութեան տէր է, կը թուի թէ մեծ բաժին մը առած է արժէքաւոր իրերէն։*

*Մէկ քանի ականաւոր Թուրքեր հիւրասիրաբար ընդունած եւ պատուաւոր կերպով պաշտպանած են մեծ թիւով Հայեր։*

*Գըզըլ Պաշ քիւրտերը ոչ մէկ մասնակցութիւն ունեցած են Մալաթիոյ խռովութեանց մէջ։*

*Ձերդ, եւլն.*

*(ստորագրուած)* *ՌԱՖԱՅԷԼ Ա. ՖՈՆԹԱՆԱ*

## ՑԱՆԿԸ ԱՅՆ ՀԱՅԵՐՈՒՆ ՈՐՈՆՔ ՍՊԱՆՆՈՒԵՑԱՆ ՄԱԼԱԹԻՈՅ ԿԱՌԱՎԱՐԱԿԱՆ ՇԷՆՔԻՆ ՄԷՋ

Յովհաննէս Թիւթէլեան եւ տղան Ստեփան
Նափոլէոն Պաղտոյեան
Ստեփան Պաղտոյեան
Արաբկիրցի Կարապետ
Սարգիս Ապտալեան
Յակոբ Գաբրիէլեան
Գրիգոր Թաթարեան
Գրիգոր Կոզմանեան
Գրիգոր Մընասորեան
Սարգիս Կիւրեղեան
Գէորգ Կիւզէլ Քէշիշեան
Կարապետ Գավուգճեան

(1) *Այս այն մարդն էր, որ եւրոպական դեսպաններու հաւանութեամբ Սուլթան Համիտի կողմէ ղրկուեցաւ հայկական նահանգները՝ իբր թէ մահմետականներու մէջ բարեկարգութիւններու գետին պատրաստելու, բայց ջարդերը հետեւեցան իր քայլերուն։*

*ԹՐԳՄ.*

Վարդան Եղունեան
Յարութիւն Եղունեան
Յակոբ Եղունեան
Բագրատին Մկրտիչեան
Սարգիս Քէլէեան
Յովհաննէս Գրիգորեան
Նազարէթ Գարապիպեռեան
Գէորգ Վիրէկեան
Աւետիս Ուրլեան
Կարապետ Եաղուպեան
Սարգիս Թիֆթիկեան
Գոնտուրաճի Յակոբ
Գոնտուրաճի Առաքել
Պօղոս Շէքէրեան
Կարապետ Կէճէկէզէրեան
Սահակ Մկրեան
Յովհաննէս Կիւռէնեան
Պետրոս Տէռէեան՝
Փիլիպպոս Տէլի Փիլոյեան
Յակոբ Անտոնեան
Ահարոն Տէր Պօղոսեան
Մխսի Ղազար
Յովհաննէս Գափոնըրուզեան
Պետրոս Թուրապեան
Յարութիւն Չալմալեան
Թորոս Մազմանեան
*Երկու Ասորիկիրցիներ*։

Միւսներուն անունները կը մնան անծանօթ։

ՔԻՒՐՏԻ ՄԸ ՎԿԱՅՈՒԹԻՒՆԸ
ՄԱԼԱԹԻՈՅ ՋԱՐԴԻ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ

Խարբերդի բրիտանական դեր-հիւպատոս Ռափայէլ Ա. Ֆոնթանա, 1896 Մայիս 19 թուակիրով ղրկած է ներքեւի վկայութիւնը կ. Պոլսոյ բրիտանական դեսպան Սըր Ֆիլիփ Քըրիի, որու բացակայութեան, Պր. Մայքըլ Հ. Հըրպըրթ 1896 Յունիս 5 թուակիրով ղրկած է զայն Մարգէզ Սալըզպըրիի։

ԹԱՐԳՄ.

Վկայութիւն մը, որ կը կրէ Ակչա թաղ (Աղճա Տաղ) Նահիէի Պեքիր Ուշաղի գիւղի բնակիչ Գըզըլ Պաշ Քիւրտի մը կնիքը (1)։

Ես կը բնակիմ Պեքիր Ուշաղի գիւղը, Ակչա թաղ Նահիէի, Մալաթիոյ միւթեսարըֆլիքին մէջ։ Այդ (Մալաթիա) քաղաքի խռովութիւններէն քանի մը օր առաջ Հէքիմնի Զատէ Ապտուլլահ Աղա, անդամ Մալաթիոյ իտարէ

(1) Turkey, թիւ 8 (1896), էջ 195։

Մէճլիսի (վարչական խորհուրդ), նամակ մը ղրկեց մեզ, հրաւիրելով որ յարձակինք Մալաթիոյ Հայերուն վրայ։Սակայն, մենք նկատի չառինք զայն, գիտնալով որ նամակին բովանդակութիւնը հակառակ էր պարզ արդարութեան։

Խռովութենէն քանի մը օր ետքը, յիշեալ պաշտօնեան, յայտարարելով որ մենք համաձայնութեան մտած ենք Հայերուն հետ, ղրկեց Մալաթիացի Իւզպաշի Շիւքրի էֆէնտին իր հետեւորդներով միասին, յետ առնելու նամակը, զոր առանց վարանելու յանձնեցինք երբ պահանջուեցաւ։ Մէկ–երկու օր յետոյ զօրաց ջոկատ մը, ընկերակցութեամբ Պէյ Պէքի Սէնիմ Օղլու Հանի Մեհմէտ, Գիւր (Քէօր) Հիւսէյն եւ Պէշիք աղաներու, եւ ասոնց հետեւորդներուն ու 3000 քիւրտերու, զորս հաւաքած էին այլ վայրերէ, յարձակեցան վարը յիշուած 25 գիւղերուն (1) վրայ։ Անոնք կողոպտեցին ինչ որ ունէինք, կոտորեցին 950 անձեր, չափահաս թէ մանուկ, եւ խոշտանգեցին մեզ։ Վերապրողներէն 18 աղքատ գիւղացիներ ձերբակալուեցան եւ անկէ ի վեր բանտը կը մնան, անօթի ու սարսափահար։ Այս բաները ներդաշնակ չըլլալով արդարութեան ու ողորմածութեան, կը խնդրենք որ կարեկցելով մեր նեղութեանց, ընէք ինչ որ անհրաժեշտ է ընել մեզ օգնելու համար։

Մայիս 12, 1896

Յիշեալ Նահիէի ժողովուրդին մէկ Անդամը

թրգմ. Ա. ՊԱՐՏԻԶԵԱՆ (2)

*Մալաթիոյ այս դէպքէն վերջ կառավարութիւնը ուզած է բոլորովին արդարանալ, հաւանօրէն եւ հիւպատոսներու կազմած հաւաքական տեղեկագրին հակազդելու եւ Հայերը յանցաւոր ներկայացնելու համար։*

*Խ. Եղիայեան կը գրէ թէ* «Դեռ զոհերու արիւնը չչորցած, կառավարութիւնը 150ի չափ աչքի զարնող Հայեր բանտը կը լեցնէ, իբր պատասխանատուներ, եւ դաւադրօրէն հանրագրութիւն մը պատրաստելով, դուրսէն դաւանած Հայեր կը փնտռէ որ վաւերացնեն զայն, Բ. Դուռ ղրկելու համար։ Շատեր կը մերժեն իրենց ստորագրութիւնը, Մկրտիչ Կեզիրեանը կը տանին Միւթեսարրիֆ Ալի Րիզա Փաշային, հոն ուրիշ Թուրքերու ներկայութեան կը ստիպեն զայն որ ստորագրէ, բայց ան կը մերժէ, կը սպառնան մեռցնել զայն, բայց ան կը մնայ անդրդուելի՝ կրկնելով որ, «Եթէ կախեն ալ, ինք անմեղ մարդոց մահուան պատճառ չ՚ըլլար»։ Միեւնոյն պահուն ներս կը մտնէ Կեզիրեանի ազատարար Պէտրոյ զատէ Ահմէտ էֆէնտին, կը միջամտէ եւ կ՚ազատէ Մ. Կեզիրեանը ստոյգ մահէ։

Բանտարկեալ Հայերը ազատ արձակուեցան ժամանակ մը վերջ, երբ

(1) *Այս նամակը գրուած է թուրքերէն։ Թէ՛ թուրքերէն բնագիրը եւ թէ անգլերէն թարգմանութիւնը դեր-հիւպատոս Ֆոնթանայի կողմէ ղրկուած են Պոլիս։ Տըպուած է միայն թարգմանութիւնը. ղանց կ՚ընենք գրողներու անունները։ ԹՐԳՄ.*

(2) *Այս վաւերագիրները, որոնք Ա. Պարտիզեան թարգմանած է, հրատարակուած են նախ ԴՐՕՇԱԿ-ի մէջ եւ ապա ՀԱՅՐԵՆԻՔ Ամսագրի մէջ (24րդ, թիւ 4 եւ 6, եւ վերջապէս ՊԱՊ ՈՒԽՏԻ, թ. 41, էջ 9 եւ թ. 49, էջ 11)։*

Պոլսէն Շաքիր փաշան իբրեւ «խաղաղութեան առաքեալ» Մալաթիա եկաւ: Ան ձեւականութեան համար Միւթեսարըֆը եւ մէկ երկու ուրիշներ «պաշտօնանկ» ըրաւ, բայց այդ «ալաթուրքա» կեղծիք էր, իրողութիւնը այն էր որ անոնք աւելի կարեւոր պաշտօնով այլ վայրեր փոխադրուեցան:

Շէքիր փաշա Մալաթիա եղած ատեն Գարագաշ զատէները իրենց տան մէջ հացկերոյթ մը կու տան, հրաւիրելով մէկ հայ ներկայացուցիչ եւ շատ մը թուրք երեւելիներ: Հայերը իրենց համար լաւագոյն ներկայացուցիչը Տէր Եղիշէ Քահանայ Խաչատուրեանը կ'ընտրեն... Շաքիր փաշան ներս կը հրաւիրէ Տէր Եղիշէն ՓԱՓԱԶ ԷՖԷՆՏԻ եւ այլ փաղաքշականներով, ապա հաղորդելով որ ինք բանտարկեալ Հայերը, ազատ արձակել տուած է, թրքավարի յորդորներ կու տայ Հայոց ներկայացուցիչին: Տէր Եղիշէն անայլայլօրէն կը պատասխանէ, «Վսեմաշուք փաշա, մենք միշտ փատիշահին արեւշատութեան համար աղօթած եւ միշտ խաղաղութիւնը սիրած ենք մեր ամբողջ հոգիով, ներեցէք համարձակութեանս որ առակով մը բացատրեմ ինքզինքս» կ'ըսէ եւ Լաֆոնդէնի Գայլի եւ Գառնուկի առակը կը պատմէ եւ կը վերջացնէ խօսքը ու քիչ վերջը հրաժեշտ առնելով կը մեկնի (տես ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ. տարի, Թ. 3, էջ 17):

*Զեմ գիտեր թէ Խ. Եղիայեանի պատմած 150 ձերբակալեալներու պատմութիւնը արդեօք առանձին պատահա՞ր մըն է, թէ շփոթուած է Պատուելի Կիրակոսեանի 12 ընկերներով ձերբակալութեան հետ, որ ջարդէն վեց ամիս վերջ 1896 Ապրիլ 15–29-ին կատարուած է կարգ մը կասկածներով կամ զրպարտութիւններով: Թերեւս լսուած էր թէ Նպաստի դրամներէն մաս մը բաժին կը հանուի զէնք եւ վառօդ գնելու համար, եւ ասիկա պատճառ եղած էր Պատուելի Մարտիրոս Կիրակոսեանի ձերբակալումին, այն ամբաստանութեամբ թէ ան Անգլիական կառավարութեան հետ յարաբերութեան մէջ եղած է: (Զէնք գնելու խնդիրը մնաց գաղտնի. Պատ. Կիրակոսեանի եւ ընկերներու ձերբակալումը այս խնդրին հետ կապ չունի):*

*Պատուելի Մարտիրոս Կիրակոսեան բանտէն արձակուած է Հոկտեմբեր 9-ին, վեց ամիս բանտարկուելէ վերջ:*

*Ահա ամբողջական ցանկը 15–29 Ապրիլ 1896ին ձերբակալուածներուն.—*

1. *Վեր. Մարտիրոս Կիրակոսեան, հովիւ Հայ Աւետարանական Համայնքին*
2. *Աստուր աղա Որբերեան, վաճառական*
3. *Յարութիւն էֆէնտի Ասլանեան, մտաւորական եւ պետական սեղանաւոր*
4. *Գէորգ էֆէնտի Ըպրքճեան, վաճառական*
5. *Մկրտիչ էֆէնտի Տէր Բարթողիմէոսեան*
6. *Կարապետ էֆէնտի Ղըզըլ Քեչիչեան, առեւտրական*
7. *Գրիգոր էֆէնտի Վրիկեան, մտաւորական եւ արդուհայճի*
8. *Գրիգոր էֆէնտի Ժամկոչեան*
9. *Գրիգոր էֆէնտի Գըրքեաչարեան, Հաճընցի, օգնական հովիւ ու ուսուցիչ Հայ Աւետարանականաց*

10· *Գասպար աղա Պօնափարթեան, սեղանաւոր*
11· *Միքայէլ էֆէնտի Թերխանեան, պետական գանձումի պաշտօնեայ*
12· *Պօղոս աղա Օրտուզի Պօյաճեան*
*Յետոյ կ'աւելնան·*
13· *Սիմոն Ճըլճըլեան*
14· *Յովհաննէս աղա Թերխանեան*
15· *Յակոբ աղա Թերխանեան*
16· *Պալօ աղա Զնքուչեան*
17· *Խայաճան աղա Թեոդեան*
18· *Յարութիւն աղա Կեղիւրեան*
19· *Յարութիւն աղա Ոսկերիչեան*
20· *Մահտեսի Կարապետ աղա Փարսօղլանեան*

*Ասոնցմէ վերը ազատ արձակուեցան 25 Յունուար 1897–ին, Պատուելի Մարտիրոս Կիրակոսեանէն երեք ամիս ետքը:*



**Միքայէլ Էֆ. Թերխանեան**



**Սիմոն Ճըլճըլեան**

## Ը·

# 1915-Ի ՀԱՅԱՋԻՆՋ ԱՂԷՏԸ

*Յետադարձ ակնարկով մը հարկադրուած եմ ներկայացնել այս աղէտը կանխող անցքերը եւ անոր ծնունդ տուող պարագաները, որպէսզի ճշդուի թէ ինչպէս պատրաստուեցաւ այս մեծ ոճիրը, որուն զոհ եղան Թուրքիոյ Հայերը գրեթէ ամբողջովին:*

*Բացատրուեցաւ արդէն թէ ի՛նչպէս Պերլինի Վեհաժողովին 61րդ յօդուածին մեռեալ տառ մնալը պատճառ եղաւ որ խմորուին հայ ազգին մէջ*

չարժումներ, որոնց նպատակն էր մղել եւրոպական դիւանագիտութիւնը որ հարկադրէ Թուրքիան գործադրելու իր յանձնառութիւնը Հայաստանի մէջ բարենորոգումներ գործադրելու եւ ապահովելու Հայոց կեանքը, գոյքը եւ պատիւը:

Տեսնուեցաւ որ այդ նպատակով գլխաւորապէս երկիրին մէջ կազմուած մարմինները ետքը միացան գրեթէ ամբողջութեամբ Նազարբէկի գլխաւորած Հնչակեանութեան մէջ, որ մինչեւ 1895 գործօն դեր մը կատարեց:

1895-էն ետք ղեկավարութիւնը անցաւ ուրիշ կազմակերպութեան մը ձեռքը, որ նոյնպէս կազմուած էր մինչեւ 1890 մասնաւորապէս Կովկասի եւ Ռուսիոյ մէջ գտնուող պզտիկ մարմիններու միութեամբ: Այդ միացեալ մարմինը, որ կը կոչուէր «ՀԱՅ ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆՆԵՐՈՒ ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ», յետոյ եղաւ ՀԱՅ ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ: Անոր վարիչները առ հասարակ Կովկաս ապրող Հայեր էին, որ Թուրքիոյ իրական կացութեան բնաւ տեղեակ չէին:

Այս կովկասցի հայ երիտասարդները, որոնք զանազան գաղափարներու կը ծառայէին, կարծես թէ թրքահայ դատը իրենց զբաղում եւ գործ ըրած էին առանց հաստատուն եւ որոշ ծրագիրի եւ պատեհապաշտութեամբ: Անոնք պարագային համաձայն ծրագիր եւ ուղղութիւն փոխեցին: Անով միայն կըրնայ մեկնուիլ Դաշնակցութեան յարափոփոխ ուղղութիւնը եւ իրարու հակասող ուղեգիծները (Օրիանդասիոն), որոնք աղիտալի հետեւանքներ ունեցան հայ ազգին համար:

Դաշնակցութիւնը իր առաջին քայլերուն ազդուած է մեծապէս ռուս ՆԱՐՈՏՆԻԿԱԿԱՆ (ՆԱՐՈՏՈՎՈԼՑԻ-ներու) յեղափոխական կուսակցութենէն, վասնզի անոր առաջին կազմակերպիչներն եղած են Մոսկուայի Պետրովսկայա Ակադեմիայի հայ ուսանողներէն Ռոստոմ Զօրեան եւ Մարգին Շաթըրեան, որոնք բաժնուած էին ռուսական այդ կուսակցութենէն հայ կազմակերպութիւն մը ստեղծելու՝ Թուրքիոյ Հայոց համար:

Անոնց մտադրութիւնը բնաւ համակրանք չգտաւ իրենց ընկեր ուսանողներուն մէջ, որոնցմէ ամենէն կարկառուն դէմքը՝ Սիմոն Զաւարեան — որ Դաշնակցութեան հիմնադիրներէն մէկը նկատուած է — այնքան գրաւուած էր ռուսական յեղափոխութեամբ որ հայկական անջատ յեղափոխութեան վրայ մտածել իսկ կը մերժէր, երբ իրեն հրաւէր կ'ըլլար միանալու «Հայ Յեղափոխականներու Դաշնակցութեան» եւ նոյնիսկ խորհրդակցական ժողովի մը, ուր ինքն ալ հրաւիրուած էր, Ստեփան Շահվերդեանին հետ, կը ջանար համոզել հաւաքուողները թէ զուտ հայկական քաղաքական գործունէութեան մը գաղափարը յիմար բան է եւ թէ հայ ժողովուրդին բախտը եւ բարօրութիւնը կապուած են Ռուսներուն հետ:

Նոյն ժխտական դիրքը բռնած էր Քրիստափոր Միքայէլեան — Դաշնակցութեան հիմնադիրներու ամենէն ազդեցիկը եւ հեղինակաւորը — 1889-

*ին, վանքի բոլորովին գրաւուած էր Նարոտովոլցիներու գործերով Թիֆլիսի մէջ:*

*Բայց չի գիտցուիր ի՞նչ ներշնչման տակ Քրիստափոր եւ Զաւարեան, երկուքն ալ օտար յեղափոխական դպրոցի աշակերտներ, եւ կատաղի ընկերվարականներ, գրեթէ օտարացած հայ կեանքէ, միջազգային ընկերվարութենէ բաժնուելով դարձան ազգայնականներ, եւ իրենց վաղեմի համոզումները ծածկելով, կուսակցութեան ծրագիրի մէջ չներմուծեցին ընկերվարութիւնը, անշուշտ ազգին զանգուածը չխրտչեցնելու համար:*

*ԴՐՕՇԱԿի առաջին թիւին մէջ, որ* 1891, *Մայիսին տպուած էր գաղտնի տպարանի մը մէջ, նորակազմ կուսակցութիւնը կ'առաջադրէր Թրքահայոց ազատագրութիւնը ձեռք բերել՝ մերժելով յոյս դնել դիւանագիտութեան եւ մարդասիրութեան վրայ, բայց պիտի աշխատէր ստիպելու համար Եւրոպան որ միջամտէր, ինչ որ նոյնն էր տարբեր տարազով մը Եւրոպայի վրայ յոյս դնելուն:*

*Այս կուսակցութիւնն ալ անխմատ, անխորհուրդ եւ տղայական արարքներ գործելու մեղքէն ազատ չմնաց: Քանի մը տասնեակ հրոսակով Հայաստանը ոտք հանելու պէս ծիծաղելի ձեռնարկներ, (ինչպէս Կուկունեանին արշաւախումբը) անխուսափելի վիժումի մը մատնուած, ուրիշ արդիւնք չունեցան եթէ ոչ բանալ Թուրք կառավարութեան աչքերը եւ գրգռել ազգամիջեան ատելութիւնները:*

1895–*էն սկսեալ իր գոյութիւնը աւելի շեշտուեցաւ եւ ինքն դարձաւ տիրողը եւ ղեկավարը, այնպէս որ այդ թուականէն սկսեալ գրեթէ հայկական շարժումներու պատասխանատուութիւնը իրեն կը պատկանի:*

1895–*ին ԴՐՕՇԱԿ սկսաւ հրատարակուիլ Ժընեւի մէջ, այս անգամ աշխարհահայեացքի զգալի փոփոխութեամբ:*

*Նախ՝ յայտնի կը դառնար սքօղուած ընկերվարականութիւնը եւ բոլորովին կը վանուէր ոեւէ ձեւով եւրոպական դիւանագիտութենէն օգուտ ակընկալելու գաղափարը: Այս մասին ԴՐՕՇԱԿի* 1895–*ի թիւերուն (թիւ* 8 *եւ այլ թիւեր) մէջ կը յայտնուի չափազանց իրապաշտ կարծիքներ որոնք մէկ խօսքով կը միտէին ապացուցանելու թէ անկարելի էր Եւրոպան շարժման մէջ դնել, ցոյցերով եւ խռովութիւններ յարուցանելով: Այսպէս «ԴՐՕՇԱԿ»* կ'ապացուցանէր թէ ոչ մէկ յաջողութեան յոյս ունէր թրքահայ յեղափոխութիւնը:

*Այսպէս մէկ կողմէն կը հայհոյէին եւրոպական դիւանագիտութեան եւ միեւնոյն ատեն անկէ կը մուրային օգնութիւն, չմոռնալով երբեմն ալ սպառնալ, առանց խորհելու Թրքահայ անզէն եւ անպաշտպան ժողովուրդին կացութեան վրայ:*

*Դաշնակցութիւնը մինչեւ* 1896 *իր ընտրած գործելակերպին համաձայն կարգ մը հրոսախումբեր կազմակերպելէ եւ ահաբեկութիւններ գործադրելէ ետք* 1896 *Օգոստոս* 14–*ին Պոլսոյ մէջ պանքայի ցոյց մը կը կատարէ, միեւնոյն ժամանակ Սամաթիոյ թաղին մէջ ռումբեր նետելով, եւրոպական դիւա–*

*Նախատութիւնը չարժելու համար: Սուլթան Համիտ, պաշտպանուած Ռուսիոյ Զարէն այդ ցոյցը փոխադարձեց Կ. Պոլսոյ մէջ Հայերը ջարդել տալով:*

*1897-ին Արեւելքի մէջ հայկական կնճիռին վրայ աւելցաւ Կրետական ապստամբութիւնը, որուն հելլէն կառավարութիւնը միջամտեց եւ տեղի տըւաւ պատերազմի մը, որուն ելքը թէպէտեւ աննպաստ Յունաստանի, սակայն նպաստաւոր եղաւ Կրետէի համար, վասնզի անոր տրուեցաւ ինքնավարութիւն: Թերեւս ասկէ խրախուսուած Դաշնակցութիւնն ալ յուսադրուեցաւ եւ աւելի գործօն աշխատանքի լծուեցաւ:*

*Քրիստափոր Միքայէլեան 1898-ին Թիֆլիսէն անցաւ Ժընեւ եւ ձեռք առաւ Դաշնակցութեան ղեկը, իբրեւ ղեկավար:*

*Առաջին փոփոխութիւնը, որ ան կատարեց Դաշնակցութեան գործելու եղանակին մէջ, ան է որ այլեւս դադրեցաւ ԴՐՕՇԱԿ գանգատելէ եւրոպական անտարբեր դիւանագիտութեան դէմ, այլ ընդհակառակը այս անգամ սկսաւ շողոմել, որպէսզի յոյս ներշնչէ ժողովուրդին (1899, ԴՐՕՇԱԿ, թ. 1):«Նշանաւոր հայասէր» Եւրոպացիներու կարծիքներուն արժէք մը տրուիլ սկսաւ, մինչ անոնցմէ ոեւէ դրական արդիւնք սպասել յիմարութիւն էր: Այս նպատակով հիմնուեցաւ Pro Armenia եւ կատարուեցան կարգ մը ձեռնարկներ, որոնց համար նիւթական միջոցներու պէտք կար: Այդ գումարները հայթայթելու համար Դաշնակցութեան պետերը կը փակին հայ դրամատէր դասակարգին օձիքին: Եւ որովհետեւ հայ հարուստները չէին բանար իրենց քսակները, Քրիստափոր կը կազմակերպէ ահաբեկիչ «Փոթորիկ» խումբը, որ ըսպանութիւններու գինով մեծ գումարներ կը կորզէ դրամատէրներէն:*

*Քրիստափորի ջանքերով Դաշնակցութիւնը ընկերվարական միջազգային կազմակերպութեան կողմէ կ՚որդեգրուի, եւ Փարիզի իր համագումարին մէջ կ՚որոշուի որ ընկերվարական մամուլը ուշադրութիւն դարձնէ Թուրքիոյ Հայոց վիճակին վրայ:*

*Արդի՞ւնք... կարգ մը խորհրդարաններու մէջ քանի մը ընկերվարական երեսփոխաններու հարցումը եւ հարցապնդումը եւ կառավարութիւններու քանի մը սուտ-փուտ յայտարարութիւնները եւ ապա մոռացումն...:*

*Եւ եւրոպական դիւանագիտութեան անտարբեր հայեացքին տակ Սուլթան Համիտ ջարդերը — կարմիր եւ սպիտակ — եւ Քրիստափոր իր գործերը կը շարունակեն: Դաշնակցութեան ընդգրկած ուղղութիւնը երազային էր, նոյնիսկ առանց հաստատ եւ անշեղ ըլլալու իր ուղեգծին վրայ:*

*1896-ի ջարդերէն վերջ՝ Սուլթան Համիտ ուզեց իրաւախոհութեան մը գալ Դաշնակցութեան հետ, Տատեան Յարութիւն փաշայի միջոցով: Դաշնակցութիւնը կասկածով վերաբերուեցաւ այս առաջարկին հանդէպ, ինչ որ իր իրաւունքն էր, բայց միեւնոյն ատեն իր պարտքն էր չարհամարհել եւ հնարաւոր չափով օգուտ մը ապահովել առերեւս հաւատալ ձեւացնելով եւ փորձ մը կատարելով:*

*Դաշնակցութիւնը մերժեց շարունակել երկար ամիսներէ իվեր տեւող բանակցութիւնները:*

Նոյնպէս Դաշնակցութիւնը Քրիստափորի ազդեցութեամբ մերժեց միանալ Երիտասարդ Թուրքերու, երբ անոնք առաջարկ բերին բոլոր յեղափոխական հոսանքներու միացեալ ջանքերով տապալելու Սուլթանին բռնապետութիւնը:

Քրիստափոր չկրցաւ գնահատել նաեւ «Հայ-Քրդական միութիւնը», որուն ընդառաջ եկած էին Պետրխանի երկու որդիները, որոնք Հայերու կոչ կ'ընէին միութեան:

1902-էն սկսեալ Մակեդոնացիք զէն ի ձեռին կը պաշտպանէին իրենց դատը, պահանջելով ինքնավարութիւն կամ կցում Պուլկարիոյ, մինչ հայ կազմակերպութիւնները հազիւ դժգոհութեան խորհրդանշական արտայայտութիւններ միայն կ'ունենային մայր երկրին մէջ:

Վրայ հասաւ ուրիշ աղէտ մը, որ ազգին ուշադրութիւնը դարձուց դէպի Կովկաս:

12 Յունիս 1903-ին Ջարական Ուքազով մը գրաւուեցան հայ եկեղեցական կալուածները:

Հայ ժողովուրդը ծառացաւ այս բռնագրաւումին դէմ, եւ Դաշնակցութիւնը այս առիթը կրցաւ օգտագործել գլուխը անցնելով ընդդիմադրութեան, որ ինքնաբուխ շարժում մըն էր, Դաշնակցութենէն անկախօրէն ստեղծուած: Այսպէս Հայ Յեղափոխական Դաշնակցութիւնը շահեցաւ ժողովրդականութիւն եւ ստացաւ առատ դրամական միջոցներ: Դաշնակցութիւնը անխնայ ՏԵՐՈՐԻ ենթարկեց ռուս պաշտօնատարութիւնը եւ սպաննեց երկրորդական եւ առաջնակարգ ռուս պաշտօնեաներ:

Թուրքիոյ Հայոց ազատագրութեան համար կազմուած կազմակերպութիւնը այսպէս բացարձակ թշնամացաւ ռուս կառավարութեան հետ, որուն դէմ իր պաշտօնաթերթին մէջ անլուր բաներ գրուած են:

Այսպէս Դաշնակցութիւնը սկսաւ մաքառիլ թէ՛ Թուրքիոյ եւ թէ Ռուսիոյ դէմ, առանց կշռելու իր ոյժերուն սահմանափակ քանակը:

1904-ին Դաշնակցութիւնը կ'ընդգրկէր ԿՈՎԿԱՍԵԱՆ ՆԱԽԱԳԻԾԸ եւ համերաշխութեան կոչ կ'ուղղէր Կովկասի մէջ գործող ուրիշ կազմակերպութիւններուն, որոնք թէեւ տարբեր իրենց ծրագիրներով, բայց բոլորն ալ նպատակ ունէին կռիւ մղել տիրող վարչաձեւին դէմ:

Դաշնակցութիւնը 1905-ին նոյնիսկ մասնակցեցաւ Փարիզի մէջ գումարուած Ռուսիոյ զանազան կազմակերպութիւններու խորհրդաժողովին, մշակելու համար համերաշխ գործակցութեան օրինագիծ մը:

Դաշնակցութիւնը յայտնապէս կը կռուէր Ռուսիոյ դէմ եւ այս տեսակէտով Կովկասեան ազգերու մէջ Հայերը առաջին գիծի վրայ կու գային (1):

Ռուս ջարական կառավարութիւնը ինքն ալ դիմեց Համիտական մեթոտին, եւ 1905-ին հայ-թաթար ընդհարումներով Հայերը ջարդել տուաւ:

---

(1) Հոգ չէ թէ ռուս ջարական կառավարութիւնը հալածել սկսաւ Դաշնակցականները, որ յայտնի իրողութիւնները ուրացան եւ յայտարարեցին թէ Դաշնակցութիւնը Ռուսիոյ հետ գործ չունէր եւ միայն Թուրքիոյ Հայոց համար կազմուած էր:

Դաշնակցութիւնը այս պայքարին շնորհիւ աւելի զօրացաւ, վասնզի ինքնապաշտպանութեան գործի մէջ ղեկավար դեր կատարեց։

Թէ՛ Ռուսերը եւ թէ Թուրքերը իրենց նպատակին չհասան, սակայն թէ՛ Ռուսիոյ եւ թէ Թուրքիոյ մէջ Հայերը տեսակ մը ատելութեան առարկայ եղան իբր անբաղձալի։

1905-ին Կովկասի մէջ վերջ տրուեցաւ Կալիցինեան քաղաքականութեան։ Ռուս կառավարութիւնը հոտը առած էր յեղափոխութեան, եւ կ՚ուզէր սիրաշահիլ Կովկասեան ազգերը։

Այս նոր քաղաքականութեան առաջին նշանն էր 1905 Մայիսին Վորոնցով Դաշկովի անուանումը իբր Փոխ-Արքայ Կովկասի։

Դաշնակցութիւնը փոխանակ հայ եւ ռուս ժողովուրդներու միջեւ բացուած խրամը գոցելու, ընդհակառակը նոր փոխ-արքային անուանումին առթիւ կոչ մը հրատարակեց եւ հրաւիրեց Հայերը որ ոչ մէկ ընդունելութիւն չընեն անոր։

Բայց հազիւ ինն տարի ետքը Դաշնակցութիւնը լիովին, իր բոլոր ճիւղերով եւ յոխորտանքներով, ռազմական հեղինակութեամբ, իր բոլոր օրգաններով եւ մտաւորականներով, մանուկի մը պէս խաբուեցաւ Վորոնցով Դաշկովէն եւ դարձաւ անոր կոյր գործիքը։

1905 Հոկտեմբերին պայթեցաւ ռուս յեղափոխութիւնը, որուն գաղափարական քարոզչութեան հիմն կը կազմէր ընկերվարութիւնը, հետեւաբար Դաշնակցութիւնը ինքն ալ անմիջապէս ինքզինքը յայտարարեց ընկերվարական եւ շարունակեց իր գործունէութիւնը թէ՛ Թուրքիոյ եւ թէ Ռուսիոյ մէջ։

1906-ին Ռուսիա կը խաղաղէր եւ Դաշնակցութիւնը կը սահմանափակէր իր գործունէութիւնը միայն Թուրքիոյ մէջ։

Եւ որովհետեւ այլեւս հայասիրական շարժումը կասած էր եւ ամէն կողմէ յուսախաբ եղած էր հայկական երազատեսութիւնը, Դաշնակցութիւնը յուսահատ Դեկտեմբեր 1907-ին համաձայնութեան եկաւ Թուրքիոյ մէջ գործող յեղափոխական մարմիններու հետ։

Սակայն տակաւին գործի չէին ձեռնարկած այդ արտասահմանեան մարմինները երբ Սելանիկի Թուրք բանակը հարկադրեց Սուլթան Համիտը վերահաստատելու 1876-ին Միտհատեան Սահմանադրութիւնը 1908 Յուլիս 11–24-ին։

Դաշնակցութիւնը որ 1901-ին մերժած էր գործակցիլ Երիտասարդ Թուրքերու հետ, որովհետեւ անոնք 61-րդ յօդուածով Հայաստանի համար բացառիկ կարգադրութեանց յանձնառութիւնը կը մերժէին եւ բոլոր Թուրքիոյ բարենորոգութիւնը առաջ կը քշէին, հիմա ինքնաբերաբար ամէն բան զոհեց եւ յայտարարեց թէ Պերլինի 61-րդ Հայաստանի եւ 23-րդ Կրետէի եւ Մակեդոնիոյ վերաբերեալ յօդուածները կը կորսնցնէին իրենց գոյութեան իրաւունքը եւ հայկական եւ մակեդոնական խնդիրները կը վերցուէին միջազգային դիւանագիտութեան սեղանէն եւ կը դառնային Օսմանեան Պետութեան ներքին խնդիրներ եւ կը կցուէին Թուրքիոյ ընդհանուր եւ հիմնական վերա-

կազմութեան հարցին (տես ԴՐՕՇԱԿ, 1909, Թ. 4)։

Դաշնակցութիւնը պատեհապաշտօրէն զօրացած Իթթիհատ Թէրագգըի հովանաւորութեամբ եւ այն սերտ գործակցութեամբ որ ունէր «Երիտասարդ Թուրքեր»ու հետ, չվարանեցաւ դառնալ օժանդակը կամ կամակատարը Երիտասարդ Թուրքերուն, որոնք իրականութեան մէջ կը պահէին Թուրք Համիտեան վարչաձեւին բոլոր աւանդութիւնները եւ ծրագիրները։

Ասոր կարկառուն փաստն էր Ատանայի Ջարդը (1909 Մարտ 31—13 Ապրիլ), որուն Դաշնակցութիւնը հանդուրժեց եւ նոյնիսկ չկորսնցնելու համար իր դիրքը եւ ազդեցութիւնը, առանց վարանման համագործակցութեան դաշինք կնքեց Իթթիհատին հետ, ուրանալով նոյնիսկ իր հայկական հանգամանքը «ՕՍՄԱՆԵԱՆ ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆ» դառնալով, ասոր համար իբր «արեան տուրք», ինչպէս իրենք կ՚ըսեն — վճարելով 20·000 հայ զոհեր։

Իթթիհատը այսպէս իր պոչին կապելէ ետք Դաշնակցութիւնը՝ հայ ամենէն ազդեցիկ կազմակերպութիւնը, այլեւս արհամարհեց Հայերը եւ ոչ մէկ բարենորոգչական քայլ առաւ երկիրին մէջ։

Հայոց համար ամենէն կենսական, հողային հարցին համար ոչ մէկ արդար կարգադրութիւն եղաւ։ Նոյնիսկ ոչ մէկ բռնագրաւեալ հող իր հայ տէրոջ դարձուեցաւ եւ շարունակուեցան բոլոր հին ՌԵԺԻՄԻ յատուկ հարստահարութիւնները եւ կեղեքումները։

Եպարքոս Հիւսէյին Հիլմի փաշան Ատանայի Ջարդին դերակատարներէն քանի մը խլամ կախաղան բարձրացուցած ըլլալուն համար արտաքոյ խորհրդարանին հրաժարեցուցին եւ Հագգը փաշա — Իթթիհատի մէկ ուրիշ Եպարքոսը — անպատկառութեամբ, Հայաստանի հարստահարութեանց համար իրեն կատարուած դիմումներուն ի պատասխան, համբերութիւն կը յանձնարարէր մինչեւ Հայաստանի մէջ երկաթուղիներու կառուցումը եւ Քիւրտերուն քաղաքակրթուիլը, այսինքն մինչեւ մէկ հայ չմնալը Հայաստանի մէջ ըստ Իթթիհատի հեռանկարին։

Գոնէ երկաթուղի շինելու նախաձեռնարկ ըլլային։ Ընդհակառակը եղած առաջարկները, ինչպէս Չըսթըրի ծրագիրը կը մերժէին։

Շատ որոշ էր որ Սահմանադրութեան վերահաստատութիւնը խեղկատակութիւն մըն էր որ Թուրքերը կատարեր էին Ռեվալի տեսակցութիւնը չէզոքացնելու համար եւ կը մնային միեւնոյն Թուրքերը՝ մտայնութեամբ եւ նպատակներով։

1908—1912 չորս տարիներու ընթացքին Օսմանեան Սահմանադրութիւնը յուսախաբութեան մը վերածուեցաւ եւ դժգոհութիւնը գրեթէ ընդհանուր էր։

Հայերն ալ, անոնց մէջ էին եւ առաջին կարգին վրայ կու գային, իբր դժգոհ եւ յուսախաբ։

Նոյնպէս Դաշնակցութիւնը, որ դէպի Իթթիհատ իր անձնասիրութեան մէջ ինքն ալ յուսախաբ եղած էր, սկսաւ գանգատիլ։ «ԴԺԳՈՀ ԵՆՔ ԵՒ ՆՈՐ

*ՌԵԺԻՄԻՑ» կը գրէր ԴՐՕՇԱԿ* (1910, *թիւ* 1), *բայց չէր համարձակեր բաժնուիլ Իթթիհատէն, այլ ընդհակառակը միշտ մօտենալ կը փորձէր Թուրքերուն:*

1911–*ին, Ափրիկեան Տրիպոլիսի վրայ Իտալական յարձակման սկիզբը Հ. Յ. Դաշնակցութիւնը կը յայտարարէր թէ* «Ընդհանուր հայրենիքին ըսպառնացող վտանգին առջեւ մենք կը դադրեցնենք մեր բողոքները, այն մեծ վստահութեամբ, թէ հեռու չէ վերջապէս ողջմտութեան եւ արդարութեան յաղթանակը հին ռեժիմին աւանդութիւններու վրայ»:

*Իթթիհատը՝ վտանգը, որմէ խուսափիլ կ՚ուզէր իր ընդգրկած քաղաքականութեամբ, ինքը ստեղծեց:*

*Ռումելիի քրիստոնէից դժգոհութիւնները առաջ բերին Պալքանեան երկիրներու դաշնակցութիւնը: Սերպիա, Գարատաղ, Պուլկարիա եւ Յունաստան միասնաբար Օսմանեան պետութեան դէմ պատերազմ հռչակեցին եւ մինչեւ Չաթալճա յառաջացան* (1912)*: Այսպէս, եւրոպական դիւանագիտութեան սեղանին վրայ եկաւ Արեւելեան խնդիրը իր ամէն մասերով, ինչպէս Հայկականով:*

*Հայերը, իրենք ալ իրենց ձայնը լսելի ընելու պատեհ առիթը ներկայացած կարծեցին, եւ իբր ստացուած իրաւունք Պերլինի դաշնագրութեան անգործադրելի եւ մեռեալ տառ մնացած* 61–*րդ յօդուածին գործադրութիւնը ակնկալեցին եւրոպական պետութիւններու միջոցով:*

*Արաբներն ալ սկսած էին խլրտիլ եւ իրենք ալ Սուրիոյ եւ Միջագետքի համար պահանջներ կը ներկայացնէին:*

*Երեւոյթները այնպէս էին որ Եւրոպա կ՚ուզէր արմատական կերպով կարգադրել Արեւելեան խնդիրը:*

*Դաշնակցութիւնը, որ Իթթիհատը չահելու համար հանդիսաւորապէս հրաժարած էր* 61–*րդ յօդուածէն, կերպով մը յետս կոչումով, անոր գործադրութեանը փափաքեցաւ եւ օգնեց Թրքահայ պաշտօնական մարմիններու որ դիմումներ կատարեն:*

*Կ. Պոլսոյ Պատրիարքարանին թելադրութեամբ Գէորգ Ե. Կաթողիկոսը դիմեց Ցարին, որուն բարեացակամ հաւանութեամբ կաթողիկոսը, Պօղոս Նուպարի նախագահութեամբ Ազգ. Պատուիրակութիւն մը կազմեց եւրոպական պետութեանց օժանդակութիւնը խնդրելու համար Պերլինի* 61–*րդ յօդուածին գործադրութեան համար:*

*Ռուս կառավարութենէն կախում ունէր շատ բան: Իրապէս ան էր որ ձեռք առած էր խնդիրը, յայտնի չէր թէ որ աստիճան անկեղծութեամբ: Վորոնցով–Դաշկովի փոխարքայական պաշտօնատունէն կը ղեկավարուէր հայկական շարժումը, եւ անոր մէջ Դաշնակցականներու դերը ակներեւ էր: Հակառակ անոր որ* 1912–*ին տակաւին Դաշնակցութիւնը Ռուսիոյ դէմ կը փչէր եւ Նովոչերկասկի նահանգային դատարանին քննիչ Լըժինի ամբաստանագիրով Դաշնակցականներ դատի ենթարկուած եւ դատապարտուած էին աքսորի եւ բանտի,* 1913–*ին Դաշնակցութիւնը եւ ռուս պաշտօնատարներ*

*նստած ծունկ ծունկի կը խորհրդակցէին, եւ «ընկերվարական-յեղափոխական» Դաշնակցութիւնը գիրկընդխառնուած էր «ամենաբարբարոս» ձարականութեան հետ եւ կը թշնամանար յայտնապէս Թուրքիոյ հետ:*

*Բ. Դուռը նեղ կացութեան մէջ էր եւ ընկճուած: Ուստի, ինչպէս միշտ ըրած է այս տեսակ պահերու, Հայոց պանդատներուն իրաւացիութիւնը ընդունելով, խոստացաւ Հայաստանի վիճակը բարուոքել, միայն կ՚ուզէր որ հարցը կարգադրուէր Հայերու եւ Թուրքերու միջեւ, առանց օտարքին միջամտութեան եւ հակակշռի:*

*Որոշ էր որ այս խոստումները ի՛նչ արժէք ունէին: Հայերը եւրոպական հակակշռի պահանջը, որ մեծ պետութիւնները իրենք կը դնէին, չէին կրնար մերժել, ուստի Բ. Դրան խոստումներուն հաւատք չընծայեցին եւ չհրաժարեցան եւրոպական հակակշռի պահանջէն, որ միակ երաշխաւորութիւնն էր: Հայերը այնքան անգամ խաբուած էին Բ. Դրան խոստումներէն որ կարելի չէր որ ոեւէ Հայ, ինչ որ ալ ըլլար իր դիրքը եւ դերը, տեղի տար այս տեսակ պահանջի մը առանց ապազգաւ նկատուելու:*

*Օսմանեան Պետութեան ճգնաժամային մէկ վայրկեանին Հայերու Ռուսիոյ կողմէն պաշտպանուիլը, եւ Հայերու եւրոպական հակակշիռը չմերժելը, այլ ընդհակառակը պահանջելը, բոլորովին սրեց Թուրքերու ատելութիւնը:*

*Ուստի Իթթիհատը, որ ողոքելով եւ շողոքորթելով արդիւնք մը չէր կրցած ձեռք բերել, սկսաւ ձեռքի տակէ սպառնական միջոցներ ալ գործածել եւ գաղտնի կերպով Թուրք տարրը գրգռեց Հայերու դէմ ՊՈՅՔՈԹի ենթարկելով զանոնք, որպէսզի տեղի տան:*

*Ասոր համար Իթթիհատը չէր վարաներ յայտնապէս սպառնալ եւ սուրը շողացնել Հայոց աչքին: Այսպէս Տոքթ. Պեհաէտտին Շաքիր, գլխաւոր հեղինակը հայկական 1915-ի սպանդին, մասնաւոր անհատներու իր ըրած սպառնական յայտարարութիւններէն զատ, երբ պոյքոթին համար իրեն դիմում կ՚ըլլայ, չի վարանիր հրատարակութեամբ յայտարարելու թէ* «Թուրքերը վշտացած են Հայերուն՝ բարենորոգմանց խնդիր մը մէջտեղ նետելուն եւ Մեծ Տէրութեանց դիմելնուն համար: Մինչդեռ Թուրքերը կը սպասէին որ Տէրութեանց միջամտած ժամանակ, Հայերը անոնց բերանը գոցէին ըսելով որ իրենք գոհ են թուրք վարչութենէն, եւ միւս կողմէ Բ. Դուռը դիմելով, որ պատրաստ էր զիրենք ամէն կերպով գոհացնելու...: Թուրքերը կը սպասէին որ Պատրիարքարանն ու կուսակցութիւնները ուղղակի համաձայնէին Բ. Դրան հետ. որով պէտք չի մնար Պօղոս Նուպար փաշայի պաշտօնին: Թէեւ կառավարութիւնը չի քաջալերեր պոյքոթը, բայց նաեւ Իթթիհատեանք իրենց կրօնակիցներուն վրայ ի գործ չեն կրնար դնել որ անպատճառ Հայոցմէն առեւտուր ընեն:

Թուրքերը ուշ կը բարկանան՛, բայց երբ անգամ մը բարկանան, երկար ատեն քէն կը պահեն... Հայերը պէտք չէ ջարդի վախ ունենան: Ուրիշ բան է եթէ տեղ մը պումպա նետուելիք ըլլայ: Հետեւանքը շատ ծանր կրնայ ըլլալ...»: (Բիւզանդիոն, *թ.* 5276, 1914, *Փետրուար* 15–28):

Այս յայտարարութիւնները կը մատնէին թէ ՊՈՅՔՈԹը կազմակերպուած էր Իթթիհատի կողմէն իբր սպիտակ ջարդ, ուրկէ Հայերը տեղի տային:

Բայց Հայերը չտկարացան, վասնզի մարդկօրէն անկարելի էր, այնքան ջանքերէ եւ այնքան տառապանքներէ ետք, երբ ազգին փափաքներուն իրագործումի հաւանականութիւնը այնքան մօտ կ'երեւար, լքել մեր դատը եւ անձնատուր ըլլալ խոստմնադրուժ Թուրքին: Այսպիսի արարք մը խիստ մեղադրելի պիտի ըլլար:

Ոչ ոք կրնար նախատեսել ապագան:

Հետեւաբար դատապարտելի ոչինչ կար այս մերժումին մէջ, որ ազգովին ցոյց տրուեցաւ Թրքական պահանջին հանդէպ:

Պէտք է արդար ըլլալ եւ ամբողջ յանցանքն չբեռցնել Հ. Յ. Դաշնակցութեան վրայ, վասնզի այդ օրերուն բոլոր ալրողներն ալ համաձայն էին եւ ընդհանուր համամտութիւն կար որ Հայերը չխաբուէին կրկին Թրքական խոստումներէն:

Թէ աղէտը այս համեմատութիւնը պիտի առնէր եւ Թուրքերը այս սաստկութեամբ պիտի հալածէին, ջարդէին Հայերը, ոչ ոք կրնար երեւակայել, վասնզի անմարդկային ու գազանային էր ջարդել անխնայ օրօրոցի մանուկներէն մինչեւ իննսունամեաները, առանց սեռի խտրութեան:

Սխալ է եւ անկարելի վճռական կարծիք մը յայտնել ըսելու համար թէ Հայերու կողմէ ցոյց տրուած տարբեր ընթացք մը տարբեր արդիւնք մը պիտի տար: Եթէ Հայերը աւելի խոհական եւ աւելի խորամանկ ըլլային եւ առանց ցուցադրութեան գործել գիտնային, արդեօք կարելի՞ պիտի ըլլար չարիքը սահմանափակել, խնդրական հարց մըն է, որուն մասին վճռական կարծիք մը յայտնել կարելի չէ:

Միայն կրնանք անվարան ըսել թէ եթէ Թուրքերը պատրուակներ կը փնտռէին, և տակա պիտի գտնէին անպատճառ գայլին հոգեբանութեամբ որ գառնուկը պիտի պատռէր. այդ պատրուակները մենք պէտք չէր որ հայթայթէինք անխորհրդաբար եւ անիմաստ յոխորտութեամբ, կարծելով թէ ամէն ինչ վերջացած է եւ կարելի է Թուրքը արհամարհել: Ճիշդ այս շրջանին, երբ Բ. Դուռը իր օձիքը ձեռք տուած էր եւ իր վրայ ճնշումներ կը գործադրուէին յանձնառութիւն առնելու համար որ Հայաստանի բարենորոգումները գործադրէ, ցուցարարութիւններ եղան եւ գրգռութիւններու տեղի տրուեցաւ:

Ասոնցմէ մէկը եղաւ 1912-ին Հայ Գիրերու գիւտին 1500ամեակին եւ Հայ Տպագրութեան 400ամեակին տօնակատարութիւնները, որոնք երկիրին ամէն կողմերը կատարուեցան փառաշուք կերպով:

Ասիկա տեսակ մը ապտակի մը տպաւորութիւնը թողուց Թուրքերուն վրայ, որոնք տիրապետող ազգ մը ըլլալով հանդերձ (Միլլէթի հագիմէ) քաղաքակրթապէս այնքան յետամնաց էին որ իրենց սեփական գիրը չունէին, մինչ Հայերը 1500 տարիներէ ի վեր ունէին:

Թուրքերը իրենց այդ նեղ օրերուն կատարուած այդ հանդէսները դիտելով կը կատղէին :

Յ· Մ· Սերայցի իբր ականատես կը պատմէ այդ առթիւ կատարուած տօնակատարութիւնները «Երբ թուրք մոլեռանդ մոլլաներ կը դիտէին հազարաւոր հայ աշակերտութեանց քաղաքէ քաղաք շքերթը, իրենց գեհենատիպ շրթներէն կը պոռթկային ԿԵԱՎՈՒՐները կատղեր են, գլուխնին ելլալիք կայ, ինշալլահ շուտով··· : Բայց ո՞վ կարեւորութիւն կու տար այդ «ցընդած»ներու ցափռտուքներուն» : (Փոթորիկին ազդանշանները ՊԱՅՔԱՐ, ԼԵ· տարի, թ· 96, 24 Ապրիլ 1957) :

Թրքական հոգեբանութեան ուշադրութիւն չընծայելու այս հակումը եւ անզգուշութիւնը ամէն կողմ ցոյց կու տային Հայերը : Այսպէս գրգռութիւնը աւելի կը շեշտուէր ամէն կողմ :

Հայերը շատ բնական է աւելի անշրջահայեաց դարձան երբ ռուսական սպառնալիքի տակ երկար եւ տաժանելի բանակցութիւններէ ետք, Եպարքոս Սայիտ Հալիմ փաշա ստորագրեց 8 Փետրուար 1914–ի համաձայնութիւնը, որով Թուրքիա յանձն կ'առնէր Հայաստանի Բարենորոգութիւնները գործադրել եւրոպական մեծ պետութեանց հաւանութեամբ նշանակուած երկու եւրոպացի մարզպաններու հսկողութեան տակ եւ եւրոպական հակակշիռով (ՔՈՆԹՐՈԼ) :

Իթթիհատը չմարսեց Հայերու իրեն խոստումին չհաւատալը եւ բարենորոգումներու ծրագրին ընդունելութենէն ետքը լեցուած ատելութեամբ շարունակեց գրգռութիւնները ընդդէմ Հայոց :

Սակայն ասոնց ամենուն հանդուրժեցին Հայերը, վասնզի իրական արդիւնք մը կար եւ բարենորոգութիւններու գործը եւրոպական հակակշռի տակ իրագործուելու սկսած էր :

Նոյնիսկ երկու եւրոպացի մարզպանները ընտրուած էին եւ անոնցմէ մէկը Վան գացած էր : Յուսալից էր Հայը : Սակայն մեր չար բախտէն Եւրոպայի քաղաքական աշխարհը մթագնեցաւ սերպ հայրենասէրի մը կողմէ Սերայեվոյի մէջ Աւստրիոյ գահաժառանգին եւ կնոջ սպանութեամբ (28 Յունիս 1914) :

Ամիս մը չանցած ամբողջ Եւրոպա կ'այրէր հրդեհէ մը եւ բոլոր եւրոպական մեծ պետութիւնները երկու խումբի բաժնուած իրարու դէմ պատերազմիլ սկսած էին :

1914 Օգոստոս 1–ին, աշխարհ տակնուվրայ կ'ըլլար եւ 27 տէրութիւններ իրարու դէմ կը կռուէին :

Չորս տարի (1914և1918) տեւող այս պատերազմին մէջ պիտի քանդուէր շատ բան եւ մանաւանդ քիչ ու շատ հաստատուն այն վիճակը, որ «եւրոպական հաւասարակշռութիւնը» կ'որակուէր եւ գրեթէ քառասուն տարիներու անցեալ մը ունէր, երկու խումբերու բաժնուած երեք առ երեք մեծ պետութիւններով :

Առաջինը Երրեակ Զինակցութիւնը Գերմանիոյ գլխաւորութեամբ եւ

Աւստրիոյ եւ Իտալիոյ մասնակցութեամբ եւ միւսը՝ Եռեակ Համաձայնութիւնը, մասնակցութեամբ Ֆրանսայի, Ռուսիոյ եւ Անգլիոյ:

Ասոնցմէ առաջինն էր որ շղթայազերծեց պատերազմը, որ Հայոց համար աննախընթաց աղէտ մը եղաւ, վասնզի 1 Նոյեմբեր 1914-ին Թուրքիա պատերազմի մտաւ Գերմանիոյ կողքին, իր դարաւոր թշնամիին՝ Ռուսիոյ խորտակումին նպաստելու համար:

*
**

Առաջին Համաշխարհային պատերազմի չորս տարիներուն Հայերը, ինչպէս Թուրքիոյ ամէն կողմերը, նոյնպէս նաեւ Մալաթիոյ մէջ, ապրեցան իրենց ամենէն դժբախտ օրերը, ենթարկուելով բոլոր այն չարիքներուն, զորս յղացած էր Իթթիհատ-Թերագգըի ջոկերը: Ծրագիրը, որ այս թուրք կուսակցութիւնը հինած էր Հայոց բնաջնջումն էր, ինչպէս կը պարզուի 1916 Ապրիլ 15-ի Իթթիհատ-Թերագգըի ընդարձակ մէկ զեկուցումէն (տես ասոր ամբողջական թարգմանութիւնը, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, էջ 1443–1445):

Միտհատ Շիւքրիւ, այն օրերու Իթթիհատի ընդհանուր քարտուղարը, 1953-ին «ՐԵՍԻՄԼԻ ԹԱՐԻՀ» անուն հանդէսի մը մէջ հայկական տարագրութեան եւ ջարդերու մասին իր ըրած յայտարարութիւններուն մէջ Իթթիհատ-Թերագգըի կուսակցութիւնը արդարացնել կը նկրտի կատարուած անորակելի անգթութիւններու պատասխանատուութիւնը մասնաւոր կերպով բեռցնելով Էրզրումի Թեշքիլաթը Մահսուսա Հէյէթիի (մասնաւոր կազմակերպութեան մարմին) ղեկավար յայտնի Իթթիհատական Պեհաէտտին Շաքիրի եւ Տիարպէքիրի կուսակալ Տոքթ. Ռեշիտի պէս մարդերու վրայ [1], բայց վաւերագիրներ ցոյց կու տան թէ ոճրային ծրագիրը բուն կուսակցութեան գործն էր եւ զայն իրագործողը ներքին գործոց նախարար Թալէաթն էր, որուն ծածկագիր հրահանգները գտնուած են ետքը:

Միտհատ Շիւքրիւ այնպէս ցոյց կու տայ որ իբր թէ յայտնի ըլլալով հանդերձ որ Հայերը տրամադիր չէին Թուրքերու հետ հաւաքաբար գործելու, Իթթիհատը միայն Հայերէն ծածկել որոշած էր ձեռք առնուած միջոցները եւ պիտի ապահովէր Հայերու բարօրութիւնն ու երջանկութիւնը...: Այս հրահանգին չէ անսացած Պեհաէտտին Շաքիր մանաւանդ երբ Հայերը ռուս ճաբական գործակալներուն դրդումով տեղ տեղ սպառազինուած եւ Թուրքիոյ սահմանային գաւառակներուն վրայ արինալի յարձակումներ գործած են (ակնարկութիւն հայ կամաւորական գունդերու):

Բայց այս չքմեղանքը չինծու ըլլալը բացորոշ է:

Հայկական զարհուրելի եղեռնին պատասխանատուութենէն պաշտօնական

(1) Այս մասին իր յայտարարութիւններուն թարգմանութիւնը տես «Արեւ»ի 27 Յուլիս 1953:

Թուրքիան եւ զայն ղեկավարող Իթթիհատ Թերաքքը կուսակցութիւնը ու բոլոր Թրքութիւնը չեն կրնար խուսափիլ:

Նոյնիսկ իրենց զինակից Գերմանիան չի կրնար արդարանալ ոեւէ կերպով, քանի որ Թրքական բազուկը զօրացուցած եւ քաջալերած է, ինչպէս կը հաստատուի նոյնիսկ գերմանական վաւերագիրներով եւ գերման քանի մը խղճամիտ եւ արդարադատ ականատեսներու վկայութեամբ[1]:

Այնպէս որ իզուր է անհատներու վերագրել: Բացորոշ է թէ Հայերու բնաջնջման ծրագիրը Թուրք ազգային յղացում մըն էր, զոր գործադրեցին Թուրքերը լիովին եւ անոր կատարեալ համաձայնութեամբ, եւ շատ հազուագիւտ քանի մը Թուրքեր էին որ համամիտ չէին:

Ասիկա կը հաստատեն Զինադադարէն յետոյ ձեռք անցուած ծածկագիր բազմաթիւ հեռագիրներ ուղղուած զանազան գաւառական իշխանութիւններու[2]:

Անոնց մէջ էր նաեւ Կ. Պոլսոյ Նուրը Օսմանիէի Իթթիհատի կեդրոնական քլիւպին մէջ գտնուած երկու հեռագիրները, որոնցմէ մէկը Թալէաթ կ'ուղղէր եւ միւսը Պեհաէտտին Շաքիր, Մալաթիոյ Իթթիհատի մասնաճիւղին:

Թալէաթ կը գրէր շնականօրէն·

«ԲՆԱՋԻՆՋ ԸՐԷՔ ՁԵՐ ԳԱՒԱՌԸ ՂՐԿՈՒԱԾ ԵՒ ՀԱՒԱՔՈՒԱԾ ՀԱՅԵՐԸ, ԲԱՐՈՅԱԿԱՆ ԵՒ ՆԻՒԹԱԿԱՆ ԱՄԷՆ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒՈՒԹԻՒՆ ԻՆԾԻ ՊԱՏԿԱՆԵԼՈՒ ՊԱՅՄԱՆՈՎ»:

Իսկ միւս հրէշը կը գրէր·

«ԿԷՏ ԱՌ ԿԷՏ ԳՈՐԾԱԴՐԵՑԷՔ ՀԱՅԵՐԸ ՍՊԱՆՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ ՁԵԶԻ ՏՐՈՒԱԾ ՀՐԱՄԱՆԸ»:

Այս ծրագիրին յղացումը անհատէ մը կախում չունենալու, այլ ընդ-

---

(1) Տեսնել յատկապէս Հ. Յակոբոս վրդ. Տաշեանի աշխատասիրութեամբ պատրաստուած «Հայ ազգին տարագրութիւնը գերմանական վաւերագիրներու համեմատ» աշխատասիրութիւնը, որուն Ա. մասը 1921-ին հրատարակուած է Վիեննայի Մխիթարեանց տպարանէն: Դժբախտաբար Բ. մասը լոյս չէ տեսած: Անոր ընթերցումը կը հաստատէ Թրքական չքմեղանքներուն սուտութիւնը եւ Գերմաններուն մեղսակցութիւնը: Իսկ Զաւէն Պատրիարք իր ՅՈՒՇԵՐՈՒՆ մէջ (էջ 50) կը յիշէ թէ Մուսուլի գերման հիւպատոսը Հոլշթայն պատերազմը չսկսած Մուշի եւ Բաղէշի կողմերը շրջելէ վերջ տեղեկագրած էր Պերլին թէ Հայերը անվստահելի տարր մըն են եւ Համաձայնականներու նուիրուած:

(2) Այս տեսակ հեռագիրներու հաւաքածոյ մը հրատարակած է Արամ Անտոնեան երեք լեզուներով: Անգլերէն հրատարակած է գեր-կոմս Կլաթըսթոնի յառաջաբանով 1920-ին: The Memoirs of Naïm Bey, Turkish Official documents releting to the Deportations and Massacres of Armenians compiled by Aram Andonian, with an introduction by Wiscount Gladstone. London, 1920·

Նոյնպէս Արիս Գալֆայեան (Այժմ Տ. Կարապետ Ա. քհն.) հրատարակած է բաւական թիւով հրահանգներ եւ հեռագիրներ, լուսանկարուած, իր ՉՕՄԱԽԼՈՒ հատորին մէջ:

Տեսնել նաեւ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ (էջ 1451--1465):

*Համուր Թրքական առաջադրութիւն մը ըլլալուն նշանները եւ փաստերը այնքան շատ են որ նոր նոր ապացոյցներու պէտք չկայ, բայց կ՚արժէ մէջբերել կարնոյ ՄԵՊՈՒՍ Վարդգէսի 12 Մայիս 1915–ին ունեցած մէկ տեսակցութիւնը ներքին գործոց նախարար Թալէաթին հետ, որ ամենայն անպատկառութեամբ առանց վերապահութեան պարզապէս կը յայտարարէ թէ կառավարութիւնը որոշած է Հայերը ջարդել, ոչ թէ անոր համար որ Դաշնակցականներ յեղափոխական ծրագիրներ ունէին, այլ անոր համար որ Հայերը ճիգեր ըրած էին, եւ սակէ առաջ կատարած էին, բարենորոգումներ ձեռք բերելու համար, եւ ինչ որ Ապտիւլ Համիտի օրով ալ եղած էին ջարդերուն պատճառ:*

*Թալէաթ այդ օրը Վարդգէսին բառ առ բառ սա շատ նշանակելի յայտարարութիւնը ըրած է.*

«Մեր տկարութեան օրերուն Ադրիանուպոլսոյ վերագրաւումէն յետոյ, դուք մեր վզին փաթթուեցաք եւ հայկական բարենորոգումներու խնդիր մը բացիք: Ահաւասիկ թէ ինչու մենք պիտի օգտուինք այն նպաստաւոր կացութենէն, որուն մէջ կը գտնուինք. այնպէս մը ցրուելու է ձեր ժողովուրդը որ ամբողջ 50 տարիներ ալ բարենորոգումներու գաղափարին համար դուք ձեր գլուխը վեր չառնէք»:

*Վարդգէս կը պատասխանէ. «Դուք ուրեմն դիտաւորութիւն ունիք Ապտիւլ Համիտի գործը շարունակելու»: Թալէաթ կը պատասխանէ մէկ բառով՝ «ԱՅՈ» ըսելով (Լորտ Պրայսի, «ՀԱՅԿԱԿԱՆ ՋԱՐԴԵՐՈՒ ՓԱՍՏԱԹՈՒՂԹԵՐԸ», տպ. Կ. Պոլիս, 1920, էջ 206–7):*

*Ասիկա կը հաստատէ թէ ծրագրուած էր Հայկական բնաջնջումը կանուխէն, այսինքն 1912–1913–էն, եւ կուցէ այն ատենէն իսկ որոշուած էր Հայերու բնաջնջումը առիթ ներկայացած ատեն: Ասոր համար ուրիշ շարժառիթներ ալ կային:*

*Միայն հոս ներկայացնել Կ. Պոլսոյ Գերման դեսպան Վանդենհայմի 31 Մայիս 1915 Թուականով մէկ նամակին սա տողերը, որոնք բաւական են գաղափար մը տալու համար Գերման մեղսակցութեան վրայ.–*

«Հայ լրտեսութեան առջեւ թումբ կանգնելու եւ նորանոր զանգուածային ապստամբութեանց առջեւը կանխաւ առնելու համար, Էնվէր փաշա մըտադիր է, օգտուելով պատերազմական բացառիկ վիճակէն, մեծ թիւով հայ դպրոցները փակել, հայերէն թղթակցութիւնն արգիլել, հայերէն թերթերը խափանել, եւ արդի ապստամբ կեդրոններէն ամէն կասկածելի ընտանիքները Միջագետք գաղթեցնել: Կը խնդրէ թախանձանօք որ մենք ասոր համար իրեն խափանարար չըլլանք» (տես ՀԱՅ ԱԶԳԻՆ ԵՒ ՅԱՏԿԱՊԷՍ ԿԱՐՆՈՅ ՏԱՐԱԳՐՈՒԹԻՒՆԸ ԳԵՐՄ. ՎԱՒԵՐԱԳԻՐՆԵՐՈՒ ՀԱՄԵՄԱՏ, ՀԱ. 1920, էջ 92):

Դեսպանը, որ Թուրքերու մեծ պաշտպան մըն է, ինչպէս կը թուի Էնվէրի խնդրանքին գոհացում տալու փափաքով, անոր բաղձանքը Պերլին հաղորդելէ ետք կը յարէ. «Այս միջոցները անշուշտ մեծ խստութիւն են հայ ժողովուրդին համար: Բայց իմ կարծիքովս, մենք զանոնք ձեւականապէս անշուշտ մեղմելու ենք, բայց սկզբունքով պէտք չէ արգիլենք» (*նոյն*):

Նոյն դեսպանը իր մէկ պաշտօնագրին մէջ, որ 7 Յուլիս 1915 թուականը ունի, բացորոշ կը գրէ թէ «այն կերպը, որով··· տեղահանութիւնը կը գործադրուի, ցոյց կու տայ թէ կառավարութիւնը իրօք նպատակ ունի Հայ ցեղը ջնջելու թրքական պետութեան մէջ» (*ՀԱ*․, 1920, *էջ* 94)։

*Պաշտօնական Գերմանիա շատ որոշ է թէ կատարելապէս համաձայն էր իր վայրագ զինակցին։ Վիլհելմ կայսեր Կ․ Պոլսոյ անձնական գործակատար-պատուիրակ Հուման* (Humann) *Ամերիկեան դեսպանին ըսած է առանց ծամծմելու թէ* «Հայերը եւ Թուրքերը մէկ տեղ չեն կրնար ապրիլ··· Այս ցեղերէն մին անհետանալու է եւ չեմ դսրովեր Թուրքերը, որոնք Հայերը անհետացնելու վրայ են։ Հայք կ'ուզեն անդամահատել Թուրքերը։ Այս պատերազմին մէջ Թուրքերու եւ Գերմաններու դէմ են եւ հետեւաբար իրաւունք չունին գոյութիւն ունենալու···» (*ՀԱ*, 1920, *էջ* 227–8)։

*Գերմանիա քաջալերած է Իթթիհատը որ Հայերը բնաջնջէ։ Պետական քարտուղար Եակովի գերման խորհրդարանի մէջ յանձնաժողովին առջեւ* 29 *Սեպտեմբեր*, 1916*-ի ըրած յայտարարութիւնները լիովին կը հաստատեն կառավարութեան գործակցութիւնը* (*տես այդ յայտարարութիւնը*, *ՀԱ*, 1920, *էջ* 100 *կամ ՊԱՏՄ․ ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ*, *էջ* 1449)։

*Պեթման Հոլվէկ, Գերման վարչապետը, հայկական ջարդերը եւ տեղահանութիւնները չէ վարանած* 1916 *Նոյեմբերին կոչելու* «Ներքին գործերու մէջ ձեռք առնուած կարգ մը միջոցներ»։

*Ուրիշ այս կարգի փաստեր շատ կան հաստատող թէ Գերմանիա քաջալերած է Թուրքիան որ ազատօրէն գործադրէ իր ծրագիրը ամենէն դաժան եղանակով, որ մարդկային վայրագութիւնը կրնայ յղանալ։*

*Ասոնք Հայոց դէմ քայլեր առնել սկսան այն օրէն իսկ որ Գերմանիա պատերազմ յայտարարեց Ռուսիոյ եւ Ֆրանսայի դէմ։*

*Այսպէս պատերազմի յայտարարութենէն անմիջապէս ետքը, Թուրքիա օգտուելով աշխարհի խառնաշփոթութենէն Հայաստանի Բարենորոգութեանց գործադրութիւնը յետաձգեց, երկու Եւրոպացի Մարզպանները ճամբելով։*

*Ապա «Հայերը ջնջելով հայկական խնդրոյն վերջ տալու» պատեհ առիթը ներկայացած նկատելով, որոշեց Հայերը բնաջնջել տեղահանութեամբ եւ ջարդով։*

*Ասոր համար պատրուակ մը ստեղծել պէտք էր եւ ատիկա գտաւ։ Օսմանեան բանակներուն ապահովութիւնը իբր թէ կը հարկադրէր Հայերը պատերազմական շրջանակներէն եւ երկաթուղիի գիծերէն հեռացնել, որպէսզի կարելի ըլլայ փրկել բանակները երկու կրակի մէջ գտնուելու վտանգէն։*

*Ասիկա բոլորովին յարմարցուած սուտ մըն էր, ոճիրը արդարացնելու համար։ Առաջին ապացոյցը այն էր որ Հայերը չհեռացուեցան միայն պատերազմական շրջանակներէն եւ երկաթուղիի գիծերէն, այլ բոլոր այն տեղերէն, նո՛յնիսկ ամենէն խուլ անկիւններէն, ուր անոնք կը բնակէին եւ ուղղամտութեամբ կը կատարէին իրենց Օսմանեան քաղաքացիի պարտականութիւնները, համակերպելով ամէն անիրաւութիւններու։*

Տեսնելով հանդերձ Թրքական ժանիքները սրուած, հայ երիտասարդները կը փութային կատարելու իրենց զինուորական ծառայութիւնները այնքան անձնուիրութեամբ որ էնվէր — Ջոլիրին մէկ անդամը — Կարնոյ ճակատին վրայ հայ զինուորի մը շնորհիւ գերի իյնալէ ազատելէն ետք հայ զինուորներու համար գնահատական գիր մըն ալ գրած էր Պատրիարքին:

Հետեւաբար սուտ էր պատրուակը եւ իրական նպատակն էր Հայերու բնաջնջումը, հայկական խնդիրը միանգամ ընդ միշտ վերջացնելու համար, Գերման աջակցութեամբ:

Այս առթիւ Թուրք կառավարութիւնը հրատարակեց կարգ մը օրէնքներ· եւ հրահանգներ, որոնք իրենց աւազակային բնոյթով ցոյց կու տային Թրքական կառավարութեան բարբարոսական եւ գաղան նկարագիրը:

Աս բացառիկ օրէնքները նախապատրաստութիւններն էին ծրագրուած մեծ եղեռնին:

Յայտնի էր որ բովանդակ Թուրքիոյ մէջ Հայերու գլխուն սեւ ամպեր կը կուտակուէին եւ սպառնալից մթնոլորտ մը կը տիրէր ամէն կողմ Հայոց համար:

Թուրք անհատներ երբեմն կ'ունենային արտայայտութիւններ, որոնք թէեւ սքօղեալ եւ մութ, ցոյց կու տային թէ Հայոց չուրջը բան մը կը դառնար:

Հայերը իմացած էին թէ կառավարութիւնը Յուլիս 25-ին ընդհանուր զօրակոչէն հինգ օր ետք բաժնած էր կնքեալ պահարաններ բոլոր մութեսարըներուն, ցեղապետներու եւ ոստիկանական պահականոցներու, խստիւ պատուիրելով որ մինչեւ որ հրաման չտրուի անոնք չբացուին:

Ուրեմն կառավարութիւնը ամէն ինչ պատրաստած էր եւ միայն զայն կիրարկելու յարմար վայրկեանին կը սպասէր:

Ատոր համար պատրուակներ կը փնտռէր, եւ Հայերը զայն կը հայթայթէին: Մասնաւորապէս Կովկասի ճակատին վրայ կամաւորական գունդերու կազմութիւնը չոնթալից ցոյցերով եւ անոնց դրօշներուն եւ զէնքերուն օրհնութիւնը, որոնք կը տարածուէին ամէն կողմ պատկերներով, սքանչելի պատրուակներ էին:

Այդ անխորհուրդ եւ մեղապարտ քայլը, որ ոչ միայն կուսակցականները, այլ նոյնիսկ ամենէն խոհական Հայերը առին, զարհուրելի սխալ մըն էր, որ գործեցին ազգովին Համաձայնականներուն սիրոյն առանց անդրադառնալու թէ անոնք մեր թշնամիներն էին, եթէ ոչ Թուրքէն աւելի, գոնէ անոր չափ:

Փոխանակ պատերազմի ծագումէն ետք հզօր ճիգ մը ընելու, ինչպէս Զօհրապ կը յանձնարարէր, Թուրքերը սիրաշահելու եւ մեղմելու համար, ընդհակառակը կը կատարուէին այնպիսի բաներ, որ աւելի կը գրգռէին Թուրքին կատաղութիւնը: Թուրք կառավարութիւնը մեծ ուշադրութեամբ կը հետեւէր մեր քայլերուն եւ ամէն ինչ գիտէր իր լրտեսներուն եւ մանաւանդ

շատ դժբախտաբար հայ մատնիչներուն շնորհիւ, որոնք ամէն ինչ կը յայտնէին։

Երեւակայել որ Օգոստոս 1914-ին Կարնոյ մէջ գումարուած Դաշնակցութեան պատգամաւորական ժողովը առանց այլեւայլի մերժած է Իթթիհատի յառուկ պատուիրակով մը ներկայացուցած Կովկասի Հայերը ապստամբեցնելու առաջարկը։

Դաշնակցութիւնը որոշ է թէ անկարող էր եթէ ուզէր իսկ այս տեսակ ձեռնարկ մը կատարել, բայց գոնէ կրնար արգելք ըլլալ Անդրանիկի եւ մանաւանդ Արմէն Կարոյի (Գարեգին Փաստրմաճեան) կամաւորական խումբերու գլուխ անցնելուն։

Ոչ ոք կրնայ ըսել որ եթէ այս անխոհեմութիւնները չկատարուէին Իթթիհատը իր ծրագիրը պիտի չգործադրէր։

Գուցէ պիտի պատահէր ինչ որ եղաւ, սակայն գոնէ մեր կողմէն առիթ եւ պատրուակ տրուած պիտի չըլլար։

Դաշնակցութեան Կարնոյ պատգամաւորական ժողովին մերժումը թըրքական առաջարկին այն եղանակով որ կատարուեցաւ, հովեր տալով կուսակցութեան թէ ինքն աւելի լաւ գիտէ պաշտպանել Թուրքիոյ շահերը եւ համամիտ չէ պատերազմին մասնակցելու, վիրաւորիչ էր։

Դաշնակցութիւնը պէտք էր գտնէր բանաձեւ մը որ Թուրքերը գոհացընէր եւ անոնց ապահովութիւն տար։ Նոյնիսկ կարելի էր դիւանագիտական-խաբէական ելոյթ մը կատարել եւ ընդունիլ առաջարկը եւ զայն գործադրելու համար ժամանակ խնդրել եւ ձգձգել գործադրութիւնը։

Թ.

# ՄԱԼԱԹԻՈՅ ՀԱՅՈՑ ՋԱՐԴԸ ԵՒ ՏԱՐԱԳՐՈՒԹԻՒՆԸ

Մասնաւորապէս 1912–1914 երկու տարիներու ընթացքին Իթթիհատի գրգռութիւնները արդէն գետին գտած էին Մալաթիոյ մէջ, ուր Թուրքերու ատելութիւնը Հայոց դէմ եւ 1895ի Հայոց ինքնապաշտպանութիւնը — որուն մեծ թիւով Թուրքեր զոհ գացած էին — մոռցուած չէր, եւ վրէժխնդրութիւն կար։

Հակահայ բրոբականտը, որ կը կատարուէր ժամանակէ մը ի վեր, իր թունաւոր դերը կատարած էր եւ ազդանշաններ կային թէ կը պատրաստուէր աղէտ մը Հայոց գլխուն։

27 Յուլիս 1914ի ընդհանուր զօրակոչը կարծես թէ ազդանշան մը եղաւ Հայոց դէմ հալածանքներու սկզբնաւորութեան, որ օրէ օր աւելի սաստկացաւ։ Արդէն փսփսուքներ կային Թուրք ժողովուրդին մէջ։ Շշուկներ կային թէ Հայերը պիտի պատժուէին։

Կարգ մը Թուրքեր իրենց հայ բարեկամներուն խորհրդապահաբար եւ գաղտնի կը յայտնէին կառավարական ծրագիրի մը գոյութիւնը եւ իրենց

*գլխուն ճարը նայելու խորհուրդ կու տային։*

*Այսպէս Մալաթիոյ կառավարիչը՝ Ալպանացի փաշա մը — դժբախտաբար անունը չէ յիշած Տոքթ. Մ. Քեշիշեան, մէկն էր այս Թուրք պաշտօնատարներուն, որոնք չեն կրցած հանդուրժել Թրքական հրէշային ծրագրին։*

*Տոքթ. Մ. Քեշիշեան կը պատմէ թէ առտու մը այցելած էր կառավարիչին եւ զինքը մինակ գտած, անկիւնը նստած երկար համրիչը ձեռքին, աչքերը արտասուքով լի եւ կարմրած, ալպանական յեղափոխական յուզիչ երգ մը կ՚երգէր շատ կամացուկ, եւ համրիչը մեքենաբար արագ-արագ կը դարձնէր։ Երբ Տոքթ. Քեշիշեան կը հարցնէ պատճառը փաշային յուզումին, կ՚ըսէ թէ* «մէկ երկու օրէ ի վեր ստացած հրամաններս եւ հրահանգներս զիս հիւանդ ըրին։ Տկարներու դէմ գործադրուելիք ռեւէ անգթութեան չեմ կրնար տոկալ։ Մենք Ալպանացիներս ձեզի նման, կեանքով եւ իրաւունքով ստնակոխ եղած ենք, եւ ես գիտակ բոլոր պատճառներուն՝ միշտ վիրաւոր սիրտ մը ունիմ, եւ երբ պարագաները կու գան յիշեցնել ինծի, մեր եւ ուրիշ զըրկուածներու պատմութիւնը, չեմ կրնար ինքզինքիս իշխել, չեմ կրնար զսպել ինքզինքս եւ կու լամ։

Ես ներկայ ժամանակի յարմար կառավարիչ մը չեմ, չեմ կրնար ըլլալ, չեմ կրնար յարմարիլ։ Երանի՜ թէ հեռու թեւեր ունենայինք եւ թռչէինք, երթայինք անանկ տեղ մը, ուր մեր աչքերը չտեսնէին իրար յօշոտող գազաններւ մարդոց մարտնչումները, չլսէինք բիւրաւոր մայրերու լացը եւ անմեղներու արիւն թափելը եւ որբացած անմեղ երախաներու սովատանջ մերկ վայնասունները։

Դուն լաւ գիտես որ իմ սիրտս բարի է ընդհանուր մարդկութեան, մանաւանդ տկարներու դէմ գործադրուած խժդժութեանց»։

*Երբ Տոքթ. Քեշիշեան կը խնդրէ աւելի պարզ խօսիլ, փաշան կրկին լեցուած աչքերով կ՚ըսէ.* «Զուլում, զուլում, զուլում, բոլոր մարդկութեան, մանաւանդ տկարներու»։

*Եւ իր այս խօսքերուն հետ կրկին ջղային խենթի մը երեւոյթը ստացած՝ ձեռքի համրիչը կրկին սկսաւ արագ-արագ դարձնել, եւ սկսաւ երգել Ալպաններու «այս ինչ զուլում աշխարհ է»ի իմաստով երգ մը եւ լալ։*

*Տոքթ. Մ. Քեշիշեանի մեկնելէն առաջ կ՚ըսէ որ վերջին ծայր գաղտնապահ ըլլայ եւ* «թելադրէ կրօնականները եւ առաջնորդ դասակարգերը որ շատ հաշտ ապրին դրացի իսլամներու հետ, եւ աւելի հաւատարմութիւն ցոյց տան կառավարութեան եւ հնազանդ՝ տրուած հրամաններու եւ պահանջներու»։

*Ութ օր չէր անցած այն օրէն, փաշան օր մը կրկին յուզուած, նեղուած է, եւ ըստ իր մատակարարին ըսածին այդ օր գաղտնի հրաման մը ստացած է Կ. Պոլսէն, կարդացած եւ խելակորոյս վիճակի մէջ Թուղթը ճմլած, եւ իր նստած անկիւնը մինտէրին տակ դրած է, եւ պառկած։*

*Առաւօտ կանուխ, մատակարարը՝ փաշային ննջասենեակէն անոր անշնչացան դիակը կը գտնէ (ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Գ. տարի, Թ. 3)։*

15 օր ետքը պատերազմը սկսած էր: Հաւանօրէն Մալաթիոյ այդ կառավարիչը իր խղճին դէմ տրուած հրահանգէ մը ազդուած յանկարծամահ եղած էր:

Իր յաջորդին օրով կառավարութիւնը օրէ օր աւելի խիստ եւ դաժան կը դառնայ եւ հետզհետէ ժողովուրդին վիճակը կը ծանրանար: Ճնշումները հետզհետէ աւելի անտանելի կը դառնային:

Կառավարութիւնը իր դաժան քաղաքականութեամբ երկաթէ օղակի մէջ առած էր Մալաթիոյ Հայութիւնը, եւ դուրսէն ոեւէ յոյս չկար: Ոչ մէկ նամակ, ոչ մէկ յուսադրիչ լուր, որովհետեւ զինուորական ամենախիստ հսկողութեան տակ առնուած էր ամէն ինչ:

Իսկ քաղաքային պատասխանատու պաշտօնները ամբողջ Իթթիհատականներու յանձնուած էին: Ոչ ոք լուր ունէր թէ ի՞նչ կ'անցնի կը դառնայ, գրաքննութիւնը հասած էր այնպիսի խստութեան, որ ամենէն անմեղ նամակները անգամ կը պատռուէին: Ոչ թէ միայն դրացի քաղաքներու հետ երթեւեկը դադրած էր, այլեւ նոյնիսկ Հայերուն արգիլուած էր ժամ մը հեռաւորութեամբ գտնուող գիւղերն անգամ այցելել: Փախուստի բոլոր ճամբաները փակուած էին: Հաղորդակցութեան բոլոր ճամբաները կառավարութեան կողմէ խիստ հսկողութեան տակ առնուած էին: Հեռագրատունը առնուած էր ամենախիստ հսկողութեան տակ: Ոչ մէկ կապ կար քաղաքներու եւ գիւղերու միջեւ, բացի այն թղթակցութիւններէն, որ կ'արտօնէր կառավարութիւնը, կամ աւելի ճիշդ տեղի կ'ունենար անոր թելադրանքով կամ ճնշումով, շփոթ եւ անորոշութիւն ստեղծելու, եւ սարսափ տարածելու սադայելական դիտաւորութեամբ:

Հակահայ շարժումի մը ազդանշանները ամէն տեղ կ'երեւէին, եւ Թուրքերու ախորժակը սրուած էր յայտնապէս:

Պատերազմը քանի կը սաստկանար, գրգռութիւնը այնքան կ'աճէր:

Մասնաւորապէս երբ ճակատէն վիրաւորուելով կամ հիւանդանալով իրենց ծննդավայրը Մալաթիա դարձող զինուորներ եւ սպաներ կը պատմէին իրենց տեսածները եւ թրքական բանակին Կովկասի ճակատի վրայ կրած պարտութիւնները, Թուրքերու զայրոյթը աւելի կը բորբոքէր:

Այս պարտութեանց հետեւանօք Վանի եւ Ալաշկերտի կողմերէն կը հասնէին փախստական Թուրք եւ քիւրտ գաղթականներ, որոնց թիւը օրէ օր կը շատնար: Անոնք իրենց հետ կը բերէին չարագուշակ լուրեր եւ կը տարածէին Հայ կամաւորներու անգթութիւններու մասին պատմութիւններ, որոնք կը կատղեցնէին Թուրքերը, որ արդէն գրգռուած էին:

Այս դժբախտ կացութեան դարման տանելու անկարող էր ժողովուրդը, որ աչքը չորս կողմ կը պտտցնէր օգնութեան մը յոյսը փնտռելով:

Այս նպատակով 8 Մարտ 1915ին Հայոց Առաջնորդարանին մէջ տեղի կ'ունենայ կարեւոր խորհրդակցական ժողով մը, որուն ներկայ կ'ըլլան քաղաքին կարեւոր բոլոր անձնաւորութիւնները:

Ժողովը կ'ուզէր պատշաճ բանաձեւով մը ժողովուրդին անտանելի վի—

ճակը տեղեկագրել Պատրիարքարան, սակայն երբ ժողովին մէջ կարդացուեցան Պատրիարքարանէն եկած բոլոր գիրերը (կոնդակ, շրջաբերական եւ նամակ), որոնք հնազանդութիւն կը յորդորէին, աւելորդ նկատուեցաւ ուեւէ բան գրել, այդ գիրով աւելի չվտանգելու կամ նոր բարդութիւններ չստեղծելու մտադրութեամբ:

Մանաւանդ որ զգալի էր որ Պատրիարքարանը անզօր էր եւ չարիքը խափանել կ'ուզէր համակերպութեամբ:

Իրականութիւնը այն էր որ Հայերը օրէնքէ դուրս նկատուած էին եւ անոնց բնաջնջումը ծրագրուած էր եւ ասոր դէմ ոչ մէկ միջոց ունէր ազգը, որուն մէկ կարեւոր մասը անդիտակ էր այն ահաւոր վտանգին որ կը սպառնար հայ ժողովուրդին, որ որքան որ զգոյշ եւ երկիւղի մէջ, սակայն չէր կրնար բոլորովին ծածկել իր զգացումները եւ համակրանք ցոյց կու տար Երրեակ Համաձայնութեան, որուն յաղթանակին վրայ յոյս դրած էր փրկուելու համար:

Այնպէս որ 27 Յուլիս 1914ին ընդհանուր զօրակոչէն (սէֆէրպէրլիկ) ետք վրդովուած էր Մալաթիոյ Հայութիւնը եւ օրէ օր աւելի տաղնապալի կը դառնար իր կացութիւնը, նման Թուրքիոյ ամէն կողմերը ապրող Հայոց վիճակին:

Օրինական եւ ոչ-օրինական այլազան չարիքներ, կեղեքումներ եւ կողոպուտներ իրարու կը յաջորդէին: Հայերը ծուղակի մէջ ինկած էին, եւ շարժելու ոչ մէկ կարելիութիւն կը տեսնէին:

Ամէն կերպով կաշկանդուած էին եւ իրարու յաջորդող դէպքերը այնպէս կը դասաւորուէին որ Հայերը կը զգային որ կը գտնուէին վերահաս աղէտի մը առջեւ:

Մասնաւորապէս երբ արձագանգ դտաւ Վանի Հայերուն ինքնապաշտպանութեան դիմելը կուսակալ Ճէվտէտի գազանային դաւադրութեան դէմ, 1915 Ապրիլ 5ին, Թուրք կառավարութիւնը սկսաւ գործադրութեան դնել իր եղերական ու ոճրային ծրագիրը:

Մալաթիոյ Հայերու կեանքին այս ճգնաժամային օրերուն վրայ լիակատար տեղեկութիւններ ունենալ շատ դժուար է, վասնզի ազատէն ճողոպրողներուն թիւը շատ քիչ է:

Մի քանի գրիչ բռնող ականատեսներու հայթայթած տեղեկութիւններ մեծ մասամբ անձնական յուշեր են, որոնք ամբողջական նկարագիր չունին, թէեւ անոնց մէջ կան բաւական լայն ծանօթութիւններ համայնքին ամբողջութեան ալ վերաբերեալ:

Այս յուշագրութիւններէն ոմանք օրագրական հանգամանք ունին, ոմանք գրականութիւն ընելու եւ յեղափոխական ոգի արծարծելու ճգտում, իսկ ուրիշներ ալ հայ յեղափոխականներու գործերը արդարացնելու միտում: Բայց առաւելապէս անձնական ապրումներ են:

Հետեւաբար ստիպուած էի անոնց այն մասերը, որոնք գրողներու անձին կը պատկանէին եւ ոչ համայնքին ընդհանրութեան, — թէեւ անձնական

ըլլալով անոր մասը կազմելէ չէին դադրիր — նկատի չառնել եւ աշխատիլ ընդհանուր զանգուածին այդ օրերու կեանքը ներկայացնել, որքան որ թոյլ կու տային իմ ձեռքս հասած տպագիր եւ ձեռագիր գրութիւնները, այդ շրջանին նուիրուած:

Այս գրութիւնները, որոնք ինծի աղբիւր ծառայեցին Մալաթիոյ Հայոց դժբախտութեան այդ օրերու պատմութիւնը կազմելու համար, որքան որ կարելի էր ճշդութեամբ, դժբախտաբար ամէնն ալ հաւասար խնամով եւ կանոնաւորութեամբ խմբագրուած չէին եւ նոյնիսկ զանոնք կարդալ տաժանք մըն էր: Իրենց տուած տեղեկութիւնները ամբողջովին ճիշդ չէին, եւ տեղ-տեղ ալ երեւակայութեամբ լրացուած եւ ճոռոմաբանութիւններով զարդարուած ուռուցիկ տողեր կը պարունակէին: Անոնց հեղինակները «ազատատենչ» ցոյց տալու համար ինքզինքնին, մոռնալով իրենց ամենէն մեծ առաջնորդներէն Ռուբէն (փաշա) Մինասեանի խօսքը, որ ստրուկ ըլլալ նախընտրելի կը համարէր ազատութեան համար մեռնելէն, երբեմն աւելորդ շատախօսութիւններ ըրած են դասեր տալով եւ յեղափոխական քարոզչութիւններ ընելով:

Անոնցմէ ոմանք այդ դժնդակ պատահարներու նկարագրութիւնը ըրած ատեն իսկ չեն հրաժարած փանչունիական մտայնութենէն, հակառակ անոր որ իրենց գրութիւնները նկարագրութիւններն են իրենց կեանքին փրկութեան համար իրենց ենթարկուած նուաստացումներուն եւ ուրացումներուն: Ասով հանդերձ այդ սեւ օրերու անցքերը ներկայացնող աղբիւրները ունին իրենց մեծ նշանակութիւնը եւ թանկագին են մեզի համար:

Ես իբր աղբիւր ունեցած եմ հետեւեալ տպագիր եւ ձեռագիր գրութիւնները.—

1.— Գէորգ Մեսիտինեցիի (իսկական անունով Գէորգ Յակոբ Թոփալեան) ՆԱԽՃԻՐՆԵՐ (1915–1918) գործը (էջ 219), 1929, տպ. «Հայրենիք»ի, Պոստոն:

2.— Դանիէլ Գալուստեանի «ԻՆՉ ՏԵՍԱՅ (1914–1927) խորագիրով յօդուածաշարքը, հրատարակուած ՊԱՊ ՈՒԽՏԻ պարբերաթերթին մէջ՝ 1937–1941 տարիներուն մէջ, գրեթէ անընդհատաբար:

3.— Մարտիրոս Թաշճեանի ՍԵՒ ՅՈՒՇԵՐ.— ՄՂՁԱՒԱՆՁԱՅԻՆ ԵՕԹԸ ՏԱՐԻՆԵՐ (1915–1922), (էջ 163), 1952, տպ. Սարգիսեան, Պէյրութ:

4.— Ն. Կ. Կանանեանի ԱՐԻՒՆՈՏ ԹՈՒԱԿԱՆԸ յօդուածը, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Ա. տարի (1940), Թ. 1, էջ 4:

5.— Ա. Եաղուպեանի «1914 ՊԱՏԵՐԱԶՄԻ ՅՈՒՇԵՐՍ» յօդուածը, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Գ. տարի (1941), Թ. 1, էջ 19:

6.— Տոքթ. Մ. Քէչիչեանի ԿԱՐՄԻՐ ՁԻՒՆԸ յօդուածաշարքը, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ Գ. Դ. Ե. տարիներու (1942–1943–1944) թիւերուն մէջ:

7.— Յարութիւն Զայդըճեանի ՋԱՐԴԷՆ ԱԶԱՏՈՒՈՂԻ ՄԸ ԿԵԱՆՔԸ յօդուածը, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, ԺԵ. տարի (1952–1953), Թ. 1–2, էջ 21–23:

8.— Արտասահմանի վերապրողներէն մէկը-ի ՅՈՒՇԵՐ ՏԵՂԱՀԱՆՈՒԹԵԱՆ ՕՐԵՐԷՆ յօդուածը, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, ԺԵ. տարի (1952–1953), Թ.

3–4, էջ 11–17:

9.– Յ. Գէորգեանի գիրի առած Գ. ՋԱՂԱՅՊԱՆԵԱՆԻ ԱՊՐԱԾ ԵՒ ՊԱՏՄԱԾ ԱՆՑՔԵՐԸ, ձեռագիր, 23 էջ, անթուական:

10.– Յովհաննէս Ն. Ափալաքեանի «ՆՈՐ ԱՔՍՈՐԱԿԱՆՆԵՐՈՒ ՎԵՐՋԻՆ ՍՊԱՆԴԱՆՈՑԸ ՄԱԼԱԹԻԱ», ձեռագիր, 26 էջ, գրուած՝ Յունուար 1953–ին:

11.– Տ. Ստեփան Ա. Քհնյ. Ղազարեանի «ՄԱԼԱԹԻՈՅ 1895Ի ՋԱՐԴԻ ԵՒ 1915Ի ՏԱՐԵԳՐՈՒԹԵԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ», ձեռագիր, 18 էջ, գրուած՝ 1952–ին:

12.– Գէորգ Մ. Տօնապետեանի «ՎԵՐՋԻՆ ԱՐՁԱԿՈՒՐԴԸ» ձեռագիր, 41 էջ:

13.– Քերոբ Որբերեանի «1914Ի ԿՈՏՈՐԱԾԸ», ձեռագիր, 5 էջ:

14.– Մարիամ Լիւլեճեանի ձեռագիր փոքր գրութիւնը, 9 էջ:

Ասոնցմէ եւ ուրիշ մանրմունր յօդուածներէ (1) քաղուած տեղեկութիւններով վերակազմած եմ 1914–1918ի դէպքերու ընթացքը, որոնք իրենց աղեխարշ հանգամանքով եւ սիրտ բզկտող քստմնեցուցիչ ահաւորութեամբ սոսկում կը պատճառեն:

Աշխատած եմ առանձին առանձին ներկայացնել այս հարուածները, որ յաջորդաբար եւ յատուկ մեթոտով Թուրքերը տուին Հայոց, ինչպէս այլուր, նոյնպէս Մալաթիոյ մէջ, ուր կարծես թէ աւելի խիստ եւ անողոք եղած են:

Ուրեմն սկսինք առաջինէն, որ եղաւ ԶԻՆՈՒՈՐԱԳՐՈՒԹԻՒՆԸ:

Թուրքիա ընդհանուր զօրաշարժի (սէֆէրպէրլիք) հրամանը տուած էր 27 Յուլիս 1914–ին, երբ ամէն կողմ, քաղաքներու եւ գիւղերու մէջ սկսան թմբուկներ զարնել, մունետիկներով ժողովուրդը ամբողջ հրաւիրել զօրանոցները, արձանագրուելու համար:

Աղճա Տաղէն, Պէկ Տաղիէն, Հիւսնի Մանսուրէն, Քեազթէշէն, Պեհեսնիէն, հազարաւոր այրեր երգելով, պարելով, տաւուլներով սկսան կեդրոնանալ Մալաթիոյ զօրանոցին հրապարակը, զօրանոցի մէջ եւ շրջակայ պարտէզները, մինչեւ Գարնակ բոլոր պարտէզները, որոնք զօրանոցի երեւոյթ տուած էին:

Ակնի, Արաբկիրի եւ Մատէնի զօրքերն ալ հրաման տուած էին Մալաթիա հաւաքուիլ. որով ամէն օր 500–էն 2000–նոց խումբեր, չուկային մէջէն անցնելով կառավարութեան դրան առջեւ յարդանաց ցոյցեր ընելով կը մեկնէին դէպի զօրանոց: Քաղաքի խլամ ժողովուրդն ալ ամէն թաղ իր խմբապետներու առաջնորդութեամբ սկսաւ խուժել զօրանոց:

Հայերն ալ սոսկ հանդիսատես չմնացին:

Առաջնորդարանի մէջ ժողով մը գումարեցին, եւ որոշեցին գրել բոլոր եկեղեցիներու քահանաներու եւ թաղականներու որ որոշուած օրը եւ որոշուած ժամուն Մայր–Եկեղեցիի զանգակը հնչած ատեն, թաղերու եւ չուկայի

(1) Ընթերցողները թող ներողամիտ ըլլան որ իւրաքանչիւր տեղեկութեան աղբիւրները չեն յիշուած, որպէսզի աւելորդ խճողում մը չըլլայ:

*բոլոր հայ այր մարդիկը առանց ժամանակ անցընելու հաւաքուին Մայր-Եկեղեցին։ Այսպէս ալ եղաւ եւ որոշուած ժամուն հազարաւոր հայ կտրիճներ, ձգելով իրենց գործն ու առեւտուրը, հաւաքուեցան եկեղեցիին բակը, հոն հսկայ թափօր մը կազմեցին մօտ 2000 հոգի, որոնց կ'առաջնորդէր Արսլանեան Գէորգ Աղայ (Գեվուշ) դրօշն ի ձեռին։ Ասոնք սարայի, կառավարչութեան պալատին դրան առջեւ, կեցցէներ պոռալով, զինուորական կարգ ու շարքով հասան զօրանոց։ Տոքթ. Մ. Քեչիչեան վեր ելաւ պաշտօնէից հաղորդեց հայ զինուորներու գալուստը եւ արձանագրութեան համար բոլորին փափաքն ու եռանդը։*

*Հրամանատարը իր սպաներով դուրս գալով վերնայարկի մեծ պատշգամէն իր ուրախութիւնը եւ շնորհակալութիւնը յայտնեց հայ զօրքին, եւ արտօնեց որ ցրուին, ուղուած ատեն գալու համար։*

*Մալաթիոյ մէջ մօտ 25 հազար զինուորցուներ հաւաքուեցան։*

*Զօրանոցը եւ շրջակայ պարտէզները երբ լեցուեցան, հրամանատարը զօրանոցի վերածել տուաւ շուկայի քարաշէն մեծ մզկիթը, Էմիր Ահմէտ Զատէի շինած, Սէօկիւտլի Ճամին, Ըսըթմա Փունար, Սիւլիւկ Օղլուի տան դիմացի մեծ մզկիթը, եւն.։*

*Ասոնք ալ շուտով լեցուեցան զօրքերով։ Առաջին առթիւ զէնքի տակ առնուեցան միայն մինչեւ 35 տարեկանները, որոնք պահեստիներու (րէտիֆ) շարքերուն կը պատկանէին։*

*Հայերը տնտեսապէս ոչնչացնելու եւ աղքատացնելու համար ընդհանուր զօրակոչէն մի քանի օր ետք 31 Յուլիս 1914-ին յայտարարուեցաւ թէ 40 ոսկի ՊԷՏԷԼ (փրկանք) վճարողները զերծ պիտի մնային զինուորական ծառայութենէ։*

*Հայերէն անոնք որ կարող էին այդ գումարը վճարել, տուին եւ զերծ մնացին բանակ ղրկուելէ, սակայն ժամանակաւորապէս, վասնզի տարի մը ետքը ՊԷՏԷԼ վճարողները հարկադրուեցան նոր գումար մը վճարել եւ վերջն ալ դարձեալ զինուորագրուեցան կամ մահու ճանապարհ ղրկուեցան։*

*Անոնք որ կը յուսային փրկուիլ ՊԷՏԷԼՈՎ, շատ անգամ ծախեցին իրենց ինչքերը, հողերը եւայլն։*

*Զինուորագրուած Հայերը Մալաթիոյ մէջ գտնուող 98-րդ ալային 3 թապուրներուն միացան եւ լեցուցին անոնց շարքերը։*

*15 Օգոստոս 1914-ին զինուորական հրամանատար Հիւսէյին Ճահիտ փաշա Խարբերդէն Մալաթիա երթալով ժողովրդական մեծ հաւաքոյթի մը մէջ այսպէս խօսեցաւ.*

«Ազնիւ հայրենակիցներ,

Ազգերու ապագան իրենց զինուորական ոյժին մէջ է։ Քանի որ եւրոպական ազգեր պատերազմի մէջ կը գտնուին, կառավարութիւնը ապագայ ամէն հաւանականութիւն դիմագրաւելու համար զօրակոչ ըրաւ։ Մենք պատրաստ պէտք է ըլլանք հայրենիքին համար զոհուելու, երբ պէտք ըլլայ»։

Այս հրապարակային ցոյցի փակումը կատարեցին իթթիհատական քայլերգը նուագախումբի ընկերակցութեամբ երգելով.

ԱՂԼԱՄԱ ՍԷՆ ՂԱՐԻՊ ԹՈՒՐԱՆ,
ՊԻԶ ԿԷԼԻՐԻԶ ՍԱՆԱ ԻՆԱՆ։ –

Չարագուշակ նշաններ կային դժբախտաբար։ Զօրակոչէն հազիւ քանի մը օր ետք, բոլոր երկիրին մէջ մինչեւ իսկ ամենափոքր գիւղերու մուխթարներու եւ քաղաքապետութեանց գոց պահարաններ ցրուած էին Պոլիսէն եկած, վրան գրուած «ԳԱՂՏՆԻ»։

Հրահանգ տրուած էր այդ պահարանները բանալ երբ հրաման տրուէր եւ կարդալէ ետքն ալ գաղտնի պահել պարունակութիւնը եւ գործադրել ըստ հրահանգի։

Հակառակ որ գաղտնի էր, սակայն Հայերը լսած էին եւ սարսափի մատնուած էին այդ չարաշուք պահարաններուն միայն Իսլամներու բաժնուիլը իմանալով։

Այն օրերուն արդէն արիւն թափիլ սկսած էր Կովկասի ճակատին վրայ։

Ռուս բանակը առաջին յարձակումով անցած էր սահմանը, Սարը Գամիշ եւ Իգ Վէրէն մինչեւ Հասան Գալէ հասած էր։ Թուրքերը ստիպուած էին Հասան Գալէի իրենց ուժերը ետ քաշել եւ Կարինը ամրացնել։ Բայց Ռուս բանակը շուտով ետ քաշուած էր հետը տանելով Բասէնի բոլոր հայ բնակչութիւնը։ Թուրքերը օգտուելով Ռուսերու ետ քաշուելէն, կ՚աճապարեն մեծ ուժեր հասցնել ճակատ, եւ Կարնոյ մէջ կը կեդրոնանան և անմիջապէս պարիսպէն դուրս, դէպի Հասան Գալէ, Իգ Վէրէն կը խուժեն։ Բայց որովհետեւ պատերազմի սկիզբն էր եւ Թուրք բանակները ամբողջացած չէին, ճակատը տկար էր, պէտք էր շուտով կազմակերպել։

Խարբերդի 11-րդ զօրաբաժինը հրաման ստացաւ հազար զօրքով անմիջապէս ճակատ մեկնելու։

Օգոստոսին մէջ հրաման եկաւ որ Մալաթիոյ մէջ մարզանքի տակ գտնուող մօտ 25·000 անվարժ զինուորներն ալ անմիջապէս ճակատ մեկնին։ Ասոնց պատրաստութիւնը շուտով լրացաւ։

21 Օգոստոս 1914-ին Մալաթիա գտնուող երեք ԹԱՊՈՒՐները ճամբայ ելան դէպի Կարին 450—500 հայ զինուորներով, որոնք Մալաթիայէն, Հիսնի Մանսուրէն, Պեհեսնիէն, Ակնէն եւ Արաբկիրէն էին։

Այս թուականէն ետք ամէն օր նորագիր զինուորները ճամբայ կը հանուէին դէպի ճակատ, հոն գրաստային աշխատանք կատարելու համար, վասնզի բանակին մէջ հայ զինուորներու ձեռքը զէնք չէր տրուէր, եւ անոնք գրեթէ ամբողջովին մեկուսացուած էին ԱՄԷԼԷ ԹԱՊՈՒՐԻներու (գործաւորական վաշտեր) մէջ, ուր կը ծառայէին խրամներու, ճամբաներու եւ շէնքերու շինութեանց մէջ եւ իրենց արհեստներուն կ՚աշխատէին։

Ճակատէն եկած նամակներէն կը հասկցուէր թէ հայ զինուորները զինաթափուելով «ԱՄԷԼԷ ԹԱՊՈՒՐԻ» կը ղրկուէին։ Թուրքերը կ՚ըսէին թէ խընայելու համար ԿԵԱՎՈՒՐները (այսինքն Հայերը)՝ Գերմանները ճնշում

բանեցուցած էին, որպէսզի անոնք ճամբաներու շինութեան մէջ աշխատցուին, հանգիստ, մինչ իրական շարժառիթը նախ անվստահութիւնն էր Հայոց նկատմամբ եւ երկրորդ այն անզէն մարդիկը ջարդելու դիւրութիւնը ունենալ: Մինչ այն հայ զինուորները անորակելի խստութիւններու կ'ենթարկուէին եւ այդ խստութիւնները օրէ օր աւելի կը բազմապատկուէին: Հայ ջոկատներ ծանր բեռեր շալակնին հետիոտն մինչեւ ճակատ կը ղրկուէին եւ գրաստներու տրուելիք սնունդն անգամ յաճախ կը զլացուէր անոնց: Հայ կտրիճ զինուորները անսուաղութենէ վատոյժ եւ անդուլ քալելէ սպառած, կը խռնուէին աղտոտ, ոջլոտ վայրերու մէջ, ուր արդէն հիւանդութիւնը ու ԹԻՖԻՒՍԸ օրական հարիւրաւոր կեանքեր կը հնձէին:

Ամէն օր ճակատէն կը հասնէր մահուան գոյժը հայ զինուորներու: Հազուադէպօրէն մէկ քանի — ան ալ սպայութեան աստիճան ունեցողներ — ետ կը ղրկուէին ապաքինելու եւ դառնալու համար կրկին բանակ:

Ժողովուրդը յուսահատութեան մատնուած էր տեսնելով իր տուած զինուորներու մատնուած այս դժբախտ վիճակը, երբ 20 Փետրուար 1915-ին 35—45 տարեկանները եւս զէնքի տակ կոչուեցան: Ասիկա ժողովուրդին յուզումը եւ յուսահատութիւնը իր գագաթնակէտին հասցուց: Այս դասակարգը քաղաքապահն էր (Մուսթահաֆըզ) որ պարզապէս զինուորական կարգապահութեան մէջ պահելու եւ Հայերու վրայ իբր հսկող գործածելու համար զօրակոչի ենթարկուած էին:

Թուրքերը որսի շուներու պէս կը հսկէին Հայերու ամէն մէկ շարժումին վրայ, վասնզի անոնց աննպաստ տարաձայնութիւններ կային եւ Հայերը դաւաճան կը ներկայացնէին: Մանաւանդ երբ Ռուսիայէն դրաւուած վայրերէն, քիւրտ հարուստ վաճառականներ իրենց արջառներով մաս առ մաս Մալաթիա գալ սկսան եւ սուտ ու փուտ պատմութիւններով Իսլամները աւելի գրգռուեցան: Զինուորագրուած Թուրքերը կը ղրկուէին ճակատ եւ Հայերը՝ Խարբերդ եւ այլ վայրեր ճամբայ շինելու:

Թուրքերը կ'ըսէին Կարնոյ եւ Հասան Գալէի իրենց բանակի ձախողուածը եւ Ռուսերու յառաջանալը:

Նոր հրամանագիրով մը «ՊԷՏԷԼ» վճարողներուն կը պարտադրուէր իրենց անձնական ծախքով ցորեն, գարի եւ այլ պարէններ փոխադրել բանակին, ճակատէն քիչ հեռու վայրեր:

Եւ որովհետեւ գլխաւորապէս Հայերն էին ՊԷՏԷԼ վճարողները, անոնք ստիպուած էին համակերպիլ, էշեր եւ ջորիներ վարձելով եւ փոխադրել իրենց պարտադրուած քանակը:

Հայերը, իրենց շուրջ սրուած ժանիքները տեսնելով եւ հայ զինուորներու բանակին մէջ կրած տառապանքները տեսնելով չէին ուզեր զինուորագրուիլ գրաստային աշխատութեանց համար, քանի որ զինեալ ծառայութեան չէին կոչուեր: Հակառակ անոր որ զինուորական փախստականները չարաչար կը հետապնդուէին եւ մահու պատիժ կը սպառնային, նորէն փախստականները շատ էին:

Կառավարութիւնը անշուշտ Հայերը ահաբեկելու եւ դասալիքները երեւան հանելու համար կը տարածայնէր թէ Խարբերդի մէջ երեք Աղճատաղցի աշիրեթապետեր կախաղան հանուած էին փախստական զինուորներ պահած ըլլալնուն համար: Կարելի չեղաւ ճշդել թէ այս երեք Քիւրտերը զինուորական փախստականներ պահած ըլլալուն համար մահուամբ պատժուա՞ծ էին թէ Աղճատաղցի այն երեք ըմբոստներն էին, որոնց գլուխները 27 Փետրուար 1915-ին Մալաթիոյ կառավարչատուն բերուելով ցուցադրուած էին:

Հաւանօրէն հայ զինուորները կը մտածէին թէ փախստական ալ ըլլային պիտի սպաննուէին, ԱՄԷԼԷ ԹԱՊՈՒՐԻ ալ երթային: Միւս կողմէն ծուարելու տեղ ալ չունէին:

Թուրքերը հայ դասալիքներ պիտի չուզէին պահել, վասնզի անոնք որ պահէին, մահով պիտի պատժուէին:

Միւս կողմէն միշտ հետապնդումը սաստիկ էր, ուստի Հայերը ասդին-անդին դիմել սկսան հնարք մը գտնելու համար զինուորական ծառայութենէ փրկուելու համար:

Հայերու այս ճիգերը անխիղճ շահագործութեան մը առիթ տուաւ:

Կառավարութիւնը որոշած էր հայ վարպետներու եւ հայ գործաւորներու ձրի աշխատանքով Ինտարայի ջուրը խողովակներով բերել զօրանոցին առջեւ:

Այս գործաւորները կ'աշխատցնէր Քէչէլլօ Զատէ Ալի անուն Թուրք մը՝ ՇԻՒՊԷ ՐԷՅԻԶԻ հսկողութեան տակ: Քէչէլլօն այս գործը ոսկեհանք մը կը դարձնէ, աղաչանքով պաղատանքով իբր գործաւոր իրեն քով աշխատիլ խնդրողներէն առնելով իբր կաշառք իրենց ընտանիքի ամէն մէկ անդամին համար նուազագոյնը 5ական ոսկի: Խեղճերը ազատելու յոյսով կը վճարէին այս գումարը առանց գիտակցելու որ կարճ ժամանակ վերջ բոլորին ալ կը սպասէր միեւնոյն սեւ ճակատագիրը:

Փախստականներէն ոմանք ալ խաբուելով որ այս աշխատանքին լծուելով ձրի պիտի կարենային փրկուիլ, դուրս կ'ելլէին իրենց թաքստոցներէն եւ կ'իյնային գայլերու երախը:

Այս աշխատանքի համար կը գործածուէր 150—300 աշխատաւորներ, որոնք Ինտարայի ջուրը գետնափոր, կարմիր հողէ շինուած ու եփուած խողովակներով բերին զօրանոցին առջեւ եւ աշխատանքը լրանալէն ետքը այս աշխատաւորները եւ վարպետները ամէնքն ալ սպաննուեցան:

Այդ օրերուն Մալաթիա ապրողի մը համաձայն, այդ վարպետները եւ գործաւորները Ինտարա քարայրէն բխող ջուրին գլուխը ողջակէզ եղած են Մալաթիոյ մսագործներուն ձեռքով եւ երկու օր արիւն հոսած էր զօրանոցին առջեւ շինուած աղբիւրէն, ինչ որ կասկածելի տեղեկութիւն մըն է, քանի որ ուրիշներ կը հաւաստեն թէ Ինտարէի ԿԱՐԼԸԽԻ (ձիւնի շտեմարան) մէջ խողխողուած էին այդ երկու հարիւր հայ գործաւորները:

Ուրիշ չարաշահ մը ելաւ Խարաղա թաղին մէջ գտնուող հիւսուածեղէնի գործարանին տէրը Արաբ Օսման:

Այս գործարանը մեծ արժէք մը չէր ներկայացներ, բայց քաղաքին օգուտ մը կ'ընծայէր։ Հոն կ'աշխատէին 50–75 գործաւորներ։

Գործարանին շարժիչ ուժն էր ջուրը։ Կը պատրաստուէին Մանուսայի բոլոր տեսակները, կտաւներ եւ անձեռոցներ։ Թէեւ գործարանատէրը Թուրք էր, բայց վարպետները եւ գործաւորները Հայեր էին, մեծ մասը՝ Արաբկիրցի։

Պատերազմէն առաջ անոնք կը ստանային գոհացուցիչ վարձատրութիւն, բայց հիմնովին փոխուեցաւ կացութիւնը պատերազմի շրջանին, մանաւանդ տեղահանութեան օրերուն, խեղճ գործաւորները հիմա իրենց տարիներու խնայողութիւնը՝ որ գոյացուցած էին չարաչար աշխատանքով, իբր կաշառք կու տային, ձրի գործաւոր արձանագրուելու համար։ Արաբ Օսմանին որդին Մուհամէտ տմարդօրէն կը քամէր իր գործաւորները, զանոնք տեղահանութենէ զերծ պահելու խոստումով, որ սուտ էր, վասնզի անոնք ալ բոլորը սպաննուեցան նոյնպէս, ինչպէս 5 Յունիս 1915-ին մորթուեցան 1500 Մալաթիացի Հայ զինուորները, որոնք Ամէլէ ԹԱՊՈՒՐներու մէջ կ'աշխատէին, Մալաթիայէն 5–6 ժամ հեռաւորութեամբ Չիֆթլիկ եւ Մամուրան կոչուած վայրերը խճուղիներու շինութեան համար։ Անոնց իբրեւ սնունդ կը տրուէր օրական սեւ ՍՈՄՈՒՆ մը։ Ոչ մէկ վճարում եւ ոչ մէկ հնարաւորութիւն զէթ կարենալ ինքզինքնին մաքուր պահելու համար։

Առտուն, արեւուն ծագման հետ գործի կը լծուէին... մինչեւ մարամուտ մտրակի հարուածներուն տակ աշխատելով։ Անօթի՞ էին կամ ծարաւ, յոգնած էին կամ հիւանդ, այդ փոյթ չէր, պէտք էր գործէին։ Ասոնց սրտաճմլիկ վիճակը զոր ներկայացուցած էր Գ. Մելիտինեցի (ՆԱԽՃԻՐՆԵՐ, էջ 143–144) սոսկալի էր։ Ասով հանդերձ ասոնց ալ չխնայուեցաւ եւ ջարդուեցան, ինչպէս այն 2500 գործաւորները, որոնք զանազան քաղաքներէն զինուորագրուած էին եւ կ'աշխատէին Մալաթիա–Խարբերդ ճամբուն շինութեան համար։

Եւ որպէսզի նոյնիսկ օդափոխութեան եկող զինուորները զերծ չմնան սպանդէն եւ այր մարդոց թիւը չշատնայ հիւանդութեան համար արձակուրդ առնող զինուորները հրաւիրուեցան նոր արձանագրութեան համար։ Ձներկայացողներու արտօնագիրները չեղեալ նկատուեցան։

Անոնք որ հարուստ էին եւ դրամ ունէին կը նորոգէին իրենց արտօնագիրներն, իսկ աղքատները կ'ենթարկուէին խստութեան եւ կը ղրկուէին իրենց թապուրները, հոգ չէ թէ անոնք դեռ հիւանդ ըլլային։

Այսպէս զինուորագրութիւնը միջոց մը ըրաւ Իթթիհատը իր չարագործ ծրագիրներուն յաջողութիւնը ապահովելու համար, քաղաքին Հայերը զրկելով երիտասարդութենէ, եւ ասիկա իրագործելէ ետքը Թուրք կառավարութիւնը աշխատեցաւ նաեւ ընչազուրկ ընել Հայերը։ Ուստի սկսաւ զինուորական գրաւումներու տնտեսապէս ալ փճացնելու համար Հայերը, թերեւս վախնալով որ դրամի ուժով կրնային խոչընդոտ ըլլալ իր ծրագիրին կամ կրնային դրամով իրենց անձը փրկել։

Այս նպատակով սկսան գրաւումներու որոնք կը կատարուէին իբր թէ պատերազմի պէտքերուն համար: Հետեւաբար կառավարութիւնը կազմեց յանձնաժողով մը ԹԷԳԱԼԻՖԸ ՀԱՐԲԻՅԷ (պատերազմական գրաւումներ) անունով:

Այս գործը վստահուեցաւ վեց անձերէ կազմուած յանձնաժողովի մը, որուն կ՚անդամակցէին նաեւ երկու Հայեր՝ Մարտիրոս Թէրզիպաշեան եւ Իսկէնտէր Քիւնտիւպէկեան որպէսզի անոնց ձեռքով նուիրագործուի այս պաշտօնական գողութիւնը եւ կողոպուտը: Այս յանձնաժողովը կը գրաւէր ժողովուրդի բոլոր հարստութիւնը, ձի, ջորի, ընտանի անասուններ, կերպասեղէններ, ուտելիքներ եւայլն, ի փոխարէն մուրհակներու, որոնք պատերազմէն վերջ իբր թէ պիտի վճարուէին:

Հայերը անմռունչ կը կատարէին այս զոհողութիւնները այն վստահութեամբ թէ պիտի անցնէին այս օրերը: 29 Փետրուար 1915–ին «Թէգալիֆը Հարպիէն» իր կազմին վրայ նոր յաւելումով, գործի սկսաւ: Նոր հրամանագրով մը ամենախիստ պատիժներ սահմանուեցան ոեւէ գոյք եւ կամ ուտեստեղէն թաքցնողներուն:

Նոր ցուցակով մը սկսան մասնաւորապէս հայ վաճառականներէն պահանջել նախապէս սահմանուած քանակով ապրանքներ: Անոնք ունենային կամ ոչ, պարտաւոր էին ճարել կամ նոյնիսկ գնել այլ տեղերէ ու յանձնել այդ ապրանքները, այլապէս պատասխանատու էին պատերազմական ատեանին առջեւ:

Թուրք կառավարութիւնը այս ինչքերու բռնագրաւումին այնպիսի ձեւ մը տուաւ, որ անիկա թալանի վերածուեցաւ: Գիշերները Թուրքերը ազատ համարձակ պտըտելով Հայոց թաղերը, կը կողոպտէին ինչ որ տեսնէին: Ուրիշներ կ՚առեւանգէին հարսեր եւ աղջիկներ սարսափ տարածելով բոլոր տուներէն ներս:

Տնտեսական փճացումի եւ աղքատացումի, ու նիւթական միջոցներէ զրկելու գործին համար մեծ միջոց մը եղաւ պատերազմին սկզբնաւորութեան օրերուն իսկ հրատարակուած ՄՕՌԱԹՕՐԻՈՒՄը, որով պարտականները իրաւունք կը ստանային յետաձգելու իրենց պարտքերու վճարումը:

Նոյնիսկ պանքաները արտօնուած չէին իրենց քով աւանդ ձգուած դրամները վճարելու, որով Հայերը ունենալով չունենալու խեղճութեան կը մատնուէին:

Ասկէ կ՚օգտուէին մասնաւորապէս Իսլամները, վասնզի չէին վճարեր իրենց պարտքերը Հայերու: Եւ յայտնի է թէ առհասարակ Իսլամներն էին որ պարտական էին Հայերու եւ ոչ թէ Հայերը Թուրքերու:

Սպանդը եւ տեղահանութիւնը վերջ գտնելէն վերջ կառավարութիւնը ըստ նախօրօք հրատարակած լքեալ գոյքերու (էմվալը մէթրուքէի) օրէնքին կազմեց մարմին մը Հայոց անշարժ կալուածներուն համար, վասնզի 1915 Հոկտեմբերէն սկսեալ կովկասեան ճակատի վրայ Թուրքերու կրած պարտութեան հետեւանքով, Թուրք ՄՈՒՀԱՃԻՐՆԵՐ (գաղթականներ) Մալաթիա

Հասան Թչուառ վիճակի մէջ, եւ պէտք էր բնակարան ճարել անոնց։

ԷՄՎԱԼԸ ՄԷԹՐՈՒՔԷի յանձնաժողովը Հայոց տուները կը ծախէր այս ՄՈՒՀԱՃԻՐՆերուն դրեթէ փայտի գնով։

Գաղթականները իբր իսկական Թուրքեր քանդեցին Հայոց Թաղերը, որոնք վերածուեցան ամայի հողերու։

Այսպէս քաղաքը ստացաւ աւերակի վիճակ մը, հետեւանք այն սպանդին, որ Հայերու դէմ գործադրեցին Թուրքերը, յատուկ ծրագիրով մը։

Տեսնուեցաւ որ անոնք ի՛նչպէս նախ երիտասարդները հեռացուցին եւ ապա ինչպէս աղքատացուցին և ընչազուրկ դարձուցին, որպէսզի ֆիզիքական եւ նիւթական ոյժէն զրկուած անոնք կարելիութիւն չունենան ոեւէ դիմադրութեան եւ դիւրաւ բնաջնջուին։

Իթթիհատը բոլորովին ապահով ըլլալու համար, որոշած էր անգէն եւ անպաշտպան թողուլ Հայերը՝ զանոնք զրկելով իրենց զէնքերէն, ամենէն խեղճերէն մինչեւ ամենէն լաւերը անխտիր։

Ինչպէս ուրիշ քաղաքներու, նոյնպէս Մալաթիոյ մէջ զէնքերը հաւաքելու ձեռնարկուեցաւ (1)։

20 Մարտ 1915-ին ծանուցուեցաւ Հայոց գոյութեան սպառնացող առաջին սեւ լուրը։ Մունետիկները շուկայի բոլոր Թաղերուն մէջ յայտնեցին «Իսլամ կամ ոչ-իսլամ, անոնք որ զէնք ունին, պարտաւոր են տասը (2) օրուան ընթացքին յանձնել կառավարութեան»։ Անսաստողները մահուամբ պիտի պատժուէին։

Հայերը գիտէին թէ «իսլամ եւ ոչ-իսլամ» հաւասար կերպով այս որոշման ենթարկումը նենգութիւն մըն էր։ Մտահոգութիւնը սկսաւ Հայոց մէջ։ Միամիտներ կը կարծէին թէ կառավարութիւնը զէնքի պէտք ունի եւ ուրիշներ կը խորհէին թէ ժողովուրդը խաղաղ պահելու համար եղած էր այս կարգադրութիւնը։

Մաս մը Թուրքեր իցոյց մարդկան կը յանձնէին իրենց զէնքերը, որոնք յետոյ գաղտնի ետ կը ստանային։

Այս ճգնաժամային վայրկեանին Գէորգ Տօնապետեան կը պատմէ թէ խումբ մը երիտասարդներ քանի մը ժողովներ կ՚ընեն Սահակ Կէզիւրեանի տունը զէնքերը չյանձնելու եւ ինքնապաշտպանութեան դիմելու համար։

Սահակ Կէզիւրեան, որ Իթթիհատի հրէշային ծրագիրին տեղեկացած էր, կը բացատրէ իր տունը հաւաքուած երիտասարդներուն սպառնացող վտանգը, բայց անոնցմէ ոմանք միամտութեամբ չեն հաւատար իր ըսածներուն եւ Կէզիւրեանի ծրագիրը կը վիժի։ Հաւանօրէն մատնութեամբ ոստիկանութիւնը լուր կը ստանայ այս ժողովին մասին եւ կը սկսի ձերբակալու-

---

(1) Գէորգ Մելիտինեցի (Նախճիրներ, էջ 96) չեմ գիտեր ինչպէս 14 Մայիս 1915 կը նշանակէ այս թուականը, ինչ որ անկարելի է, քանի որ 11–24 Ապրիլէն առաջ ամէն տեղ զէնքերը հաւաքուած էին արդէն։ Իր իսկ պատմածները ցոյց կու տան թէ սխալ է այս թուականը։

(2) Ուրիշներ երեք օր նշանակած են, որ սխալ է։

թիւններուն այդ գաղափարը անկարելիութեան մատնելու համար:

Գէորգ Տօնապետեան թերեւս շատ իրաւունք ունի, երբ կը մտածէ թէ Հայերը պէտք եղած հասունութիւնը չունէին, եւ անխորհուրդ ցուցարարութիւններով Թուրքերու ուշադրութիւնը կ'արթնցնէին, եւ նոյնիսկ չափազանցութիւններ կը կատարէին աղմկարարութիւններով, հայրենասիրական երգերով եւ անտեղի պահանջներով, երբ դարանակալ Թուրքը լուռ էր եւ գաղտնապահ եւ կը գործէր իր կառավարութեան հետ համախորհուրդ՝ նենգ ժպիտով մը քնացնելով Հայերը, որոնք անպատրաստ էին հայրենասիրական անձնազոհութեան, որ խօսքով շատ կը յեղյեղէին գործելու ատեն վարանում ցոյց տալու կամ դասալիք ըլլալու համար, ինչպէս այս պարագային եղած էր Մալաթիոյ մէջ, ուր 1895-ին հերոսական քաջութիւն ցոյց տրուած էր:

Երիտասարդներու այս ձախողած հաւաքոյթներու հետ զուգընթաց 25 Մարտ 1915-ին Առաջնորդարանի մէջ տեղի կ'ունենայ ժողով մը Մուշեղ քահանայ Տէր Մուշեղեանի նախագահութեամբ, որուն կը մասնակցին Քաղ. Ժողովին անդամները եւ կուսակցական ղեկավարները (1):

Հոն կ'որոշուի հաւաքել բոլոր որսի հրացանները, սուրերը եւայլն. ու մուխթարներու եւ քահանաներու միջոցով յանձնել կառավարութեան, վասնզի Պատրիարքարանէն եւ Սահակ կաթողիկոսէն հնազանդութեան եւ համակերպութեան յորդորներ եկած էին:

Թուրք կառավարութիւնը այս հին ու մին եւ ոչ մէկ արժէք ներկայացնող զէնքերուն յանձնումով չգոհացաւ, վասնզի շատ լաւ գիտէր թէ Հայերու քով ուրիշ զէնքեր կային:

Չէ՞ մի որ Իթթիհատէն ոչ մէկ գաղտնիք ունէր Դաշնակցութիւնը, որ յետադիմականներու դէմ Սահմանադրութիւնը պաշտպանելու համար Իթթիհատին օժանդակելու յանձնառութիւնը ստանձնած էր, իր կնքած դաշինքով:

Ուստի ամէն կարգի բռնութիւններ եւ անլուր խոշտանգումներ գործադրուիլ սկսան ձերբակալուած կուսակցականներու եւ հանրային դէմքերու վրայ, որպէսզի ցոյց տան իրենց ունեցած զէնքերու տեղերը:

Անոնք բոլորն ալ անխտիր մերժեցին ոեւէ ցուցմունք կամ մատնութիւն ընել:

---

(1) Հոն էին Դաշնակցութեան Մալաթիոյ կոմիտէին բոլոր անդամները, որոնք էին.

Բարունակ Պապիկեան, Տարենտեցի, առեւտրական
Խոսրով Քեշիշեան, դեղագործ
Ա. Պոնճուգեան, սեղանաւոր
Ա. Մումճեան, գրավաճառ
Մ. Խանձեան, պղնձագործ
Ս. Ուլուհոճեան, օղեվաճառ
Մ. Թերխանեան, սեղանաւոր

Իսկ Հնչակեան կուսակցութենէն՝ Ս. Տէր Բաղսարեան, Պ. Տ. Բաղսարեան եւ ուսուցիչ Գ. Քէնտէրեան: Ներկայ էին թաղականները եւ այլ ծանօթ անձեր:

*Ոստիկանապետ Իբրինկ օղլու Ապտուլլահ եւ կառավարիչ Ֆայք պէյ Համախորհուրդ ժամանակ կու տան անոնց մտածելու եւ այս անգամ գիտակցաբար վեց հոգի միեւնոյն խուցին մէջ դնել կու տան որ խորհրդակցին:*

*Բանտարկեալները չեն կրնար որոշ եւ յստակ եզրակացութեան մը յանգիլ:*

*Անոնք յանձն կ'առնեն ժողովուրդին խնայելու համար բանտային ամէն տանջանքի ենթարկուիլ, հաւատալով որ այդ ընթացքով կը մեղմացնեն թերեւս Թուրքերու կատաղութիւնը: Յաջորդ օրը կառավարիչը ազատ կ'արձակէ Տ. Մուշեղ քհն., որ Առաջնորդարան դալով կը հրաւիրէ բանտարկուած Հայերու պարագաները, նոյնպէս նաեւ կառավարական հայ պաշտօնեաները, որպէսզի խորհրդակցին:*

*Կուսակցական պարագլուխներ ըստ իրենցմէ մէկուն* «երկընտրանքի առջեւ կը գտնուէին. իրենց կը պակսէր վերին իրահանգը ապագայ պատասխանատուութենէ զերծ մնալու համար, այլեւ կը պակսէր վտանգի պահուն արեան մէջ ներկուելու խիզախ վճռականութիւնը: Անոնցմէ ոմանք զէնքի դիմելու տեսակէտը կը պաշտպանէին: Ուրիշներ, աւելի պաղարիւն, որեւէ եղանակով ժամանակ շահելու, սպասողական վիճակը կը վերադասէին, մինչեւ որ վերին մարմիններէն հրահանգներ ստանալու հնարաւորութիւնը ունենային: Պահպանողականներ ու կղերականներ խիստ կերպով կը քննադատէին առաջին տեսակէտը, խստիւ կը մերժէին զէնքի դիմելու քաղաքականութիւնը, կը պաշտպանէին խոհեմութեան ու հնազանդութեան տեսակէտը, իբրեւ ժողովուրդին փրկութեան միակ միջոց, եւ կը հիմնաւորէին իրենց տեսութիւնը այն փաստով, որ Ազգային Պատրիարքարանէն եկած կոնդակը նոյնը կը յորդորէր ամենայն հաւատացելոց» (*ՆԱԽՃԻՐՆԵՐ*, *էջ* 98–99):

*Դժբախտաբար իրականութիւնն այն էր որ երկու հատուածներէն պահպանողականներն ու յեղափոխականներն ալ իրարմէ տարբեր բան մը չէին, վասնզի այդ «տեսականօրէն» յեղափոխականներուն պակսեցաւ իրենց պահանջը գործադրելու վճռականութիւնը* (*ՆԱԽՃԻՐՆԵՐ*, *էջ* 118):

*Տ. Մուշեղ քահանայի գումարած այս խորհրդակցական ժողովը կու գայ այն եզրակացութեան որ զէնքերը յանձնեն:*

*Այսպէս, անմեղները յանցաւոր կ'ընէին, զէնք չունեցողը ունեցող ներկայացնելով:*

*Եւ երեւակայել որ որովհետեւ Հայերու մօտ այլեւս զէնք չկար,* 15–20 *եւ աւելի Թրքական ոսկի վճարելով Թուրքերէ զէնք կը գնէին տանիլ կառավարութեան յանձնելու նպատակով, միամտաբար հաւատալով որ եթէ զէնքեր յանձնէին, իրենց բանտարկեալները պիտի արձակուէին:*

*Ո՜վ հայկական միամտութիւն:*

*Տ. Մուշեղ քհնյ. Առաքելեան, Պօղոս Աղան, Բաղսարեան Ստեփան Աղան կ'երթան կառավարիչին ու կը յայտնեն ժողովուրդին տրամադրութիւնը:*

*Կառավարիչը ազատ արձակելով Տ. Մուշեղ քհնյ. երեք օր պայմանաժամ տուաւ զէնքերը հաւաքելու:*

Եւ սկսաւ զինաթափութիւնը հալածել, իբր թէ ժողովուրդը փրկելու համար վտանգէ եւ կառավարական հետապնդումէն:

Զրթաղեաններու թաղին մէջ Սահակ Կիզիրեան կ՚ընդդիմանայ եւ կ՚ըսէ.«Տէրտէր, երէկ զինուեցէք կը քարոզէիր, այսօր զէնքերը յանձնեցէք կը քարոզես, ո՞ր մէկն է ճշմարիտը եւ օգտակարը: Տէրտէ՛ր, մենք կ՚ուզենք որ դուն նոյն քաջութեամբ առաջնորդելով մեզ՝ հրամայես. տըւ՛ք, պարկէք անխնայ, եւ ոչ թէ մեզ զինաթափես»:

Ներկաներէն շատեր ձայնակցեցան Սահակին, որ կը ցուցնէր պատուաւոր մահու ճամբան: Տէրտէրը կը տրամաբանէր, «բանտին մէջ եղած բոլոր բանտարկեալներուն կեանքին պատճառ կ՚ըլլաք, եթէ ռեւէ ըմբոստութիւն փորձէք»:

Սահակ բնազդօրէն կը մարգարէանար որ «եթէ զէնքերնիս յանձնենք, նորէն պիտի չազատին մէ՛ բանտարկեալները եւ թէ ամբողջ ժողովուրդը. ընդհակառակը, եթէ կռուինք, առաջին յարձակումով մը կրնանք ազատել բոլոր բանտարկեալները. մեզի կը միացնենք քաղաքի հրջակայքը գտնուող 500–ի չափ անզէն զինուորները. ապա ամրանալով թաղային դիրքերու մէջ, մէկի դէմ տասը զոհեր կրնանք խլել անխիղճ եւ անգգամ թշնամիէն»:

Դժբախտաբար Սահակի եւ իր համախոհներուն ձայնն խեղդուեցաւ մեծամասնութեան որոշումով, հակառակ անոր որ բանտէն Ց. Պապայեան (արդեօք Բարունակ Պալիկեա՞ն) իրեն կերակուր տանող Մ. Թաչճեանի եւ Ս. Պալիկեանի միջոցով յաջողած էր Տ. Մուշեղի գրկել հետեւեալ երկտողը.

«ՏԻՐ ՀԱՅՐ, ՄԵԶՄԷ ՅՈՅՍԵՐՆԻԴ ԿՏՐԵՑԷՔ, ԶԷՆՔԵՐՆԻԴ ՄԻ ՅԱՆՁՆԷՔ, ԿՌՈՒԵՑԷՔ»:

Երեք օրուան պայմանաժամին մէջ հաւաքուած զէնքերը յանձնուած էին արդէն կառավարութեան:

Ոստիկանապետն ու կառավարիչը ժողովուրդը մոլորեցնելու համար այն օրը 30–ի չափ բանտարկեալներ ազատ արձակեցին:

Ասոնց մէջ կուսակցական ղեկավարներ չկային: Կը կասկածէին որ անոնք կրնան ինքնապաշտպանութիւն կազմակերպել եւ կը տանջէին բանտին մէջ:

Ամէն կողմ կը տարածէին թէ ո՛վ որ իր զէնքերը յանձնէր, ազատ պիտի մնար ձերբակալուելէ, իսկ եթէ ձերբակալուած է, պիտի արձակուի:

Ժողովուրդը միամտութեամբ ամէն կողմ ինկած զէնք կը փնտռէր որ գնելով յանձնէ եւ իր բանտարկեալը ազատէ:

Այսպէս ժողովուրդին ոյժը ջլատելէ եւ զայն սահմռկեցուցիչ անդոհի մը մատնելէ վերջ Թուրք կառավարութիւնը սկսաւ բնաջնջումի գործին, նախ ժողովուրդը անզլուխ ձգելով եւ ապա անզէն եւ անպաշտպան սպանդի առաջնորդելով:

Մալաթիոյ Հայոց դահիճը ըլլալու պաշտօնը Թուրք կառավարութիւնը վստահած էր՝

Կառավարիչ՝ Ֆայիք պէյի,
Թահրիրաթ միտտիրի՝ Իզզէթ պէյի,
Ոստիկան-զօրաց ընդհ. հրամանատար Նաժիմ պէյի,
Ոստիկանապետ Քերիմ Նուրի Ապտուլլահ էֆ.
Քաղաքապետ (Պէլէտիյէ րէյիզ) Ագիլի Մուսթաֆա աղայի (1)։
Ասոնք, բացի վերջինէն եղան Մալաթիոյ Հայութեան բնաջնջման գործադրողները։

Ջարդարարներու այս ջոկը իր գործունէութեան սկսաւ, ինչպէս ուրիշ տեղեր Մալաթիոյ մէջ ալ 1915 Ապրիլի սկիզբը։

3 Ապրիլ 1915-ին մօտաւորապէս 80 ծանօթ դէմքեր չուկայէն ձերբակալուած բանտ առաջնորդուեցան։ Նոյն օրը ձերբակալուեցաւ նաեւ Առաջնորդական փոխանորդ Տ. Մուշեղ քհնյ. Տէր Մուշեղեան, որուն հետ ձերբակալեցին ոստիկանները քաղաքային բանտէն, կուսակցական ղեկավարներէն

Մանուկ Խանձեան
Խոսրով Քէչիչեան
Սեդրակ Մոմճեան
Սենեքերիմ Պոնճուղեան
Բարունակ Պապիկեան,

որոնք բացառաբար զատ-զատ խուցերու մէջ դրուեցան։

Իսկ միւս ձերբակալուածները՝ մեծ մասամբ կուսակցականներ, բանտերը լեցուցին։

Առաջին գիշերը ոստիկանապետ (ՓՈԼԻՍ ՔՈՄԻՍԷՐԻ) Իբրնկ օղլու Ապտուլլահ չօրուքօրթ եւ նենգ ձեւերով հարցաքննեց ձերբակալուած կուսակցապետները եւ ջանաց համոզել որ զէնքերը կառավարութեան յանձնեն։

Մանուկ Խանձեան պատասխանեց որ Հայոց քով գտնուած զէնքերը արդէն յանձնուած են, եթէ ուրիշ բան պահանջ կայ, ինք պատրաստ է ընդառաջ երթալու։

Քոմիսէրը առանց զայրանալու պատասխանեց, որ կառավարութիւնը իր տրամադրութեան տակ ունի Հայոց զէնքերու ցուցակը, եւ կը փափաքի որ հայ առաջնորդներու միջոցով հաւաքուին այդ զէնքերը։ Ատոր համար ալ մէկ օր պայմանաժամ կու տայ որ անոնք խորհրդակցին։

Յաջորդ գիշերը քննութեան կ'ենթարկուին Տ. Մուշեղ քհնյ. եւ կառա-

(1) Ագիլի Մուսթաֆա աղայի կատարած բարերար դերը պատմած է Յովհաննէս Ափուլաքեան, որ մէկն է այն 12 անձերէն, զոր ան պահած է իր տան մէջ, իր տղուն Լեւոնի եւ աղջկան Պատրիկանի հետ։

Ասոնցմէ զատ ուրիշներ ալ ազատած է։ Իր ամէնէն պզտիկ տղան Նշրէմը վերջը մեծ ասպրով պատմած է իր հայրը եւ գաւառապետութեան ասեն ըսած է որ սպաննած է «անհատաս տէրտէրը» (կոմսօրի քէշիշը) եւ անպատիժ արձակուած է իբր հերոս։ Յիշուած է թէ ՆՈՒՇՈՒՍ ՄԼՄՈՒՐԻ Պէթթալ եւս օգտակար եղած է Հայոց, սակայն գրական տղայոց մէջ չէ տար։

պան Յովհ. Թերլեմեզեան (Արթին չաւուշի տղան), որ անգնահատելի ծառայութիւններ մատուցած էր զէնքերու փոխադրութեան գործին մէջ, յաճախ վտանգի ենթարկելով նոյնիսկ իր կեանքը:

Այս հարցաքննութեան ժամանակ Տ. Մուշեղ քհնյ. ալ կը պատասխանէ որ Հայոց ամբողջ զէնքերը յանձնուած են կառավարութեան, կառավարութիւնը գիտէր՝ որ յանձնուած զէնքերէն զատ կային ուրիշներ (ռուսական, Թրքական եւ գերմանական), որոնք պահուած էին: Քահանային մերժումէն ետք, ոստիկանապետը նորէն օր մը ժամանակ կու տայ խորհրդակցելու, միշտ սպառնալով բանտարկեալներու որ կառավարութեան բարկութիւնը չգրգռեն:

Մինչեւ այս ժամանակ բանտարկեալներու ընտանիքներու կողմէն տարուած կերակուրները կը յանձնէին անոնց:

Երրորդ օրուան քննութիւնէն ետք, երբ կուսակցական ղեկավարները նորէն կը մերժեն տալ ոեւէ գաղտնիք, Թուրք քննիչները կը սկսին ցուցնել իրենց ժանիքը եւ Թրքայատուկ բանտային տանջանքներ կը սկսին գործադրել:

Այս բանտային խոշտանգումներուն ենթարկելէ ետք, նորէն կը հարցաքննեն Խոսրով Քէշիշեանը, Մանուկ Խանձեանը, Տ. Մուշեղ քհնյ. Տէր Մուշեղեանը, Ս. Պոնճուղեանը եւ այլ կուսակցական ղեկավարներ:

Ոստիկանապետը կը հարցնէ թէ արդեօք խրատուեցա՞ն, պիտի խոստովանի՞ն զէնքերու տեղերը: Անոնք բոլորն ալ անխտիր կը մերժեն ոեւէ ցուցմունք կամ մատնութիւն ընել: Ոչ ոք իրենցմէ կը տկարանայ, սակայն Տ. Մուշեղ քհնյ. Տէր Մուշեղեան երբ գինքն կ՚արձակեն, որպէսզի խորհրդակցի ժողովուրդին հետ, կը յաջողի խորհրդակցութեան հրաւիրուածները, հակառակ երիտասարդներու ընդդիմութեան, համոզել որ զէնքերը յանձնեն, տրուած եօրեայ պայմանաժամին մէջ, ինչպէս տեսնուեցաւ:

Այսպէս կառավարութիւնը քանի մը օրեր շնչելու հնարաւորութիւն տալէ եւ ժողովուրդը խաբելէ ետք, յաջողեցաւ զէնքերը հաւաքել: Երբ ջարդարարները տեսան թէ այլեւս բոլոր զէնքերը հաւաքուած են, ոեւէ ըմբոստութեան վտանգ չկայ, յանկարծական կերպով ձերբակալեցին բոլոր հայ այրերը անխտիր, մէկ օրուան մէջ՝ բացի շատ ծերերէ եւ մանուկներէ եւ լեցուցին բանտը:

Տ. Մուշեղ քահանայ ինքն ալ վերստին բանտ նետուեցաւ: Իրեն հետ բանտարկուեցան Տ. Սերովբէ, Տ. Եղիա եւ Տ. Գրիգոր քահանաները:

Հայ-կաթողիկէ Ստեփան վրդ. Կոստանեան (1) եւս կը ձերբակալուի:

Հայ-բողոքականներու երկու պատուելիները, պատուելի Վարդան եւ պատուելի Կիրակոս նոյնպէս կը բանտարկուին:

Այն միջոցին Մալաթիոյ կառավարիչը Ֆայիք պէյ Կ. Պոլիս կը մեկնի

---

(1) Դանիէլ Գալուստեան այս վարդապետին մականունը Պաղտասարեան նշանակած է, սակայն պէտք է Կոստանեան ըլլայ: Ան ծնած էր 1853-ին եւ 1894-ին վարդապետ ձեռնադրուած (ՀԱ, 1920, էջ 40):

եւ գինք կը փոխանորդէ ոստիկանական զօրաց հրամանատար Նաժիմ պէյ կոչուած մեծ հրէշը, որ բանտարկեալները դժոխային չարչարանքներու կ'ենթարկէ: Ս. Մոմճեան, Մ. Խանձեան, Խ. Քէչիչեան, Ս. Պօնճուգլեան, Յ. Ժարժաթեան, Հ. Թերխանեան, Թերզապեան, Բարունակեան, Ն. Պօնափարթեան կիսամեռ վիճակին մատնուելու ատեն կը խոշտանգուին այս հրէշէն: Բանտին շրջակայքը գտնուող Թուրք ընտանիքները չդիմանալով գիշերային տանջանքներու ժամանակ բարձրացող աղեխարշ ճիչերուն, աւելի հեռու տուներ կը փոխադրուին:

Գիշերները խոշտանգումներով մահացածները առաւօտ կանուխէն պէլէտէի միաձի կառքի մէջ լեցնելով կը փոխադրեն Ինտարայի լերան կողին փորուած մասնաւոր փոսերու մէջ:

Կը սպաննուին նաեւ բոլոր հայ քահանաները, կուսակցական ղեկավարները եւ քիչ շատ աչքի զարնող Հայերը:

Ասոնցմէ Խոսրով Քէչիչեան 5 Յունիս 1915-ին Թոյն առնելով անձնասպան ըլլալ կը փորձէ, խոշտանգումներէն ազատելու համար, բայց չի մեռնիր եւ չարչարանքներու բոլոր դառնութիւնները հերոսաբար կը կրէ:

Ձերբակալուած Հայ կաթողիկէ Ստեփան վրդ. Կոստանեանը բանտէն կը հանեն եւ գիշեր ժամանակ ծեծի տակ մեռցնելով մարմինը կը նետեն իրենց տան առջեւ: Նոյն համայնքին առաջնորդ գերապայծառ Միքայէլ Եպս. Խաչատուրեանի դիմումները այս քահանային ազատ արձակման համար ապարդիւն կը մնան: Ընդհակառակը 5 Մայիս 1915-ին գիշերուան ժամը 3-ին կը ձերբակալեն Հայ-կաթողիկէ առաջնորդարանին Յովհաննէս վրդ. Կիտոյեանը եւ Ղեւոնդ վրդ. Խորխոռունին ու բանտ կը տանին:

Եպիսկոպոսը մայրապետ մը կը ղրկէ հասկնալու համար այս վարդապետ-



Մինաս Ծ. Վրդ.
Տէր Մինասեան
(Հայ-Կաթոլիկ)



Յովսէփ Ծ. Վրդ.
Խանձեան
(Հայ-Կաթոլիկ)

ներու ձերբակալման պատճառը։ Հայ-կաթոլիկ եկեղեցին մօտը գտնուող պահականոցի ոստիկանին միջոցաւ կը պատասխանուի թէ «Տ. Ստեփան քհնյի. մահուան պատճառներուն համար քննութեան յանձնախումբ մը կազմուած է, վարդապետները հանգիստ են եւ պիտի պահուին մինչեւ քննութեան աւարտումը եւ եթէ պէտք տեսնուի եպիսկոպոսն ալ պիտի հրաւիրուի»։

Աւելորդ է ըսել թէ վարդապետները սպաննուեցան եւ 15 Յունիսին եպիսկոպոսն ալ ձերբակալուելով նոյն ճակատագիրին ենթարկուեցաւ։ Իր սրտաճմլիկ մարտիրոսական նահատակութեան մանրամասնութիւնները վերըստին չեմ կրկներ (տես սատ, էջ 643-4)։

Այս սահմռկեցուցիչ արարքները կը գործուէին սարսափի մթնոլորտի մը մէջ, որ Թուրքերը յաջողած էին ստեղծել ոչ միայն ձերբակալութիւններով, այլ եւ բոլոր ազգը ահաբեկելով։

Այսպէս Հայերը բոլոր երկիրին մէջ սարսափի մատնուեցան երբ լրագիրները հրատարակեցին թէ միեւնոյն օրը (2–15 Յունիս 1915) Կ. Պոլսոյ մէջ Պայազիտի հրապարակին վրայ ձերբակալուած 20 Հնչակեանները եւ Կեսարիոյ մէջ զանազան կուսակցութեանց պատկանող 11 Հայեր կախաղան հանուած էին։

Նոյնպէս 12 Օգոստոս 1915-ին հրատարակուեցաւ Պատերազմական Ատեանէն կոչնագիր մը, որով Ազգային պատուիրակութեան պետ Պօղոս փաշա Նուպար կը հրաւիրուէր մինչեւ 10 օր ներկայանալ նոյն Ատեանին, դատուելու համար այն ամբաստանութեամբ թէ «Արեւելեան նահանգներուն մէջ Հայաստան մը կազմելու համար կը գործակցէր Երրեակ Համաձայնութեան, թէ էջմիածնի Կաթողիկոսին կարգադրութեամբն ու գործակցութեամբը Հայերէն նուիրահաւաքութիւն ընելով, Կովկասի մէջ Ռուս բանակի կամաւորներ կ'արձանագրէր, ինչպէս նաեւ Օսմանեան կառավարութեան դէմ ապստամբող Հայերուն նիւթապէս եւ ուրիշ եղանակով օժանդակութիւններ կ'ընէր։

Թուրք մամուլը թոյն կը ժայթքէր Հայոց հասցէին։ Թուրք հասարակութիւնը դարձած էր մոլեռանդ, անսանձ ու կատաղի։ Գրգռելու համար Թուրքերը կ'ըսէին թէ Վանի մէջ Հայերը անմեղ Թուրքեր ջարդած են, իբր թէ հայ բժիշկները Թուրք զինուորները թունաւորած են հիւանդանոցներու մէջ, եւ վերջապէս իբր թէ հայ զինուորները իրենց զէնքերով թշնամիին կողմը անցած են։

Իթթիհատականներ մէկ կողմէն Թուրքերը կը գրգռէին, որպէսզի գործադրուած անմարդկային արարքներու համար չընդվզին կառավարութեան դէմ, եւ միւս կողմէ Թուրքերը կը գործածէին Հայերը խաբելու համար։

Թուրքերը գրգռելու համար Իթթիհատականները կը տարածայնէին ամէն կողմ թէ Հայերը ապստամբած էին Վանի մէջ եւ ջարդած էին Թուրքերը, ուստի կ'ուզէին համոզել ժողովուրդը թէ այս պատճառով կառավա-

րութիւնը ձերբակալած էր Հայերը՝ կանխելու համար ոեւէ դէպք Մալաթիոյ մէջ:

Միւս կողմէն քնացնելու եւ յոյսերով օրօրելու համար Հայերը միշտ կը տարածէին թէ «ոեւէ վտանգ չկայ, եւ շուտով ամէն ինչ պիտի վերջանայ»:

Այս խօսքերէն խաբուելով մաս մը հայ խանութպաններ կը շարունակէին բանալ իրենց խանութները:

Թուրքերը անշուշտ դիտումնաւոր կը յուսադրէին եւ կը խրախուսէին բանտարկեալներու պարագաները եւ կ՚ըսէին թէ ամիսէ մը բոլորն ալ ազատ պիտի արձակուին:

Հայ ժողովուրդը լաւատես երազներով կ՚օրօրուէր, կարծելով թէ կառավարութիւնը միայն կուսակցականները կը հետապնդէ:

Հայ կանայք հարիւրներով խռնուելով բանտին առջեւ կը փորձէին լաց ու կոծով բռնակալներու գութը շարժել, տեսնելու համար իրենց սիրելիները:

Այժմ ասոնց բերած կերակուրները ոստիկաններն կ՚ուտէին, մինչ բանտարկեալները անօթի ու ծարաւ, կը սպասէին իրենց օրհասական վախճանին:

Արդարեւ կացութիւնը օրէ օր ալ աւելի կը ծանրանար, վասնզի կառավարութիւնը ոչ միայն բանտարկեալները չէր արձակեր, այլ եւ նոր հրամանով մը արտօնութիւն կու տար — աւելի ճիշդ կը պարտադրէր — Թուրք ու քիւրտ բնակչութեան որ ուր որ ոեւէ հայ տեսնէին, անմիջապէս ձերբակալէին եւ կառավարութեան յանձնէին:

Հայոց թաղերը ամայացած էին, վասնզի քիչ մը բարձր հասակ ունեցող դպրոցականները անգամ ձերբակալուելով բանտ կը տարուէին:

Այսպէս էրիկ մարդիկ գրեթէ ամբողջութեամբ բանտարկուած եւ ըսպաննուած էին, եւ ժողովուրդը անճարուած եւ անգլուխ մնացած էր: Հասաւ նոր կառավարիչ մը Ռումելիցի Նազիֆ Արրի պէյ, որ գալուն պէս Մալաթիոյ երեսփոխան Հաշիմ պէյի տան մէջ ժողով մը կը գումարէ, մասնակցութեամբ 15 Իթթիհատական պետերու: Հոն կ՚որոշեն թէ ինչպէս պիտի բնաջնջեն Հայերը:

Առաջին միջոցը ըստ Թրքական մեթոտներու ջարդն էր, որ սկսաւ 1915-ին Յունիս 7-ին (1), բանտարկեալներէն:

Արդէն կառավարութիւնը արգիլած էր բանտին մօտենալ:

Բանտարկեալները խզուած էին արտաքին աշխարհէն:

Նաւիմ անոնց կերակուր բերելը արգիլած էր, յայտարարել տալով բանտին պաշտօնեաներուն թէ անոնք Խարբերդի Պատերազմական Ատեանին յանձնուած են: Երբեմն ալ կ՚ըսէին թէ Տէր-Զօր ղրկուած են:

Այսպէս, արգելք կը հանդիսանային իրենց ընտանեկան պարագաներէ բանտարկեալները փնտռողներուն բանտ գալ եւ հարցուփորձ ընել եւ տեղե-

(1) Գէորգ Մելիտինեցի այս թուականը նշանակած է, բայց Դանիէլ Գալուստեան Մայիս 7 նշանակած է:

կութիւն առնել, մասնաւորապէս անոնց կերակուր բերել:

Ազատ ու անկաշկանդ եւ առանց ժողովուրդին մէջ աղմուկ հանելու, նոր կառավարիչին իր Պոլիսէն առած հրահանգին համաձայն Իթթիհատականներու հետ գումարած ժողովին որոշումը գործադրութեան դրուեցաւ:

Թուրք կառավարութիւնը իր վայրագ եւ հրէշային արարքը կերպով մը արդարացնելու եւ գետին պատրաստելու համար ամէն կողմ լուր տարածելով թէ ոստիկանութիւնը խուզարկութեանց ընթացքին իբր թէ ձեռք անցուցած էր փաստաթուղթ մը, որ կը հաստատէր թէ Դաշնակցութեան գործօն անդամներէն Կարապետ Խաչատուրեան իր տրամադրութեան տակ ունէր հինգ հարիւր զոյգ ոստիկանութեան հագուստ: Զինուած Հայեր, ծպտուած այդ համազգեստով, իբր ոստիկան երեւան ելլելով, պիտի գրաւէին կառավարութիւնը եւ բանտը:

Ամէնքը անհամբեր կը սպասէին այս յերիւրածոյ լուրին հետեւանքներուն: Կարապետ Խաչատուրեան, որ արդէն բանտարկուածներուն մէջ կը գտնուէր, Ոստիկան զօրաց հրամանատար Նաժիմի ջանքերուն եւ հնարքներուն դէմ անսասան մնաց եւ երբեք չտկարացաւ եւ նոյնիսկ յանդգնեցաւ ծառանալ անոր դէմ:

Այս պատճառով դանկին ընդունեցաւ լախտի ուժգին հարուած մը եւ գետին փռուեցաւ ուշաթափ: Կ'ըսուի թէ Նաժիմ իր ձեռքով կտրած է անոր գլուխը: Նոյն գիշերը Նաժիմի հրամանով սրախողխող սպաննուեցան նաեւ

Սենեքերիմ Պօնճուգեան
Սեդրակ Մոմճեան
Գրիգոր Ճիվէլէկեան
Միհրան Թիւթելեան
Պօղոս Տէր Պօղոսեան (Ակնցի)
Մանուէլ Գզիրեան
Սիմոն Ուլուհաճեան
Նշան Ափալաղեան:

Ոստիկանութիւնը տեսնելով որ ժողովուրդի քով այլեւս զէնք չէ մնացած եւ հարցաքննութեամբ սպանութիւնները երկար ժամանակ կ'առնեն, փոխեց իր գործելակերպը: Բանտը պէտք էր պարպել նորերուն տեղ բանալու համար, ուստի յաջորդ օրը (Յունիս 8) կացինահար սպաննել տուաւ հետեւեալ անձերը·

Յակոբ Հակկթուկեան
Մկսեթ Պաղտասարեան
Գրիգոր Աքայեան
Յակոբ Փափազեան
Խաչատուր Գազմաեան
Պատուելի Առաքելեան
Ստեփան Պէննէեան

Ստեփան Փափազեան[1],

եւ այսպէս յաջորդաբար ամէն գիշեր։

Հազուագիւտ կերպով այս սպանդէն հրաշքով ճողոպրողներ կու գային պատմելու թէ գիշերները հարիւրաւոր բանտարկեալներ կացինահար կը սպաննուէին քաղաքէն ներս։

Ասոնց կարգին քանի մը երեւելիներու հետ կը սպաննուի Պեհեսնէի հայ կաթողիկէ հովիւ Հ. Կղեմէս վրդ. Սիսակերեան[2], որ չղթայակապ կը բերեն Քինտիւպէկ գիւղի մօտերը եւ խժդժօրէն կը սպաննեն եւ մարմինը կը նետեն ջրհորի մը մէջ։

Բայց Նաւիմ տեսնելով որ բանտը լեցուած Հայերու թիւը շատ մեծ էր եւ անկարելի է մէկիկ-մէկիկ սպաննելով անոնց վերջը բերել եւ շատ ժամանակի կը կարօտէր, ընդհանրական սպանդ մը կազմակերպելու համար բոլոր թուրք եւ քիւրտ մարդասպանները եւ ամէն կարգի ոճրագործները եւ յանցապարտները, որոնք Մալաթիոյ բանտը կը գտնուէին, արձակեց եւ անոնցմով կազմեց մարդախողող Չէթէներու խումբ մը, որուն հրամանատարը եղաւ Մուհամէտ պէյ, Մալաթիոյ մէյրուս կարսեցի Հաշիմ պէյի որդին, որ գործի ձեռնարկեց կառավարութեան հովանաւորութեան տակ։

Այս մարդասպանները, որոնց կոչում կ՚ընէ Թուրք ոճրագործ կառավարութիւնը, զինուած էին պետական զէնքերով, որոնք կառավարութենէ հայթայթուած էին։

Չէթէներու կայանը եղաւ Մայր-Եկեղեցիին մօտը գտնուող խոշոր խան մը, ուրկէ դուրս կու գային սանձարձակօրէն գործելու համար ամէն անօրինութիւն եւ վայրագութիւն։ Կը ջարդէին, կը կոտորէին, կը թալէին,

---

(1) Յաւալի է որ խուզարկութեանց ատեն ոստիկանութիւնը ձեռք անցուցած էր Մալաթիոյ Դաշնակցականներու անուանացանկը, որով գիւրաւ հաւաքած էր բոլոր կուսակցականները։ Գ. Մելիտինեցի կ՚ըսէ թէ 1915 Յունիսի սկիզբը ձեռք կ՚անցընէ նոր եւ կարեւոր փաստաթուղթեր եւ թարգմանել կու տայ Խաչատուր Ղազիկեանի իսլամացած եղբօր եւ Վասակ Ահմէտին, միայն չէ ըսած թէ այդ թուղթերը ի՛նչ տեսակ բնոյթ կը կրէին։ Ղազիկեան Նալճի Ահմէտի մասին աննպաստ վկայութիւն կու տայ նաեւ Մարտիրոս Թաշճեան իր ՍԵՒ ՅՈՒՇԵՐու ն մէջ, սակայն իր քեռորդին՝ Գէորգ Արսլանեան, այժմ Ամերիկա Քլիվլենտ (Օհայօ) հաստատուած, կը փորձէ զայն արդարացնել։ Անիկա Ահմէտի իսլամացումը պարագայական հարկադրանքի տակ եղած ըլլալը կը հաստատէ եւ ապա կը հերքէ այն զրոյցը թէ Նալճի Ահմէտ իր հարազատ եղբայրը՝ Պօղոս աղան եւ անոր չափահաս երեք զաւակները իր ձեռքով սպաննած է, որպէսզի իր եղբօր ինչքերուն տիրանայ։

Գէորգ Արսլանեան կ՚ըսէ թէ Պօղոս Աղա Ղազիկեանի առաջարկ ըրած է առերես իսլամանալու՝ ազատելու համար, սակայն ան մերժած է եւ սպաննուած՝ Թուրքերէն։ Իսկ ընտանիքին միւս անդամները միացած են աքսորի կարաւանին Սամոսաթ։ Ահմէտ իր տղան ղրկած է հոն եւ ետ բերել տուած է եղբօրը ընտանիքը եւ քոյրը, եւ անոր զաւակները եւ անոնց կեանքը փրկած՝ ապահով ապաստանարաններ դնելով։

Յետոյ անոր գրաքննիչի պաշտօնին մասին ալ բացատրութիւններ կու տայ, որ զայն արդարացնել կը միտին (տես ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, ԺԷ տարի, թ. 3—4, էջ 70 - 72)։

(2) Ծնած է 1851-ին եւ ձեռնադրուած 1885-ին։

պատիւներ կը բռնաբարէին, կը պղծէին անհաշիւ եւ անպատասխանատու։

Ասոնք ամէն կողմ Հայեր կը փնտռէին եւ բանտ կը լեցնէին 15–էն մինչեւ 90 տարեկան հայ այրերը։

10 Յունիս 1915–ին(1) բանտէն մինչեւ զօրանոց ճամբու վրայ գտնուող խանութներն ու սրճարանները փակել հրամայեցին, եւ երթեւեկը արգիլեցին ու պողոտան առին ոստիկանական հսկողութեան տակ։ Խիստ մութ գիշեր մըն էր։

Ոստիկանապետ եւ մեպուս Հաշիմ պէյի որդւոյն Մուհամմէտի հրամանին տակ իբր Չէթէ կազմակերպուած ոճրագործները բանտ մտնելով 300 բանտարկեալները երկու առ երկու շղթայեցին, ու նոյն գիշերը Սարըճը օղլու Գասապ Հիւսէյինի առաջնորդութեամբ կացինահար սպաննեցին զօրանոցին արեւելեան կողմը գտնուող Ինտարայի ձորին մէջ եւ անոնց դիակները լեցուցին հոն գտնուող ՂԱՐԼԸԽԸ։

Այս Մուհամմէտը՝ իր Չէթէներով սպաննեց նաեւ 1200 հայ անզէն զինուորներ, որ Մալաթիայէն մէկ ժամ հեռու դէպի արեւելք Փունար Պաշիի մօտերը կ'աշխատէին։ Ասոնք ամէնը Մալաթիացի չէին, կային նաեւ Խարբերդցիներ, Ակնցիներ, Արաբկիրցիներ, Պեհեսնեցիներ, Ատըեամանցիներ։ Չէթէները այս անզէն զինուորները խողխողեցին մօտերը գտնուող Փերոթ գիւղը տանելով, կը լեցնեն մզկիթի մը մէջ եւ առաջին գիշերը զանոնք տասնեակի բաժնելով, զանազան պատրուակներով գիշեր ատեն կը տանին ու կը ջարդեն։

Այս եղելութեան վկայ կ'ըլլայ Արաբկիրցի Ղազար անունով երիտասարդ մը, որ մթութեան մէջ փախած էր եւ արտերուն մէջ սողոսկելով կըրցած էր Մալաթիա գալ եւ պատմել տեսածը։

Ղազար ետքը յաջողած էր անցնիլ Տերսիմ։

Սպանդին երկրորդ գիշերը ողջ մնացողները որովհետեւ մերժած էին մզկիթէն դուրս ելլել, չէթէները եւ ոստիկանները դռնէն եւ պատուհաններէն կրակ տեղալով բոլորն ալ սպաննած էին։

Ասկէ ետքը շղթայակապ խումբեր կը տանէին յաջորդաբար Ինտարա, Թաշ Թէփէ, Վարի Քաղաքի Ղարլըխը ու կացինահար կը սպաննէին։

Մինչեւ Յունիս 15–20 արդէն կուսակցական դէմքերը, կղերականները եւ քիչ թէ շատ աչքառու դէմքերը եւ բանակին մէջ ծառայող անզէն զինուորները սպաննած էին բոլոր։

Իսկ Յունիս 20–ին սկսած է հայ բնակչութեան այրերու ընդհանուր բնաջնջումը։

Անխտիր սկսան ձերբակալել հարուստը, աղքատը, ուսեալը եւ տգէտը, պզտիկը եւ մեծը, մէկ խօսքով բոլոր Հայերը առանց յարանուանական խտրութեան։

1915 Յուլիս 1–ի, 2–ի եւ 3–ի գիշերները չարունակուեցաւ զանգուա–

(1) 10 Մայիս, եթէ 7 Մայիսը ճիշդ է իբր ջարդի սկիզբ։

*ծային սպանդը Թաչ Թէփէի անդունդներուն եւ վարի քաղաքի Ղարլըխներու մէջ։*

*Յուլիսի առաջին օրերուն արդէն ամէն ինչ լրացած էր, քաղաքի բոլոր ձերբակալուած այր մարդիկը, հայ բնակչութեան երկու երրորդը ջարդուած էին։ Մալաթիոյ Հայերը բոլորովին անճիտուած էին։*

*Ձերբակալութիւնները վերջացած էին, վասնզի այլեւս ձերբակալուելու մարդ չէր մնացած։ Քաղաքը անտէր մնացած հայ այրի կիներու եւ որբ տղաներու բնակավայր դարձած էր։*

*Ջանգուածային կերպով ջարդուած այրերուն համագումարը թէեւ* 1800 *հոգիէն աւելի հաշուուած էր, սակայն շատ աւելի պէտք է եղած ըլլայ։*

*Այրերու այս անճիտումէն եւ ընդհանուր կոտորածէն ետք կը մնար բնաջնջումը բոլոր Հայերու առանց սեռի եւ տարիքի խտրութեան։*

*Արդէն գրեթէ այր մարդ չէր մնացած Մալաթիոյ մէջ, բացի արհեստաւորներէ, որոնք ազատ ձգուած էին, իրենց գործը Թուրքերով փոխարինել կարելի չըլլալուն համար, բայց որովհետեւ ծրագրուած էր անոնք ալ սպաննել, ամէն մէկ հայ արհեստաւորի քով երկուական Թուրք տղաք դրուած էին՝ անոնց արհեստը սորվելու համար։*

*Բացառաբար մի քանի Հայեր ալ ազատ ձգուած էին մասնաւոր պատճառներով, ինչպէս Գէորգ եւ Ստեփան Չէքէմեանները, որոնք Մալաթիոյ ջուրերու ստորերկրեայ ցանցերուն միակ տեղեակ անձերն էին, եւ պատահական խանգարումները իրենք կրնային շտկել.*

*Այնպէս որ քաղաքին մէջ մնացած էին սահմռկած ու սարսափներու մատնուած խեղճ մանուկներու եւ անտէր կիներու բազմութիւն մը, զոր Թուրքերը անարգել կը կողոպտէին եւ կը սպաննէին, վասնզի անոնց ոստիկաններու, ոստիկան-զինուորներու եւ սրիկաներու քմահաճոյքին մատնուած էին։*

*Գիշերները՝ երիտասարդ հարսերը եւ երիտասարդ աղջիկները կ՚առեւանգուէին։*

*Բայց «գործ գայլը» տակաւին յագեցած չէր Հայու արիւնով։ Կ՚ուզէին մնացած կիներն ու մանուկներն ալ բնաջնջել։*

30 *Յունիս* 1915*-ին մունետիկներ կը պոռային հայ թաղերու մէջ թէ Հայերը պիտի մեկնին մինչեւ հինգ օր։ Այս յայտարարութեամբ կ՚ըսուէր թէ «գաղթողները պիտի միանային իրենց բանտարկեալներուն Տէր Զօրի մէջ», թէ անոնց հող եւ տուն պիտի տրուէր եւայլն։*

*Այս յայտարարութիւնը կեղծիք մըն էր պարզապէս կիներու ու մանուկներու այդ բազմութիւնը անխօսուկ կերպով, առանց աղմուկի փոխադրելու համար կիլիչ անապատները, անօթի ու ծարաւ մեռցնելու համար։*

*Արդէն առ ի պատրաստութիւն* 1915 *Մայիս* 27*-ին հրատարակուած էր օրէնք մը, որով զինուորական իշխանութեանց լիազօրութիւն կը տրուէր լոկ կասկածով ամբողջ* «քաղաքներու եւ գիւղերու բնակչութիւնը» *տեղահանել, առանց փաստի կամ դատի։*

Չքաւորներ իրենց տան ամբողջ կահկարասին կը ծախէին ոչինչ գիներով, թէ ան ալ Թուրքերը վճարել ուզէին: Թուրքերու «Ռամազան պայրամի» յաջորդ գիշերը տեղահանութեան հրամանը գործադրուիլ սկսաւ: Նատիմ քաղաքը բաժնած էր երեք մասի, եւ արգիլած էր մէկ մասէն միւսին անցնիլ կամ յարաբերիլ:

Իւրաքանչիւր շրջանակի բնակիչները պիտի կազմէին մէկ կարաւան:

Առաջին կարաւանը Ս. Յարութիւն թաղին բնակիչներէն կազմուեցաւ:

Ոստիկաններ բռնի տուները կը պարպէին տարագրուողներու լաց ու կոծին մէջ, եւ բնակիչները կը միացնէին կարաւանին, որ քաղաքէն դուրս իբր առաջին հանգրուան գիշերեց Չէքնուկէ կոչուած դաշտին մէջ: Անոնք տակաւ զրկուելով իրենց փոխադրական միջոցներէն, հետիոտն եւ իրենց ուտելիքները շալկած կը կտրէին ընդարձակ տարածութիւններ, իջեւանելով Ալմալ օղլի պաղչէն, Հաճի Սապրիի խանին մօտերը, Պէյլէր Տէրէսի, Էլէմէնտիկ եւ վերջապէս Կէօլէնէ:

Սեպտեմբերի սկիզբները այս կարաւանը հասաւ Եփրատի եզերքը, Սամսատ, նախնեաց պատմական Սամոսատը, որ Մալաթիայէն չորս օրուան հեռաւորութիւն ունէր սովորական ճամբորդներու համար: Բայց այս կարաւանը հազիւ կրցած էր հասնիլ 6–7-ը շաբաթէն, վասնզի կառավարութիւնը զանոնք տարած էր լեռնային օձապտոյտ ու անանցանելի կիրճերէ, դաշտային անջրդի ու զառուղի ճամբաներէ, որպէսզի անոնք, որքան կարելի է, շուտով մահանան:

Այս պայմաններու տակ Սամոսատ կամ Սամսութ հասնող գաղթականութեան առաջին կարաւանը քանակով կոտորակուած էր եւ կիսամեռ վիճակի մէջ հասած է հոն եւ անկէ մինչեւ Ֆրունճիի եւ Նալթէօքէնի անանցանելի բարձունքները, ճարապլուսէն մինչեւ Սուրուճ, մինչեւ Տէր-Զօրի կիզիչ անապատները, ուր մարդակեր Չէչէնները ջարդած էին զանոնք:

Երկրորդ կարաւանը, որ Ս. Երրորդութիւն եկեղեցիին թաղեցիներէ կը բաղկանար, նոյնպէս կը գիշերէր առաջին օրը Չէքնուկէ կոչուած տեղը, Ալմալ օղլի դաշտին մէջ: Գ. Մելիտինեցի (ՆԱԽՃԻՐՆԵՐ, էջ 167–8) կ'ըսէ որ «Մալաթիոյ Հայութեան պատուոյ եւ բարոյական ոխերիմ թշնամիները՝ Հարիճի օղլի Շաշի եւ Հաճեպա օղլի Հասէն Բէկ՝ գիշեր-ցերեկ թաղուած էին գեղխութեան ու գարշելի արարքներու մէջ· գաղթականութեան կարաւանները անոնց համար խենէշային հաճոյքի եւ կողոպուտի վայրեր էին, ուր գիշեր թէ ցերեկ կ'ասպատակէին սանձարձակօրէն, դժոխային չարչարանքներու ենթարկելով մայրերը: Անոնք կը փախցնէին կը տանէին հարս ու կոյս աղջիկներ, իրենց անասնական կիրքին գոհացում տալու, ապա՝ շնականօրէն սպաննելու համար»:

Այս գազանները Թոխմա գետի եզերքը մէկիկ-մէկիկ կը զատէին տղամարդիկը 10 տարեկանէն մինչեւ 90 տարեկան ծերունիները եւ կը ջարդէին գազանային անգթութիւններով:

Կառավարութեան պաշտօնեաները բռնութեամբ կը խլէին կոյս աղջիկներ՝ մայրերու ձեռքէն ու կը տանէին:

ՔԸՐՔ ԿԷՕԶԻ մէջ (Թոխմա գետին եզերքը) երեք օր գաղթականութեան բոլոր կարաւանները կողոպտելէ, այրերը բնաջնջելէ ետք, դարձեալ կառավարութեան հրամանով կը խլէին գաղթականութեան համար տրամադրուած եւ կամ վարձուած փոխադրութեան միջոցներ՝ կառք, եզ, ձի կամ էշ:

Հիւծած մայրերը կը հարկադրուէին իրենց մանկիկներուն հետ շալկել նաեւ այլ գոյքեր, որքան որ կրնային, մնացածը կը թողէին Թուրք-քիւրտ խուժանին:

Այս լեռներուն մէջ արեւի կիզիչ ճառագայթներու տակ գաղթականները ծարաւէն կ՚այրէին: Հեռուներէն բերուած գաւաթ մը ջուրը կը ծախուէր հինգ ղրուշի:

Այս կայաններու մէջ, ուր հանգստանալու հնարաւորութիւններ կային, գաղթականները կը քշուէին առանց դադարի, իսկ այն վայրերուն մէջ ուր ջուր, հաց եւ այլ կենսական կարիքներ հոգալու հնարաւորութիւններ չկային, գաղթականները կը պահուէին շաբաթներով, որպէսզի անոնք անօթի եւ ծարաւ մահանային չարչարուելով անօթի եւ ծարաւ:

Այս երկրորդ կարաւանն ալ ենթարկուեցաւ առաջինին սեւ ճակատագրին:

Իսկ ամենէն ահաւոր ու սարսռալի վախճանը վերապահուած էր երրորդ կարաւանին, որովհետեւ անիկա դատապարտուած էր քալելու լեռնային ճամբաներէ ու անանցանելի կիրճերէ:

Երբ այս կարաւանը Ֆրունճի կոչուած դժոխքէն ճամբայ կը հանեն դէպի Նալթէօքէն լեռը, որուն կատարը այնքան բարձր էր որ վարը անդունդին մէջ իրարու կողքին պառկող ապառաժները հազիւ մրջիւնի չափ կ՚երեւէին: Կարաւանը երբ մօտեցաւ լերան կատարին, յանկարծ կեցուցին անոր առաջացումը: Սուինամերկ ոստիկաններ փակեցին վերելքի նեղ անցքը ու մահուան սպառնալիքով փրկագին պահանջեցին: Ունեցողները զերծ մնացին դժոխային չարչարանքներէ: Իսկ չքաւորները անխնայ ծեծի կ՚ենթարկուէին եւ խուզարկութենէ վերջ, երբ դահիճները վստահ ըլլային որ զոհը դրամ չունէր, աքացիով մը կը գլորէին անդունդին խորը, ջախջախուած:

Այսպէս, վիթխարի լեռներու կատարներէն ու անդնդախոր ձորերէն կոտորակուած, այս երրորդ կարաւանը հասաւ Սամսաթ, ապա Սուրուճ եւ ուղղուեցաւ Տէր-Զոր՝ ենթարկուելու համար ուրիշ քաղաքներու իր ցեղակիցներու ճակատագրին:

Թրքական դժոխային նկարագիրին համաձայն Մալաթիան ջարդի կեդրոնավայր մըն էր, ուր կը բերուէին թէ՛ Հայաստանէն եւ թէ Փոքր Հայքէն տարագրուած Հայերը եւ հոն կը սպաննուէին եւ Ինտարա, Թաշ Թէփէ, Ֆըրընճըլար, Քինտիւպէկի ջրհորը ու վարի քաղաքին ՂԱՐԼԸԽԸ կը լեցուէին անոնց դիակները:

Այդ սպանդանոց առաջնորդուած բազմութիւններու Թուրքերը խառնեցին նաեւ Մալաթիոյ բնիկ Հայերը:

1915 Յունիսին արդէն Կարնոյ, Երզնկայի, Սամսոնի, Սեբաստիոյ, Ա-

րաբկիրի, Ակնի եւ այլ քաղաքներու գաղթականութեան կարաւանները կոտորակուած հասած էին Մալաթիա, ուր իբր թէ պիտի հաստատուէին, սակայն դաժանօրէն առանց օր մը հանգիստի, առանց քաղաք մտնելու Ֆրունճիի լեռնային ճամբաներով կ՚աքսորուէին դէպի Տէր–Զօրի անապատները:

Կարաւանները կողոպտելու իրաւունքը աճուրդի կը դնէր Թուրք կառավարութիւնը եւ կը ծախէր քիւրտ ցեղապետ աւազակներու, ինչպէս Մալաթիոյ մէջ Կարնեցիներու առաջին կարաւանը ծախուած էր 3000 ոսկիի Պետիր աղայի, որ Մալաթիոյ եւ Խարբերդի միջեւ Իզոլլի մեծ ցեղախումբին եւ շրջականներու քիւրտ աշիրէթապետն էր:

Անիկա կը գործէր իր եղբօրը Զէյնալի հետ եւ մեծ հարստութիւն դիզած էր:

Անոր Կարնեցիներու կարաւանը կողոպտելու եւ ջարդելու խժդուժ գործին ականատես վկան եղած էր Արաբկիրցի Ճէկէրճեան Պօղոս, որ հրաշքով ազատած էր (Դանիէլ Գալուստեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ. տարի, Թ. 4, էջ 17), իսկ ո՞վ գիտէ քանի՜ քանի՜ կարաւաններ եւ խումբեր մահացած են նոյնիսկ առանց ոեւէ վկայ ունենալու իրենց մարտիրոսութեան:

***

Մալաթիոյ քաղաքին տարագրութեան զուգընթաց հայ գիւղերն ալ պարպուած են համանման պայմաններու մէջ:

Մալաթիա, 1914-ի պատերազմին իրապէս միայն երկու գիւղ ունէր, Մշովկա եւ Անսուր, որոնց ալ հաշուեյարդարը ընել որոշած էր կառավարութիւնը, բնաջնջելով կամ տեղահանելով:

20 Յունիս 1915-ին, ձերբակալուեցան երկու գիւղերու այր մարդիկը, 15 տարեկանէն մինչեւ 70 տարեկան ալեւոր ծերերը, եւ նոյն գիւղերը քաղաք փոխադրելու պատրուակով, բոլորն ալ գնդակահարուեցան մօտիկ ձորին մէջ:

Յաջորդ առտուն կիները եւ մանուկները ոստիկաններու մտրակին տակ տարագրուեցան, սրտակեղեք պայմաններու մէջ:

Յուլիս 1-ին Թալէաթ փաշայի հրահանգը տառական կերպով գործադրուած եւ Մալաթիոյ Հայերը անխնայ սպաննուած էին:

Սակայն երկիրը խաղաղած չէր:

Հայերէն վերջ կառավարութիւնը հալածել սկսած էր Գըզըլ-Պաշ Քիւրտերը, որոնք դէմ էին Թուրքերուն եւ հայկական տարագրութիւններուն ատեն օգնեցին որքան որ կրնային Հայերուն, պատսպարան ընծայելով անոնց եւ պահելով:

Հաւանօրէն պետական այս հալածանքին հետեւանքով 1916 Յունուար 16-ին Պալիեանցի հռչակաւոր ՊՕԶՕ աղան ապստամբեցաւ: Այս ԳԸԶԸԼՊԱՇ քիւրտ աղան իր քսան ընկերներով ճամբաները կտրեց եւ սարսափ տարածեց Թուրքերուն մէջ:

Օր ցերեկով մտաւ Մալաթիոյ Չըրմխտի արուարձանը, սպաննեց տեղւոյն ոստիկանապետը եւ ահագին վնասներ պատճառելէ ետք հեռացաւ, իր խումբը հետզհետէ ստուարացաւ եւ կանոնաւոր կռիւներ մղեց կառավարական ոյժերու դէմ եւ անոնց պատճառեց աւելի քան 2000 կորուստ: Բայց ի վերջոյ ընկճուեցաւ:

Ասկէ առաջ 25 Հոկտեմբեր 1915-ին հասաւ կովկասեան ճակատի վրայ Թրքական բանակին պարտութեան եւ Ռուսերուն առաջանալու լուրերը, որոնք հաստատուեցան երբ հասան Թուրք ՄՈՒՀԱՃԻՐՆեր: Անոնց տրամադրուեցան Հայոց տուները:

Գըղըլպաշներու ապստամբութեան եւ այս Թուրք գաղթականներու խուժումին չփոթները առաջացուցին սղութիւն եւ թշուառութիւն: Սկսան Թուրք գաղթականները անօթութենէ մեռնիլ փողոցներու մէջ:

Թուրքերը իրարու կ'ըսէին «Հայերը գացին, խէյրը պէրէքէթն ալ իրենց հետ տարին, Աստուծոյ պատիժն է որ կը կրենք»:

Անոնց յաջորդեցին այնպիսի դժբախտ պատահարներ, ինչպէս պատերազմներու, սովերու, խուճապային փախուստներու եւայլն հետեւանքով սովորաբար երեւան եկած համաճարակները:

Այսպէս սպանիական տենդը (սպանեոլ), ժանտատենդը (թիֆօ) եւ բծաւոր ժանտատենդը (թիւֆիւս) տարածուեցան եւ մեծ թիւով կեանքեր հնձեցին Մալաթիոյ մէջ եւ շուրջը:

Այս համաճարակներուն ալ զոհեր տուին չտարագրուած Հայեր:

Մարդկային եւ աստուածային պատուհասներ միասին Մալաթիան բոլորովին անշքացուցին:

Իթթիհատի ոճրային ծրագիրները եւ անոր բոլոր հետեւանքները լիովին կրած էր Մալաթիան, երբ Իթթիհատական ջոլիրին մեծ ոճրագործը եւ այս դժոխային ծրագիրին գլխաւոր հեղինակը Թալէաթ փաշա 3 Նոյեմբեր 1916-ին Մալաթիա գնաց եւ հիւր եղաւ մեպուս Հաշիմ պէյի տունը:

Թալէաթ այս պատեհութեամբ հրահանգեց որ անխնայ ոչնչացուին Հայերէն բոլոր արձանագրութիւնները եւ անյայտացնեն կոտորածին բոլոր հետքերը:

Այս հրամանին համաձայն Հայոց գերեզմանատան բոլոր քարերը գործածուեցան զօրանոցին շինութեան:

Թալէաթ հրամայած էր որ խլամացող Հայերն ալ անխտիր մահացուին: Այնպէս որ երբ անոնք գիւղերէն յաջողեցան քաղաք գալ, ձերբակալուեցան եւ աքսոր ղրկուեցան, եւ ԿԷՕԶԷՆԷԻ մօտերը ջարդուեցան:

*
**

Տարագրութեան երեք կարաւանները մեկնած եւ Մալաթիոյ հայ բնակչութեան աննշան բեկորները միայն մնացած էին քաղաքին մէջ, երբ Մալաթիա ժամանեց Կարնոյ Հայ-Կաթոլիկներու առաջնորդը՝ Գերապայծառ Յովսէփ եպիսկ. Մելքիսեդեկեան 80—85 տարեկան պատկառելի ծերունի մը:

Իրեն հետ էին իր քոյրը եւ երկու Բաբերդցի աղջիկներ, հարսը եւ քրոջ որդիները:

Աւստրիական դեսպանին միջամտութեամբ իրեն եւ իր ընկերակիցներուն կեանքին խնայած էին: Անիկա նաեւ եկած էր Կարինէ Խարբերդ, ուր բաւական ատեն մնալէ ետք Մալաթիա եկած եւ տուն մը տեղաւորուած էր (տես ՊԱՊ ՈՒԽՏԻ, Ե. տարի, Թ. 18, էջ 12):

Մալաթիա մնացած առէրունջ բեկորները այս ծերունազարդ եկեղեցականը հոգեւորապէս մխիթարել աշխատեցաւ, որչափ հնար է, գաղտնի եւ առանց աղմուկի եւ առանց ուշադրութիւն գրաւելու: Իր տան մէջ Թիւ պատարագ կը կատարէր եւ Հայերը փախով-դողով կու գային ներկայ ըլլալու այդ պատարագներուն: 1917-ին առաջին ամիսներուն մատուռ մը կազմակերպուեցաւ եւ Զատկին հանդիսաւոր պատարագ մատոյց Գերապայծառը մեծ մխիթարութիւն պատճառելով Հայերուն:

5 Մայիս 1917-ին, Մալաթիոյ ոստիկանութեան նոր ԳՈՄԻՍԷՐը Ֆատիլ դիտողութիւն կ'ընէ եպիսկոպոսին պատարագին համար, եւ կարելի կ'ըլլայ զայն անդորրացնել:

1917 Սեպտեմբերին Մալաթիոյ կառավարիչ կը նշանակուի Կարնեցի Ծէվքէթ պէյ, որ վաղածանօթ էր Գերապայծառին:

Մելքիսեդեկեան եպիս. անոր շնորհաւորական այցելութիւն մը կու տայ եւ կ'ապահովէ իր կատարած պաշտամունքին շարունակութիւնը, մինչեւ իր մեկնումը դէպի Պոլիս:

Ինքն եղաւ գլուխ մը շփոթած Հայերու, որոնց թիւը քիչ մը աւելցած էր Մալաթիոյ մէջ տարագրութեան ութերորդ ամիսը (1916 Փետրուար), երբ կաթոլիկ եւ բողոքական Հայեր ազատ ձգուած էին տարագրութենէ:

1917-ի ընթացքին Մալաթիոյ մէջ գտնուող Հայերու թիւը աւելցաւ տարագրութեան ճամբաներէն մազապուրծ ազատողներու վերադարձով:

Նոյնպէս քաղաք դարձած էին Գըզըլպաշ գիւղերուն մէջ եւ քիւրտ բարեկամներուն քով ապաւինած Հայեր, որոնց թիւը Մալաթիացի կամ ոչ, 2000-ի կը հասնէր երբ զինադադարը կը կնքուէր 28 Հոկտեմբեր 1918-ին Մուտրոսի մէջ, եւ Հայաստան մը կազմուած ըլլալու ոգեւորիչ լուրը արդէն ծանուցուած էր ամէն կողմ:

Օսմանեան կայսրութիւնը պարտուած անմիջապէս կը փոխէր իր քաղաքականութիւնը եւ Մալաթիոյ կառավարիչ կը կարգէր Քիւրտ Խալիլ Ռէհմի պէյը (1919), որ մեղմ ընթացք մը կ'ունենար:



## Ժ.

# ՏԱՐԱԳՐՈՒԹԵՆԷՆ ԵՏՔ ՄԱԼԱԹԻՈՅ ՀԱՅ ԲԵԿՈՐՆԵՐԸ

1917 Հոկտեմբերին տարագրութիւնը վերջացած էր: Հայերը պզտիկ շունչ մը առնել սկսած էին, սակայն Թուրքերու ատելութիւնը տակաւին յագեցած չէր: Անոնք առիթը չէին փախցներ չարիք մը ընելու Հայերուն:

Այսպէս տարագրութենէն ետք սպաննուեցան Յակոբ Սահակեան (Չէր-թիլենց), Սերովբէ Քինդիրպէկեանց եւ Մանչուկ վարժապետ: Ազգային բոլոր հաստատութիւնները գրաւուած էին կամ քանդուած:

Միակ մարդասիրական հաստատութիւնը, որ իր գոյութիւնը կը պահէր, Գերման որբանոցն էր, ուր կը պատսպարուէին 300 կոյր որբեր: Որբանոցի վարիչը, զոր Մալաթիոյ Հայերը «Հայրիկ» կը կոչէին, գերման կայսրութեան քաղաքականութեան լիովին համապատասխան չափազանց թրքասէր ուղղութեամբ կը շարժէր:

Իր հայ պաշտօնեաները, որոնք կրնար ազատել, իր իսկ ձեռքով յանձնած էր որ Թուրքերը սպաննեն:

Այս գերմանը, գործաւորները խնայելու համար, ինքն Գերմանիա հարցում ըրած էր եւ պատասխան ստացած էր թէ պէտք չկար այդ տեսակ շնորհի մը: Եթէ պէտք ըլլար, Գերմաններ պատրաստ էին գալու իբր գործաւոր: Այս գերմանական հաստատութենէն զատ կառավարութիւնն ալ որբանոց մը բացած էր Աճը Չէքիրտէկին Հաճի Ահմէտի հսկողութեան տակ, Ս. Երրորդութեան եկեղեցիին մէջ: Հոն հարիւրի մօտ հայ փոքրիկներ կային, որոնց օրական յիսուն դրամ հաց կը տրուէր: Անոնք գրեթէ անխնամ անսնունդ լքուած վիճակ մը ունէին և կը հիւանդանային: Իբր հսկող նշանակուած այդ կազանը օրական 5—6 հիւանդ տղաները աղբիւսի կառքերով Խօրէնի դաշտ փոխադրել եւ հոն ողջ-ողջ թաղել կու տար:

Կարինի 1917-ի պարտութենէն ետքը 30.000 զօրք Մալաթիա կու գայ Ահմէտ Ալի պէյի հրամանատարութեամբ. քաղաքը զինուորական բանակատեղիի կը վերածուի: Հրամանատարը սակայն արդարադատ մարդ ըլլալով բնաւ թոյլ չի տար որ իր զինուորները կեղեքումներ գործադրեն Հայոց դէմ:

Դժբախտաբար Աղճատաղի Քիւրտերու ըմբոստութիւնը նուաճելու համար արշաւած ատեն սպաննուեցաւ եւ բանակը քայքայուեցաւ:

Հրամանատարին մարմինը դժուարութեամբ բերուեցաւ քաղաք եւ վանքին ճամբան Ճինկէնլիքի թրքական գերեզմանատունը թաղուեցաւ:

Իթթիհատական կառավարութիւնը հայկական նախճիրը գործադրելէ ետք դարձեալ կը հետապնդէր Հայերը:

Պոլիսէն ԷՆՎԱԼԸ ՄԷԹՐՈՒՔԷԻ գործով զբաղելու համար պաշտօնեայ մը եկաւ եւ տուները ամբողջ կառավարութեան սեփականութիւնը արձանագրելէ ետք հրաման ըրաւ որ մնացած Հայերը դէպի Փուրնճի տարագրուելու

պատրաստուեցին : Նպատակը Հայոց տուները ամբողջ գրաւել եւ Հայերը բոլորովին ընչազուրկ դարձնել էր :

Երկու օր ետք Հայոց թաղերը պաշարեցին եւ Հայերը բռնելով տարին Ալմալը օղլու արտը, սկսան ժողովուրդը չարչարել եւ ապա կողոպտել : Յետոյ Բողոքականները, Կաթոլիկները եւ Ասորիները զատեցին, մաս մըն ալ արհեստաւորները : Ասոնք քաղաք դարձուցին, իսկ միւսները աքսորեցին :

Այդ դժբախտ պայմաններու մէջ կը տուայտէին Մալաթիոյ Հայերը, երբ 30 Հոկտեմբեր 1918–ին Մուտրոսի զինադադարը կնքուեցաւ :

Թուրքիա պարտուած էր եւ Իթթիհատի պետերը փախած :

Թուրքերը սմքած էին, թէեւ չէին դադրեր ակռայ կճռտացնելէ : 18.000 Հայերէն հազիւ 2000 վերապրողներ եղած էին, որոնք ամէնն ալ Մալաթիացի չէին, այլ զանազան քաղաքներէ տարագրուած Հայերու բեկորներ : Մալաթիա գրեթէ ամայացած էր, եւ աշխոյժ կեանքը դադրած էր :

Հայ թաղերը բոլորովին աւերակ դարձած էին :

Ազգային բոլոր հաստատութիւնները և կալուածները գրաւուած էին : Մայր Եկեղեցին խորանները եւ յիշատակարանները քանդելէ ետք զինուորական մթերանոցի վերածած էին : Ս. Երրորդութեան եկեղեցին նախ Թուրք գաղթականներու կեդրոնի եւ ապա բանտի վերածած էին եւ կը կոչէին ԳԱԹԻԼ ՏԱՄԸ ([1]) (Ոճրագործի երդիք կամ որոգայթ) : Իսկ Ս. Յարութեան եկեղեցին քակելով անոր քարերը տուն շինելու գործածած էին : Նոյնպէս գրաւուած էր Հայ–կաթոլիկներու եկեղեցին, որ տակաւին զինադադարը չկնքուած վերադարձուած էր իր կալուածներով եւ Յովսէփ եպսկ. հաստատուած էր Առաջնորդարանին մէջ եւ արդէն սկսուած եկեղեցական արարողութիւնները կը շարունակուէին : Իսկ Բողոքականներու ժողովարանը զինուորական հաց պատրաստելու փուռի վերածուած էր : Լատին եկեղեցին ալ ոստիկանական պահականոց եղած էր :

Կաթոլիկներու հիւանդանոցը կառավարական եղած էր եւ Մէարիֆ միւտիւրին (կրթական տեսուչը) նշանակուած էր նաեւ հիւանդանոցի տնօրէն : Կողոպտուած էին Օրտուզի եւ Ս. Գրիգոր Լուսաւորիչ վանքերը :

Զինադադարի կնքումը նոր կեանք եւ ոգեւորութիւն ներշնչեց Մալաթիոյ հայ բեկորներուն, որոնք կը յուսային թէ հայ տառապանքը այլեւս վերջ գտած էր :

Հակառակ իրենց թիւին կոտրակումին, մահասարսուռ օրերէ ետք տակաւին գտնուեցան մարդիկ, որ անընկճելի կորով մը ցոյց տուին ազգին բեկորները հաւաքելու եւ զայն կենդանացնելու համար :

Հազիւ զինադադարը կնքուած՝ անպաշտօն կերպով Կարապետ Գրըճեան սկսաւ Պատրիարքարանի հետ թղթակցիլ :

Իրեն անմիջական աջակիցները կ'ըլլան Յովհաննէս Սրապործեան, Գէորգ Չէքէմեան (Չէքէմ Գէզօ), Գէորգ Ժամագործեան, որոնք ազգային

(1) Տամը բառը երկայրի իմաստ ունի, երդիք ալ կը նշանակէ, որոգայթ ալ :

վարչութեան մը դերը կը կատարէին։

Իրենց հետ գործակցողներու թիւը կը բարձրանայ նոր յաւելումներով։

Ազգային այս մարմինին, որ Թաղական խորհուրդ կոչուեցաւ, փոխանակ Ազգ. Խորհուրդ կոչուելու, անդամակցած են նաեւ վերոյիշեալներէն զատ.

Կարապետ Տօնապետեան
Դանիէլ Գալուստեան
Առաքել Գարագըղեան (Առաքել վարպետ)
Մանուէլ Տէր Վահրամեան
Յակոբ Քէօլէ Դաւիթեան
Խաչատուր Ընտրիկեան
Հ. Պէրպէրեան
Գէորգ Կէմալմազեան
Մուշեղ Տէր Մուշեղեան։

Այս մարմինին նախագահեց նախ Գերպ. Յովսէփ եպիսկ. Մելքիսեդեկեան, որ՝ ինչպէս տեսնուեցաւ՝ Մալաթիա կը գտնուէր։ Այս մարմինին առաջին գործը եղաւ օրինաւոր միջոցներով ետ ստանալ ազգային կալուածները։

Այս տեսակէտով պատուաբեր ջանքեր ցոյց տուին ժողովին անդամները, որոնք աշխատեցան անկարելին կարելի ընելու։

Անոնք յաջողեցան վերստանալ բռնագրաւուած ազգային կալուածները, եկեղեցիներու եւ դպրոցներու շէնքերը, վանքերը եւ այլն։

Այս վերահաստատութիւնները տեսնելով եւ տիրող նպաստաւոր վիճակէն օգտուելով իսլամացած Հայեր վերստին քրիստոնէութեան դառնալ սկսան։

Առեւանգուած եւ Թուրքերու հետ բռնի ամուսնացած հայ աղջիկներ երբ առիթը գտան, առաջնորդարան ապաստանեցան, փրկուելու համար։ Յարանուանական ոչ մէկ խտրութիւն կար։

Թաղական կամ ազգային խորհուրդը Պոլսոյ Պատրիարքարանի հետ կանոնաւոր կերպով յարաբերութեան մէջ էր։

Լատիններու եկեղեցին որբանոցի վերածուեցաւ եւ շրջակայ գիւղերէն որբեր հաւաքուիլ սկսաւ։

Կարճ ժամանակի մէջ որբերուն թիւը բարձրացաւ 2000-ի, վասնզի հարիւրաւոր որբեր շրջականերէն բերուեցան Մալաթիա։

Զանոնք պատսպարելու համար հայ դպրոցներու շէնքերը եւ շատ մը հայ հարուստներու ընդարձակ տուները վերածուեցան որբանոցի։

Դժբախտաբար անոնցմէ հարիւրաւորներ անխնամ եւ անսնունդ կը մահանային, փողոցները եւ որբանոցներէն դուրս, եւ անթաղ կը մնային։

Այնպէս որ որբերու մէկ քառորդը հազիւ կարելի եղաւ փրկել մահուան ճիրաններէն։

Այս շրջանին բարերար դեր կատարեց Ամերիկացիներու հաստատած

որբանոցը, որ Գերման «Հայրիկ»ին շէնքին մէջ բացուած էր եւ Ամերիկացիներէ կը ղեկավարուէր։

Կարապետ Տօնապետեան իր ազատած չափահաս որբերը կը յանձնէր այս մարմինին եւ փոքրերը Ամերիկեան որբանոցին, որուն տնօրէն կարգուած էր Մանուէլ Տէր Վահրամեան։ Ժամանակ մը ետքը Պատրիարքարանը հրահանգ տուաւ Թաղական խորհուրդին որ իր հսկողութեան տակ գտնուող որբերն ալ անոնց յանձնէ։

Այսպէս անոնց կեանքը փրկուեցաւ, վասնզի երբ Թուրքերը զօրացան, Ամերիկացիք բոլոր հայ որբերը Սուրիա փոխադրեցին։

Այս որբահաւաքման գործին մէջ ամենէն յանդուգն դէմքը հանդիսացաւ Կարապետ Տօնապետեան, որ զոհը եղաւ իր այս անձնուիրութեան։

Զինադադարէն ետք երկու տարի (1918—1920) քիչ շատ Հայերը հանգիստ էին ու Թուրքերը կը սպասէին թէ ի՞նչ պիտի ըլլայ իրենց պատիժը։

Բայց այս վիճակը երկար չտեւեց։ Քեմալական շարժումը դարձեալ Թուրքերը ոգեւորեց եւ կրկին սկսան ցոյց տալ իրենց ժանիքները։

1919 Դեկտեմբերին երբ Մուսթաֆա Քեմալ Էրզրումէն Սեբաստիա փոխադրուեցաւ եւ հոն ըրաւ իր կեդրոնը, արդէն Թուրքերը իրենց խոնարհած գլուխները բարձրացնել սկսած էին։

1920-ին հակառակ այս աննպաստ կացութեան եւ Թուրքերու սթափելուն, Կարապետ Տօնապետեան կը շարունակէր հայ որբերը հաւաքելու գործը, իր հետախուզութիւնները ընդարձակելով դէպի գիւղերը։

Անիկա գիւղերէն յաջողած էր հաւաքել 150 հատ հայ որբեր, որոնց պէտքերը ըստ Տ. Ստեփան քհնյ. Ղազարեանի իր անձնականէն կը լրացնէր եւ ըստ այլոց — ինչ որ աւելի հաւանական է — Ազգային Պատրիարքարանի նպաստով։ Բայց ինչ որ աւելի հաւանական է, Մալաթիոյ Կրթասիրացի դրամներով է որ 1918-ին բացուած է որբանոցը Կարապետ Տօնապետեանի ձեռքով։

Թուրքերը եւ Քիւրտերը, որոնք նախանձով կը դիտէին Հայոց վերակենդանութեան ջանքերը, Կարապետ Տօնապետեանի վրայ կը յարձակին գիւղի մը մէջ զէնքերով, երբ որբեր փնտռելու գացած էր եւ սաստիկ կը ծեծեն։

Տօնապետեան վախէն կը հիւանդանայ։ Երբ վիճակը կը ծանրանայ, հաղորդութիւն առնել կ՚ուզէ եւ որովհետեւ կաթոլիկ Ապունա մը կար, անոր կը դիմեն։

Ապունան կը մերժէ հաղորդութիւն տալ առարկելով թէ կաթոլիկ չէ ան։ Տօնապետեան այս ապաշնորհ մոլեռանդութեան առջեւ կը հրաժարի այդ հոգեւոր մխիթարութենէն եւ այնպէս կը մեռնի։

Կաթոլիկ եկեղեցիին այդ խստասիրտ եւ թթու մոլեռանդ ներկայացուցիչը Տօնապետեանի յուղարկաւորութեան ալ չի մասնակցիր։

Այս պարագայէն դառնացած Գէորգ Զէքիմեան, Յովհաննէս Սրապործեան և Կարապետ Քէօլէ Դաւիթեան, կը դիմեն քարակոփ Մկրտիչ Ղազարեանի որ եկեղեցական արարողութեանց բաւական ծանօթ էր եւ անոր աղօթք-

ներով Կարապետ Տօնապետեանը կը թաղէն Հայոց գերեզմանատունը, եւ այս տեսակ մոլեռանդական արարքներու տեղի չտալու եւ ժողովուրդը հոգեւոր մխիթարութենէ չզրկելու համար, Տօնապետեանի յուղարկաւորութեան յաջորդ օրն իսկ, եկեղեցական ներկայացուցիչ մը ունենալու համար ժողովի մը կը հրաւիրեն ժողովուրդը:

Այդ ժողովին մէջ կ՚որոշուի Մկրտիչ Ղազարեանը քահանայ ձեռնադրել տալ:

Մկրտիչ Ղազարեան կը համակերպի եւ կ՚երթայ Խարբերդ, ուր քահանայ կը ձեռնադրուի Գիւտ եպիսկ. Մխիթարեանէ 18 Սեպտեմբեր 1920-ին Տ. Ստեփան անունով եւ քառասունքը լրացնելէ ետք կը դառնայ Մալաթիա, ուր արդէն եկեղեցական շէնքերը առնուած էին Թուրքերէն:

Այսպէս շուկայի թաղին Մայր Եկեղեցիին քանդուած մասերը նորոգուած էին Առաքել վարպետի եւ վերապրող արհեստաւորներու զոհողութիւններով:

Նոյնպէս վերստացան Ս. Երրորդութիւն եկեղեցին եւ նորոգեցին:

Քահանան ամէն կիրակի երկու եկեղեցիներուն մէջ կը պատարագէր փոխն ի փոխ:

Միայն լքուած մնացած էր Ս. Յարութիւն եկեղեցին, որ գրեթէ բոլորովին քանդուած էր:

Վարչութիւնը վերաշինեց նաեւ Ս. Փրկիչ վանքը: Իսկ Օրտուզիի վանքը գրեթէ հիմնայատակ եղած ըլլալով վերաշինել անկարելի եղաւ:

Հայ-կաթոլիկներու եկեղեցին եւս վերաբացուեցաւ հայախօս Ֆրանսացի կաթոլիկ վարդապետի մը ձեռքով: Իսկ լատին եկեղեցին, որ եղած էր պահականոց, եղաւ որբանոց:

Բողոքականներու ժողովարանը, որ վերածուած էր զինուորական փուռի, այդպէս մնաց:

Եկեղեցիներէն ետք անհրաժեշտ էր բանալ նաեւ դպրոց մը որպէսզի վերապրող պատանիները յաճախէին:

Բայց ոչ եկեղեցիները եւ ոչ դպրոցը հաստատուն եկամուտ չունէին, վասնզի բոլոր կալուածները քանդուած էին:

Ինչպէս բացատրուած է, ազգային ամենէն հասութաբեր կալուածը Թէլալ Պազարը կամ Գալաճընոց շուկան էր (տես էջ 437, 582), որ նորոգեցին մեծ ջանքերովը եւ զոհողութիւններովը հայ արհեստաւորներու:

18 Դեկտեմբեր 1920-ին Յովհաննէս Սրապործեան կը գրէր Գիւտ եպիսկոպոս Մխիթարեանի, թէ թաղական խորհուրդը կը ցաւի որ այս շինութեան պատճառով դպրոցին բացումը մէկ տարի յապաղէր:

Գիւտ եպիսկ. այս յապաղումը կ՚արդարացնէր հաստատուն հիմի վըրայ դնելու համար կրթական գործը եւ յարանուանական դպրոցներէն օգտուիլ կը յանձնարարէր:

Արդարեւ դպրոց մը բացուած էր Հայ-կաթոլիկ եկեղեցիին յարակից շէնքերէն մէկուն մէջ, հակառակ Գերպ. Յովսէփ Մելքիսեդեկեանի ընդդի-

մութեան, որ չէր ընդունիր որ դպրոցը ըլլար Ազգային վարժարան առանց յարանուանական խտրութիւններու, այլ կ՚ուզէր որ ան «ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ ԴՊՐՈՑ» կոչուէր:

Երկար վէճերէ ետք վերջապէս հարկ եղաւ Հայ Կաթոլիկ Եպիսկոպոսը չէզոքացնել եւ Վարչութեան Նախագահ ընել Կարապետ Տօնապետեանը, որուն տրուեցաւ ՄԻԼԼԷԹ ՊԱՇԻ տիտղոսը:

Դպրոցը բացուեցաւ, եւ Յովսէփ եպիսկ. մեկուսացաւ Կաթոլիկ Առաջնորդարանին մէջ եւ միայն կրօնական գործերով զբաղեցաւ:

Գերապայծառը 1919 Սեպտեմբերին մեկնեցաւ իր ամբողջ ընտանիքով դէպի Պոլիս:

Առաջնորդարանը յանձնեց Լատին քահանայ Հ. Պունայիին:

Եկեղեցական արարողութիւնները ձեւով մը շարունակուեցան, բայց ոչ դպրոցը, որ կարելի չեղաւ շարունակել:

Կաթոլիկ կղերին այս մոլեռանդական արարքները պատճառ եղան որ Մալաթիոյ հայադաւանները 26 Յուլիս, 1919-ին հանրագրութեամբ մը Պատրիարքարանէն Առաջնորդ մը կամ հովիւ մը խնդրեն:

Պատրիարքարանը Մալաթիոյ Հայոց հովուութիւնն ալ կը յանձնէ Գիւտ եպիսկ.ի, որ Խարբերդի թեմը կը կառավարէր արդէն:

Տակաւին այս անջատումը պատահած չէր, երբ 25 Մարտ 1919-ին Խարբերդէն Մալաթիա եկան Ամերիկացի Տոքթ. Պարթըն եւ Մր. Րիկս:

Թաղական խորհուրդը կարելի մեծ բազմութեամբ եւ կառավարական պաշտօնեաներով քաղաքէն բաւական դուրս ընդառաջ գնաց անոնց:

Տոքթ. Պարթըն եւ Մր. Րիկս ինքնաշարժէն իջնելով կառավարիչին ձեռքը սեղմեցին: Տոքթ. Պարթըն «Ձեր երկրի բարօրութեան համար Ձեր երկիրը եկած ենք, կ՚ընդունի՞ք» ըսաւ:

Կառավարիչը Թրքական շողոքորթութեամբ եւ քծինքով պատասխանեց. — «Բարի եկած էք, մեր գլխուն վրայ տեղ ունիք»:

Կառավարչատուն այցէ մը ետք Գերապայծառին ալ այցելեցին անոնք:

Մր. Րիկս խոստացաւ որոշ գումար մը յատկացնել վարժարանին եւ արդարեւ իր խոստումը պահելով 15 օսմանեան ոսկի յատկացուց դպրոցին:

Ամերիկացի միսիոնարներէն ետք 15 Մայիս 1919-ին Թնդանօթաձիգ զինուորներու անգլիական ջոկատ մը գալով զօրանոցին մօտր վրաններու մէջ հաստատուեցաւ, Կարապետ Տօնապետեան, Դանիէլ Գալուստեան եւ Մանուէլ Տէր Վահրամեան կ՚այցելեն անգլիական հրամանատարին: Անոր հարցումներուն կը պատասխանեն: Անիկա կը հետաքրքրուի գիտնալու թէ քաղաքին և գիւղերուն մէջ ո՛րքան հայ մնացած է, քիւրտ եւ թուրք ինչ համեմատութիւն ունին թիւերով:

Անգլիացիները ութը օրուան չափ մնալէ ետք կը մեկնին:

1919 Օգոստոսի սկիզբը կը ձերբակալուին եւ կը բանտարկուին Իթթիհատական պարագլուխներէն Նուֆիւս մէմուրի Հաճի էֆէնտի, Թահրիրաթ քեաթիպի Թալէաթ էֆէնտի, Հաճը Զէքիրտէկ զատէ Հաճի էֆէնտի, Ախի

զատէ Ապտիւրահման էֆէնտի, Գարագաշ զատէ Մուհմէտ էֆէնտի, Սալթ զատէ Վահուպ էֆէնտի եւայլ քանի մը երեւելիներ իբր Պոլիս ղրկելու համար, սակայն չղրկուեցան:

Կառավարիչը կ՚ուզէր որ 10 Հայեր անոնց ուղեկից ըլլան մինչեւ Սեբաստիա, ինչ որ ապահովաբար դաւ մըն էր այդ Հայերուն դէմ:

Հայերը մերժեցին եւ այս պատճառով այդ Իթթիհատականներն ալ մնացին:

19 Օգոստոս 1919-ին Ուաշինկթընէն Մալաթիա եկան ութ անձերու յանձնախումբ մը որ Հաճիմ պէյ զատէ Թալէաթի տունը հիւրասիրուեցան եւ յաջորդ օրը մեկնեցան Խարբերդ:

Ասոնց յաջորդեցին երեք Ֆրանսացի պաշտօնատարներ, որոնք հիւր եղան կերպասեղէնի գործարանատէր Օսմանի:

1919 Սեպտեմբեր 12-ին նաեւ անգլիական Մաժէօր Դաւիթ 10 զինուորներով Մալաթիա գնաց եւ 1914-ի զօրաշարժէն առաջ ազգերու թիւին վրայ քննութիւն բացաւ:

Կարապետ Գըլըճեան կու տայ անհրաժեշտ տեղեկութիւններ եւ ուրախութեամբ Պատրիարքարանին կ՚աւետէ թէ իր տուած թիւերը միշտ աւելի պակաս էին իրականութենէն — ինչպէս հաստատած է Մաժէօր Դաւիթ, իսկ Թրքաց թիւերը միշտ չափազանցուած եւ սուտ:

Այս 1918—1920 երկամեայ շրջանին Հայերը, ինչպէս միշտ, ափիբերան թողուցին քանդիչ Թուրքերը, որոնք զարմանքով կը տեսնէին իրենց բնաջնջել կարծած Հայերուն վերակենդանութիւնը եւ վերակազմութիւնը, շուտով դարմանելով իրենց վէրքերը:

Դժբախտաբար Հայուն դժբախտ ճակատագիրը հոս ալ պատուար կը կանգնէր եւ թոյլ չէր տար որ հայ կեանքի այս վերանորոգութիւնը իր լրումին հասնէր:

Քեմալական Միլլի շարժումը վերստին Փոքր Ասիան նոր հնոցի մը կը վերածէր:

Մուսթաֆա Քեմալ մահամերձ Թրքութիւնը կ՚ողջնցնէր եւ կը կերտէր Նոր Թուրքիա մը, որ լրացուց ինչ որ Իթթիհատը պակաս ձգած էր, 1923 Օգոստոսին հալածանքի նոր շրջանի մը բացումը կատարելովն եւ այսպէս Հայոց վերակազմական աշխատանքը ընդհատելով:

1920-ին, ինչպէս տեսնուեցաւ, Ազգային վարժարանը փակուած էր:

Տ. Ստեփան քհնյ. Ղազարեանի ձեռնադրութենէն վերջ անհրաժեշտ կը դառնար նաեւ Ազգային վարժարանին վերաբացումը, որուն համար առանձին արտօնութիւն մը առնելու ժամանակը հասած նկատուեցաւ: Տ. Ստեփան քհնյ. Ղազարեան իր ստորագրութեամբ Մուսթաֆա Քեմալի դիմելով փոքրիկներուն համար դպրոց մը բանալու համար աղերսագիր մը տուաւ:

Մուսթաֆա Քեմալ արտօնեց դպրոցին բացումը Հայոց պատմութիւն չաւանդելու եւ դպրոցին Թուրք ուսուցիչի մը հսկողութեան տակը գտնուելու պայմանով:

Այս դպրոցը, որ մինչեւ 1923 շարունակուած է, երկու հայ ուսուցիչ ունէր՝ Երուանդ Աթաշեան, Սմբատ Աբգարեան (Սեբաստացի)։

Դժբախտաբար այնպիսի վիճակ մը ստեղծուեցաւ որ անկարելի եղաւ բողբոջիլը եւ զարգանալը հայ կեանքին, եւ նոր սարսափներ սկսան։

Այս վիճակին առաջին պատճառը եղաւ 1921-ին սկսած Թուրք եւ Հելլէն պատերազմը։

Այս առթիւ Մուսթաֆա Քեմալ գործադրեց տեղահանութիւններ առանց ջարդի՝ նկատի ունենալով պարտութեան հաւանականութիւնները։

Այս առթիւ արեւմտեան Փոքր Ասիայէն Յոյները տեղափոխուեցան դէպի Արեւելք։ Մեծ թիւով Յոյներ բերուեցան Մալաթիա, հազիւ չոր հացի մը նպաստով ապրելու դատապարտուած։

1921ի աշնան պատահած էր մեծ հրդեհ մը, որուն զոհ գացած էին շուկային խանութներուն հարիւրին 90-ը. կառավարութիւնը ուրախութեամբ դիտած էր այս աղէտը, եթէ ինքն չէր պատրաստած, վասնզի թոյլ տուած էր որ հրդեհը տարածուի եւ ոեւէ լուրջ ջանք չէր ըրած զայն սահմանափակելու համար։

Թուրքերը առիթէն օգուտ քաղեցին եւ կողոպտեցին բոլոր խանութները։

Այս հրդեհին հրոյ ճարակ եղան նաեւ կառավարական շէնքերը, որոնք պէտք էր վերաշինել։

Բայց Հայերը աքսորուած ըլլալով գործաւոր չկար, ուստի գաղթական Յոյները աշխատցուցին։

Այսպէս հրդեհի աղէտը, որ չարիք մըն էր բարիքի մը պատճառ եղաւ եւ Յոյները ապրուստ մը ապահովեցին։ Շինուեցան մեծ նոր մզկիթը, մինարէները, որոնք 30 տարի է որ կիսատ մնացած էին, եւ այլ պետական շէնքեր։



**Արժ. Տ. Ստեփան Քահանայ Ղազարեան**
**(1880–1954)**

Հակառակ ասոր 1922-ին երբ սաստիկ ցուրտ եւ խիստ ձմեռ մը եղաւ, անպատսպար Յոյները մեծ կորուստներ ունեցան մարդկային:

Թուրք եւ հելլէն պատերազմը, որ 9 Սեպտեմբեր 1922-ին՝ Իզմիրի գրաւումով յաղթանակ մը եղաւ Մուսթաֆա Քեմալի համար, ամրացուց անոր դիրքը եւ զինք դարձուց օսմանեան կայսրութեան ժառանգորդը եւ ինքն տիրակալել սկսաւ, վերջ տալով Բ. Դրան հեղինակութեան:

Անգամ մը որ տէր դարձաւ կացութեան, վերստին սկսաւ հայահալած քաղաքականութիւնը:

ԷՄՎԱԼԻ ՄԷԹՐՈՒՔԷՅԻ պաշտօնեաները նորէն գործի սկսան: Ոչ միայն կը գրաւէին Հայոց լքած կալուածները, այլ եւ անոնց բնակած անձնական տուներէն ալ վարձք կը պահանջէին:

Միւս կողմէն ժողովուրդին յայտարարուեցաւ թէ անոնք որ մեկնիլ կ'ուզեն, պիտի կարենան երթալ, ազատ ՎԷՍԻՔԱ առնելով: Թէ Հայերը եւ թէ Յոյները սկսան ՎԷՍԻՔԱ առնել Սուրիա անցնելու համար:

1924-ին գունդագունդ կը հեռանային Հայերը, վասնզի 15 անձերէ բաղկացեալ չէթէներու խումբ մը ամէն գիշեր Հայու մը տունը կ'իջնէր, ոսկի, արծաթ, եւ դրամ կը պահանջէին, մեռցնելու աստիճան ծեծելով շատերը:

Այս կազմակերպութիւնը, որ կը կոչուէր ԱԹԷՇ ՕՂԼՈՒ ԵԸԼՏԸՐԸՄ կամ ԵԸԼՏԸՐԸՄ ԱԹԷՇ (Հուր որդի կայծակ կամ Կայծակէ կրակ), ահաբեկիչ դեր մը կը կատարէր եւ բնակչութեան անդորրութիւնը կը վրդովէր:

Տուներու վրայ ազդեր կը փակցնէին եւ կը հրամայէին որ մինչեւ 10 օր մեկնին, հակառակ պարագային սպառնալով անոնց կեանքին:

Եւ կը սկսին գողութեան եւ խոշտանգումի դէպքեր, ինչպէս նաեւ ըսպառնալիքներ:

Ամէն գիշեր հայ տուները կը քարկոծուէին, ահ ու սարսափի մատնելով Հայերը:

Ամենէն առաջ Քէօլէ-Դաւիթեաններու տունը կոխեցին. Կարապետ աղան ծեծելէ վերջ յիսուն օսմանեան ոսկի առին եւ հեռացան:

Այսպէս ամիս մը շարունակեցին:

Օր մըն ալ Մայր-Եկեղեցիի դրան վրայ յայտարարութիւն մը փակցուցին եւ հինգ օրուան պայմանաժամ տուին, Հայերուն ըսելով որ՝ եթէ կ'երթաք լաւ, եթէ ոչ ԵԸԼՏԸՐԸՄ ԱԹԷՇ ընկերութիւնը ձեզ պիտի վառէ:

Այս ազդարարութիւնը փակցուած գիշերը քահանային տունն ալ կուգան: Դուռը հաստատուն ըլլալով հոն գտնուող երեք զինեալ Հայերը, որոնք էին Յարութիւն Քէփէնէկեան, Քերոբ Որբերեան եւ Տ. Ստեփան քհնյ. Տէր Ղազարեան, զանոնք ճամբեցին բարեկամաբար:

Ինչպէս ԷՄՎԱԼԸ ՄԷԹՐՈՒՔԷԻ տնօրէնին Տ. Ստեփան քհնյ. Տէր Ղազարեանի ըրած բացորոշ յայտարարութիւններուն անոնց նպատակն էր ահաբեկելով եւ վախցնելով Հայերը հեռանալու պարտաւորել, որպէսզի անոնց գոյքերը գրաւեն եւ երկիրը Հայերէն պարպեն, որպէսզի Թուրքերուն մնայ

*ըստ Իթթիհատի ծրագրին:*

*Սեղմուած այս ահարկու կացութեան առջեւ, որուն պետական քաղաքականութիւն մը ըլլալը կը հաստատուէր, Տ. Ստեփան քհնյ.ի նախագահութեամբ 35 հոգի, որ Մալաթիոյ Հայերուն մեծամասնութիւնը կը ներկայացնէին, առաջնորդարան հաւաքուեցան եւ որոշեցին էնկիւրի Մուսթաֆա Քեմալի հեռագրել եւ անոր օգնութիւնը խնդրել:*

*Գէորգ Կէմալմաղեան շարադրեց հետեւեալը·*

«Մենք Մալաթիացի Հայերս հանրապետական կառավարութեան ծառաները ենք եւ հաւատացող անոր արդար դատաստանին: Մենք իբրեւ քաղաքացիներ եւ հպատակներ, կ'ուզենք բնակիլ մեր տուներուն մէջ, կը խնդրենք որ կառավարութեան պաշտպանութեամբ մեր տուներուն քարկոծուիլը արգիլուի· եթէ մեր հպատակութիւնը կը մերժուի եւ մեր հեռացումը կը պահանջուի, կը խնդրենք որ այդ մեզի իմացուի կառավարութեան կողմէ, եւ ոչ թէ գիշերային աւազակներու, որոնք սարսափ կը տարածեն մեր տուներուն մէջ»:

*Սիկա հեռագրուեցաւ 9 Նոյեմբեր 1923-ին, Դանիէլ Գալուստեանի եւ Հաճի Յակոբ Քիւնտիւպէկեանի ստորագրութիւններով, բայց դարման մը չեղաւ եւ թերեւս աւելի հակառակ ազդեցութիւն մը ունեցաւ:*

*Երկու ստորագրողները հրաւէր ստացան երկիրէն դուրս ելլելու:*

*Տ. Ստեփան քհնյ. Ղազարեան եւս գրեթէ կառավարութեան ստիպման տակ, ճարահատ ինքն ալ մեկնեցաւ եւ 35 տուներու հետ հեռացաւ Մալաթիայէն 1 Սեպտ. 1923-ին:*

*Յաջորդ ամիսներուն նոր հալածանքներ արտագաղթի հոսանքը զօրացուցին, եւ բազմաթիւ Հայեր անցան Սուրիա — մեծ մասը փախչելով — եւ լքեցին իրենց ծննդավայրը, վասնզի Մուսթաֆա Քեմալի յաջողութիւնները կը քաջալերէին զինք՝ իրականացնելու փոքրամասնութիւնը ջնջելու եւ Թուրքիան զուտ Թուրք պետութեան մը վերածելու Իթթիհատի մեծ ծրագիրը:*

*Թուրք եւ հելլէն պատերազմէն ետք ուրիշ յաջողութիւն մըն էր քրտական ապստամբութեան ընկճումը:*

*Այս ապստամբութիւնը ծագեցաւ 18 Փետրուար 1924-ին Իրանէն Քիւրտ Շէյխ Սայիտի ղեկավարութեամբ:*

*Պաքըր Մատէն, Օսմանիէ, Ջերմուկ քիւրտ ապստամբներէն գրաւուեցաւ եւ Տիարպեքիրը պաշարուեցաւ: Շէյխ Սայիտ չէր ճանչնար Մուսթաֆա Քեմալի կառավարութիւնը եւ ՇԷՐԱԹ կը պահանջէր:*

*Կ'ըսուէր թէ Շէյխ Սայիտ հովանաւորուած էր Անգլիացիներէն, որոնք դրամապէս կը նպաստէին Քիւրտերուն:*

*Քրտաբնակ բոլոր վայրերու մէջ պատերազմական վիճակ յայտարարուեցաւ:*

*Մալաթիա այս շրջանակին մէջ էր: Հոն մնացող հազիւ 50–60 տուն Հայերը որոնց երթեւեկը եւ Թուրքերէնէ զատ ուրիշ լեզու գործածելը խստիւ*

*արգիլուած էր, չչմած էին եւ սրտատրոփ արգիլինքին կը սպասէին:*

*Թուրք բանակը 28 օրուան մէջ ընկճեց այս ապստամբութիւնը:*

*Շէյխ Սայիտ փախաւ եւ իր Քիւրտերը ջարդուեցան Տիարպեքիրի մէջ եւ չուրջը:*

*24 Մարտ 1925–ին Թուրքերը վերագրաւեցին Զեյթունը, որով Մալաթիա փրկուեցաւ քրտական պատերազմի մը նոր արհաւիրքէն:*

*Մուսթաֆա Քեմալ այլեւս ազատ ԹՈՒՐՔԻԱՆ ԹՈՒՐՔԵՐՈՒՆ նշանաբանը անարգել կը գործադրէր խստութեամբ:*

*Կրօնական մոլեռանդութեան կը յաջորդէր ազգայնականութիւնը: Կիները կ՚ազատագրուէին, սակայն ժողովուրդը ամբողջ սարսափի տակ էր եւ բռնագրաւումները կը շարունակուէին:*

*Հայերը իրենց կալուածները եւ ինչքերը չէին կրնար ծախել, բայց կառավարութիւնը ինքը կը ծախէր Հայոց բոլոր կալուածները ՀԱՅՔ կուսակցութեան հաշուոյն:*

*Յուսահատական էր Հայոց կացութիւնը եւ արտագաղթը կը շարունակուէր միշտ: Հայեր կը մնային աննշան թիւով:*

*Հետեւաբար հազիւ կեդրոնանալ սկսող հայկական կեանքը գրեթէ գոյութենէ կը դադրէր: Ոչ կէս ու կիսատ եկեղեցի մնացած էր եւ ոչ ալ դպրոց:*

*Հայ տղաները Թրքական դպրոց կը յաճախէին:*

*Թրքացած Հայերէն վերադարձողներուն մէկ կարեւոր մասը նորէն կը Թրքանար վերջնականապէս, եւ Թուրքիան կը դառնար զուտ Թուրք բնակիչով երկիր մը:*



Երուանդ Պաղտօյեան (*)



Տոքթ. Միքայէլ Քէշիշեան

---

(*) *Արդեօք նո՞յն Եդուարդ Պաղտոյեանի հետ, որուն մասին տես տստ, էջ 904:*



ՄՍՂԱՔԻԱ ԾԱՌԱՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ՈՂՈՐՄՈՒԹԵԱՄԲ ԱՍՏՈՒԾՈՅ ՀՕՐ ԵՒ ՇՆՈՐՀԻՒ Ս. ՀՈԳՒՈՅՆ ԵՒ ԿԱՄՕՔ ԱԶԳԻՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ Կ.ՊՈԼՍՈՅ ԵՒ ՊԱՏՐԻԱՐՔ ՀԱՅՈՑ ԹՈՒՐՔԻՈՅ

[illegible]

[illegible] 1899 [illegible]

[illegible] 145 [illegible]

**Տօքթ. Միքայէլ Քեչիչեանի (Գզըլքեչիչեան) ստացած օրհնութեան գիրը Մաղաքիա Արքեպս. Օրմանեան Պատրիարքէն, 1899-ին։**



# Թ. ՄԱՍ

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԵԱՆՔ

## Ա.

## ՄԱԼԱԹԻԱ ԻԲՐ ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ԿԵԴՐՈՆ

*Մալաթիա կը գտնուէր աշխարհագրական այնպիսի դիրքի մը վրայ որ կը ներկայացնէր առեւտրական կեդրոն մը ըլլալու ամէն յարմարութիւն:*

*Մելիտինէն Ստրաբոնի եւ Պտղոմէոսի կողմէն միեւնոյն տեղը նշանակուած է:*

*Սահմաններն էին արեւելքէն Եփրատը, հիւսիսէն՝ Փոքր Հայքը, արեւմուտքէն՝ Սարկարաւսինէ*[1] *եւ Կատաոնի*[2] *եւ հարաւէն Կոմմագենէ:*

*Հաւանաբար Պտղոմէոսի կողմէ նշանակուած Լաւիալեզինէ*[3], *Սարաւինէի*[4] *(կամ Արաւսինէ) քաղաքներէն ոմանք Մելիտինէի մէջ պիտի մտնէին, իսկ մնացեալները կը պատկանէին Կոմմագինէին կամ Կատաոնիայի, բայց անոնց մեծ մասին վրայ այնքան քիչ ծանօթութիւններ ունինք որ կարելի չէ անոնց տեղերը որոշել, ինչպէս կ'ըսէ* Prof. Ramsay(*տես* **The Historical Geography of Asia Minor**, *էջ* 313):

*Ասոր համար Փրոֆ. Ռամսէյ* (*էջ* 313) *տարակուսանօք կ'ըսէ թէ Մելիտինէի շրջանակին կեդրոնական քաղաքն էր թերեւս Մելիտիա, բայց կ'ըսէ «Մելիտա» ձեւին երբեք չէ հանդիպած ինք:*

*Ռամսէյ կը հաւաստէ թէ Ստրաբոնի ատեն (Քր. է առաջ Ա. դար) ատանկ քաղաք մը գոյութիւն չունէր: Ան Մելիտինեցի ժողովուրդին եւ Մելիտինէի երկիրին իբրեւ կեդրոն աստիճանաբար մեծցած է, հետեւաբար իր անունը ճշգրտօրէն ածական մըն է «Իմելինէ Պոլիս»:*

*Հիմա անիկա Մալաթիա կը կոչուի եւ ինչպէս* Sterret (*էջ* 263) *նոյնպէս*

---

(1) *Նէաշէհիրի շուրջը ըստ Աղեքսանդրեան Անդրէաս Գերպլի* (Պատմութիւն Սեբաստիոյ, *էջ* 17):

(2) *Կէօքսուի, Հաճինի եւ Զէյթունի շուրջը* (Նոյն, *էջ* 17):

(3) *Կիւրինի, Տիվրիկի եւ Աղիզիէի շուրջը* (Նոյն):

(4) *Քէախթէի շուրջը* (Նոյն):

նաեւ շատ աշխարհագիրներ եւ ուղեւորներ կը հաստատեն, հոն երկու քաղաքներ կան, մին Հին Մալաթիան, որ լքուած է 1838-ի Թուրք-եգիպտական պատերազմին ժամանակ, իսկ Նոր Մալաթիան՝ անկէ եօթը կամ ութը մղոն դէպի հարաւ-արեւմուտք հեռաւորութեան վրայ հաստատուած։

Ինչ կերպով որ ալ եղած ըլլայ Մալաթիոյ քաղաքին կազմութիւնը եւ անոր նիւթական բարգաւաճումը, անոր հիմնարկութեան առաջին ազդակը կը կազմէ իր բնութեան շնորհներով օժտուած վայր ըլլալը։

Անժխտելի իրողութիւն մըն է որ Մալաթիա կը գտնուէր երկրամասի մը մէջ որ իր սքանչելի կլիմայով, ջուրերու առատութեամբ եւ բարեբեր հողերով «յուռթի արգաւանդութիւն» ունէր, ինչպէս կ'որակէ Սահակ Եպս. Կոգեան (Մելիտ, Մելիտինէի, Մալաթիա, էջ 8)։

Ջրարբի եւ արեւաշատ դաշտի մը մէջ կառուցուած եւ Եփրատի այնքան մօտ այս քաղաքին մէջ գրեթէ ամէն ինչ կը հասնէր ամենահին ժամանակներէ սկսեալ, ինչպէս կը վկայեն հին պատմագիրներ եւ Նոր աշխարհագիրներ եւ խուզարկուներ։

Ստրաբոն, որ Ամասիացի էր եւ Փոքր Ասիան կը ճանչնար շատ լաւ, վասնզի շրջած եւ զննած էր այս աշխարհամասը, Մելիտինէի վրայ խօսելով գրած է թէ «Մելիտինէ կը նմանի Կոմմագինէի, քանզի ամբողջովին պտղատու ծառերով տնկուած եւ Կապադովկիոյ միակ մասն է այս կերպով մշակուած։ Ձէթ կ'արտադրէ եւ Մոնարիդ կոչուած գինին, որ Յունաստանի գինիներուն հետ կը մրցի»։ (ՍՏՐԱԲՈՆ, ԺԲ. 535)։

Ուրեմն Ստրաբոն կը հաստատէ թէ Մալաթիոյ մէջ կը հասնէր նաեւ ձիթենի, ինչ որ անակնկալ մըն է, քանի որ վերջերը գոյութիւն չունէր այլեւս այդ «օրհնեալ» ծառը։

Իսկ այն սովորական բերքերը, որոնք Փոքր Ասիան եւ Հայաստան ունէին, կը հասցնէր առատօրէն նաեւ այս միջասահման երկրամասը, շնորհիւ իր արգաւանդ դաշտերուն։

Ճիշդ այս բարեբեր եւ բնական հարստութիւններով հարուստ երկրամասը, որ ազգերու ճամբուն վրայ էր, ունենալով նաեւ ռազմական կարեւորութիւն, իր դիրքին պատճառով, կռուախնձոր եղած է եւ ցանկութեան առարկայ։

Իրարու ձեռքէն յափշտակած են զայն դրացի մեծ ուժերը, օգտուելու համար թէ՛ իր դիրքէն եւ թէ՛ իր հարստութիւններէն։

Անոր համար էր որ մանաւորապէս Մալաթիա եւ իր շրջակայքը երկար ատեն բիւզանդական կայսրութեան եւ արաբ խալիֆայութեան միջեւ շարունակ կռուախնձոր եղաւ։

Մանաւորապէս անապատներէն եկող Արաբները միշտ աշխատած են գրաւել այս քաղաքը եւ այն դաշտը, ուր ան կառուցուած էր, մանաւորապէս հրապուրուած անոր հարստութենէն։

931ին արաբ աշխարհագիր Իստխրի կը գրէ որ Մալաթիա «կը գտնուի

Ճապալ ալ Լուքքամի[1] (Jabal al Lukkam) կողքին դէպի Միջագետք տարածուող գաւառին մէջ։ Շուրջը բազմաթիւ բլուրներ կան, որոնց վրայ կաղնիներ, նշենիներ եւ այգիներ կան, եւ հողը կ'արտադրէ թէ' տաք եւ թէ ցուրտ կլիմաներու պտուղներ։ Չկայ բան մը որ հոն չկարենայ բուսնիլ։ Ներկայիս (իմա' Ժ. դար) յունական ամենահզօր քաղաքներէն մէկն է եւ բնակիչները Հայեր են։ (*Հմմտ.* G. le Strange. **Palestine under the Mosleme,** London, **1890,** էջ 499)։ Mustawfi:

*ԺԴ. դարուն արաբ հեղինակը կը հաստատէ թէ Մալաթիոյ* «արօտավայրերը հոչակաւոր էին, ցորեն, բամպակ եւ առատ պտուղ կը բուսնէին շրջակայքը»։ (G. le Strange. **The Lands of the Eastern Caliphate,** 1905, Cambridge, *էջ* 120)։

*Հետեւաբար, ինչպէս ըսած է Սահակ եպս. Կողեան* «յիրաւի դիւթիչ է Մալաթիոյ դաշտը», «ամբողջ աշխարհ շրջող ու գիտնականի աչքով զննող, դատող կարող Կարլ Ռիտտէր չի վարանիր դրախտ կոչելու Մալաթիայի դաշտը, աւելցնելով որ աշխարհի վրայ շատ հազուագիւտ են նմանները (*Կողեան, նոյն, էջ* 8)։

*Հայ հեղինակներէն Հ. Ղուկաս վարդապետ Ինճիճեան* (Աշխարհագրութիւն Չորից մասանց աշխարհի, *Ա. հատոր, էջ* 321), *որ իր գործը գրած է նոր կամ արդի Մալաթիոյ հիմնարկութենէն բաւական առաջ, Մալաթիոյ արգասաւորութեան վրայ կը խօսի, շատ մեծ գովեստով եւ.* «Պատուականութիւն բերոց Մալաթիոյ, *կ'ըսէ,* երեւելի է ի Փոքր Հայս, վասն պատուականութեան ջուրց իւրոց, զի գրեթէ յամենայն բոյսս եւ ի միրգս զընտիր եւ զպատուանականագոյն պտղաբերէ, տանձ նորա մեծ եւ քաղցր, սերկեւիլ նորա զանցանէ ծանրութեամբ քան զմի օխայ, եւ մինչեւ 2 օխայ գտանիլ ասեն երբեմն։ Խնձոր նորա քաղցրաճաշակ, պատմէ Քիաթիպ Չէլէպին թէ ի հասունանալ խնձորոյն բնակիչքն տառս եւ անուանս գծեալ ի վերայ թղթոյ եւ երբեմն նախ ողջոյն տողս տաղից յարմարեալ մատուցանեն զթուղթն ի վերայ պտղոյն յարեգդէմ կողմանէ նորա. յետ քանի մի աւուրց իւրաքանչիւր տառք կարմրանիշ տպաւորեն ի վերայ խնձորոյն, իսկ տեղիք ներքոյ մնացեալք թղթոյն դեղնագոյն մնան, որով երեւին իբրեւ տառք կարմիր ներկիւ գրեալք ի վերայ դեղին թղթոյ։ Ունի եւ ընկոյզս եւ այլ միրգս ինքնաբոյս»։

*Իսկ նորէն Սահակ եպս. Կողեան կը հարցնէ թէ* «Զրարբի եւ արեւաշատ այսպիսի դաշտի մը մէջ ի՞նչ է որ չի բուսնիր։ Կան բերքեր, որոնց անծանօթ էին հիները։ Այսպէս՝ շատ ընտիր ԱՖԻՈՆը, շերամի բոժոժը, ծխախոտը։ Հիները ալ սակայն կը ճանչնային բերքեր, որոնք այսօր անծանօթ են այս դաշտին, այնպէս ենթադրողը, զոր կը յիշատակէ յոյն աշխարհագէտը Ստրաբոն (ԺԲ. 535), երբ կը դրուատէ Մելիտինէի պտղաշատութիւնը։

---

*(1) Էլ Մուշթերէք կը յիշէ այս լեռը սահմանապահ վայրերու մէջ, Հարուն Էլ Րաշիտէն 800-ին հիմնուած երկու Հարունիյէ բերդերու քովը, որոնք՝ ըստ Եաքութի* Մուճամ Էլ Պուլտանին՝ *սուրիական սահմանագլուխին վրայ Մարաշի մօտ կը գտնուէին եւ իր ատեն Կիլիկիոյ Հայ Թագաւորութեան կը պատկանէին։*

Բայց թէ՛ հին եւ թէ՛ նոր ժամանակի համար Մալաթիայի դաշտը ամբարանոց էր ցորենի, գարիի։ Ստրաբոն կը գովէ այգեստանները եւ գինին։ Սրուաձտեցոց համով հոտով կը պանծացնէ «Համեղ, խոշոր, աղուոր» թութն ու ծիրանը (մըշմըշը), տանձն ու խնձորը, սալորն ու չամիչը) «տես Մելիտ. Մելիտինէ, Մալաթիա, էջ 9)։

*Այնպէս որ Մալաթիա բնութենէն նպաստաւորուած վայր մըն էր, որ բնականաբար երբ հոն բնակութիւն հաստատուէր, բարգաւաճ քաղաքի ծնունդ պիտի տար։*

*Իրապէս ալ Մալաթիա* «երկրագործական տեսակէտով... աչքի իյնող տեղ մըն է։ Ունի իր շուրջ ընդարձակ դաշտեր, արտեր, արօտավայրեր, բազմաթիւ այգիներ, պարտէզներ։ Եւ կ'արտադրէ մեծ քանակութեամբ ամէն տեսակ բերքեր, ցորեն, գարի, ափիոն, ծխախոտ, մետաքս, պտուղներ եւայլն։

Պտղաւատ երկիր, որուն մասնաւորապէս ծիրանը (մըշմըշը), խաղողը, իրենց տեսքով, համով ու հոտով, անգերազանցելի են։ Հայաստանի ներքին գաւառներուն համար, ձմրան եղանակին մէջ մասնաւորապէս, Մալաթիան կը կազմէ չոր միրգերու անսպառ շտեմարան մը։ Եւ իրօք համբաւաւոր են Մալաթիոյ մանաւանդ խոշորահատիկ, մոտ ու քաղցր դեղնորակ չամիչը, ինչպէս նաեւ խաղողի հիւթէ շինուած պաստեղը նշոտ, բլիթը, շարոցը, եւայլն։ Օրհնեալ, բեղմնաւոր վայր, ուր մանանայ իսկ կը տեղայ երկնից, գարնան եղանակին մէջ»։ (*Ս. Մ. Ծոցիկեան*, ԱՐԵՒՄՏԱՀԱՅ ԱՇԽ., էջ 378)։

*Այս բնութենէն շնորհուած առաւելութիւններուն պատճառով Մալաթիա իր շրջակայ վայրերուն համար առեւտրական մեծ շուկայ մը, կեդրոն մը եղած է միշտ,* (*Ս. Մ. Ծոցիկեան, նոյն, էջ* 378)։

*Բայց Մալաթիա միայն բուսականութեամբ եւ բերքերով չէ որ հարուստ է, այլ նպաստաւորուած է իր աշխարհագրական դիրքով, որ մեծ դեր կատարած է, ինչպէս իր պատմութեան, նոյնպէս իր տնտեսական կեանքին մէջ։*

*Կոզեան եպս. (տես էջ 9) իրաւամբ դիտել կու տայ թէ* «Եթէ մարդիկ սովոր են քար նետելու պտղազարդ ծառերու, ինչ զարմանք որ ազգերն ալ քար նետեն պտղալից դաշտերու։ Մանաւանդ որ Մալաթիա ազգերու ճամբուն վրայ էր։

Հին աշխարհի ամենէն կարեւոր զինուորական պողոտաները կ'անցնէին Մալաթիայէն։ Եփեսոսէն մեկնող պողոտան Մալաթիայի վրայով կ'երկարէր մինչեւ Բաբելաստան ու Հնդկաստան։ Սեւ Ծովէն պողոտայ մը կ'իջնէր դէպի Միջերկրական Ծով ու իր սիրտը կը գտնէր Մալաթիայի մէջ։ Ազգեր խուժած են այս պողոտաներէ, ու թէ՛ դարձուցած են վանառաշահ քաղաք եւ թէ՛ կողոպտած։ ՄԱԼԱԹԻՈՅ ԹԷ՛ ԴԻՐՔԸ ԵՒ ԹԷ ԱՐԳԱՍԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ ԲԱՆԱԼԻ ԵՆ ԱՆՈՐ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ»։

*Արդարեւ ինչպէս Մալաթիոյ պատմական անցեալի վրայ խօսուած էջերուն մէջ ցոյց տրուեցաւ, Մալաթիա ամենահին ժամանակներէ սկսեալ դե–*

բաղանցապէս զինուորական կայան մը կամ միջանջենական բանակատեղի մը եղած է ։

Շատ հին ժամանակներու մասին վերատին չխօսելով՝ եթէ միայն Է. դարէն վերջ բիւզանդական—արաբական զօտեմարտը միայն նկատի ունենանք, պիտի տեսնենք թէ բիւզանդական եւ արաբական երկու մեծ պետութիւնները մասնաւորապէս Մալաթիոյ շուրջը երկարատեւ պայքար մղած են, իսկ ԺԱ. դարէն ետք սախական բարբարոսներու դէմ ալ Բիւզանդիոն մեծ ճիգեր ըրած է Եփրատի գիծը պաշտպանելու ։

Ինչպէս Կոդեան (նոյն, էջ 11) կը գրէ, Մալաթիա գոյութիւն չունէր իբրեւ քաղաք Քրիստոսէ առաջ Ա. դարուն, երբ Ստրաբոն աշխարհագիրը, կը գրէր իր նշանաւոր երկը ։

Մելիտինէն Կապադովկեան նահանգ մըն էր ըստ Ստրաբոնի Կատաոնիա-յի եւ Եփրատի միջեւ ։

Պլինիոս (+ 79) նոյնպէս Քրիստոսէ ետք Ա. դարուն կը հաստատէ թէ Մելիտինէ քաղաք մը չէր, այլ մասն էր Կապադովկիայի, որ կ'երկարէր դէ-պի Հայաստան, Եփրատի ծունկին դէմ ։

Բայց Մելիտա անուն ամրոց մը կար Մելիտինէ կոչուած Կապադով-կեան 10 նահանգներէն մէկուն մէջ ։ Այդ ամրոցի շինութեանը Պլինիոս ար-ձագանգ ըլլալով աւանդութեան, Շամիրամին կը վերագրէ ։

Ստոյգ է որ Մեծն Տիգրան տիրած էր Մալաթիոյ, բայց չէր կրցած հոն մնալ եւ Ն. Ք. 64-ին, Եփրատին արեւմտեան կողմը իր կատարած գրաւում-ները կորսնցուցած է, այնպէս որ Մալաթիան ալ դադրած է հայկական ըլլալէ ։

Կապադովկիա, իր մէջը ունենալով Մելիտան անցած է Հռոմայեցինե-րուն եւ տեւականօրէն ծառայած է իբր անցք հռոմէական լեգէոններու, որոնք Պարթեւներու կամ Սասանեանց դէմ կ'արշաւէին, բայց տակաւին Մելիտինէ քաղաքը գոյութիւն չունէր, այլ կար միայն բերդ մը կամ ամրոց մը, ուր կը մնար հռոմէական սահմանապահ պահակազօրքը (Կոդեան, նոյն, էջ 13) ։

Վեսպասիանոսի (69—79) օրով 72—74ի տարիները Փոքր Հայք կցուե-ցաւ կայսրութեան եւ հին Գաղատիա նահանգը դրեթէ ամբողջութեամբ ձուլ-ուելով համախառնուեցաւ Կապադովկիոյ ընդարձակ կուսակալութեան մէջ, որ այս կերպով իր անշուք վիճակէն բարձրացաւ հիւպատոսական նահանգի աստիճանին, մշտակայ բանակով մը, որուն կայաններն էին Սատաղան[1] եւ Մելիտինէ (Անտերսըն, ՀԵՏԱԶՕՏԱԿԱՆ ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ Ի ՊՈՆՏՈՍ, էջ 106, Հ. Յակոբոս Վրդ. Տաշեան ՊՈՆՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ, 1919, Վիեննա եւ J. Laurent, **L'Arménie entre Byzance et l'Islam, 1919,** էջ 301) ։

Կայսրերու շրջանին հռոմէացիք մշտակայ բանակատեղիներ հաստա-տած էին Սատաղայի, Մելիտինէի եւ Սամոսատի մէջ, պահպանելու համար

(1) Ըստ Մոմզէնի մեծ հաւանականութիւն կայ որ Սատաղա արդէն զօրակայան մըն էր։

Եփրատի սահմանագլուխը (հմմտ. Կեռմոն եղբարք, ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ ՀՆԱԽՕՍԱԿԱՆ ՀԵՏԱԶՕՏՈՒԹԵԱՆ Ի ՊՈՆՏՈՍ ԵՒ Ի ՓՈՔՐ ՀԱՅՍ, էջ 314 եւ 360)։ Տիտոս կայսեր (28–30) ատեն Մելիտինէ նահանգին մէջ գոյութիւն ունեցող բերդին մէջ իբր սահմանապահ զետեղուած զօրքը քսաներորդ Լեգէոնն էր (Ադոնց, ՀԱՅԱՍՏԱՆ ՅՈՒՍՏԻՆԻԱՆՈՍԻ ՇՐՋԱՆԻՆ, ռուսերէն, էջ 93. Կողեան եպս. նոյն, 13)։

Զօրակայան մը հանդիսացող այս ամրոցին շուրջը տակաւ ժողովուրդ հաստատուեցաւ, եւ երեւան եկաւ բնակավայր մը կամ աւելի ճիշդ քաղաք մը, վանքի կառուցուեցան բազմաթիւ բնակարաններ։

Տրայանոս կայսրը (98–117) այս նորաշէն բնակավայրը կը բարձրացնէ քաղաքի աստիճանին՝ հռոմէական օրէնքներով քաղաքներու իրաւունքները շնորհելով անոր։

«Այս բարձրացումով կը կրկնապատկուի դաշտին ձգողականութիւնը» (Կողեան, նոյն, էջ 13)։

«Կը խմբուին շինարար տարրեր։ Շէնքեր կը բարձրանան ամրոցին չորս կողմը։ Ընդարձակ հրապարակներ կու տան քաղաքին հռոմէական կերպարանք։ Գեղեցկութեան շուք կը տարածեն տաճարները, բաղնիքները եւ թատրոնը՝ անհրաժեշտ թէ՛ զբօսանքի եւ թէ կրթութեան համար։ Այսպէս գեղակերտ ու բարեզարդ կը ճանչնայ զայն Պրոկոպիոս (526ին) հինգ տարուան աշխատանքի արդիւնքը նկարագրելով (ՎԱՍՆ ՇԻՆՈՒԹԵԱՆ, Դ. 15, Կողեան, նոյն, էջ 13)։

Ուրեմն քաղաքի մը գոյութիւն առնելուն պատճառ եղած է զինուորական կայանը։ Ասիկա սովորական երեւոյթ մը եւ շատ հասկնալի, քանի որ բանակ մը միշտ պարենաւորման հարց ունի եւ ասոր համար անոր շուրջը կը յածին հայթայթիչներ, մատակարարներ եւ ուրիշ այս կարգի շահագէտներ, օրինաւոր եւ ապօրէն շահերու հետամուտ։

Այս տեսակ վիճակ մը, ինչպէս ուրիշ վայրերու, նոյնպէս նաեւ անխուսափելիօրէն ստեղծուած էր Մելիտա ամրոցին շուրջը, որ քաղաքի վերածուած էր եւ առած հողամասին անունը։ Այսպէս, Մելիտինէի իբր քաղաք կարեւորութիւնը հետզհետէ աւելի շեշտուեցաւ եւ շատ ժամանակ պէտք չեղաւ որ Մելիտինէ նահանգին մայրաքաղաքի դիրքին բարձրանար։

Դիոկղետիանոս կայսրը (284–305), որ Փոքր Հայքը բաժնեց Կապադովկիայէն, այդ նոր նահանգին մայրաքաղաք նշանակեց Մելիտինէն։

Երբ աւելի ուշ Փոքր Հայքը երեքի բաժնուեցաւ ԱՌԱՋԻՆ, ԵՐԿՐՈՐԴ եւ ԵՐՐՈՐԴ ՀԱՅՔ կոչումներով, Մելիտինէ 378-ին եղաւ մայրաքաղաք Երկրորդ Հայքի, 536-ին Երրորդ Հայքի եւ Յուստինիանոսէն (527–565) ետք Առաջին Հայքի (Ն. Ադոնց ՀԱՅԱՍՏԱՆ ՅՈՒՍՏԻՆԻԱՆՈՍԻ ՇՐՋԱՆԻՆ, էջ 90–97 եւ 139. Կողեան, նոյն, էջ 16)։

Բայց ինչպէս գիտել կու տայ Սահակ եպս. Կողեան (նոյն) «Մայրաքաղաք Մելիտինէ ունէր հիմնական պակաս մը, որ շատ ծանր կը կշռէր պատերազմի պարագային։ Զուրկ էր պարիսպէ, կը հաղորդէ Պրոկոպիոս։ Այդ պա–

կասը կը սկսի դարմանել Անաստաս կայսր (491–518), բայց կիսաւարտ կը մնայ մահուան պատճառով: Սկսուածը կը շարունակէ Յուստինիանոս Ա. (527–565) ու ոչ միայն պարիսպը կ'ամբողջացնէ, այլ նաեւ կը շէնցնէ քաղաքը նորանոր շինութիւններով (Պրոկոպիոս ՎԱՍՆ ՇԻՆՈՒԹԵԱՆՑ, Դ. 15):

*Սակայն պատերազմի եւ մեծ պետութիւններու իրարու հետ զինական չփումներու վայրը հանդիսացող այս շրջանակին մէջ, ուր ծնած էր Մելիտինէ քաղաքը, որ կրցաւ օգտուիլ իր այս դիրքէն եւ մեծնալ ու բարգաւաճիլ իբր քաղաք, բայց նոյնքան ալ տուժեց, վասնզի իբր պատերազմի թատերավայր չկրցաւ հանդարտ եւ անխռով մնալ եւ շարունակական կերպով անընդհատ զարգացնել իր տնտեսական բարգաւաճումը: Քանի անգամ կործանեցաւ եւ դարձեալ վերականգնեցաւ եւ այս շնորհիւ իր տեղին եւ դիրքին կարեւորութեան, որ անժխտելի իրողութիւն մըն է:*

*Մանաւանդ Է. դարէն ետք, բիւզանդական կայսրութեան վիճակեցաւ քրիստոնեայ քաղաքակրթութիւնը եւ մշակոյթը պաշտպանելու պարտականութիւնը, զոր Բիւզանդիոն կատարեց անընդհատ Է. դարէն մինչեւ ԺԵ. դար՝ պատերազմելով արաբ խալիֆաներու եւ ասիական բարբարոսներու դէմ:*

*Այս պայքարին մէջ Բիւզանդիոնի գլխաւոր առաջադրութիւնն էր պաշտպանել Եփրատի գիծը եւ չթողուլ որ բարբարոսները անցնին այդ գէտը:*

*Փոփոխական յաջողութիւններով Բիւզանդիոն այս գիծը կրցաւ պաշտպանել եւ նոյնիսկ երբեմն անցաւ զայն եւ նուաճումներ կատարեց Հայաստանի, ինչպէս նաեւ Սուրիոյ եւ Պաղեստինի մէջ:*

*Յատկապէս Մալաթիա, Փոքր Ասիոյ մուտքի վրայ եւ Տաւրոսեան լեռներու անցքերուն մօտ, Ասորիքէն եւ Միջագետքէն առաջացող Արաբներուն եւ Արեւելքէն արշաւող Կեդրոնական Ասիոյ բարբարոսներուն դէմ մղուած պայքարին մէջ, կը ներկայացնէր ամենէն կարեւոր տեղերէն մէկը այս պաշտպանութիւնը կատարելու տեսակէտով, իր ռազմական դիրքով:*

*Եւ այս պատճառով իսկ Բիւզանդացիք զայն դարձուցած էին բանակատեղի: Մալաթիոյ զինուորական կայանի հանգամանքը, թէ՛ նպաստաւոր եւ թէ բացասական հետեւանքներ ունեցած է քաղաքի կեանքին վրայ:*

*Այսպէս Մալաթիա օգտուեցաւ իր բանակատեղիի հանգամանքէն, վասնզի հոն ստեղծուած ոգեւորեալ առեւտուրին շնորհիւ հարստութիւն կուտակեց եւ բարեկեցիկութիւն ունեցաւ:*

*Իսկ տուժած է քանի՛ քանի՛ անգամ իբր պատերազմի թատերավայր յարձակման եւ դրաւման առարկայ ըլլալով զանազան պետութիւններէ, որոնք նոյնիսկ հրկիզած եւ կործանած են քաղաքը:*

*Այսպէս, բիւզանդ–սասանեան պատերազմներու ընթացքին, 577–ին անիկա հրոյ ճարակ եղաւ Խոսրով Ա.էն (532–579), որպէսզի այս բարգաւաճ քաղաքը չմնայ Բիւզանդացիներու ձեռքը:*

*Խոսրով Ա. չարաչար պարտուեցաւ Մալաթիոյ քով եւ փախաւ փիղի*

*վրայ Եփրատը անցնելով եւ հազիւ մազապուր ազատեցաւ* (*Կոգեան*, *նոյն*, *էջ* 6)։

*Արաբները երբ յաջորդեցին Պարսիկներուն իբր հակառակորդ Բիւզանդացիներու, Մալաթիոյ ռազմական կարեւորութիւնը աւելի շեշտուեցաւ։*

*Ասիկա անմեկնելի չէր, քանի որ, ինչպէս տեսնուեցաւ, Է. դարէն մինչեւ ԺԱ. դար բիւզանդական պետութիւնը եւ արաբական խալիֆայութիւնը մաքառեցան իրարու հետ Փոքր Ասիոյ մուտքին վրայ մանաւանդ Միջին Եփրատի վրայ* (*տես աստ*, Պատմական Անցեալ, *գլ. Թ. էջ* 176–213), *ուր մանրամասնօրէն ներկայացուած է բոլոր այն կռիւները, որոնք Մալաթիոյ շուրջը կատարուած են։ Հոն բացատրուեցաւ թէ ինչո՞ւ Մալաթիա ըստացաւ այս կարեւորութիւնը, զոր երկու կողմերը կու տային անոր։ Հոն կը տեսնուէր թէ ի՛նչպէս քաղաքը իրարու ձեռքէ կը յափշտակէին Արաբները եւ Բիւզանդացիք՝ քանի քանի անգամներ առնել–տալով։*

*Բիւզանդացիք հակառակ անոր որ մեծապէս շահագրգռուած էին պաշտպանելու Եփրատի գիծը մանաւանդ Եփրատի հովիտին այն մասին մէջ, որ Ակն եւ Արաբկիր քաղաքներէն կը սկսի եւ կ՚իջնէ Սուրիոյ սահմանները՝ կեդրոն ունենալով Մալաթիան, ինչպէս տեսնուեցաւ* (*վերը էջ* 208), *չկըրցան զայն տեւականապէս իրենց տիրապետութեան տակ պահել եւ Արաբները քանի անգամներ պարբերաբար առին զայն եւ իրենց տիրապետութեան տակ պահեցին եւ տեւական կարծելով իրենց գրաւումը՝ քաղաքը վերահաստատեցին կործանումներէ ետք եւ բարգաւաճ վիճակի հասցուցին։*

*Օրինակի համար էլ Մանսուր խալիֆան* (754–775) 756*–ին զարկ տըւաւ շինարարութեան քանիցս մոխիրի վերածուած Մալաթիան վերակառուցանելով։ Բայց քիչ ետքը կրկին աւերակի վերածուեցաւ, վասնզի Կոստանդին Կոմպրոնիմոս կայսրը* (740–775) *այրեց Մելիտինէն* 775*–ին՝ զայն Արաբներուն չձգելու համար։*

*Կոստանդին Կոմպրոնիմոս քաղաքին բնակչութիւնը մեծ մասամբ Հայ, փոխադրեց Կ. Պոլիս եւ քաղաքը դարձեալ մնաց ամայի եւ թերեւս մնար այնպէս եւ բնաւ չվերականգնէր, եթէ Մալաթիա իբր սահմանապահ բանակի կայան մը վերստին չվերականգնէր։*

*Երբ Ժ. դարուն շնորհիւ նշանաւոր հայ զօրավարներուն բիւզանդական բանակները վերագրաւեցին Սուրիան եւ Միջագետքը եւ առաջացան մէկ կողմէն մինչեւ Երուսաղէմ, միւս կողմէն մինչեւ Եդեսիա եւ մինչեւ Տիգրիս, բիւզանդական բանակներուն փառաւոր յաղթանակներ ապահովելով, այդ միջոցին գրաւեցին նաեւ Մալաթիան* (934) *երկու հայ զօրավարներ՝ Յովհաննէս Գուրգէն* (*Կուրկուաս*) *եւ Մլեհ։*

*Տեւական պատերազմները եւ յաջորդական աւերումները եւ այդ առթիւ գործադրուած կոտորածները Մալաթիան դարձուցած էին անապահով վայր մը, ուր ոչ ոք կ՚ուզէր բնակիլ, ուրիշ ապահով վայրեր փոխադրուելով։*

*Բայց անհրաժեշտ էր քաղաքը շէնցնել, ինչ որ՝ ինչպէս տեսնուեցաւ՝ յաջողեցաւ Նիկեփոր Բ. կայսրը* (963–969) *զանազան հրապուրիչ խոստում–*

*ներով հոն բնակեցնելով Յակոբիկեան Ասորիները , որոնք սակայն յուսախաբութեան մատնուեցան , վասնզի կայսրը իր խոստումը չյարգեց եւ դարձեալ հալածեց այդ միաղաւան Ասորիները յանուն «ուղիղ» հաւատոյն բիւզանդական եկեղեցիին (տես վերը էջ 209) :*

*Շատ չանցած , ԺԱ . դարուն սկիզբը սկսան Սելճուկեան արշաւանքները ։ Սելճուկեանք 1021–ին Վասպուրականի սահմաններէն անցան , եւ հետզհետէ յաջորդական յարձակումներով բիւզանդական կայսրութեան հողերուն մէջ առաջանալով՝ տակն ու վրայ ըրին երկիրը :*

*Բիւզանդացիք չկրցան պաշտպանել Եփրատի գիծը եւ Մալաթիա ինկաւ 1058ին Սելճուկներու ձեռքը , եւ դարձեալ ջարդի ու կողոպուտի ենթարկուեցաւ , ինչպէս Արիստակէս Լաստիվերդացի իր սրտաճմլիկ տողերով եւ Յովհաննէս Ժ . Բար Շուշան Ասորի պատրիարքը իր ժամանակագրութեան մէջ կը նկարագրեն :*

*Մալաթիա այլեւս բնաւ անդորրութիւն չվայելեց եւ չարունակ զանազան իշխանութիւններէ գրաւուեցաւ եւ խաղաղ զարգացում մը չունեցաւ :*

*Այս պատերազմներուն վրայ խօսուած ըլլալով ընդարձակ (տես ՊԱՏՄԱԿԱՆ ԱՆՑԵԱԼ հատուածին ԺԱ . ԺԲ . ԺԳ . եւ ԺԴ . ԺԵ . ԺԶ . եւ ԺԷ . գլուխները)՝ վերստին անդրադառնալ աւելորդ կը նկատեմ :*

*Վերջապէս ենթարկուեցաւ Օսմանեան տիրապետութեան , 1396–ին , երբ Սուլթան Պայազիտ Ա . (1389–1403) գրաւեց քաղաքը եւ ինքն ալ իր կարգին թալանեց եւ աւերեց քաղաքը :*

*Սակայն դարձեալ վերջնական չեղաւ այս գրաւումը , վասնզի 1401–ին Լէնկթիմուր Խօզպէք Թաթարներու այս ահեղ պետը գրաւեց Մալաթիան , որ մէկ դար վերջը 1516–ին միայն Սուլթան Սելիմ Ա . (1512–1520) կրկին պիտի գրաւէր վերջնականապէս եւ կանգնէր յաղթութեան կոթող մը , երբ քաղաքը արդէն չքացած եւ փլատակի վերածուած էր :*

*Օսմանեան տիրապետութեան շրջանին , մանաւանդ սկիզբները , Մալաթիա պատերազմական գօտիի մէջ կը գտնուէր դարձեալ , քանի որ բանակատեղի կամ զինուորական կայան էր կրկին դէպի Սուրիա , Պաղեստին եւ վերջապէս դէպի Եգիպտոս կատարուած արշաւանքներու ատեն , ինչպէս Թուրք եւ պարսիկ պատերազմներու միջոցին :*

*Ասկէ զատ անիկա զինուորական կայան մըն էր Տաւրոսի լեռներուն մէջ որջացած Թուրքմէն , Աֆշար եւ այլ ցեղերու դէմ գործող ուժերուն համար :*

*Այս պատճառով Մալաթիա ենթարկուած է բոլոր այն չարիքներուն , որոնք սովորաբար կը գործադրուէին Թուրք բանակներու կողմէն ընդդէմ խաղաղ բնակչութեան եւ բոլոր այն կողոպուտներուն , որոնք կը կատարուէին Ենիչէրիներու կողմէն :*

*Գաղափար մը տալու համար թէ ի՛նչ պատուհաս մըն է բանակի մը անցք տալը քաղաքի մը համար , կը բաւէ թուել այն տուրքերը , որոնք տալու կը պարտաւորուէր առանց յիշելու բոլոր այն վայրագութիւնները եւ գազանութիւնները որ զօրքերը կրնային կատարել սանձարձակ : Այսպէս , անոնք*

*պատերազմական ծախուց համար* թէքեալիֆի իւրֆիյէ *ընդհանուր անունին տակ իրենց վճարած, ինչպէս* իմտատիյէ սէֆէրիյէ (*պատերազմական նպաստ*) խանէի ճիհատիյէ (*սրբազան պատերազմի նպաստ*) *եւայլ կոչուած զանազան տուրքերէն զատ ստիպուած էին վճարելու կարգ մը ուրիշ տուրքեր զինուորներու հանգստութեան եւ ուտեստի համար, երբ բանակը տեղ մը կանգ առնէր: Այս տուրքերն էին* ***ՄՈՒԳԱՊԷԼԷ ԱԳՉԷՍԻ*** (*Հատուցումի ստակ*), ***ԱՎԱՐԸԶ ԱԳՉԷՍԻ*** (*Արկածադրամ*), ***ՄԷՆՉԻԼ ՄԱԼԸ*** (*Իջեւանի գին*), ***ԳՈՆԱՔ ՄԱՍՐԱՖԸ*** (*Օթեւանի ծախք*), ***ՊԷՏԷԼԻ ՆԻՒՉԻՒԼ*** (*Իջեւանի փոխարժէք*), ***ԽԱՆ ՎԷ ԽԱՆԷ ՎԷ ՉԱՅԸՐ ՔԻՐԱՍԸ*** (*խանի եւ տունի եւ արօտի վարձք*), ***ՓԷՔՍԻՄԱԹ ՊԱՀԱՍԸ*** (*Պաքսիմաթի գին*), ***ՉԱԽԻՐԷ ՊԱՀԱՍԸ*** (*Ուտեստեղէնի գին*), ***ԻՒԼԻՖԷ ՊԱՀԱ*** (*Թոշակի գին*), ***ԳՈՒՄԱՆԵԱ ՊԱՀԱ*** (*պարենագին*), ***ԹԱՅԻՆԵԱԹ ՊԷՏԷԼԻ*** (*Օրապահիկի փոխարէն*), ***ՆԱՆ ՊԱՀԱ*** (*հացագին*), ***ԳԱԹԸԳ ՊԱՀԱ*** (*ուտեստի գին*), ***ԹԱՄԻՅԷ ՆԷՎԱԼԷ ՊԱՀԱ*** (*կերակուրի ծախքի փոխադրամ*), (*տես Գ. Հնասէր*, ***ԲԱԶՄԱՎԷՊ*** ,1934, *էջ* 33–34):

*Այսպէս Թրքական բարբարոսութիւնը օրինականացուցած էր կողոպուտը կարգ մը վճարումներով, որոնք հարկադրուած էին կատարել բանակներ հիւրընկալող քաղաքները:*

*Այս պաշտօնական մասն էր կողոպուտին: Ասկէ զատ անպաշտօն եւ բոլորովին քմահաճօրէն գործադրուած կողոպուտ մըն ալ կար, որ նոյնքան կամ աւելի անտանելի էր:*

*Սակայն ինչպէս չարիքները երբեմն իրենց հետը կը բերեն բարիքներ ալ, քաղաքի մը բանակներու անցքի վրայ գտնուիլը կամ բանակատեղի ըլլալը իր անպատեհութիւններուն հետ կը բերէր նաեւ իր առաւելութիւնները, դէթ նիւթական տեսակէտով, վասնզի այդ պատճառով կը ստեղծուէր առեւտրական շարժում:*

*Բանակները պէտք է պարենաւորուէին իրենց կանգ առած տեղերը: Ասոր համար անոնք յաճախ կը կողոպտէին երբ իրենց ուզածը կը գտնէին, սակայն ամէն առեն չէին կրնար գտնել, վասնզի բնակիչները երբ կասկած ունենային թէ առանց վճարումի պիտի յափշտակուէին իրենց ունեցածները, չէին հայթայթեր ոեւէ ապրանք եւ նոյնիսկ կը ծածկէին:*

*Յափշտակութիւնը եւ բռնագրաւումը կ'ունենային իրենց ուրիշ մէկ հակազդեցութիւնը: Տեղացի ժողովուրդը ատելութեամբ կը լեցուէր պետութեան դէմ եւ կը ցանկար որ անիկա պարտուէր:*

*Նոյնիսկ անոր պարտութեան մատնուելու համար կ'աշխատէր, եթէ կարենար:*

*Թերեւս այս պարագան նկատի ունենալով է որ Պարսից Շահ Իսմայիլ վեհապետը* 1499*–ին երբ օսմանեան պետութեան դէմ կը պատերազմէր, հրամայեց ամէն ինչ գնել կանխիկ դրամով եւ սպառնաց մահով պատժել ան որ պիտի յանդգնէր ոեւէ բան մը առնել անվճար:*

Giovan Marie Angiolello (1472–1514), *որ ժամանակ մը գտնուած էր Ուզուն Հասանի* (1469–1478) *բանակը եւ ապա ընկերակցեր էր օսմանեան*

*բանակին, երբ Սուլթան Սելիմ* (1512–1520) *Եգիպտոսը գրաւելու կ'երթար, կը նկարագրէ թէ ինչպէս կը պարենաւորուէին օսմանեան բանակները:*

*Իր ըսածներէն կը հասկցուի թէ արդարեւ բանակներու անցքը առեւտրական շարժում կը ստեղծէր: Ան կ'ըսէ թէ* «Պարենաւորումը մեծ խնամք ու ջանասիրութիւն կը պահանջէր՝ բանակը առատութեան մէջ պահելու համար: Ասոր համար երկու արփախիմիներ նշանակուած էին: Անոնց պարտականութիւնն էր, երբ մեծ թուրքը պատերազմի երթար, լուր ղրկել օր մը առաջ ժողովուրդին իմաց տալու համար թէ բանակը պիտի իջեւանի այդ շրջանին մէջ: Եւ այդ շրջաններու կառավարիչները եւ իշխանները կը հայթայթեն առատութեամբ պարէն բանակին համար եւ ամէն աստիճանի մարդիկ կամովին կու գան, որպէսզի վաճառեն իրենց ապրանքները, ինչպէս նաեւ բարեկամութիւն եւ բարեգալուստ ըսելու համար, կատարելապէս վստահ ըլլալով, որ ոչ մի բռնութիւն պիտի չկատարուի իրենց վերաբերմամբ, եւ վա՛յ անոր որ կը համարձակի բռնութիւն կատարել անոնց դէմ, քանի որ այնպիսին կը պատժուի: Նոյնպէս բանակատեղի կ'երթային շատ վաճառորդներ, ինչպէս մսավաճառներ, հացագործներ, խոհարարներ եւ ուրիշ շատեր, որոնք ապրանքներ կը գնեն դուրսէն եւ կը բերեն բանակատեղին շահելու համար, եւ այս առեւտուրին մեծ ու հարուստ մարդիկ եւս կը մասնակցին: Եւ բոլոր անոնք, որոնք այս առեւտուրով կը զբաղին, կը պաշտպանուին իշխանութեան կողմէ, այն ամէն բանի մէջ որ կը ծառայէ բանակին մատակարարութեան, այնպէս որ ամէն ժամանակ երբ բանակը այստեղ կու գայ, եթէ ճանապարհները պաշարուած չեն թշնամիին կողմէ, մեծագոյն առաւելութիւնը կայ:» (*Յ. Յակոբեան ՈՒՂԵԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ, Ա. Երեւան*, 1932, *էջ* 260):

*Ասկէ զատ նոյն ուղեգիրը կը նկարագրէ պատերազմի ժամանակ բանակին թշնամի երկիրը առաջանալէն ետք, անոր պարենաւորման եղանակը, որ ոչ նուազ հետաքրքրական է, մանաւորապէս ականատես այս օտարականին իրաւ անհաւատալի, սա յայտարարութիւնը թէ* «Ուզուն Հասանի դէմ կատարուած այս արշաւանքի ընթացքին թուրքը կանոնաւոր վճարումէն զատ, երբեք ամսուան կանխավճար կ'ընէր...» (*Նոյն, էջ* 262):

*Ասոնք կը հաստատեն թէ բանակին պարենաւորումը հնարաւոր ընծայելու եւ ժողովուրդը քաջալերելու համար որ անվերապահ իր մթերքը տրամադրէ, գրաւում չէր կատարուեր եւ ամէն ինչ կանխիկ վճարումով կ'առնուէր, այնպէս որ բանակին պէտքերը հոգալու համար շատեր նոյնիսկ շահու համար հեռու տեղերէ ապրանք կը բերէին եւ կը վաճառէին: Բանակներու անցքը այսպէս առաջ կը բերէր իր ճամբուն վրայ գտնուած քաղաքներու մէջ առեւտրական շարժում:*

*Նոյնպէս առժամապէս կամ մշտապէս բանակատեղի դարձած քաղաքները զօրքին ներկայութենէն թէեւ կը տառապէին, սակայն եւ այնպէս նիւթապէս կ'օգտուէին:*

*Մալաթիա, որ իսկապէս ճամբու վրայ գտնուող մեծ քաղաք մըն էր եւ անկէ անցած էին օսմանեան բանակները միշտ դէպի Պարսկաստան, Միջա–*

գետք եւ Սիւրիա գացած ատեն, իբր պարենաւորման կայան բանակներու, օգտուած է տնտեսապէս:

Մալաթիա, որ եղած էր բանակատեղի, ներքին ըմբոստ եւ չնուաճուած շրջանները օսմանեան պետութեան կցելու եւ Եգիպտոսի կուսակալ Մէհէմմէտ Ալիի բանակները վանելու համար, տեսնուեցաւ թէ ինչ վիճակի ենթարկուեցաւ երբ Հաֆըզ փաշա սպարապետը եւ գերման մարզիչ Մոլթքէ իրենց բանակատեղի ըրին Մալաթիան:

Այս պատճառաւ, ինչպէս տեսնուեցաւ, քաղաքը իր տեղը փոխեց եւ Հին Մալաթիայէն հեռու ստեղծուեցաւ Նոր Մալաթիան, արդի քաղաքը:

Մալաթիացիք հանդուրժեցին այս տեղափոխութեան եւ զինուոր ու բանակ հիւրընկալող քաղաքներու ենթարկուած սովորական անպատեհութիւններուն, բայց նիւթապէս ալ նպաստաւորուեցան:

Այս պատճառով Մալաթիա ինչպէս հին ժամանակներու, նոյնպէս նաեւ նոր դարերու մէջ ունեցաւ բաւական բարգաւաճ վիճակ մը տնտեսապէս:

Իր տնտեսապէս զարգացման իբր ազդակ իր հարուստ արդիւնաբերութենէն եւ իբր զինուորական կայան, առեւտրական կայանի մը վերածուելու պարագայէն անջատ կար նաեւ երրորդ ազդակ մը, որ էր իր աշխարհագրական դիրքը, եւ իր հաղորդակցութիւնները՝ մօտաւոր եւ հեռաւոր քաղաքներու հետ:

Ինչպէս տեսնուեցաւ, Մալաթիայէն կ'անցնէր Պարսկաստանի արքունի ճանապարհը, որ Եփեսոսէն մինչեւ Եկբատան (Համատան) կ'երկարէր եւ ամենակարեւոր նշանակութիւն ունէր որքան զինուորական, նոյնքան առեւտրական տեսակէտով:

Այս ճամբան Եփրատը կ'անցնէր Մալաթիոյ մօտ իբր ամենէն յարմարագոյն վայրը: Հռոմէական կայսրութեան ատեն ալ կար ճամբայ մը, որ քիչ տարբերութեամբ կը հետեւէր հին ճամբուն եւ Մետաքսի Ճանապարհին մէկ շարունակութիւնը կամ ճիւղաւորումն էր, որ նոյնպէս կ'անցնէր Մալաթիայէն:

Ուշադիր ակնարկ մը նետելով աշխարհագրական քարտէզի մը վրայ շատ շուտով պիտի համոզուիք թէ Մալաթիա արդարեւ ունէր այնպիսի դիրք մը, որ մեծ յարմարութիւններ կը ներկայացնէր առեւտուրի իբր վայր մը, որ հաղորդակցութեան դիւրութիւններ ունէր:

Փրոֆ. Րամսէյ, որ Փոքր Ասիոյ նոր Ստրաբոնը նկատուած է, իր համբաւաւոր գործին մէջ, որ Փոքր Ասիոյ աշխարհագրութեան նուիրուած է, կ'ըսէ թէ «Փոքր Ասիա ընդհանրապէս խաղաղ երկիր մըն էր եւ ճամբաները մեծ մասամբ շինուած էին գլխաւորապէս վաճառականական նպատակներով, դէպի Իտալիա դիւրին փոխադրութիւններու համար, բայց կան այդ սովորական ճամբէն բազմաթիւ բացառութիւններ, ինչպէս Կապադովկիոյ եւ Փոքր Հայքի ճամբաները, որ շինուած են սահմաններու պաշտպանութեան նպատակով:

Մելիտինէ մեծ զինուորական կայան մըն էր: Այս ճամբաները, որոնք

Մելիտինէէն կը տանէին, մղոնաքարերու վրայ փորագրուած ունէին հեռաւորութեան չափերը:

Լեռնադաշտին հարաւային երկայնքին կարգ մը ուրիշ ճամբաներ շինուած էին դաշտերու մէջ Իսաւրիոյ եւ Պիսիդիոյ անզուսպ լեռնականներէն պաշտպանուելու համար:

Այս ճամբաները շինուած էին Օգոստոս կայսեր ժամանակ, որ կարգ մը հռոմէական գաղութներ եւ ամրոցներ հաստատեց Տաւրոսի լեռներու ստորոտներու երկայնքին եւ որոնք միացուած էին կեդրոնական գաղութին Պիսիդեան Անտիոքի (հիմա Ագշէհիր):

Այս ճամբաներու կազմակերպութիւնը վստահօրէն ենթադրել կու տայ թէ Օգոստոսի ծրագիրն էր հռոմէական գաղութներու եւ ամրոցներու զինուորական պաշտպանութիւնը: Սակայն հաստատուն ապացոյցներ կը պակսին: Վաւերագիրներէն ոչ մէկը խօսած է կարգ մը ճամբաներու մասին եւ ոչ մէկ հեղինակ անոնց ակնարկած է: Իրապէս՝ միայն օտար աղբիւրէ գիտցած եմ մղոնաքարերու գոյութիւնը: Գտած եմ միայն հատ մը... անծանօթ գաղութի մը կողմերը, որ ունէր Ն. Ք. 6 թուականը, Օգոստոս կայսեր անունը, փոխկառավարիչին անունը եւ թիւ մը, որ կրնար բացատրուիլ միայն իբր զինուորական կեդրոնէն մինչեւ Պիսիդեան Անտիոք հեռաւորութիւնը: Ուստի այս քարը կ'ապացուցանէ ճամբու մը գոյութիւնը, որ շինուած էր միացնելու համար այս գաղութը Անտիոքի հետ, նոյն տարին իսկ երբ Օգոստոս կը հիմնէր իր գաղութները, իսկ նման ճամբայ մը կրնայ ապացուցանել միւս գաղութներու պարագան: Այս գաղութները շուտով կորսնցուցին իրենց զինուորական արժէքը եւ զինուորական ճամբաներու դրութիւնը ջնջուեցաւ եւ ընդհանուր առմամբ Անատոլական դրութեան ենթարկուեցան:» (Ramsay, **The Historical Geography of Asia Minor,** էջ 44):

*Արդարեւ հին ժամանակներու մէջ ոչ թէ այսօրուան Մալաթիան, որ նոր քաղաք մըն է, այլ վաղեմի Մելիտը ու Մելիտինէն եւ շրջակայ մի քանի քաղաքները, մանաւանդ Սամոսատը, առեւտրական կեդրոններ եղած են:*

*Եթէ Մալաթիա խաղաղութիւն վայելէր եւ հեռու մնար պատերազմական գօտիէն, բնական է պիտի բարգաւաճէր եւ տնտեսապէս զարգանար, բայց ռազմագիտական դիրքին պատճառով այդ անդորրութիւնը չվայելեց եւ ունեցաւ շատ ելեւէջներ: Քանի քանի անգամներ Մալաթիա կործանած եւ վերաշինուած քաղաք մը եղած է: Հետեւաբար իր բարգաւաճ կեանքը տեւականութիւն չէ ունեցած եւ մահ ու աւեր որոշ շրջաններուն գայն անշքացուցած եւ նոյնիսկ ամայի դարձուցած են, բայց քաղաքը շուտով վերականգնած է, շնորհիւ իր աշխարհագրական դիրքին ընծայած առաւելութիւններուն եւ մանաւանդ իր արդիւնաբերութիւններու առատութեան, որոնք գլխաւոր ազդակներն էին իր տնտեսական բարգաւաճման. ինչ որ կը հաստատեն արաբ պատմագիրներն ալ, որոնք իբր Մալաթիոյ գրաւման համար մաքառող ազգի մը անհատները, յատուկ շահագրգռութիւն մը ունեցած են այս քաղաքին նկատմամբ:*

*Այսպէս Իտրիսի, որ իր գործը գրած է ԺԲ. դարուն շուրջ 1154ին, կը գրէ թէ* «Մալաթիա ամրացեալ քաղաք մըն է եւ հին ատեն մեծ քաղաք մըն էր, բայց Յոյները քանիցս զայն աւերեցին եւ կործանեցին անոր բարգաւաճ վիճակը եւ գրաւեցին անոր հարստութիւնները»։ (*Իտրիսի*, 26)։

*Իսկ Իսթախրի նաեւ կը հաստատէ թէ Մալաթիա* «ընդարձակ քաղաք մըն է, եւ ամենահզօր ամրոցներէն մէկը եւ ամենէն կարեւորներէն մէկը իր կայազօրքով եւ շինութեամբ»։

*Նոյնպէս արաբ աշխարհաշրջիկ պատմագիր Շեհապետտին Աբու Աբտալլա Եաքութի հեղինակութիւն եղող ՄՈՒՃԱՄ ԷԼ ՊՈՒԼՏԱՆԻ (Աշխարհագրական բառարան) մէջ, որ հիճրէթի 625-ի (Քր. 1227) թուականին գրուած հոյակապ գործ մըն է, կ'ըսուի որ, Մալաթիա* «Յունական երկիրներու նշանաւոր քաղաքներէն մէկն է, որ այժմ իսլամներուն ձեռքը կը գտնուի։ Քաղաքին հիմնադիրը եղած է Մեծն Աղեքսանդր, բայց մզկիթը կառուցուած է Մուհամմէտի ընկերներուն ձեռքով։

Խալիֆա Պին Խայեաթ կը պատմէ թէ Մալաթիա հիճրէթի 140 (Ք. 757–8) թուականին վերաշինուած է իսլամներու ձեռքով, որոնք բնակչութիւն հաստատած են հոն։ Այս քաղաքին ակնարկութիւն կ'ընեն Միւթենեպպի եւ Աբու Ֆերաս՝ բանաստեղծութիւններու մէջ։

322 (Քր. 934) թուականին զուգադիպող անցքերու կարգին՝ Աբու Ղալիպ Հէմմամ Պին էլ Ֆա'ալ իր պատմագիրքին մէջ կը գրէ, թէ վերոյիշեալ տարին Մալաթիան գրաւելով՝ քաղաքին պարիսպն ու դղեակները քանդել տուած է Տոմոսդոս յոյն զօրավարը։

Պատմական այս դէպքին առթիւ բազմաթիւ բանաստեղծութիւններ գիրի առնուած են։ Այս քաղաքը ծնունդ տուած է գիտնականներու»։

*Գալդաշանտի, ԺԴ. դարուն ժամանակագիր մը, քաղուածները ընելով իրմէ առաջ ապրող մատենագիրներէն, այդ «մեծ քաղաքին» մասին վկայութիւններ կը ներկայացնէ, որոնք կը հաստատեն մանաւորապէս այդ քաղաքին ռազմական կարեւորութիւնը եւ դիրքը։*

*Այսպէս, ան գրած է թէ* «Իպն Զանգալ Սիւրիական երկիրներու մաս կը նկատէ Մալաթիան եւ կ'ըսէ թէ ան պիլատ էր Րումի[1] գիւղերէն իջեւան մը հեռաւորութիւն ունի»։ Համայի տէրը կը գրէ թէ աւելի յարմար է պիլատ էր Րումի մաս նկատել զայն, թէեւ ոմանք Միջագետեան սահմանապահ վայրերու մաս կը նկատեն։ Էր Րաւտ էլ Միխթար հետեւեալը կ'ըսէ. «Հին քաղաք մըն էր, զոր Յոյները քանդեցին։ Ուստի, Աբու Ճաֆար էլ Մանսուր, այսինքն Աբասեան երկրորդ խալիֆան, վերաշինեց զայն Հիճրէթի 139 (Քր. 756–7) թուականին եւ շրջապատեց ամուր պարիսպով։ Ծառերով, պտուղներով եւ գետերով օժտուած պարսպապատ քաղաք մըն է՝ տարածուն գետնի մը վրայ եւ հեռուէն շրջապատուած էր լեռներով։ Ունի գետակ մը, որ պարիսպին առջեւէն կ'անցնի։ Ունի նաեւ ջրմուղներ, որոնք քաղաքը կը մտնեն եւ տունե-

(*1*) *Պէտք է հասկնալ Բիւզանդական երկիրները։*

բու մէջ կը հոսին: Սակայն քաղաքը խիստ ցուրտ է: Կը գտնուի հիւսիսային կողմը այն անկիւն կազմող լերան, որուն արեւմտեան կողմը կ'իյնար Պէսի»:

*Արաբ մատենագիրներու այս վկայութիւնները կը հաստատեն մեր ներկայացուցած ազդակներով Մալաթիոյ տնտեսական բարգաւաճումը: Նոյնը հաստատող վկայութիւններ դժբախտաբար չունինք հայ աղբիւրներու մէջ, բացի գրեթէ ժամանակակից անցողակի երկու յիշատակութիւններէ, որոնք հոս կը ներկայացնեմ:*

*Առաջինը անոնց նամակ մըն է, որ իր ժամանակին մեծ մտաւորականը եւ միջազգային զարգացումով օժտուած անձնաւորութիւնը Գրիգոր Մագիստրոս* (+1059) *ուղղած է «Առ Պաւստեան պատրիկն եւ աշխարհագիր սակս բարեխօսութեան վաճառականի ումեմն ի Մելիտինոյ Եղափոլ անուն»:*[1]

*Նամակին բովանդակութենէն այնպէս կը հասկցուի որ այդ Եղափոլը Հայ է եւ իր անունն է Գէորգ, եւ Մագիստրոս անոր գովեստներ կը շռայլէ: Ան գոնէ հելլենական դիցաբանութեան ծանօթ մէկը ըլլալ կը թուի: Եթէ հասկցող չըլլար անիկա, ապահովաբար այս լեզուն պիտի չգործածէր իր ժամանակին ամենէն զարգացած Հայը:*

*Ամէն պարագայի մէջ մեզի այս պարագային շահագրգռողը այն է որ* 1059–*էն կամ աւելի* 1058–*էն առաջ Մելիտինէի մէջ կ'ապրէր հայ վաճառական մը, որ ապահովաբար հմուտ էր յունարէնի եւ զարգացած մարդ մըն էր, որ կը ճամարտակէր Գր. Մագիստրոսի հետ գոնէ զայն հասկնալու չափ զարգացում մը ունենալով:*

*Երկրորդ վկայութիւնը կու տայ Արիստակէս Լաստիվերդցի (տպ.* 1844, *Վենետիկ, էջ* 89) *երբ կը նկարագրէ* 1058–*ին Մալաթիոյ Սելճուկ յարձակման ենթարկուիլը եւ քաղաքին կործանումը, ողբեր հիւսելով ըստ իր սովորութեան: Այս առթիւ քաղաքը կ'որակէ «ՇԱՀԱՍՏԱՆ» բառով, ինչ որ շատ պերճախօս բացատրութիւն մըն է ցոյց տալու համար թէ Մալաթիա առեւտրական կարեւոր կեդրոն մըն էր, վասնզի «Շահաստան» կոչուած էին գլխաւորաբար առեւտրական փայլուն վիճակ ունեցող քաղաքներ:*

*Իսկ Մատթէոս Ուռհայեցի (էջ* 153) *Մալաթիան կը կոչէ* «Հռչակաւոր քաղաք» *որ ունէր* «անչափ .... հարստութիւն ոսկւոյ եւ արծաթոյ՝ ականց եւ մարգարտաց եւ դիպակաց»:

*Ասիկա բաւական է հաստատելու թէ այնքան աղէտներէն ետք շնորհիւ իր աշխարհագրական նպաստաւոր դիրքին իբր բանակատեղի առեւտրական առաւելութիւն վայելելուն եւ իր հաղորդակցութիւններուն՝ շնորհիւ ռազմա–*

---

*(1) Տես Ցուցակ Հայերէն Ձեռագրաց արքունի մատենադարանին ի Միւնխէն: Հ. Գր. Վրդ. Գալէմքեարեան առած է այս խորագիրը Գ. Մագիստրոսի թուղթերուն 1791-ին Կ. Պոլիս, Մելքոն սարկաւագի ձեռամբ կատարուած ընդօրինակութենէն, ուր 40րդ նամակը կը ներկայացուի: Իսկ Կոստանեանցի* Գրիգոր Մագիստրոսի Թղթերը *(1910, Աղեքսանդրապոլ) հրատարակութեան մէջ 78րդ (ՀԸ.) նամակը կը կազմէ եւ ունի սա հասցէն.* «Առ Պռաւտեաս Պատրիկն եւ Աշխարհագիր Սակս Բարեխօսութեան Վաճառականի *ումեմն* ի Մելիտինոյ եւ ՏԱՓԱԻԼ» *(տես էջ 225):*

*կան ճամբաներուն, որոնք առեւտրական յարաբերութիւններու ալ ծառայած են, Մալաթիա առեւտրական կեդրոն մը եղած է միշտ:*

## Բ.

# ՄԱԼԱԹԻՈՅ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԵԱՆՔԻՆ ՄԷՋ ՀԱՅՈՑ ԴԵՐԸ

*Ինչպէս տեսնուեցաւ, անժխտելի իրողութիւն մըն էր, որ Մալաթիա իբր քաղաք կարեւոր կեդրոն մը եղած էր հին ժամանակներէ սկսեալ:*

*Իր առեւտուրին առաջին առարկան բնական է իր հողային արդիւնաբերութիւնն էր, որ հարուստ էր եւ տեղական սպառումին լիուլի գոհացում տալէ ետք, արտածութեան ալ նիւթ կը կազմէր, հակառակ անոր որ մինչեւ Թուրքիոյ Հանրապետութեան հիմնարկութիւնը, Մալաթիա չունէր հաղորդակցութեան ուղիներ եւ երկաթուղին Մալաթիան յարաբերութեան չէր դներ ուրիշ քաղաքներու, մանաւանդ նաւահանգիստներու հետ, որպէսզի իր արտադրութիւնները հեռուն ղրկուէին եւ վաճառուէին:*

*Իսկ կը ներածուէին եւրոպական ճարտարարուեստական արտադրութիւններ, վասնզի օսմանեան պետութիւնը բոլորովին զուրկ էր ճարտարարուեստական հաստատութիւններէ եւ գործարաններէ: Մալաթիոյ տնտեսական շարժման մէջ կարեւոր դեր կատարած են Հայերը, ինչպէս օսմանեան պետութեան բազմաթիւ քաղաքներուն մէջ:*

*Գաղափար մը տալու համար Մալաթիոյ տնտեսական կեանքին եւ Հայերու կատարած դերին վրայ, հոս կ'արտագրեմ Կարապետ քհնյ. Պէննէեանի անտիպ ձեռագիրէն Մալաթիոյ տնտեսական վիճակին վրայ տուած տեղեկութիւնները:*

*Հոս հարկ կը զգամ դիտելու թէ այս քահանան առաջին անգամ* **ԲԻՒՐԱԿՆԻ** *մէջ* (17 *Դեկտ.* 1898, *էջ* 871–873), *երբ տակաւին աշխարհական էր, գրած էր յօդուած մը «ՏՆՏԵՍԱԿԱՆ ՎԻՃԱԿ ՄԱԼԱԹԻՈՅ» խորագիրով: Այս յօդուածը տեղ կը գրաւէ նոյնութեամբ իր նոյն տարիներուն խմբագրած «ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆ ՄԱԼԱԹԻՈՅ ԿԱՄ ՄԵԼԻՏԻՆԷԻ» գործին մէջ,* (*էջ* 77–82), *որ տպագրուած է Պէյրութ:*

1912–*ին իր ընդարձակուած գործին մէջ գրածը անշուշտ աւելի ճոխացեալ եւ լրացեալ էր քան առաջինը, հետեւաբար զայն առնել նախընտրեցի:*

*Տարբերութիւնը նախորդներէն այնքան մեծ չէ, սակայն կան տարբերութիւններ, որոնք պիտի չներկայացնենք սա համոզումով որ անշուշտ երրորդ խմբագրութիւնը աւելի կատարեալ պէտք է եղած ըլլայ առաջին երկուքէն, եւ փոփոխութիւնները ապահովաբար ճշդումներ են եւ լրացումներ, ո–*

*րոնք առաջին երկու խմբագրութիւններուն անդրադառնալու պէտք չեն թողուր :*

*Ահա Կարապետ քհնյ. Պէննէեանի Մալաթիոյ տնտեսական վիճակին մասին տուած տեղեկութիւնները նոյնութեամբ :—*

## ՏՆՏԵՍԱԿԱՆ ՎԻՃԱԿ

### ԱՐՀԵՍՏ ԵՒ ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒԹԻՒՆ

Մալաթիոյ ազգաբնակչութեան ծանօթ են հասարակ արհեստներու մեծ մասը : Բայց բոլորն ալ հին ու նահապետական վիճակի մէջ : Արհեստներու մեծ մասը Հայերու ձեռքն է : Թուրք տարրը կ'ապրի իրեն անշարժ կալուածներովը, այսինքն արտերու, ագարակներու, խանութներու եւն.ի եկամուտներովը, թէպէտեւ վերջերս իրենք ալ սկսած են հետամտիլ արհեստներու :

Գտնուած արհեստներն են տրեխակարութիւն, կօշկակարութիւն (տեղական), կօշկակարութիւն (եւրոպական), հիւսնութիւն, ներկարարութիւն, նկարչութիւն (տեղական), պղնձագործութիւն, ոսկերչութիւն, կողպարարութիւն, սափրիչութիւն, ԵԱԶՄԱՃութիւն, թաղագործութիւն, զինագործութիւն, որմնադրութիւն, քարակոփութիւն, դարբնութիւն, երկաթագործութիւն, թիթեղաշինութիւն, բրուտութիւն, գինեգործութիւն, ժամագործութիւն, մազմանութիւն, ջուլհակութիւն, ձեթահանութիւն կամ իւղագործութիւն, դերձակութիւն, պայտարութիւն, աղօրեպանութիւն, կաշեգործութիւն, շերամաբուծութիւն, կանեփամոհութիւն, խաղախորդութիւն, մսագործութիւն, համետագործութիւն, թամբաշինութիւն, ՍԷՄԷՐՃՈՒԹԻՒՆ, ՓԱԼԱՆՃՈՒԹԻՒՆ, ԼԷՊԼԷՊԻՃԻՈՒԹԻՒՆ, հացագործութիւն եւն. :

Ասոնցմէ զատ կան մի քանիներ ալ որոնք արհեստի կարգը կրնան դասուիլ. ինչպէս են կառապանութիւն, բեռնակրութիւն, ջորեպանութիւն, բաղնեպանութիւն :

Երկրագործութեան ճիւղին մէջ Հայք մինակ պարտիզպաններ են եւ կը մշակեն այիոն ալ :

Գալով առեւտրական ճիւղերու, վաճառականութեան, մանրավաճառութեան, փերեզակութեան, մրգավաճառութեան մէջ Թուրքերն աւելի գործ ունին քան թէ Հայերը :

Ինչպէս ըսինք, այս բոլոր արհեստներն բնաւ զարգացում ու բարեփոխութիւն գտած չեն եւ գտնելու ալ յոյս չկայ : Արհեստաւորն ինչ որ տեսած ու սորված է իր հօրմէն կամ վարպետէն, զայն ի գործ կը դնէ, առանց ոեւէ խորհուրդ կամ մտածութիւն դարձնելու կատարելագործութեան եղանակին վրայ : Ըսել է թէ մեր արհեստաւորք բնաւ փոյթ ու փափաք չունին յառաջդիմելու :Ընկերութեամբ կամ արհեստակցական գործակցութեամբ գործելու գաղափարը դեռ շատ հեռի է իրենցմէ, ամէն մարդ իր հաշուոյն կը գործէ, որովհետեւ խիստ հեռի կը գտնուի բարեկեցութենէ :

## ԱՐՏԱԴՐՈՒԹԻՒՆ ԵՒ ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Մալաթիայէն ի՞նչ եւ ո՞ւր արտածուիլ, եւ փոխադարձաբար, ուսկի՞ց եւ ի՞նչ ներածուիլը ըսելէ առաջ՝ վեր ի վերոյ, այլ ճշդուած հաշուով մը հոս նշանակենք տեղական բերքերէն, արտերու, պարտէզներու եւ այգիներու տաբեկան արդիւնքը, որ կը սպառի արտածութեամբ եւ տեղւոյն վրայ ուտուելով: Այն է, 500·000 լիդր խնձոր եւ տանձ, 20·000 լիդր ծիրանի կուտմէջ (անոյշ եւ լեղի), 60·000 լիդր ծիրանի չիր, 200·000 լիդր չամիչ (³/⁴ սեւ), 200·000 գրիւ չոր թութ, 180·000 լիդր պաստեղ, 40—50·000 օխա աֆիոն, 15—20·000 լիդր խաշխաշի իւղ, 25·000 լիդր բրինձ, 8000 լիդր խոզակ, 50·000 մորթ (այծի եւ ոչխարի), 40·000 աղիք (այծի եւ ոչխարի):

Արտածելի նիւթերն են նաեւ արմտիք (ցորեն ու գարի) գլխտոր, գազի խէժ, մուշտակաւոր կենդանեաց մորթեր, կտաւ (կարմիր եւ ճերմակ), կապերտ, գորգ, եազմա, իւղ, պանիր, մեղր, խաշխաշի հունտ, ծխախոտ, ինչպէս նաեւ անպտուղ ծառեր եւ արդիւնքն եղող ատաղձ ու շինուածք, հարիւրաւոր բեռ տախտակ, սնտուկ, կովլակ, տուփ, պարզ աթոռ, դգալնոց, թիւման, ջոհրակ, սրինգ, օրօրոց եւ այլ շատ մը կահեր ու անօթներ:

## ՀԵՌԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՇՐՋԱԿԱՅ ՔԱՂԱՔՆԵՐՈՒ

Մելիտինէի շրջակայ քաղաքները հետեւեալներն են.—

Տարենտէ, հեռաւորութիւն կեդրոնէ դէպի արեւմուտք 18 ժամ, ԿԻՒՐԻՆ 23 ժամ, ԿԵՍԱՐԻԱ 36 ժամ, ԷԼՊԻՍՏԱՆ 18 ժամ, ՄԱՐԱՇ հիւսիս արեւմուտք 38 ժամ, ՊԵՀԵՍՆԻ 22 ժամ, ԱՅՆԹԱՊ 50 ժամ, ՀԱԼԷՊ 74 ժամ, ՀԻՒՍՆԻ ՄԱՆՍՈՒՐ հարաւ 18 ժամ, ՈՒՐՖԱ 36 ժամ, ՍԵՒԵՐԷԿ 28 ժամ, ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏ հարաւ–արեւելք 46 ժամ, ՉՆՔՈՒՇ 18 ժամ, ԽԱՐԲԵՐԴ հիւսիս–արեւելք 18 ժամ, ԲԱԼՈՒ 34 ժամ, ԿԱՊԱՆՄԱՏԷՆ 20 ժամ, ՏԻՒՐԻԿ հիւսիս 38 ժամ, ԱԿՆ 35 ժամ, ԱՐԱԲԿԻՐ 18 ժամ, ՍԵԲԱՍՏԻԱ հիւսիս–արեւմուտք 42 ժամ, ԵՒԴՈԿԻԱ 60 ժամ:

## ԱՐՏԱԾՈՒԹԻՒՆ

Մալաթիայէն գլխաւորաբար կ'արտածուին հետեւեալ քաղաքները զանազան ապրանք ու վաճառք.—

ՀԱԼԷՊ.— Բամպակ, բրինձ, խաշխաշի հունտ եւ ձէթ, նուշ, մեղր, կլտոր, քիբրէ, իւղ, պանիր, մեղրամոմ, միրգ, չոր պտուղ, գորգ, կապերտ, եւայլն:

ԱՅՆԹԱՊ.— Խաշխաշի ձէթ, բրինձ, մեղր, իւղ, պանիր, ծխախոտ, միրգ, թարմ եւ չոր պտուղ, գորգ, կապերտ, մեղր, ատաղձ եւայլն:

ՀԻՒՍՆԻ ՄԱՆՍՈՒՐ.— Թաց ու չոր պտուղ, գորգ, կապերտ, մեղր, սնտուկ, կովլակ, եազմա, խաշխաշի ձէթ եւայլն:

ՊԵՀԵՍՆԻ.— Թաց ու չոր պտուղ, տախտակ, սնտուկ, եազմա, խաշխաշի ձէթ եւայլն:

ԵԴԵՍԻԱ․— Խաշխաշի ձէթ, բրինձ, մեղր, թարմ ու չոր պտուղ, ատաղձ, սնտուկ, եազմա եւայլն:

ՍԵՒԵՐԷԿ․— Խաշխաշի ձէթ, եազմա, չոր պտուղ, միրգ, ատաղձ եւայլն:

ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏ․— Մեղր, ձէթ, միրգ, չոր պտուղ, եազմա, ատաղձ, սնտուկ եւայլն:

ԽԱՐԲԵՐԴ․— Բրինձ, ճերմակ ու կարմիր կտաւ, խաշխաշի ձէթ, թաց ու չոր պտուղ, պանիր, միրգ, ատաղձ, սնտուկ, կովլակ, լաստ, խսիր եւայլն:

ՏԻՒՐԻԿ․— Բամպակ, ճերմակ ու կարմիր կտաւ, մանած, բրինձ, միրգ, թարմ ու չոր պտուղ, ատաղձ, սնտուկ եւայլն:

ԱԿՆ․— Պէտէն կտաւ, կարմիր կտաւ, բամպակ, բրինձ, խսիր, միրգ, չոր պտուղ եւայլն:

ԱՐԱԲԿԻՐ․— Բրինձ, բամպակ, չոր ու թաց պտուղ, կտաւ, միրգ, ատաղձ, սնտուկ, խսիր, աւել եւայլն:

ԵՐԶՆԿԱ․— Բրինձ, պտուղ, միրգ, եազմա եւայլն:

ՍԵԲԱՍՏԻԱ․— Գլխաւորապէս միրգ եւ թաց ու չոր պտուղ, բամպակ եւայլն:

ԵՒԴՈԿԻԱ․— Բամպակ, բրինձ, գորգ, կապերտ եւայլն:

ԿԵՍԱՐԻԱ․— Գորգ, կապերտ, միրգ, մեղր, բրինձ, չոր պտուղ եւայլն:

ՍԱՄՍՈՆ․— Խաշխաշի ձէթ, եազմա, բրինձ, իւղ, պանիր, բուրդ, գորգ եւ կապերտ, մեղր, ոչխարի մորթ, միրգ եւայլն:

Կ. ՊՈԼԻՍ․— Նուշ, իւղ, պանիր, մեղր, միրգ, չոր պտուղ, գորգ, կապերտ, ոչխարի մորթ, ափիոն եւայլն:

ԵՒՐՈՊԱ․— Ոչխարի մորթ, մուշտակցու մորթ, ափիոն, գլտոր, քիթրէ, ընկուզի միջուկ, ծիրանի կտամէջ, միրգ, խաշխաշի հունտ, ձէթ, մեղր, մեղրամոմ եւ այլ զանազան վաճառքներ:

## ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Կը ներածուին զանազան տեսակ գաղթաբերք կամ եւրոպական ապրանքներ, մանուֆաթուրայի ամէն տեսակներէն սկսեալ մինչեւ փերեզակի (չէրչի) ամենանչնչին առարկան, այսինքն՝ բրդեղէն, բամպակեղէն, մետաքսեղէն գործուածներ, շաքար, քարիւղ, պղինձ, երկաթ, կլայեկ, զամ, մոմ, ապակի, յախճապակի, ալիզար եւայլն: Նոյնպէս շրջակայ եւ հեռաւոր քաղաքներէն բազմաթիւ ապրանքներ ու վաճառքներ՝ ինչպէս․

ՀԱԼԷՊԷՆ․— Մանիսա, օճառ, մետաքսեղէն, դիպակ, սնդուս, կերպաս եւայլն:

ԱՅՆԹԱՊԷՆ․— Մանիսա, սաղթիան, ոտնաման, օճառ, օղի եւայլն:

ԱՏԱՆԱՅԷՆ․— Եւրոպական մանած եւ կտաւ, (տեղւոյն վրայ պատրաստուած):

ՀԻՒՍՆԻ ՄԱՆՍՈՒՐԷՆ․— Բամպակ, մանած, չամիչ, արմտիք եւայլն:

ՊԵՀԵՄՆԻԷՆ․— Մանած, բամպակ, չամիչ, օղի, պխտակ, եւայլն։
ՄԱՐԱՇԷՆ․— Պղինձ, մանիսա, օղի, սանտր, եւայլն։
ԿԻՒՐԻՆԷՆ․— Շալ եւ այլ գործուածներ։
Շ․ ԳԱՐԱՀԻՍԱՐԷՆ․— Դգալ, պաղլէղ եւայլն։
ԵՐԶԻՆԿԱՆԷՆ․— Պղնձեղէն ամաններ եւայլն։
ԱՐԱԲԿԻՐԷՆ․— Մանիսա, ճոււ, խաղող եւայլն։
ԿԵՍԱՐԻԱՅԷՆ․— Աղ, ապուխտ, անիսոն եւայլն։
ՍԵԲԱՍՏԻԱՅԷՆ․— Աղ, գուլպայ, կարմիր կաշի, կօշիկ, մուճակ եւայլն։
ԵՒԴՈԿԻԱՅԷՆ․— Պղնձի տախտակ, պղնձեղէն ամաններ, օղի, եազմա եւայլն։
ԽԱՐԲԵՐԴԷՆ․— Գինի, շիթարի, ճերմակ սխեռ, կաշի, ոտնամանեւայլն։
ԲԱԼՈՒԷՆ․— Շրէս, ռոխարմատ, փարչ եւայլն։
ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏԷՆ․— Կերպաս, մետաքսեղէն եւայլն։
ՁՆՔՈՒՇԷՆ․— Գինի, քէօսէլէ, ճոււ, ճռան կճէպ եւայլն։

Այսպէս, կը ներածուի Պարսկաստանէն ցփսի եւ թէմպէքի, Պաղտատէն արմաւ, Մուսուլէն կալակար, Կարինէն անիսոն։

Եւ իր գաւառակներէն ու գիւղերէն կը բերուին վառելափայտ, ածուխ, ոչխար, իւղ, պանիր, մեղր, գուլպայ, կամար գօտի, գորգ, կապերտ, արմըտիք, ծխախոտ եւն․ եւն․։

## ՆԻՒԹԱԿԱՆ ՎԻՃԱԿ ԵՒ ԿԱՑՈՒԹԻՒՆ

Անվերը ըսինք թէ՝ Մալաթիոյ Հայերն արհեստով, իսկ Թուրքերը անշարժ կալուածներու եկեսէն կ'ապրին։ Երկու տարրին մէջ ալ սակայն հարուստ անուանելու արժանի ոչ ոք չկայ։ Էն հարուստ կարծուածին կարողութիւնը հազիւ 2–3000 ոսկիի կը հասնի[1]։

Ներկայ քաղաքը փոխադրուելնէն յետոյ, շերամաբուծութեան հետեւելով՝ թէեւ քանի մը տարիներ յաջողակ եւ բաւական օգտուած են, բայց վերջերը հունտերու կեղծուելէն բոլորովին վնասուած են։

Շերամին յաջորդած է տորոնի մշակութիւնն, որ առիկա ալ 10–15 տարիի չափ թէ՛ հողատեարց, թէ՛ գործաւորներուն եւ թէ արհեստաւորներուն բաւական շահ ընծայած է․ սակայն իբր անհաշտ թշնամի, երբ ալիզարինը երեւան կ'ելլէ, սա ալ կը փճանայ բոլորովին։

Տորոնի առեղն իսկ *ափիոնն* ալ մուտ գտած ըլլալով, տորոնը իյնալուն պէս մեծ թափով կը սկսին առոր մշակութեանը, այնպէս որ ափ մը պարտէզ ունեցողն իսկ ծառերը քակելով արտի կը վերածէ։ Եւ որովհետեւ, նոյն տա–

(1) *Սրուանձտեանց, որ 1878-ին Մալաթիա այցելած է, ինքն ալ այս կարծիքը կը յայտնէ գրելով* որ «Դրամատէր հարուստ հայ չկար այս քաղաքը, բացի քանի մը վաճառականներէ, որոնք պանդուխտ էին» (Թորոս Աղբար, Ա., *էջ 310*)։

րինները, ափիոնի օխան մինչեւ 600 դրշ․ի բարձրացած էր, արհեստաւոր թէ վաճառական առ հասարակ ոյժ կու տան սոյն մշակութեան։

Ափիոնը, ինչպէս հիմա ալ, բաւական ոսկիներ կորզած է դուրսէն, բայց ժողովուրդը չգիտնալով առիթէն օգտուիլ, կը սկսի տուն չունեցողը տուն մը գնել, իսկ ունեցողը հատ մը եւս ունենալով հին շէնքը քակել եւ նորն ու ընդարձակը շինել։ Պարսիկ հանինրու ցփսիի (շալ) ծրարները դատարկել թանկագին գօտիներ առնելով, եւ կնոջ ոսկիները անոնց ափին մէջ լեցնելով, եւ չգիտնալով մանաւանդ թէ «Աւելորդ կահ կարասի պատճառ են շատ վնասի» շատցնելով տան կահն ու կարասին, զեղխ կեանք մը կը վարէ, բայց երբ ափիոնի գինը անակնկալ կ՚իջնէ մինչեւ 70—80 դրուշի, կը զգայ թէ ԽՆԱՅՈՂՈՒԹԻՒՆ եւ ՏՆՏԵՍՈՒԹԻՒՆ կարեւոր բաներ են եղեր։ Սակայն, իզուր, ալ նետը աղեղէն ելած է։

Ուստի կը սկսի այն ափիոն բերող արտը, վերջէն զնած տունն ու կահ կարասին միանգամ ծախել ու թշուառանալ, նման այն հնդիկ մուկին, որ գօ-գօի ընկոյզը ծակելով մէջի հիւթէն գիրցած եւ միեւնոյն մուտքէն չկրնա-լով դուրս ելլել, հոն կը մնայ մինչեւ իր նախկին վիճակին ենթարկուիլը։

Զմոռնանք նաեւ ըսելու թէ՝ Մալաթիացին առեւտրականութեան մէջ ալ ճարպիկութիւն չունի։ Մինչդեռ ուրիշ քաղաքներէ, ինչպէս, Արաբկիրէն, Սեբաստիայէն, Կեսարիայէն, Այնթապէն, Ակնէն, Կիւրինէն եւ ուրիշ տեղե-րէ հոս փոխադրուելով բանուկ առեւտուր կ՚ընեն, իսկ ինք՝ հակառակ այն առածին թէ «բնիկը նապաստակը կ՚որսայ», շահու աղբիւրները ուրիշին տա-լով՝ բոլորովին անտարբեր կը մնայ։

Մալաթիացին՝ չ՚ուզեր պանդխտանալ, այլ հաւատարիմ մնալով իր ծննդավայրին լճացած դիրք մը ունի։

20—30 տարիներէ ի վեր միայն կը գաղթեն գլխաւորաբար Ատանա եւ Ամերիկա, ուր ունի հիմա 2000-ի մօտ մարդիկ եւ հետզհետէ ալ կ՚երթան (1912ին)։

Այսու ամենայնիւ պէտք չէ սակայն մոռնալ Մալաթիացուն սա նախան-ձելի եւ գովանաց արժանի յատկութիւնը, այսինքն՝ մուրացիկ չունի իր մէջ[1]։ Եթէ երբեք ունենայ, չի թողուր որ ան ուրիշ քաղաքներ երթալով դռնէ դուռ մուրայ, այլ երբ իմացուի այդպիսի մէկը, անմիջապէս հարեւաններու մէջ հանգանակութիւն մը ընելով կ՚ամոքեն անոր թշուառութիւնը։»

---

(1) *Սրուանձտեանց* (Թորոս Աղբար, Ա., *էջ 310*) *կը հաստատէ թէ Մալաթիոյ մէջ* «կարօտ ոք ալ չկայ»։



## Գ.

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՊԱՅՔԱՐ ՀԱՅՈՑ ԴԷՄ

*Մալաթիա նոր ժամանակներու մէջ, հակառակ իր աշխարհագրական դիրքին, հողին բարեբերութեան եւ առատ ջուրին, տնտեսական շատ փայլուն վիճակ մը չէ ունեցած եւ բնակչութեան մեծամասնութիւնը միշտ հալածուած է հացի մղձաւանջէն, առանց ունենալու կեանքի տարրական վայելքները (Գ. Մելիտինեցի, ՆԱԽՃԻՐՆԵՐ, էջ* 38):

*Պէննէեան քհնյ.ի կարծիքով Մալաթիացի Հայերը վաճառականութեան մէջ յաջողակ եւ ձեռներէց չէին: Ասիկա անշուշտ իր պատճառները ունէր կամ աւելի ճիշդը պէտք էր հետեւանքը ըլլար կարգ մը իրողութիւններու, որոնք չեն ուսումնասիրուած:*

*Բայց կան քանի մը որոշ իրողութիւններ, որոնք այնքան ակներեւ են որ շատ խոր ուսումնասիրութեան չեն կարօտիր:*

*Ասոնցմէ մէկը եւ գլխաւորը այն յեղակարծ փոփոխութիւններն էին, հետեւանք կարգ մը աղէտներու — բնական կամ ոչ — որոնք միշտ հարուածած են քաղաքը: Երկրաշարժներ, հրդեհներ, պատերազմներ անպակաս եղած են այս շրջանին մէջ:*

*Ասկէ զատ Գէորգ Մելիտինեցի ցոյց կու տայ ուրիշ իրողութիւններ, որոնք պատճառ եղած են քաղաքին տնտեսական յետամնացութեան: Այդ պատճառներն են երկաթուղիներու պակասը, հանքերու չշահագործուիլը, տրամադրելի դրամագլուխներու գոյութիւն չունենալը եւ ամենէն աւելի Թուրք կառավարութեան եւ ժողովուրդին բարբարոսութիւնը (հմմտ. նոյն), ինչ որ բացարձակ ճշմարտութիւն մըն է:*

*Բայց նոյնքան ճշմարիտ է — ինչպէս շեշտած է Գ. Մելիտինեցի (նոյն)* — «որ տնտեսական այս ճախող վիճակէն աւելի տուժած են բնակչութեան թուրք ու քիւրտ տարրերը քան Հայերը եւ շատ բնականօրէն» *(նոյն)*:

*Ուրեմն Թուրք կառավարութիւնը Հայերը հալածելով նոյնքան չարիքի ենթարկած է երկրին մահմետական բնակչութիւնը, որուն կ'ուզէր օգնել, որպէսզի գրաւէ Հայերու տեղը եւ տնտեսական բարօրութիւն ունենայ: Բայց այս ջանքերը զուր ջանք եւ անօգուտ վատնում եղած են, վասնզի Թուրքերը եւ Քիւրտերը կողոպուտի, աւարառութեան եւ կեղեքումի հետամուտ էին, ինչպէս միշտ, առանց ստեղծագործ աշխատանքի: Ընդհակառակը անոնք Հայուն աշխատանքով արդիւնաբերածը տղրուկի պէս ծծելու կ'աշխատէին եւ ասոր համար չէին կրնար դիրք մը գրաւել տնտեսական կեանքին մէջ: Իսկ կողոպտուած եւ կեղեքուած Հայը իր ստեղծագործ աշխատանքին շնորհիւ վերականգնած է միշտ եւ ինչ որ վայրենի Քիւրտը ու ոճրագործ Թուրքը քանդած են, վերաշինած է եւ ինչ որ անոնք խլած են իրմէ, վերստին ունեցած է:*

*Հայերը՝ հակառակ անոր որ հալածուած էին օսմանեան պետութենէ,*

մասնաւորապէս 1878–1880 թուականներէն ետք, թէեւ եղած են գլխաւոր տուժողները, սակայն դարձեալ կրցած են դէչ-աղէկ իրենց կառքը քալեցնել եւ ապրիլ քիչ-շատ բարեկեցիկ, ինչ որ ցոյց կու տայ թէ տնտեսական պայքարին մէջ չեն ընկճուած:

Եթէ բնականոն պայմանները պահպանուէին, Հայերը եւ Թուրքերը չըլլարուէին իրարու դէմ գոնէ Օսմանեան Սահմանադրութեան վերահաստատութենէն (1908) ետք, թերեւս բոլորովին տարբեր պիտի դասաւորուէին դէպքերը եւ Հայերը իբր վաճառականական բնազդ ունեցող ժողովուրդ, ապահովաբար պիտի կարենային լաւ դիրք մը գրաւել:

Հակառակ ձախող պայմաններուն, զորս Թուրք բնակչութիւնը ստեղծած էր բոլոր Անատոլուի հայաբնակ քաղաքներուն մէջ, դարձեալ Հայերը, ինչպէս ուրիշ տեղերուն, նոյնպէս նաեւ Մալաթիոյ մէջ պահեցին իրենց տնտեսական քիչ ու շատ ապահով վիճակը եւ վաստակի տեսակէտով նորէն ամենէն յաջողակները հանդիսացան:

Ս. Մ. Ծոցիկեան, որ առհասարակ 1915-ի զարհուրելի աղէտին վազորդային վիճակը ներկայացուցած է շատ մը քաղաքներու համար, Մալաթիոյ տնտեսական վիճակին համար ալ հաւանօրէն նոյն ժամանակներու վիճակը ներկայացնելով, կ'ըսէ թէ.—

«Հայք Մալաթիոյ մէջ կը զբաղէին ամէն կարգի առեւտուրներով, արհեստներով, այգեգործութեամբ, պարտիզամշակութեամբ, շերամապահութեամբ եւ երկրագործութեամբ:

Արհեստաւորներու մէջ աչքի կ'իյնային բրուտներն իրենց շատութեամբ: Կային բաւական թուով վաճառականներ, տեղական բերքեր եւ ապրանքներ մեծ քանակութեամբ գնող եւ արտածող: Այսպէս, Հայք Մալաթիոյ շուկային ընդհանուր առեւտուրներուն եւ փոխանակութեանց տէրն էին գրեթէ: Զնայելով որ Մալաթիոյ գործերուն հրապարակը ամենուն համար ալ գոհացուցիչ էր, այնու ամենայնիւ Հայեր, հարկադրուած, գլխաւորաբար տեղւոյն թուրք կառավարութեան կողմէ կատարուած հարստահարութեանց հետեւանքով, պարբերաբար ձեռք առած են պանդխտութեան ցուպը...» (*ԱՐԵՒՄՏԱՀԱՅ ԱՇԽԱՐՀ*, էջ 382):

Թուրք կառավարութիւնը աշխատած է ստեղծել իրենց համար դժնդակ պայմաններ, որոնց մէջ ապրիլ հնար չէր, եւ հարկադրուած են գաղթելու:

Համիտական շրջանին հետզհետէ կաշկանդուած են Հայերը եւ իրենց բոլոր ձեռնարկներուն դէմ արգելքներ, դժուարութիւններ հանուած են:

Հետեւաբար լայն սահմանի վրայ վաճառականութիւն ընել չեն կրցած եւ ստիպուած են աւելի ուժ տալ մանրավաճառութեան, տեղական ապրանքներու առեւտուրի եւ մանաւանդ արհեստներու...:

Եւ այս կերպով նորէն ծառայեցին երկիրին:

Ինչպէս դիտել տրուեցաւ, առեն մը չերամարուծութեամբ եւ ապա խաշխաշի մշակութեամբ եւ ափիոնի գործով, թէ իրենց տնտեսական վիճակը բարւոքեցին եւ թէ երկրին բարօրութեան նպաստեցին:

*Գերշ. Անդրէաս վրդ. Աղեքսանդրեան* (*ՊԱՏՄ. ՍԵԲԱՍՏԻՈՅ*, *էջ* 399) *կ՚ըսէ.*

«Մալաթիա տնտեսապէս կը զարգանար. գլխաւոր վաճառքն է մեկոն (խաշխաշ, ափիոն)։ Շերամաբուծութիւնն ալ կը զարգանար։ Զմմարցի եպիսկոպոսներ եւ վարդապետներ բաւական մղում տուած են ասոնց»։

*Որչափ որ զարմանալի թուի Զմմարցի եպիսկոպոսներու եւ վարդապետներու դերը, որ ուրիշներէ չէ յիշուած եւ ենթադրելով իսկ թէ անիկա տեսակ մը ԲՐՈԲԱԿԱՆՏ է ի հաշիւ ԲՐՈԲԱԿԱՆՏԱ ՖԻՏԷԻ, սակայն ճշմարիտ է որ շերամ եւ ափիոն կարեւոր տեղ գրաւած են երբեմն Մալաթիոյ շուկային վրայ եւ նպաստած բնակչութեան ապրուստին։*

*Խաշխաշի մշակութիւնը եւ ափիոնի առեւտուրը եւ շերամաբուծութիւնը ո՛վ որ ալ քաջալերած ըլլայ, եւ անոնցմէ օգտուողները, որո՛նք որ ալ եղած ըլլան, իրողութիւնը ան է որ անոնք մեծապէս նպաստած են* 1870–1890–*ական թուականներուն Մալաթիոյ տնտեսական յառաջդիմութեան եւ հաւանօրէն եթէ քաղաքին կեանքը չենթարկուէր հարուածներու, Մալաթիա հետըզհետէ աւելի պիտի բարգաւաճէր եւ նիւթական բարօրութեան մը պիտի հասնէր։*

*Սրուանձտեանց* 1878–*ին իր այցելութեան ատեն ափիոնի առեւտուրին ապագան կը նախատեսէ, բայց անկէ Հայերուն ստացած օգուտը շատ քիչ կը համարէ։ Իրեն* «կը հաստատէին թէ՝ տարին առ նուազն 120·000 լիրայ կը բերէ ափիոնի վաճառքը» (*ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ, Ա., էջ* 309), բայց «զարմանալի» կը գտնէ որ քաղաքացիք շատ աննշան բաժին մը ունէին այս գումարէն, եւ այն միջնորդ լինելով եւ նենգելով եւեթ, այլ բոլոր այս բերք մշակողներն եւ շահողներն վայրենի քրդերն էին» (*Նոյն*)։

*Հայերը ամէն պարագայի մէջ այնքան հնարիմացութիւն պիտի ունենային ապահովաբար այս շահաբեր աղբիւրին ջուրէն առաւելագոյն չափով օգտուելու եւ գոնէ այս մարզին մէջ իրենք ալ իրենց կարգին Քիւրտին եւ Թուրքին բերնէն հացը խլելու — ինչպէս եղած է այս պարագային — եթէ չեմ սխալիր։*

*Երբ Թուրք կառավարութեան հայահալած քաղաքականութիւնը տակաւին շատ զգալի չէր, եւ ափիոնը շատ սուղ կ՚արժէր Հայերը Մալաթիոյ մէջ բաւական անփոյթ կեանք մը ունէին քիչ աշխատանքով շատ շահելով եւ մեծ ճիգեր չէին ըներ։ Մեղկացած վիճակ մը ունէին, ինչպէս դիտել կու տայ Սրուանձտեանց* (*ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ, Ա.*, 310)։

«Իրենց մեծամեծ տներով, ընդարձակ այգեստաններով, ծառաստաններով եւ քիչ մը շահով երջանիկ կը կարծէին ինքզինքնին, նոր նոր արթնցեր էր իրենց մէջ դժգոհութեան հոգին, եւ կը համոզուէին թէ պէտք է գործել եւ յառաջադիմել թէ՛ նիւթական եւ թէ մտաւորական ասպարէզին մէջ։ Արդարեւ Հայոցմէ կը սպասուէր այս, վասնզի իրենք էին միայն Քրիստոնեայ տարր այդ տեղը, բայց զիրենք ալ զարթուցանող, լուսաւորող եւ առաջնորդող կը պակսէր»։

Հայը եթէ արթնցաւ, Թուրքին ոճրագործ բնազդներն ալ արթնցան եւ հազիւ 50 տարուան մէջ բնաջնջուեցաւ Հայը իր հայրենի երկրին մէջ, Օսմանեան Պետութեան հետզհետէ աւելի սաստկացող հալածանքներով:

Թուրք կառավարութիւնը Հայերը ընկճել փորձեց նախ Հայոց նիւթական բարեկեցիկութեան դէմ պայքար բանալով եւ ուղղակի եւ անուղղակի ամէն միջոցներով աշխատեցաւ աղքատացնել, եւ տնտեսապէս փճացնել Հայերը, որպէսզի հեռանան երկրէն եւ իրենց թիւը պակսի կայսրութեան մէջ:

Օսմանեան կառավարութեան ձեռք առած միջոցներուն հետեւանքները շուտով զգալի եղան, եւ տնտեսական անձկութիւնը ճնշել սկսաւ Հայերը, ինչպէս ուրիշ հայաբնակ քաղաքներու, նոյնպէս նաեւ Մալաթիոյ մէջ:

Եփրատ Գոլէճի ուսուցիչներէն Փրոֆ. Որբերեան, որ ծանրախոհ, զարգացած եւ ուսումնական անձնաւորութիւն մըն էր, Համիտեան վարչաձեւին տակ եւ Հայերու դէմ Թուրքերու ատելութիւնը բորբոքած պահու մը, երբ գրաքննութիւնը շատ խիստ էր, իր Մալաթիա տուած այցելութեան տպաւորութիւններու մէջ կրցած է ճարտարութեամբ մը ներկայացնել Մալաթիոյ Հայոց տնտեսական վիճակը ԺԹ. դարուն վերջին տարիներուն, որ շատ անշքացած էր պետական հալածանքներով եւ կարծես անոնց զինակցող բնական աղէտներուն պատճառով:

Փրոֆ. Որբերեան սա զգոյշ տողերով եւ ընդ քօղով կը պարզէ Մալաթիոյ Հայոց տնտեսական դժբախտ վիճակը, որ կ'արժէ ուշադրութեամբ կարդալ.

«Քառորդ դար առաջ (1875) երբ ափիոնի մշակումը թափ գտած է Մալաթիոյ մէջ, իր սուղագնի վաճառումովը (մինչեւ 600 դրշ.), հայ տղաքը սթափած իր դարաւոր գռիւնակ վիճակէն, եկամուտի առատութենէն արբշիռ, նորանոր ծախքերու դռներ բացած է, սակայն ափիոն ու իր յարաբերական գործեր տարուէ տարի իջնալով, ժողովուրդը ծայրը ծայրին չի կրնար հասցնել:

«Բոլոր արհեստները, ափիոնի առեւտուրին շնորհիւ ոգեւորուած են, բայց յամրընթաց անկումն ալ շուտ սկսած է եւ ուստի արհեստաւոր Հայը մեծ տագնապի մը մէջ ինկած էր մինչեւ 1889 Նոյեմբեր 8/28, ուր յանկարծ հրդեհ մը ծագելով շուկային երեք չորրորդը լափեց լափլիզեց:

«Ժողովուրդը կուրծք կու տայ այդ դժբախտութեան, սակայն հազիւ տարի անցած 1890 Հոկտեմբեր 24-ին գիշերը նոր հրդեհ մը չորս հինգերորդը շուկային մոխիրի կը վերածէ:

«1893 Փետրուար 19-ին մեծ երկրաշարժ մը բոլոր տուները կը ցնցէ: 132 անձ ալ կը մեռնի:

«1894 Յունիսին ֆօլերան աւեր կը գործէ, եւ մինչեւ Սեպտեմբեր, բազմաթիւ զոհ կը տանի» (ԲԻՒՐԱԿՆ, 1900, էջ 99–100):

Փրոֆ. Որբերեանի յիշած այս աղէտներու շղթային վրայ իբր շարունակութիւն աւելի ծանր աղէտ մը կրնանք աւելցնել 1895 Նոյեմբեր 29-ի ջարդը, եւ ծանրագոյնը եւ անպատմելին՝ 1915-ի տարագրութիւնը եւ ջարդը որ վերջ

*կը դնէր ինչպէս Մալաթիոյ Հայոց գոյութեան, նոյնպէս նաեւ Հայոց տնտեսական կեանքին:*

*Ինչպէս այդ գրաքննիչի աչքերէն խուսափած տողերէն կը հասկցուի, Համիտական բռնակալութիւնը Հայերը — որոնք շուկային կը տիրապետէին — նիւթական անձկութեան մատնելու համար մէկ տարուան մէջ երկու անգամ շուկան հրդեհած էր:*

*Ասիկա մէթոտ մըն էր որ Թուրքը կիրարկած էր շատ քաղաքներու մէջ, ինչպէս Վան, Տիարպէքիր, Սեբաստիա, Կեսարիա, Թօգատ եւայլն եւայլն: Տնտեսապէս Հայերը փճացնելու համար:*

*Այնպէս, Հայերը աղքատացան, եւ կարօտ մնացին օրական ապրուստին:*

*Թղթակից մը 1905–ին հակառակ գրաքննութեան խստութեան կրցած է ճարտարութեամբ հասկցնել, Մալաթիոյ տնտեսական դժբախտ կացութիւնը:*

*Անիկա կ'ըսէ·*

«Մալաթիոյ ժողովրդեան մեծամասնութիւնը կը զբաղի պարտիզպանութեամբ եւ արհեստներով, սակաւաթիւ մէկ մասը տեղական նիւթերու եւ բերքերու վրայ առուծախ ընելով, իսկ մնացեալ մէկ աննշան մասն ալ երկրագործութեամբ եւ տաւարաբուծութեամբ: Սակայն գիւղացիները, գրեթէ ընդհանուրն ալ, երկրագործ դասակարգէն են... ինչպէս գաւառական շատ մը քաղաքներու, նոյնպէս Մալաթիոյ ժողովրդեան ալ մէկ կարեւոր մասը պանդխտած է: Պանդխտութիւնը հոն լաւ ընդունելութիւն գտած է, տեղւոյն պէտք եղած չափով շահու առիթներ եւ աղբիւրներ չունենալուն հետեւանօք:

«Մալաթիոյ բնակչութեան համար խիստ եւ ցաւալի կերպով աղիտաբեր եւ վնասակար եղած են պատահած շարունակական եւ տեւական երկրաշարժները» (ՍՈՒՐՀԱՆԴԱԿ, 1905, թիւ 1900) եւ լռելեայն հասկցէք շուկայի կրկին հրդեհները եւ ջարդը (1895 Նոյեմբեր 29) որոնք իրապէս փճացուցին Մալաթիոյ տնտեսական բարօրութիւնը:

*Գրիգոր Տէյիրմէնճեան եւս այս անբաղձալի վիճակը ներկայացուցած է «ՇԱՔԱՐԵՂԷՆԻՆ ԵՐԳԸ» խորագիրով գրութեան մը մէջ (տես ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Ե. տարի, Թ. 3, էջ 20) որ որոշ գաղափար մը կու տայ քաղաքին մէջ տիրող աղքատութեան վրայ:*

«Ամէն անոնք որոնք Մալաթիոյ մէջ ապրած են, անպատճառ լսած են, մանաւորապէս Զատկի օրերուն շաքարեղէն ծախող փերեզակին կողմէ, երեխաները դիւթելու նպատակաւ, անուշ եղանակով մը երգուող հետեւեալ կարճ երգը·

Կամըշ շէքէր... խոռոզ շէքէր...
Փարայը նէպտէն չէքէր...
Փարասը օլմայան «ախ» չէքէր...

Արդարեւ, այս երգը բղխած չէ բանաստեղծի մը ստեղծագործ մտքի բռնազբօսիկ երեւակայութենէն, այլ բղխած է Մալաթիոյ Հայութեան կեան–

քի իրականութենէն, որովհետեւ, ամէն անգամ որ այս երգը կը լսուէր Մալաթիոյ փողոցներէն, լող երեխաները շնչասպառ կը վազէին իրենց մայրերուն քով եւ լալախառն կամ աղերսական ձայնով անոնցմէ մանկր մը կ'ուզէին, որ անով ԿԱՄԸՇ ՇԷՔԷՐ մը կամ ԽՈՒՈՋ ՇԷՔԷՐ մը գնէին եւ երբ անոնցմէ շատեր մէկէ աւելի մերժողական պատասխաններ ստանալէ յետոյ ապառաժէն ջուր քամելու ջանք կը թափէին՝ բաժնուելով իրենց այդ պահանջին վրայ, փոխան մանկրի, կտիր մը կամ ապտակ մը կը ստանային իրենց ցասկոտ հոգիներու խորերէն «ախ» քաշող իրենց մայրերէն․․․։

— Ինչո՞ւ մեր ծննդավայրի մայրերէն շատեր չէին կրնար իրենց փոքրիկներուն այդ շատ համեստ պահանջը անգամ գոհացնել։

— Որովհետեւ անոնք չքաւոր էին։ Անոնց եկամուտի աղբիւրը շատ խեղճ էր եւ տնտեսական։

Պակասն ալ Թիւրք բարբարոս կառավարութիւնը կը լրացնէր ամէն քանի տարին անգամ մը մեր ծննդավայրի անմեղ հայութիւնը կոտորել եւ թալանել տալով ընչաքաղց Թիւրք–Քիւրտ խուժանին։ Ալ ի՞նչպէս ունին որ պիտի կրնային եղած ըլլալ։

Մեր ծննդավայրի մայրերէն շատեր, որոնք այրիացած էին 1895–ի Համիտեան մեծ սպանդէն, պատրաստ էին իրենց զաւակներուն համար թէ մայրութիւն ընել եւ թէ «հայրութիւն»ը ընել։ Բայց ուա՜ղ, սաոնց ընելիք «հայրութիւն»ը պիտի ըլլար շատ–շատ՝ սաոր–անոր հացը եփել, լուացքը ընել, ցորենը մաղել՝ օրը մէկ կամ երկու լոշ հացի համար, սաոր–անոր կանեփը կիզուել լոկ ՋՈՒՐՓՈՒՑԻՆ համար, ծիրանի կուտերը կոտրել՝ լոկ կճիփներուն համար, կամ տարուան մէջ քանի մը շաբաթ միայն դաշտային աշխատանք կատարել՝ սաոր–անոր արտին խոտերը քաղելով, ափինը հաւաքելով, կամ սաոր–անոր մրգաստանին ծիրանները ճեղքելով՝ արեւու կիզիչ ճառագայթներուն տակ խորովածներ դառնալու գնով, օրը գրօշի մը համար․․․։

Ուրեմն, ի՜նչպէս մեր ծննդավայրի մայրերը իրենց ցասկոտ հոգիներուն խորերէն «ախ» չքաշէին — ալ ինչպէս կարողանային իրենց փոքրիկներուն աչքերուն արտասուքները ցամքեցնել՝ անոնց ԿԱՄԸՇ–ՇԷՔԷՐ կամ ԽՈՒՈՋ–ՇԷՔԷՐ գնելով»։

*Այսպէս տնտեսական անկումը շատ արագ հասաւ եւ Մալաթիացին որ քիչ առաջ տակաւին գաղթել չէր գիտեր, սկսաւ հեռուն բախտ փնտռել, գաղթելով Ամերիկա։*

1908–*ին խաբեպատիր Օսմանեան Սահմանադրութիւնը ժամանակաւոր մեղմացում մը առաջ բերաւ Հայոց դէմ մղուած տնտեսական պայքարին մէջ, բայց շատ կարճ տեւեց, եւ այս անգամ Թուրքերը աւելի սաստիկ ատել սկսան Հայերը։ Անոնք դարձեալ ամենէն առաջ,* 1912–*ին Պալքանեան պատերազմին, Հայերու դէմ տնտեսական ՊԱՅՔԱՐՆեր կազմակերպեցին եւ վերջապէս բնաջնջեցին հայութիւնը Թուրքիոյ մէջ։*

*Թուրքը իբր առեւտրական եւ իբր արհեստաւոր անմրցակից մնաց երկրին մէջ, որ գրեթէ աւեր ու ամայի դարձած էր։*

## Դ.

# ՀՈՂԱՅԻՆ ԱՐԴԻՒՆԱԲԵՐՈՒԹԵԱՆՑ ՄԷՋ ՀԱՅԵՐՈՒ ԴԵՐԸ

Մալաթիա կը գտնուէր դաշտի մը մէջ, որուն հարստութիւնը եւ արգասաբերութիւնը, իր պտղատու ծառերը եւ ամէն տեսակ պտուղները գովուած են թէ՛ հին, թէ՛ նոր եւ թէ մեր ժամանակակից բնիկ եւ օտար աշխարհագիրներ, անոնց մէջ հաշուելով նաեւ Ջօր. Մոլթքէն, որ շատ մեծ գովեստով խօսած է Մալաթիոյ արտադրութիւններուն վրայ: (Տես ԻՍԼԱՄ ՀԱՄԱՅՆԱԳԻՏԱՐԱՆ):

Շէմսէտտին Սամի Թուրք նշանաւոր հեղինակը իր պատրաստած ԳԱ–ՄՈՒՍԻՒԼ ԱԼԵՄ անուն ծանօթ բառարանի մէջ (տպ. 1900) Մալաթիոյ մասին խօսելով կ'ըսէ.

«Հողը բարեբեր եւ ջուրը առատ ըլլալով, հունձքն ալ հարուստ է, տեսակ–տեսակ արմտիք եւ պտուղ եւ բանջարեղէն, ծխախոտ եւ այլ կը հասնին. սակայն հողագործ ժողովուրդը դրամագլուխ չունենալուն եւ նաւահանգիստը հեռու եւ փոխադրութեան միջոցները անգոյ ըլլալուն, ներքին պէտքերուն բաւելէ աւելի չի մշակուիր եւ ժողովուրդը դարձեալ աղքատ է: Ընտանի կենդանիները եւ մասնաւորապէս ոչխարները շատ են եւ կաշիի եւ բուրդի արտածում կ'ըլլայ»:

Բոլոր այս արդիւնաբերական շարժման մէջ շատ բնական է որ Հայերը պէտք էր առաջին տեղը գրաւած ըլլային իբրեւ Մալաթիոյ ամենէն հին բնակիչները, քանի որ անոնց բնակութիւնը այս քաղաքին մէջ անյիշատակ ժամանակներէ կը սկսէր:

Եւ իբրեւ ամենէն հնագոյն բնիկներ անոնք շատ բնական է պէտք է զբաղած ըլլային մարդկային ազգին ամենէն նախնական զբաղումներով, ինչպէս են երկրագործութիւնը եւ անասնապահութիւնը եւ ունենային հողային ստացուածքներ՝ անոնց վրայ հասցնելու համար արմտիք, բանջարեղէն եւ պտուղ, մինչ զարմանալի է որ շատ քիչ հայ հողատէրեր կային եւ հայ երկրագործներ շատ աննշան թիւ կը ներկայացնէին, սա շատ հասկնալի պատճառով որ Մալաթիոյ գիւղացիութեան 95 առ հարիւրը ոչ–հայէ կը բաղկանար, թէեւ հողային մեծ կտորներ կային, որոնք կը պատկանէին հայ բնակչութեան, սակայն երկրագործութեամբ զբաղողները եւ ամէն տեսակի բերքերը արդիւնաբերողները Թուրքերը եւ Քիւրտերն էին (տես Կ. Գ. Նաճարեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Բ. տարի, Թ. 3, էջ 9):

Ասիկա անբնական երեւոյթ մըն էր, ինչպէս անսովոր պատկեր մըն էր, Մալաթիոյ ամբողջ գաւառը հայկական նկատուելով հանդերձ, գաւառին կեդրոնական քաղաքին շուրջը հայ գիւղեր գոյութիւն չունենալը: Արդարեւ Մա–

լաթիոյ շուրջ Հայ գիւղեր գրեթէ չկային: Քանի որ Հայերը այդ շրջանակին վաղեմի բնակիչները կը ներկայացնէին, կարելի չէր որ երկրագործութիւնը անտեսած ըլլային:

Ասիկա կը բացատրուի Մալաթիոյ պատմութեամբ: Այո՛, Հայերը շատ հին բնակիչներէն են Մալաթիոյ, սակայն տեւականապէս հոն չեն կրցած բնակիլ, վասնզի քաղաքը քանիցս կործանած և վերաշինուած, ամայացած և նորէն շէնցած էր, իսկ բնակիչները բռնագաղթով հեռացուած եւ նորէն եկած էին քաղաքը լեցնելու:

Անվարան կրնանք ըսել թէ Հայերը տեւական բնակութիւն չեն ունեցած Մալաթիոյ մէջ, իսկ գիւղերը դատարկացած են Հայերէն մանաւանդ ԺԱ. դարէն ետք Սելճուկ, Թաթար եւ Մոնկոլ ասպատակութիւններու եւ օսմանեան կայսրութեան ժամանակ այդ շրջանակին տեւական խռովայոյզ վիճակին հետեւանքով:

Հայ գիւղացիութիւնը գրեթէ բնաջնջուած էր ԺԹ. դարուն եւ Հայ բնակչութիւնը քաղաքին մէջ ամփոփուած էր:

Ասով հանդերձ քաղաքին մէջը եւ անմիջական շրջանակին մէջ կային բաւական թիւով Հայեր, որոնց գլխաւոր շահու «աղբիւրները էին պարտիզպանութիւնը, այգեպանութիւնը եւ երկրագործութիւնը: Պարտիզպանութեան մէջ որակի տեսակէտէն առաջնակարգ դիրք ունէին Հայերը, որոնք համեմատաբար աւելի կարեւորութիւն կու տային հողը արդիական միջոցներով մշակելուն: Այգեպանութեան մէջ աւելի քիչ բաժին ունէին Հայերը: Երկրագործութիւնը կը գտնուէր հին նախնական դրութեան մէջ: Կիրարկուող բոլոր միջոցները առանց բացառութեան փորձառական էին քան գիտական: Երկրագործին ծով աշխատանքն ու արիւն-քրտինքը յաճախ կախուած էին օդի քմայքէն: Չկային ջրաբաշխական, մեքենագիտական եւ այլ շատ մը արդիական միջոցներ, որոնց կիրառումը գէթ պիտի ապահովէր պարզամիտ երկրագործը՝ կոյր բախտին ապաւինելու մաշեցնող տաժանքին» (**ՆԱԽՃԻՐՆԵՐ**, էջ 59):

Ինչպէս շատ տեղեր, հոս ալ քաղաքացիք չէին զբաղեր երկրագործութեամբ: Հայերէն ոմանք պարտէզներու մէջ բանջարեղէն կը հասցնէին քաղաքին մէջ կամ մօտը:

Անկէ զատ կային բացառաբար քանի մը հայ տուներ, որոնք հողային սեփականութիւններ ունէին եւ կը մշակէին իրենց հողերը:

Հայ երկրագործներու համեմատաբար այս փոքր թիւը ունէր մեծ հեղինակութիւն եւ հայ մարդու խօսքը կ՚ընդունուէր որպէս պատգամ դրացի ժողովուրդներու կողմէ:

Երկրագործութիւնը շատ տուժած է Մալաթիոյ պէս հարուստ եւ արգասաբեր հող ունեցող վայրի մը մէջ, եթէ բաղդատենք Սեբաստիոյ Հայ երկրագործներու արտադրութեան հետ, օրինակ, եթէ Սեբաստացիներ միջին հաշուով յիսուն գրիւ[1] (պուշըլ) ցորեն արտադրեն ամէն մէկ արտավար

(1) Պուշըլ կամ գրիւ հաւասար է 2.5 գրաթի՝ Մալաթիոյ չափանիշ:

հողէ, Մալաթիացիներու արտադրութեան չափանիշը հազիւ երեսուն կ'ըլլար։ Ուրեմն, Թուրքերը եւ Քիւրտերը չէին կրցած այս ճիւղը իր նախապատմական վիճակէն նկատելի կերպով բարձրացնել (Կ. Գ. Հաճարեան, նոյն)։

Ապահովաբար եթէ Հայերը երկրագործութիւնը լքած չըլլային Թուրքերուն, որոնք տիրացած էին գրեթէ ամբողջ քաղաքէն դուրս գտնուող հողերուն, այս վիճակը պիտի չունենար երկրագործութիւնը եւ աւելի յառաջդիմած եւ զարգացած պիտի ըլլար։

Ասով հանդերձ Մալաթիա բաւական մեծ չափով կը հասցնէր որմտիք եւ բամպակ, որոնց վաճառման գործին համար Թուրքերը կ'օգտուէին հայ առեւտրականներու աջակցութենէն։ Նոյնն էր պարագան աֆիոնին համար։

Անոր մշակութիւնը մինչեւ 1880ական թուականները, Քիւրտերուն ձեռքըն էր եւ Հայերը միայն վաճառողներ էին։

Սակայն աֆիոնի բերած շահը այնքան հրապուրիչ էր որ Հայերը նոյնիսկ իրենց քաղաքի պարտէզներուն մէջ մշակել սկսան խաշխաշը, եւ իրենք ալ մասնակցեցան այս մշակութեան եւ Թուրքերուն ու Քիւրտերուն հետ իրենք ալ հասցուցին աֆիոն, որուն այլուր առաքման գործով առաւելաբար Հայերը կը զբաղէին, թէեւ Թուրքերն ալ կը մասնակցէին այս առեւտուրին, ինչպէս մաս ունէին մշակութեանը մէջ։

Հայերը իբր ասոր յարակից գործ կը զբաղէին խաշխաշի հունտէն իւղ հանելու գործով։

Այս իւղը կը ծառայէր տեղական կարմիր ներկի մը պատրաստութեան, որ մեծ սպառում ունէր։

Այդ խաշխաշի հունտին իւղը դարձեալ հայ առեւտրականներն էին որ կը ղրկէին ուրիշ քաղաքներ։

Հայերը նոյնպէս թթենիներ հասցուցած եւ բազմացուցած էին շերամապահութեան ձեռնարկելու համար։ Առհասարակ Հայերը կը զբաղէին շերամաբուծութեամբ, որ մինչեւ վերջ իրենց ձեռք պահած էին։

Հետեւաբար իբր մշակ շատ երկրորդական էր իրենց դերը, սակայն այդ արդիւնաբերութեան մէջ իրենց վաճառողի դերը մեծ էր։

## Ե.

# ՀԱՅՈՑ ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

Հայերը, ինչպէս տեսնուեցաւ, երկրագործութեան մէջ կարեւոր տեղ մը չունէին, վասնզի դժբախտաբար հողազուրկ դարձած էին, վասնզի Թուրք եւ քիւրտ պէյերը գրաւած էին Հայոց հողերը, առաւելապէս ապօրէն միջոցներով, սակայն իբր առեւտրական իրենք կը տիրէին շուկային եւ Մալաթիոյ մէջ գրեթէ այլամերժաբար իրենք կը զբաղէին դուրսէն ապրանք բերելով եւ դուրս ապրանք ղրկելով։

Մալաթիոյ առեւտրական գործառնութիւնները չէին կատարուեր ուրիշ տեղերու մէջ սովորական եղած եղանակով։

Հայ սեղանաւորներն էին որ կը կատարէին գործակատարի դերը ապրանքներուն ներածման համար։

Այս սեղանաւորները պարզ գործակատարի դեր կը կատարէին հանդէպ կեդրոն քաղաքներու միջնորդներու, որ ուղղակի ներմուծող տունը կը ներկայացնէին մասնաւորապէս Կ. Պոլսոյ եւ Հալէպի մէջ։ Ուրիշ խօսքով հայ սեղանաւորներն էին վարկ բացող մարմինները, արհեստաւոր մեծ ու փոքր հաստատութեանց ու վաճառատուներու (տես Կ. Գ. Նաճարեան, Մալաթիա որպէս կեդրոն երկրագործութեան եւ ճարտարարուեստի, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Բ. տարի, Թ. 3, էջ 10)։

Մալաթիա ներածուած նիւթերը շատ եւ բազմապիսի էին։ Անոնցմէ գլխաւորներն էին ամէն տեսակ մետաղներ, որոնք կը ստացուէին ձուլուած վիճակի մէջ, կերպասեղէններ, ռուսական եւ ամերիկեան կաշի, քարիւղ, աղ, օճառ, լուցկի եւ մանրավաճառներու յատուկ՝ արտասահման պատրաստուած տնական զարդեր եւ առարկաներ (Կ. Գ. Նաճարեան, նոյն)։

Ինչպէս ներածումը, նոյնպէս արտածումը կ'ըլլար գրեթէ միեւնոյն միջոցաւ, այն տարբերութեամբ միայն որ արտածող գործակատարները աւելի մեծ թիւ կը կազմէին։

Մալաթիա դուրս կը ղրկէր գլխաւորապէս աֆիոն, մետաքս, չոր ծիրան, չոր թութ, ռուպ, պտուղներ, տանձ, խնձոր, չամիչ, ծիրանի կուտ (անուշ եւ լեղի)։

Մալաթիոյ արտածման մեծամասնութիւնը կը սպառէր Թուրքիոյ մէջ, բայց քանի մը արդիւնաբերութիւններէն, որոնք կը վաճառուէին եւրոպական ներկայացուցիչներու միջոցաւ ու կ'երթային ուղղակի Եւրոպա։ Օրինակ՝ ծիրանի կուտ, մետաքս, ծխախոտ եւ աֆիոն։ Թուրքիա եւ մերձակայ երկիրներ արտածուող արտադրութիւններն էին չոր թութ, թութէ պատրաստուած օղի, ռուպ, պաստեղ եւ կարգ մը ուրիշ քաղցրեղէններ, ծիրան, դեղձ, տանձ, խնձոր, չամիչ եւ սալորներու տեսակներ, թէ՛ թարմ եւ թէ պահածոյ։ Միջանկեալ պէտք է յիշել հոս որ Մալաթիոյ վաճառանիշը կրող ծիրան, տանձ եւ խնձոր ստացած էին մեծ համբաւ, ոչ միայն Թուրքիոյ, այլեւ եւրոպական մեծ քաղաքներու մէջ ճանչցուած են որպէս համեղ եւ անզուգական պտուղներ (Կ. Գ. Նաճարեան, նոյն)։ Կ'արտածուէին նաեւ ծիրանի կուտ, ընկոյզ, կաղին եւ նուշ, ինչպէս նաեւ արմտիքներ — ցորեն, գարի, եգիպտացորեն, կորեկ, ոսպ, սիսեռ, բրինձ եւ լուբիա։ Աւելի կարեւոր եւ կենսական նկատուած նիւթեր, որպիսին են բամպակ, բուրդ, կանեփ, խաշխաշ, ծխախոտ եւ կաշի, նաեւ կը կազմէին արտածման առարկաներ։

Հայ պարտիզպաններու մշակած բանջարեղէնները եղակի էին, օրինակ, սեխ, ձմերուկ, խաղող, պատնջան, դախդեղ, թմաթէս, ճակնդեղ, կաղամբ, ստեպղին, վարունգ եւայլն (Կ. Գ. Նաճարեան, նոյն, 10)։

Մալաթիոյ թէ՛ արտածման եւ թէ՛ ներածման վաճառականութիւնը,

*Թէեւ 95–ի ջարդերէն առաջ Հայերու հակակշռին տակ եղած էր, սակայն անոնց կրած նիւթական եւ ֆիզիքական կորուստը պատճառ եղան որ այս ճիւղը մեծամասնութեամբ անցնի նոր բարգաւաճող Թուրքերու ձեռքը, որոնք Հայերուն կողոպուտով սկսան վաճառականութիւն ընել, ինչպէս Անատոլեան շատ մը քաղաքներուն, նոյնպէս նաեւ Մալաթիոյ մէջ, բայց շատ կարճ տեւեց իրենց փայլը:*

*Քանակով քիչ, բայց որակով բարձր Հայեր, տակաւ առ տակաւ սկսան իրենց նախորդ դիրքին տիրանալ եւ մասամբ գրաւել հրապարակը Թուրքերու ձեռքէն: Դժբախտաբար վրայ հասան համաշխարհային Ա. պատերազմը եւ Հայերու տարագրութիւնը 1915–ին: Անգամ մը եւս կրկնուեցաւ անողոք պատմութիւնը ի վնաս Հայերու, այս անգամ աւելի սոսկալի քան երբեք (Հմմտ. Կ. Գ. Նաճարեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Բ. տարի, Թիւ 21):*

*Հայերը այս անգամ ջնջուեցան Մալաթիայէն եւ ազատ ասպարէզ թողուցին Թուրքերուն, որոնք ապիկար, հակառակ պետական պաշտպանութեան եւ քաջալերանքին չկրցան քաղաքին տնտեսական կեանքին մեծ զարկ մը տալ եւ ոգեւորել քաղաքը՝ վաճառականութեամբ:*

*Թուրք հանրապետութիւնը թերեւս ասոր համար աւելի ճարտարարուեստական կեդրոնի մը վերածելու աշխատեցաւ Մալաթիան, որ օսմանեան կայսրութեան տիրապետութեան տակ եթէ ոչ մեծ առեւտրական ոստան մը, գոնէ առեւտուրի միջակ կայան մը կրցած էր ըլլալ, շնորհիւ հայ առեւտրականներուն:*

*Հայերը թերեւս այս պատճառով առեւտրական ընդարձակ գործունէութիւններ ունեցող մեծ վաճառականներ գրեթէ չեն ունեցած Մալաթիոյ մէջ, կամ շատ քիչ եղած է անոնց թիւը:*

*Մալաթիոյ հայ առեւտրականները կը զբաղէին գլխաւորապէս Մալաթիոյ արտադրութիւններու վաճառումով ոչ միայն տեղւոյն վրայ, այլեւ մասնաւորապէս շրջակայ գաւառները եւ նոյնիսկ արտասահման ղրկելով: Գ. Մելիտինեցի իբրեւ առեւտուրի նիւթ Մալաթիոյ գլխաւոր արտադրութիւններէն՝ չոր ծիրանը, չամիչը, թութը, ընկոյզը, կանեփը եւ որոշ քանակով ափիոնը կը ներկայացնէ: Ասոնցմէ ծիրանին չորը եւ սեւ չամիչը նշանաւոր էին (Նոյն, էջ 60) իրենց որակով եւ կ՚արտածուէին Թուրքիոյ բոլոր կողմերը եւ մասամբ ալ արտասահման: Թութէն կը պատրաստէին ռուպ եւ պաստեղ, մասնաւորապէս ձմեռուան պահեստի համար: Թարմ թութը կը լեցնէին պարկի մէջ, փայտէ գործիքներով կը քամէին ջուրը, յետոյ եռացնելով նորէն կը քամէին աւելի նուրբ կտաւով. գոյացած ջուրը (շիրէ) տանիքներու վրայ հողաշէն ամաններու մէջ արեւուն տակ կը չոգիանար, ու թանձրանալով կը փոխուէր ռուպի: Եւ կամ ՇԻՐԷՆ աւելի վերջ, համեմատական չափով ալիւր կամ նիշէ կը խառնէին, որմէ կը գոյանար ՄԱԼԷԶ (խիւս): Յետոյ մալէզը մաքուր ճերմակ կտաւի վրայ նուրբ կերպով կը փռէին, որ չորնայ արեւուն դիմաց: Երկրորդ կամ երրորդ օրը կտաւին հակառակ կողմը խոնաւցնելով, թուղթի թանձրութեամբ չորացած, բայց ձգուք խիւսը իբրեւ պաստիլ կը*

*քաշէին ու եռանկիւն կամ քառանկիւն ծալքերով կը շարէին թիթեղներու մէջ* (ՆԱԽԾԻՐՆԵՐ, էջ 10)։

*Հայ առեւտրականներուն շրջակայ քաղաքներ ղրկած եւ ուրիշ տեղերէ բերած ապրանքներուն վրայ պիտի չխօսիմ, վասնզի Պէննէեան քհնյ. թուած է մանրամասնօրէն* (*տես վերը*)։

*Դժբախտաբար չկան վիճակագրական տեղեկութիւններ, որոնք մեզի ցոյց տան թէ Մալաթիոյ առեւտրական կշիռը ի՞նչ է, ի՞նչ արժէքով ապրանք կ՚արտածէ եւ ի՞նչ արժէքով ապրանք կը ներածէ եւ անոնցմէ Հայերուն արտածած եւ ներածած ապրանքներուն արժէքը ի՞նչ է։*

*Միայն յայտնի է որ Հայերը* 1908–*էն ետք* «Վաճառականութեան մէջ... հազիւ ունեցան աչքառու դիրք», երբ «վրայ հասաւ համայնական պատերազմը» (ՆԱԽԾԻՐՆԵՐ, էջ 59) *եւ ինչ որ ունէին իբր քիչ՝ ան ալ կորսնցուցին եւ բոլորովին աղքատացան եթէ ողջ մնացին։*

*Ասով հանդերձ այն աննշան թիւով Հայերը, որոնք դարձան Մալաթիա եւ աւելի աննշան թիւով հոն մնացողները, հոն կ՚ապրին անբաղձալի պայմաններու մէջ, սակայն իբր գործի մարդիկ նորէն արժէք կը ներկայացնեն եւ վստահաբար դեր մը կը կատարեն թերեւս Թուրք ընկերներու հովանիին տակ, առանց իրենք երեւալու։*

## Զ.

# ՀԱՅ ՃԱՐՏԱՐԱՐՈՒԵՍՏԱԿԱՆՆԵՐ

*Ինչպէս ամէն քաղաք, նոյնպէս նաեւ Մալաթիա, անշուշտ ունէր իր ճարտարարուեստները, որոնց ամենէն նախնականը տարազագործութիւնն էր, որ կարելի չէ որ գոյութիւն ունեցած չըլլար, քանի որ Մալաթիա մեծ քաղաք մըն էր որ ունէր իր բաւական թիւով բնակչութիւնը թերեւս մեծամասնութեամբ Հայ, ինչպէս ինչ ինչ յիշատակութիւններէ կը հասկցուի։*

*Մելիտինէ կը նկատուէր հայկական քաղաք անշուշտ իր բնակչութեան մեծամասնութիւնը նկատի ունենալով։*

*Եւ եթէ ճարտարարուեստներ գոյութիւն ունէին հոն, Հայերը ապահովաբար անոնց մէջ կարեւոր բաժին մը ունէին, իբր մեծամասնութիւնը անոր բնակչութեան։*

*Իպն ալ Շիհնա*[1] (Ibn-al-Sihna), *որ ԺԸ.* (18–*րդ*) *դարու գրած է իր պատմութիւնը, կը հաւաստէ թէ Մալաթիոյ մէջ ատեն մը ոստայնանկութիւնը շատ ծաղկեալ ճարտարարուեստ մըն էր։*

---

(1) Արտաւազդ Արքեպ. Սիւրմէեան իր Հալէպի պատմութեան երեք հատորներուն մէջ կ՚ուղղագրէ Ibn-Ach-Chihna=Իպն ըշ Շըհնի: Անիկա գրած էր Հալէպի պատմութիւն մը:

Իպն ալ Շիհնայի գրածին համաձայն, ժամանակին այս քաղաքին մէջ 12.000 կարկահ կար բուրդ հիւսելու համար, բայց իրաւ է որ նոյն կարկահները գոյութիւն չունէին այլեւս, նոյնիսկ Իպն ալ Շիհնայի օրով:

ԺԹ. դարուն վերջերը եւ Ի. դարուն սկիզբները ճարտարարուեստ ըսուած բանը գրեթէ գոյութիւն չունէր Ա. Համաշխարհային պատերազմէն առաջ եւ ինչպէս ամբողջ Թուրքիոյ, նոյնպէս Մալաթիոյ մէջ ճարտարարուեստները չէին քաջալերուեր եւ պետական պաշտպանութիւն չէին վայելեր:

Արդարեւ ճարտարարուեստ կոչուելու արժանի գործ մը գոյութիւն չունէր Մալաթիոյ մէջ, որուն մասին կարելի ըլլայ հպարտութեամբ խօսիլ, բացի մանուսայի միակ գործարանէ մը, որ Թուրք գործարանատէր մը հիմնած էր Արաբկիրցի հայ արհեստաւորներ աշխատցնելով: Այդ գործարանին մէջ կը շինուէին զանազան տեսակ անձեռոցներ, կտաւեղէններ եւայլն:

Այս հիմնարկը առաջին օրէն մեծ նշանակութիւն ստացաւ այն պարզ պատճառով որ այդ Թուրքը գործածեց հոսող ջուրին զօրութիւնը, դարձնելու համար իր գործարանին մեքենաներուն անիւները եւ ջուլհակութիւնը բարձրացուց այնպիսի աստիճանի մը, որ իսկապէս նախանձը կը շարժէր Արաբկիրցի եւ Կիւրինցի հայ վարպետներուն:

Այս ճարտարարուեստին նախանիւթը բամպակն էր, որ կը հասնէր Մալաթիոյ մէջ, Եաղլի խանի տափարակ եւ ընդարձակ դաշտին մէջ, որ յարմարագոյն վայրը նկատուած էր օտար եւ տեղացի մասնագէտներէն, որոնք փորձերով հաստատած էին թէ արմտիքի ոեւէ մէկ տեսակը մշակել այս հողամասի վրայ դրամի եւ ժամանակի վատնում պիտի նշանակէր:

1903-ին Ռումելիէն Անատոլու փոխադրուած Չէրքէզ մուհաճիրներ հաստատուեցան Եաղլի խանի հիւսիսային մասին վրայ՝ Ակճա Տաղի ստորոտը, Հասան Պատրըղ եւ Միշովկայի մէջտեղ: Այս գաղթականները, որոնք Ռումէլիի երկրագործ եւ գիւղացի դասակարգին կը պատկանէին, իրենց ժրաջան եւ անխոնջ աշխատութեամբ չկրցան ապրուստ մը ապահովել, ձրի տրուած այս հողէն:

Աղերսագիրներուն ձանձրացուցիչ տարափը, կերպով մը կասեցնելու համար, կեդրոնական կառավարութեան կողմէ ուղարկուեցան մասնագէտ երկրաբաններ, յոյն ճարտարապետի մը ընկերակցութեամբ, որպէսզի հողը Թօղմա գետի ջուրով ոռոգելու եւ յարմարագոյն արմտիքը մշակելու միջոցի մասին խորհին: Փորձերով նկատուեցաւ որ բամպակը յարմարագոյն նիւթըն էր մշակութեան, այս հողին վրայ, բայց բաւարար ջուրով ոռոգելու համար անհրաժեշտ էր հինգ մղոն հեռաւորութեամբ ջրանցք մը բանալ՝ Թօղման գետի այն կէտէն, որուն բարձրութիւնը պիտի հաւասարէր դէպի կիրճ առաջացող ջուրի ընթացքին:

Պատրաստեցին տեղեկագիր ծրագրուած ջրանցքի մասին եւ մեկնեցան, մեծ յոյս ներշնչելով այդ մուհաճիրներուն, որոնք շատ երկար սպասեցին եւ դուցէ դեռ կը սպասեն այդ ծրագրին գործադրութեան, վասնզի ես չկրցայ ստուգել թէ այդ ջրանցքը շինուած է՞ թէ ոչ: Բայց մինչ այն անոնք մշակե-

ցին բամպակ՝ հում նիւթ հայթայթելու համար մանուսայի գործարանին, որ ցարդ կը գործէ Մալաթիոյ մէջ։

Այս միակ ճարտարարուեստական հաստատութենէն դատ Մալաթիոյ մէջ կային մետաքսի փոքր մանարաններ, որոնց տէրերը եւ վարիչները Հայեր էին։ Հիմա կա՞ն, չեմ գիտեր։

Քաղաքը ճարտարարուեստական կեդրոն մը դարձնելու համար շարժիչ ոյժի պէտք կար եւ Մալաթիոյ մէջ Ա. համաշխարհային պատերազմէն առաջ ոչ ելեկտրական ոյժ եւ ոչ ալ մեքենական շարժիչներ կային նպաստելու համար ճարտարարուեստին, որ մնացած էր շատ նախնական վիճակի մէջ։

## Է.

# ՀԱՅ ԱՐՀԵՍՏԱՒՈՐՆԵՐ

Մալաթիոյ Հայերու տնտեսական վիճակը շատ աւելի տագնապալի պիտի ըլլար 1895-էն ետք, եթէ անոնք արհեստները իրենց ձեռքին մէջ չունենային։

Արհեստաւորներուն 95 առ հարիւրը Հայեր էին։ Անոնք շնորհիւ իրենց արհեստներուն տնտեսապէս անընկճելի կը մնային։

Այսպէս, քաղաքին ամենէն կենսական եւ անհրաժեշտ, ինչպէս նաեւ շահաբեր արհեստները Հայոց ձեռքն էին։ Թուրքերու մէջ ալ քիչ շատ արհեստներու վարժ մարդիկ կային բայց շատ սահմանափակ էր անոնց թիւը, ինչպէս սահմանափակ էր հայ երկրագործներու թիւը։

Իսկ կային արհեստներ, որոնք այլամերժօրէն Հայոց ձեռքն էին։ Ինչպէս օրինակի համար ոսկերչութիւնը, որ նուրբ գործ մըն է, բացարձակ Հայերու մենաշնորհն էր եւ մէկ հատ Թուրք կամ ուրիշ ազգէ ոսկերիչ չկար Մալաթիոյ մէջ։

Նոյնպէս բոլոր ներկարարները Հայեր էին։ Հայկական արհեստ մըն էր նաեւ պղնձագործութիւնը իր յարակից ճիւղերով։

Պղինձը իբր նախանիւթ Եւրոպայէն կը ներածուէր ձուլարանի մէջ ձուլուած վիճակի մէջ։ Այդ ձուլուածը ծեծելով հայ արհեստաւորներ թերթերու կը վերածէին եւ ապա կը շինէին առտնին անօթներ, որոնց վրայ ծաղկանկարներ կամ գիրեր կը փորագրէին։

Մալաթիոյ տուներուն մէջ յաճախ կը գտնուէին մեծ ափսէներ, որոնք ՍԻՆԻ կը կոչէին։ Անոնցմէ ոմանք հարիւրաւոր տարուան գործեր էին։

Պղնձեղէնները առ հասարակ կը կլայեկուէին, պաշտպանելու համար ժանգոտելէ։

Հայ արհեստաւորներն էին որ կը դրագէին զինագործութեամբ։ Անոնք նախ կը շինէին զէնքին փողը եւ յետոյ միւս մասերը կը կցէին անոր։ Սովորաբար ատրճանակները եւ հրացանները կը նախշէին արծաթով եւ սատափով։

*Հայ էին նաեւ եւրոպական հագուստներու դերձակները, եւ եւրոպական ձեւով կօշիկներ շինողները:*

*Շէնքերու ճարտարապետէն սկսեալ մինչեւ յետին գործաւորը առհասարակ Հայեր էին, ինչպէս քարակոփները, որմադիրները եւ հիւսները:*

*Հանրային շէնքերը եւ պետական ու կրօնական մեծ հաստատութիւնները, ինչպէս եկեղեցիները, մզկիթները, բաղնիքները, զօրանոցները, դպրոցները եւայլն, բոլոր հայ ձեռքերով կառուցուած էին: Այս կառուցումները իրագործող արհեստաւորներու կարգին պէտք է դասել նաեւ ատաղձագործները իրենց բոլոր ստորաբաժանումներովը:*

*Հայ վարպետներ միայն շէնքերու փայտաշէն մասերուն շինութեամբ չէին պարապեր, այլ անոնք առանին գործածութեան համար կը շինէին փայտէ գործիքներ, սնտուկ, օրօրոց, ճախարակ, աթոռ, քիւլեք, փայտէ ամաններ, որոնք կը գործածուէին ջուր, կաթ, մեղր եւ ռուպ լեցնելու համար:*

*Այս ամանները շինողները, ինչպէս շէնքերու մէջ աշխատող բոլոր ատաղձագործները, Հայեր էին ընդհանրապէս:*

*Նոյնպէս Հայերն էին որ կը պատրաստէին թաղիք (ֆէչէ):*

*Բամպակ, բուրդ եւ քթան, կերպասներու վրայ նախշելով տպածոյի վերածելու գործը, ինչպէս նաեւ ԵԱԶՄԱՅԻ շինութիւնը, որ նոյնպէս Հայեր կը կատարէին:*

*Հայոց ձեռքն էր նաեւ տարազագործութիւնը: Անոնք կը պատրաստէին տեղական տարազի համար գործուած մանուսա կոչուած գոյնզգոյն կերպասները, որոնք առհասարակ տուներու մէջ կիները իրենց ձեռքով կը գործէին:*

*Մալաթիոյ հայ կիները կապոյտ կամ կարմիր բամպակէ գործուած տեղական կտաւներու վրայ մանածով եւ երբեմն մետաքսով կ'ասեղնագործէին եւ նաշխեր կը բանէին: Այս կտաւներուն ծաղիկները նախ կը դրոշմէին կաղապարներով, որոնք կը պատրաստուէին տեղական վարպետներու կողմէ:*

*Այս նաշխերով զարդարուած կտաւները կը գործածէին վերմակներու, աթոռներու, ծածկոցներու, բարձերու երեսները ծածկելու:*

*Այս ձեռագործները կ'ըլլային շատ տոկուն եւ դիմացկուն, եւ սերունդէ սերունդ կը փոխանցուէին:*

*Ասոնցմէ որոշ չափով մը կ'արտածուէր նաեւ արտասահման:*

*Հայերն էին նոյնպէս քաղաքին ձուլիչները (Տէօֆմէճի), որոնք արոյրէ կամ երկաթէ գործիքներ եւ տնական առարկաներ կը պատրաստէին, տեղական պէտքերու համար: Նոյնպէս Հայերն էին որ կը շինէին երկրագործական գործիքները, ինչպէս արօրները, բահերը, բրիչները եւայլն, իրենց բոլոր կազմածներով:*

*Հայերն էին քաղաքին ժամագործները:*

*Բոլոր հայ արհեստաւորները կը գերազանցէին Թուրքերը, կարեւոր նկատուած ճիւղերու մէջ, առանց բացառութեան (Կ. Գ. Նաճարեան, ՊԱՊ ՕՒԽՏԻ, Բ. տարի, Թ. 3):*

Իբր արհեստ ամենէն ընթացիկ արհեստներէն մէկն է աշխարհի ամէն կողմը, ոտնամաններու պատրաստութիւնը, մանաւանդ երբ երկիրը հասարակածային չէ եւ կօշիկը անհրաժեշտութիւն մըն է։

Մալաթիա իբր բարեխառն կլիմայ եւ մանաւանդ սաստիկ ձմեռ ունեցող գաւառ մը, պէտք էր զարգացած կօշկակարութիւն մը ունենար։

Արդարեւ տեսակաւոր ոտնամաններու պատրաստութիւնը, Մալաթիոյ մէջ կարեւոր ընթացիկ գործ մըն էր, որուն մէջ Հայերը կը փայլէին։

Մասնաւորապէս տիրապետող ոտնամանն էր ԵԷՄԷՆԻՆ, որ ՏՐԵԽի քանի մը տեսակներուն հետ գիւղերուն մէջ անխտիր կը գործածէին գիւղացիք։ Իսկ քաղաքին մէջ 70 առ հարիւրը ԵԷՄԷՆԻ կը հագնէին։ Ժողովուրդին հասարակ դասակարգէն դուրս բարձր դասի պատկանողները եւ հարուստները միայն կօշիկ կը հագնէին։

Աւելորդ է կարծեմ ըսել թէ ԵԷՄԷՆԻ եւ կօշիկը միեւնոյնը չեն, թէեւ երկուքն ալ նոյն նպատակին կը ծառայեն, հետեւաբար իբրեւ արհեստաւոր շինողները երկուքի կը բաժնուին՝ ԵԷՄԷՆԻՃԻՆերու եւ կօշկակարներու։

Կօշկակարութեան մէջ ամենէն հմուտ վարպետը ԿՕՆՏՐԱՃի Կուրղէն էր։ Ան ունէր կահաւորուած խանութ մը եւ 5—6 աշկերտ։

Կառավարական պաշտօնեաներէ, բոլիսներէ եւ աշխատաւորներէ մեծ ապսպրանքներ կը ստանար։ Կային տասի չափ ուրիշ վարպետներ։ Քաղաքի երիտասարդութիւնը աստիճանաբար կը սիրէր լաւ հագուիլ։

Առաջ չուխայէ միլթան, ալաճայ զպուն եւ գլուխնին ֆէս կը դնէին ու ճազմա կը կապէին, դուրսէն եկողները եւ մասնաւորապէս Խարբերդի դոլէճականները տեսնելով, կը հետեւէին անոնց պէս հագուիլ։

Այնպէս որ կամաց-կամաց ճազմաները կը վերնային, զպունի տեղ տափատ (բանթալոն) կը հագուէին, եւ ԵԷՄԷՆԻի տեղ կօշիկ։ Եւ պահանջին ուղիղ համեմատութեամբ ալ կօշկակարներու թիւը կը շատնար (Ն. Քէփէնէկեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, թ. 23, էջ 13)։

***

Թէ՛ քաղաքին եւ թէ՛ գիւղերուն համար ԵԷՄԷՆԻ եւ կօշիկ կարողներէն ետք կու գային Թեկելէճիները։ Այս արհեստը աւելի նուրբ էր։ Կային 10—12 խանութներ, որոնք ունէին իրենց աշկերտները։

Աչքի հետ կապ ունեցող եւ շատ բարակ արհեստ մը ըլլալուն համար, ժողովուրդը կ՚ըսէ «Թեկելէճիութիւնը ասեղով ջրհոր փորել ըսել է»։

Այս վարպետները միլթաներուն վրայ ասեղով գեղեցիկ նաշխեր կը բանէին, եւ ով որ աւելի լաւ կարէր ու նաշխէր, ան կը շահէր համբաւի առաջնութիւնը։

Ասոնց գործը մասնաւորապէս Մալաթիոյ եւ Խարբերդի միջեւ գտնուող Շիրոյի գիւղացիներուն հետ էր։ Ասոնց կիները կը հագուէին ՍԱՀԱՅ, այրերը ԹԵԿԵԼԷ։ Այս գիւղացիները ամէն գարնան կ՚երթային Պոլիս, եւ աշնան կը

դառնային: Հայ արհեստաւորները ամբողջ գարնան եւ ամառուան եղանակները կը գործէին, որպէսզի պատրաստ ըլլան աշնան խնդրանքներուն համար: Այս արհեստաւորները իրենց աշկերտներուն կը վճարէին տարեկան 2–3 ոսկի:

Թելեքուն եւ կօշիկի երես պատրաստելու արհեստը Մալաթիա բերած էր Հայ մը՝ Յովհաննէս Թիֆթէկճեան, որ Եգիպտոս սորված էր այս արհեստը (Ն. Քէփէնէկեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 23, էջ 13):

Թելեքուն կը շինէր Թիֆթիկճեան կոմի կաշիէ (Քէօսէլէ), վասնզի գիտած էր որ ՍԱԽԹԻԵԱՆը, որմէ կը շինէին ԵԷՄԷՆԻՆերը, երբ Թրջելու ըլլային, ջուրը ներս կ՚անցնէր, ինչպէս նաեւ ցեխը: Անիկա կը յաջողի համոզել ԵԷՄԷՆԻՃԻՆերը որ այս Թելեթուն կաշիէն ջուր չ՚անցնիր և աւելի հաստատուն է քան ՍԱԽԹԻԱՆը:

Նախ ՉԱՂԸՃԵԱՆ Ահարոն վարպետը կը գծէ այս նոր տեսակ կաշին, որուն գործածութեան օգուտը կը տեսնեն գործնականապէս: Ահարոն վարպետին գործը Սինանցիներուն եւ Տըրժանցիներուն հետ էր: Անոնք քօչուոր էին եւ ամէն Մայիսին ԵԱՅԼԱՆերը կ՚երթային եւ աշնան վերջերը կը դառնային: Անոնք երբ փորձեցին և տեսան որ աւելի տոկուն է այս կաշին, Ահարոն վարպետին անունը տարածեցին իբրեւ տոկուն կօշիկ շինող: Ասոր վրայ ուղտապանները եւ ջորեպանները մեծ Թիւով իրեն կը դիմեն:

Ուրիշ վարպետներ իրենք ալ կը սկսին այս կաշին գործածել, որով կը մեծնայ Թելեթուն կաշիի պահանջը, եւ Թիֆթիկճեան խնդրանքնին առանձին չկարենալով գոհացում տալ, Ամերիկայէն դարձող Դաւիթ Տէլի Տէտէեանի հետ ընկեր կ՚ըլլայ, եւ գործը կ՚ընդարձակէ:

Դաւիթ Տէլի Տէտէեան (Դաւիթ Խաչատուրեան) արհեստը սորվելէն ետք կը բաժնուի եւ կը բանայ առանձին աշխատանոց մը, որ շնորհիւ իր ջանասիրութեան եւ հնարամտութեան կը վերածուի պզտիկ գործարանի մը:

Ան ոչ միայն Մալաթիոյ, այլեւ մերձաւոր քաղաքներու մէջ կը սպառէր պատրաստած կաշիները, որոնց համար խնդրանք կար:

Քիչ ետք անոր դէմ ալ զօրաւոր մրցակից մը, Յովհաննէս Տէր Մուսելեանը կ՚ելլէ:

Թիֆթիկճեանի սկսած Թելեքուն կաշի պատրաստելու գործը աստիճանաբար աւելի զարգանալով ու աւելի տարածուելով, Մալաթիոյ Հայերուն համար ամենաշահաբեր արհեստներէն մէկը կը դառնայ եւ ապրուստի լաւագոյն միջոց մը: (Ն. Քէփէնէկեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 23, էջ 13):

Ընթացիկ եւ տարածուած գործերու մէկ ուրիշն էր դարբնութիւնը (Չիլինկիրութիւն), որ երկաթագործութեան մէկ նրբացած մասն էր եւ Հայերուն ձեռքը:

Այս գործին երկու նշանաւոր վարպետներն էին Գէորգ Քէքէվեան եւ Սարգիս Պաճաքսուզեան:

Անոնք կը շինէին շղթաներ, նորաձեւ վառարաններ, զանազան տեսակ զմելիներ, կղպանքներ, պատուհաններու համար երկաթէ ձողեր, եւայլն (Ն. Քէփէնէկեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 23):

*Մալաթիոյ մէջ կային նաեւ տաղձագործներ, որոնց մէջ իբր մեծ վարպետ նշանաւոր էր Գարագըղեան Առաքել վարպետը, ոսկերիչներ, բըրուտներ, պղնձագործներ, քէչէճիներ եւայլն, եւայլն։*

*Եւ որովհետեւ արհեստաւորներու 95 առ հարիւրը Հայեր էին, արհեստական ոեւէ նորութիւն եւ բարւոքում արհեստներուն մէջ Հայոց միջոցաւ կը ներմուծուէին։ Չկար մասնաւոր ճիւղ մը, որ գերազանցապէս ենթարկուած ըլլար Թուրքերուն հակակշռին։*

*Ընդհակառակը հայ արհեստաւորներ էին, որոնք տիրապետող դիրք ունէին մետաղագործութեան մէջ, որ իր ամէն ճիւղաւորումներով, ինչպէս երկաթէ, պղինձէ, արոյրէ, թիթեղէ, ոսկիէ եւ արծաթէ առարկաներու շինութիւնը Հայերուն ձեռքն էր։*

*Հայ էին դերձակները, կօշկակարները, որմնադիրները, ներկարարները եւայլն։*

*Այս արհեստները, որոնք առաջնակարգ կարեւորութիւն ունէին եւ կը նկատուէին որպէս կենսական գործեր, Հայերը մասնաւոր նախանձախնդրութեամբ մը կը փոխանցէին որդւոց որդի եւ բացուկէ բացուկ իբր ոսկի ապարանջան եւ կը պահէին իրենց մէջ սերունդէ սերունդ։*

## Ը.

# ԱՐՀԵՍՏԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆՆԵՐ

*Մալաթիան Հայերու համար աւելի արհեստի քաղաք մըն էր քան թէ վաճառականութեան, հակառակ անոր որ իր բարեբեր հողը եւ աշխարհագրական դիրքը վաճառականական ալ յարմարութիւններ կը ներկայացնէր։*

*Սակայն վերը բացատրուած պատճառներով Հայերը չէին կրցած վաճառականութեան մէջ յառաջդիմել, այլ ընդհակառակը իրենց ձեռք բերած դիրքերն ալ կորսնցուցած էին եւ նախընտրած ինքզինքնին արհեստներու նուիրել։*

*Առհասարակ անոնք ձեռքի աշխատութեամբ իրենց օրապահիկը կը շահէին, առանց համախումբ աշխատութիւններու եւ ոչ ալ բնութեան շնորհներէն օգտուելով շարժիչ ուժեր ստեղծելու վրայ կը խորհէին։*

*Չափազանց նախնական էր իրենց առեւտուրին կերպերը, ինչպէս նաեւ իրենց արհեստագործութեան եղանակները։*

*Երեւակայեցէք որ ընդհանուր կերպով թէ՛ Թուրք եւ թէ՛ հայ բնակչութեան մտայնութիւնը այնքան նախնական էր որ տակաւին հնադարեան մեթոտներով կը գործէին եւ դրամէն աւելի բերքերը կը ծառայէին աշխատանքը վարձատրելու։*

*Արհեստաւորներ կային, որոնք արհեստը ի սպաս կը դնէին իրենց յաճախորդներուն ամբողջ տարին, աշնան քաղէն ետք ստանալու համար իրենց*

աշխատութեան վարձքը հողային արդիւնաբերութիւններով։

Այս նախնական բարքերը եւ սովորութիւնները որ շատ յետամնաց միջավայրին մէջ տակաւին կրնային շատ երկար տեւել, ինչպէս նաեւ խեղճ արհեստաւորներու ողորմելի վիճակը, եթէ Օսմանեան Սահմանադրութեան հռչակումէն (1908) ետք ընկերվարական քարոզութիւններ չկատարուէին հայ մարդոց կողմէ, որոնք իբրեւ յեղափոխականներ երեւան եկան եւ դասակարգային պայքարի ռահվիրաներ հանդիսացան։ Անոնք չունէին ուրիշ գետին ընկերվարութիւն խաղալու եւ ինքզինքնին ցոյց տալու իբրեւ պաշտպաններ ընչազուրկ եւ կեղեքուած դասակարգին, եթէ ոչ արհեստաւորները, որոնք կազմակերպել ջանացին եւ թերեւս օգտակար եղան տեսակէտով մը, սակայն իրենց գործելակերպը դժբախտաբար յաճախ ունէր Թուրքերը գրգռելու բնոյթ եւ այս տեսակէտով կը վտանգէր Հայերը՝ ազգամիջեան պայքար ստեղծելով։

Անոնք առանց նկատի ունենալու միջավայրը, մեր ժողովուրդին տհասութիւնը, հարեւաններու ծայրայեղ յետամնացութիւնը, սկսան տարածել գաղափարներ եւ տեսութիւններ, որոնք միջավայրին ըմբռնումներուն հետ հաշտեցնել դիւրին չէր։

Սակայն արտասահմանէն Թուրքիա խուժող կարգ մը «Հերոս»ներ, որոնք բնաւ չէին ճանչնար այս միջավայրը, ուր գործել կը հրաւիրուէին, փորձեցին ընկերվարական գաղափարներ տարածել։ Անոնք խօսիլ սկսան Մալաթիոյ լսարաններուն մէջ սանձարձակ՝ այնպիսի նիւթերու վրայ, որոնք հասկնալի չէին տեղացի ժողովուրդին եւ կրնային գրգռել միտքերը խոր տգիտութեան մէջ ապրող մեր հարեւան ժողովուրդներուն։

Այս հրապարակախօսութիւնները կը կատարուէին ՄԱՍԵԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ (քօղարկեալ Դաշնակցութիւն) կիրակնօրեայ լսարանի մէջ, ուր ազգային զանազան հարցերու կարգին կը խօսէին նաեւ արհեստակցական միութեանց օգտակարութեան վրայ (Խոսրով Եզիկեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, թ. 30)։

Այդ եկուորներուն մէջ էր Հ. Յ. Դաշնակցութեան մնայուն գործիչներէն Տիգրան Աստիկեան, որ Ամերիկայէն եկած էր։ Ան ձեռնարկեց արհեստակցական միութիւններ կազմակերպելու եւ զանոնք ընդհանուր միակ մարմինի մը մէջ միացնելու... աւելորդ է ըսել Դաշնակցութեան դրօշին տակ եւ այս կերպով ճարտարութեամբ Դաշնակցութեան կապելու համար Մալաթիոյ հայ բնակչութեան մեծամասնութիւնը, հիանալի ՏԱՔՏԻՔով մը։

Ահա, այսպէս 1908-էն ետք կազմուեցան քանի մը արհեստակցական միութիւններ, որպէսզի արհեստաւորներ համախումբ պաշտպանեն իրենց շահերը։

Առաջին արհեստակցական միութիւնը կազմեցին պղնձագործները եւ կլայեկագործները միացեալ։ Այս արհեստաւորները բոլորն ալ Հայեր էին այլամերժօրէն, վասնզի այս գործերով զբաղող մէկ հատ Թուրք չկար։

Պղնձագործները, որոնք հարուստ էին կամ աւելի ճիշդը ունեւոր, կը շինէին նոր ամաններ։ Անոնք գիները կոտրելով իրարու ձեռքէն յաճախորդ-

կը կորզէին եւ այս մրցումին պատճառով վարպետները չէին կրնար գոհացուցիչ կերպով վարձատրել իրենց աշխատաւորները։

Միութիւնը կազմուելէն ետք, ամաններուն համար որոշ գիներ որոշուեցան, այդ գիներէն պակաս ծախողներուն համար տուգանք սահմանուեցաւ եւ այսպէս համաձայնութիւն մը ստեղծուեցաւ, եւ աւելի նպաստաւորուեցան։ Պղնձագործերը քաղաքին մէջ կը գործէին եւ գիւղերը երթալու պէտք չունէին, բաւական ապահով ապրուստ մը եւ ընդհանրապէս համեստ դրամագլուխ մը ունենալով։

Իսկ դրամագլուխ չունեցողները կլայեկելու գործով կը զբաղէին եւ որպէսզի յաճախորդներուն դիւրութիւն տան, չէին սպասեր որ անոնք քաղաք գան, այլ իրենք կ'երթային գիւղերը ապրուստ ճարելու համար։ Մինչեւ այս միութեան կազմակերպութիւնը կլայեկողները — մանաւանդ անոնց գիւղերը շրջողները — ամենէն աւելի շահագործուողներն էին։

Այս շահագործումը տեղի կ'ունենար ոչ թէ գիւղացիներուն կողմէ, այլ՝ կոյր մրցակցութիւն եւ կաշառք տալով գիւղերը իրարու ձեռքէ խլելու վատ սովորութեան պատճառով։

Այս վարպետներու աշխատանքը տեղի կ'ունենար գարնան, իսկ վարձատրութիւնը՝ աշնան։ Գիւղացին ինչ որ կ'արտադրէր, անով կը վարձատրէր վարպետը՝ ցորեն, գարի, իւղ, պանիր, եւայլն տալով։

Գիւղացիք քաջ գիտէին որ քաղաքը կանխիկ դրամով աւելի աժան կրնային ընել տալ իրենց գործերը, բայց որովհետեւ դրամ չունէին, որով յանձըն կ'առնէին քիչ մը աւելի վճարել, բայց ապրանքով տալ իրենց պարտքը։

Երբ կլայեկագործները իրենց իրաւունքը գանձելու համար գիւղ երթային, գիւղին Աղան կամ Պէկը կ'որոշէր վճարելի գիներն ու սակերը ըստ իր քմայքին, հոս է որ վարպետները կը շահագործուէին։ Երբեմն նոյնիսկ կոշտ ու կոպիտ կերպով կը ստացուէր անոնց իրաւունքը։ Կլայեկող վարպետը կը բողոքէր գինին որոշման ատեն Աղային գործած անարդարութեան դէմ, բայց ի զուր։ Վերջինը կը պատասխանէր «գարնան եկար ոտքս համբուրեցիր, գործը տուի, հիմա ալ երես ունիս եւ կը բողոքես, անամօ՛թ»։

Նախապէս հայ վարպետը իր տոմարին նայելով կ'ուրախանար որ կաշառքով առած իր գիւղին շահը աւելի է քան լքած գիւղը։ Բայց գանձման ժամանակ կը տեսնէ որ իր վարձատրութիւնը Աղային քմահաճոյքէն կախուած էր, եւ ինք կը տուժէր։

Բացի այն պարագայէ որ վարպետները իրենց մնայուն գիւղերը ունէին, Աղաներն ալ մէկ-երկու օխա չաքարի կամ սուրճի փոխան վարպետ չէին փոխեր (Խօսրով Եղիայեան, ԱՐՀԵՍՏԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆՆԵՐ ՄԱԼԱԹԻՈՅ ՄԷՋ, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 30, էջ 15–16)։

Կլայեկողները քաղաքին մէջ ալ կը շահագործուէին գրեթէ միեւնոյն եղանակով։ Ոմանք առանց տարակուսեան եւ նոյնիսկ աւելիով կը վճարէին պարտքերնին, ուրիշներ իրենց ուզածը կը վճարէին, եւ յաճախ ալ երկար ժամանակ ձգձգելով անվճար կը ձգէին։ 250-ի հասնող կլայեկագործներուն

մէջ հազիւ 50-ը բաւարար դրամագլուխ ունէր իրենց արհեստին վերաբերեալ գնումները կանխիկ ընելու: Մնացորդները ապառիկով կը գնէին, որով եւ ստիպուած կ'ըլլային աւելի բարձր գին վճարել: Եւ երբ նկատի ունենանք այն պարագան որ յաճախ այս վարպետները չէին կրնար գանձել իրենց առնելիքները գիւղացիներէն, այն ատեն ինքնին հասկնալի կը դառնայ թէ ինչո՞ւ անոնք կ'ունենային խեղճ վիճակ մը, եւ անոնց վաստակը կը լեցուէր վաճառականներու քսակին մէջ (Պաղտասար Եղիկեան, ԱՐՀԵՍՏԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆՆԵՐ ՄԱԼԱԹԻՈՅ ՄԷՋ, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 27, էջ 9):

Այս այլատեսակ շահագործումները եւ իրենց ենթարկուած չարիքները ջնջելու համար կլայեկողները պղնձագործներու միութեան մէջ մտնելով իրենց իրաւունքները պաշտպանելու աշխատեցան: Անոնք համաձայնեցան որ երբեք կաշառք տալով գիւղերը իրարու ձեռքէ խլելու փորձ պիտի չընէին: Յետոյ որոշեցին ամենամեծ պղինձէն սկսած մինչեւ դգալը կլայեկելու գիները: Թէ՛ նոր ամանները եւ թէ հիները կլայեկելու գիներուն բարձրացումը եւ կայունացումը, այս արհեստաւորներուն համար ապահովեցին բաւարար շահ, հանգիստ ապրելու համար:

Հետեւաբար այս միութիւնը օգտակար եղաւ եւ հարեւանները գրգռելու առիթ չտուաւ, վասնզի 250 արհեստաւորներն ալ հայ էին եւ ուղղակի Թուրքերու հետ կապ չունէին:

Ասով հանդերձ Թուրքերը չուզեցին այս միութեան յաջողութիւնը եւ ամէն բան ըրին որ քայքայեն այս միութիւնը: Սեր-թահսիլտար Վայլենց Հաճի Ահմէտ էֆ. եւ Էմիր Ահմէտ օղլին, միւֆթիի հետ խորհրդակցելով փորձեցին իրենց ծանօթ քանի մը վարպետներու շռայլ խոստումներ ընելով զանոնք բաժնել միութենէն, բայց հայ վարպետները չբաժնուեցան: Թուրքերը սակայն այս առաջին ձախողուածէն չյուսահատեցան: 1895-ի կոտորածին Զըրմըղտըցի իսլամացած հայ կլայեկագործ մը գտնելով Աքփունարին մօտ խանութ մը բացին, այնպէս հաւատալով որ կէս-վարպետը շուտով պիտի հասցնէր Թուրք վարպետներ ալ, եւ իրենք պիտի յաջողէին խանգարել Հայոց կազմած արհեստակցական միութիւնը:

Մունետիկի միջոցով շուկային մէջ եւ այլուր ծանուցին այս խանութին բացումը, որպէսզի Իսլամներ քաջալերէին այդ իսլամ արհեստաւորը:

Տէր Փիլիպպոսեան եղբայրները, որ այս նոր բացուած խանութին մօտիկը կը գտնուէին եւ բնականաբար առաջին տուժողները պիտի ըլլային, լաւ դաս մը տուին այս ազգուրացին: Անոնք Թութիա[1] խարտոցելով փոշիի կը վերածեն, ապա կ'երթան իսլամացածին խանութը շնորհաւորելու համար: Եւ մինչ մեծ եղբայրը անուշ խօսքերով կը զբաղեցնէ զայն, միւս եղբայրը աննկատելիօրէն ԹՈՒԹԻԱՆ կը լեցնէ կրակարանին ածուխին վրայ: Նոյն պահուն Թուրք մսավաճառ մը, որ իր մոլեռանդութեամբ ու հայատեա-

(1) Պ. Եղիկեան ՆԻՇԸՅՏԸՐ կ'ըսէ. մինչ սխալ է. ՆԻՇԸՅՏԸՐ կլայեկելու գործին մէջ ըլլա՛յ ամանին, ըլլա՛յ ածուխին եւ ըլլայ օճախին մէջ երբ ցանուի փայլ կու տայ: Թութիան է որ կ'աւրէ կլայեկը:

*ցուլթեամբ ծանօթ էր բոլորին, իր ամանները կը բերէ կլայեկելու համար. խլամացած վարպետը կը սկսի ամանները կլայեկելու աշխատանքին, բայց հակառակ իր բոլոր ջանքերուն, բոլոր ամանները կը ստանան սեւախառն եւ կէտկիտուած երեւոյթ մը,* թութիան *գործած էր իր աւերը: Թուրք մասվաճառը երբ կու գայ բեռնակիր մըն ալ հետը առած, իր ամանները տանելու համար, տեսնելով ամաններուն այլանդակ երեւոյթը՝ կատղած շան մը պէս կը յարձակի վարպետին վրայ ու հազար հայհոյանքներ կը տեղայ անոր գըլխուն: Պայրամը մօտ էր, եւ պէտք էր որ իր ամանները փայլուն ըլլային: Ի վերջոյ այս մոլեռանդ Թուրքը դիջանելով իր ամանները ըստ ՄԻՈՒԹԵԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՆ եւ նկատի ունենալով նաեւ սխալ կլայեկը հանելու եւ մաքրելու աշխատանքը սովորական գինին կրկինը կը քահանջեն: Մոլեռանդ Թուրքը, որ այժմ կակուղցած էր, կը համաձայնի եւ գոհացում կու տայ հայ վարպետին պահանջին, իսկ այս վերջինը տեղեակ ըլլալով իր արհեստի գաղտնիքներուն՝ գեղեցիկ կերպով կը կլայեկէ ամանները:*

*Խլամացած վարպետը ուրիշներու ամաններն ալ միեւնոյն վիճակին ենթարկելէ ետք, իր վրայ հրաւիրեց շատերու գայրոյթը, եւ ի վերջոյ յուսահատած՝ քաշուեցաւ ասպարէզէն՝ փակելով խանութը:*

*Այսպէս, Թուրքերու կատարած փորձերը Հայերու կազմած այս միութինը քանդելու համար կը ձախողի, եւ ընկերութինը, որուն նախաձեռնարկ եղած էին Խաչատուր Կիւրեղեան, Գէորգ Մարտիկեան եւ Սենեքերիմ Ափալաքեան, շարունակուեցաւ առանց սակայն դժուարութիններէ ազատ ըլլալու եւ մանաւանդ իր անդամներէն ոմանց սայթաքումներուն, որոնք կը սպառնային միութեան քայքայումին:*

*Ընկերութինը, որ զուտ հայկական էր, վերոյիշեալ երեք անձերը կազմեցին, բայց դիւրաւ չկազմուեցաւ. նախ պէտք էր անոր օգտակարութեան համոզուէին արհեստաւորները. ուստի նախ երկու մասնաւոր խորհրդակցութիւններ կատարեցին եւ ապա հրապարակային ժողով մը ըրին, ուր Տիգրան Աստիկեան բացատրեց միութեան օգուտները: Բոլոր ներկաներուն հաւանութեամբ պաշտօն տրուեցաւ նախաձեռնող երեք անձերուն որ կազմուելիք միութեան վարչութեան անդամներուն համար թեկնածուներու ցանկ մը պատրաստեն:*

*Երկրորդ հրապարակային ժողովին մէջ բերուած ցանկին վրայ քուէարկութիւն կատարուելով ընտրուեցան տնօրէն եւ գործադիր մարմինները: Տնօրէն վարչութեան անդամ ընտրուեցան Խաչատուր Կիւրեղեան, Գէորգ Մարտիկեան, Քերովբէ Ափալաքեան, Կարապետ Մոքսեան, Գէորգ Ասլանեան, Մուշեղ Նալպանդեան եւ Գէորգ Փիլոսեան:*

*Գործադիր վարչութեան անդամ ընտրուեցան Սենեքերիմ Ափալաքեան, Կարապետ Նալպանդեան, Նափոլէոն Մոքսեան, Բենիամին Օտապաշեան եւ Մերկիանոս Պարսամեան:*

*Ծրագիր եւ կանոնագիր կազմելու գործը յանձնուեցաւ Խ. Կիւրեղեանի*

եւ Ս. Ափալաքեանի, որոնց պատրաստած կանոնագրին համաձայն յանձանձուեցան Միութեան գործերը։

1910 Ապրիլին աւելի մեծ հրապարակային ժողովի մը մէջ հռչակուեցաւ միութեան կազմութիւնը, որ թէ՛ քաղաքին եւ թէ՛ գիւղերու մէջ արձագանգ գտաւ։

Վարչութիւնը ըստ կանոնագրին գիւղերը բաժնեց վարպետներուն միջեւ անոնց ընտանեկան անդամներուն թիւին համեմատութեամբ։ Վարպետները կը համակերպէին երբ տարիներով իրենց այցելած գիւղերը ուրիշներու կը տրուէին։

Կլայեկելու գինը որոշուեցաւ առնել ըստ ամանին ծանրութեան։

Շնորհիւ թափուած ջանքերուն եւ միութեան, այս արհեստաւորներուն համար աւելի տանելի վիճակ մը ստեղծուեցաւ։

Կլայեկողներու վիճակին բարւոքման գործին մէջ օգտակար դեր կատարեց Կանան Խանձեան, որ իր զաւկին՝ Մանուկ Խանձեանի հետ, մեծ հեղինակութիւն կը վայելէր բոլոր արհեստաւորներու մէջ եւ ինքն էր գրեթէ այս միութիւնը իրագործողը (Պաղտասար Եղիկեան, նոյն, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 27, էջ 9)։

Այս կերպով միութիւնը սկսաւ գործի եւ չարունակուեցաւ ի հեճուկս Թուրքերու սադրանքներուն, որոնք՝ ինչպէս տեսնուեցաւ՝ կ'ուզէին քայքայել այս միութիւնը։

Դժբախտութիւնը այն էր որ Հայեր ալ գտնուեցան — նոյնիսկ միութեան ծոցէն — որոնք սխալ քայլեր առին եւ միութիւնը քայքայման վտանգին տակ դրին։

Միութեան կազմուելէն հազիւ քանի մը ամիս ետք, անդամներէն Գ. Ասլանեան, Կ. Խարբուզլեան եւ քանի մը հատ ալ պղնձագործներ չեղելով Միութեան կանոնագիրէն գաղտագողի պակաս գիներով գործ կը կատարէին։

Միութեան հակառակորդներու ուզածն ալ արդէն այդ էր՝ ճեղքուածք մը առաջացնել միութեան մէջ։ Գ. Ասլանեան տնօրէն վարչութեան անդամ ըլլալով մէկտեղ, պակաս գին տալով չէր ուզեր յաճախորդ կորսնցնել։ Այս չեղումը երբ ստուգուեցաւ, սաստեցին զինքը։ Բայց ան փոխանակ զղջալու, ուրիշ վարպետի յանձնուած գիւղ մը գացած էր, եւ ինքզինքը միութենէն դուրս ներկայացնելով գործ ըրած էր։ Որոշուեցաւ զինքը միութենէն դուրս վռնտել։

Ս. Ափալաքեան, որ միութեան հաւատարիմ ու անկեղծօրէն կապուած անդամ մըն էր, այդ պատիժով չգոհացաւ։ Ան Կ. Նալպանդեանի հետ գնաց Խարբուզլեանի նենգութեամբ գործ ըրած գիւղը՝ ԷՕՐԻԻՇԿԻ։ Այս Աղային հաւանութիւնը առնելով կը սկսին իրենք ալ հոն գործ ընել։ Կ. Խարբուզլեան լսելով եղելութիւնը, անմիջապէս գիւղ կ'երթայ, Աղային հետ կը խօսի, բայց այս վերջինը չի համաձայնիր։ Կը դառնայ քաղաք եւ կը ներկայանայ միութեան վարչութեան, կը պաղատի որ իրեն ներեն։ Վարչութիւնը կը յանձնարարէ իրեն գիւղ երթալ եւ Ս. Ափալաքեանին ու Կ. Նալպանդեանին ներկա–

յանայ եւ իր գզջումը անոնց յայտնել, ինչպէս նաեւ միութեան հաւատարիմ մնալու պատուոյ խօստում տալ: Կ. Խարբուդլեան, Կ. Նալպանդեանի ամենամօտիկ ազգականը իբր միջնորդ հետը առնելով, կը ներկայանայ անոր: Նալպանդեան կը յայտնէ որ հարցը միայն իրմով չի փակուիր, պէտք է Ս. Ափալաքեանի հետ համաձայնութեան գալ:

Ի վերջոյ Խարբուդլեան ստիպուած կը ներկայանայ Ս. Ափալաքեանին, որ իրեն խորհուրդ կու տայ առանց վայրկեան մը կորսնցնելու երթալ այն գիւղը, որ ուրիշի մը բաժինն էր, հաւաքել գործիքները եւ իր առնելիքները գանձելու իրաւունքը փոխանցել հին վարպետին, եւ ետքը ներկայանալ վարչութեան, գրաւոր կերպով ներկայացնել իր գզջումը եւ միութեան կանոնագիրին յետ այսու հաւատարիմ մնալու պատուոյ խօսքը, երբ անոնք ընդունին, գրութիւն մը բերել իրեն եւ Նալպանդեանին ուղղուած. այն ատեն խոստացաւ որ իրենց ալ միջեւ այն ատեն իրենց ըրած գործերուն փոխարժէքը գանձելու իրաւունքը իրեն կը թողուն եւ կը մեկնին:

Կ. Խարբուդլեան կ՚ընդունի այս արդար դատաստանը եւ խնդիրը կը փակուի:

Դղնձագործներու մէջ Միութեան Ծրագիր Կանոնագիրքէն շեղողներուն դէմ պայքարիլը աւելի դժուար էր: Այդ մասին կարգ մը խորհրդակցութիններէ յետոյ Ռափայէլ Փիլիպպոսեան (հանրածանօթ Քէլօղլանեան) կ՚առաջարկէ որ ինք դնէ 150 հնչուն ոսկի դրամագլուխ մը և իրեն տրուի իր ուզած մարդիկը եւ ինք գիտակցօրէն Միութենէ հրաժարի եւ իրեն ազատութիւն տրուի Միութեան դէմ գործողներուն դէմ պայքարելու, անշուշտ առեւտրական հողի վրայ: Այս առաջարկը բարեփոխուելով ընդհանուր համաձայնութիւն մը գոյացաւ, ուր բացուելիք խանութը ըլլար ՄԻՈՒԹԵԱՆ ԿԵԴՐՈՆ ԽԱՆՈՒԹԸ, բոլոր անդամները իրենց գնումները պարտաւոր ըլլային այդ խանութէն ընելու:

Խանութը պիտի ղեկավարէին Ռափայէլ Փիլիպպոսեան, Խաչատուր Կիւրեղեան եւ Մերկիանոս Պարսամեան: Ասոնք իրենք մեծաքանակ գնումներ պիտի ընէին Հալէպի եւ այլ տեղերու վաճառականներէն եւ Միութեան անդամներուն պիտի ծախէին նպաստաւոր գիներով, իսկ պատրաստի ամանները պիտի ծախէին լեցուն գիներով: Ընդհանուր հաշիւով մը տարեկան պիտի ունենային 450—500 ոսկի շահ մը: Տարեվերջը Ռափայէլ Փիլիպպոսեանի դրամագլուխը ետ պիտի տրուէր, խանութը գործող վարպետներու եւ աշակերտներու չարաթականները պիտի վճարուէին, իսկ մնացեալ շահը պիտի մնար Միութեան խանութին, եւ Միութեան անդամներուն:

1911 օգոստոս 1-ին յայտարարուեցաւ Միութեան խանութին բացումը:

Շնորհիւ անձնուիրաբար եւ հաւատարմօրէն գործողներու ջանքերուն, խանութի դրամագլուխը աւելցաւ:

Միութեան անդամները հետզհետէ աւելի կը համոզուէին համագործակցութեան առաւելութիւններուն եւ օգուտներուն, եւ միութիւնը կը զօրանար, օրինակ հանդիսանալով այլ արհեստաւորներու:

Բայց դժբախտաբար Միութեան կեանքը կարճ եղաւ։

Հազիւ գործը մտած էր բնականոն հունի մը մէջ, երբ վրայ հասաւ Պալքանեան Պատերազմը, որ պատճառ եղաւ միութեան տկարութեան, վասնզի գործօն անդամներէն մէկ մասը զինուորագրուած էին։

Հազիւ թէ խաղաղութիւնը հաստատուած Համաշխարհային Ա. պատերազմը պայթեցաւ եւ գիտենք թէ ի՞նչ եղաւ Թուրքիոյ Հայոց վիճակը։

Հայերու հետ իրենց կազմած Միութիւնն ալ ջնջուեցաւ։

***

Պղնձագործներէ եւ կլայեկագործներէն ետք կազմակերպուեցան ԱՏԱՂՁԱԳՈՐԾՆԵՐԸ որոնք կը ներկայացնէին անկազմակերպ վիճակ մը եւ ասոր համար իրենցմէ մաս մը չարաչար կը տուժէր եւ ուրիշ մաս մըն ալ կը նպաստաւորուէր ի վնաս միւսներուն։

Էր երբեմն տուն չինող լաւ ատաղձագործները իրենց ծանր աշխատանքին համեմատութեամբ չէին վարձատրուիր։ Միայն մեծ վարպետները կը ստանային աւելի բաժինը, եւ չէն զբաղիր իրենց արհեստակիցներով։ Անոնք իբրեւ յանձնառուներ ինքզինքնուն կ՚ապահովէին առաւելագոյն շահը, մինչ ծանր աշխատանքը տանող վարպետներուն կու տային որչափ որ կ՚ուզէին։ Բնական է որ այս վերջինները միշտ կը գանգատէին եւ կը բողոքէին այս անիրաւութիւններուն դէմ, որոնց վերջ տալու միջոցը գտան։

Առաքել վարպետ Կարակըզեանը մեծ հեղինակութիւն էր եւ միեւնոյն ժամանակ ՊԷԼԷՏԻՅԷԻ ԽԱԼՖԱ. իր քով հրաւիրեց բոլոր արհեստակիցները, անոնց բացատրեց թէ՛ տեղի ունեցող անհաւասար շահու բաշխումները եւ թէ՛ գոյութիւն ունեցող գանգատներն ու դժգոհութիւնները եւ շեշտեց ատաղձագործներու միութիւն մը կազմելու անհրաժեշտութիւնը։ Անոր պատճառաբանութիւնները անառարկելի էին եւ համոզիչ։ Բոլոր ներկաները համաձայնելով կազմեցին ատաղձագործներու Միութիւնը Մալաթիոյ մէջ, 1909–1910 թուականներուն։

Այս միութեան շնորհիւ ատաղձագործները իրարու ապահովեցին աւելի շահ եւ հաւասար բաշխում շահու, (տես Պաղտասար Եզիկեան, ԱՐՀԵՍՏԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՄԱԼԱԹԻՈՅ ՄԷՋ, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 27, էջ 10)։

Այսպէս պնձագործներէն եւ կլայեկագործներէն ետք, անոնց հետեւողութեամբ կազմուեցաւ ատաղձագործներու միութիւնը, որուն կ՚անդամակցէին նաեւ Թուրքերը, որոնք ունէին այս արհեստէն մարդիկ։

Այս միութեան մասնաւորապէս հայ անդամները գիտակցօրէն փարելով իրենց միութեան՝ օգտուեցան, վասնզի բոլոր վարպետներն ու աշակերտները կը վարձատրուէին գոհացուցիչ կերպով։ Սակայն խոչընդոտ մը կար, եւ այդ Թուրք վարպետներն էին, որոնք ոչ թէ միայն կը թուլցնէին ընդհանուրին շահ բերող միութիւնը, այլ եւ աժան աշխատելով կը խաչաձեւէին անոնց գործերը։ Հայ վարպետները սկիզբները այնքան ալ կարեւորութիւն

չտուին։ Բայց ետքը տեսան որ տարուան մէջ տասը ամիս պարապ պտտող Թուրք վարպետները միշտ աշխատութիւն ունէին, մինչ իրենց գործերը նուազած։ Տեսան որ Թուրքեր աւելի պակաս գին տալով, ստացեր էին քաղաքապետութեան կողմէ կառուցանելի խանութներուն շինութեան յանձնառութիւնը։ Ուստի դաս մը տալու համար, միութեան ներկայացուցիչը քաղաքապետութեան ներկայանալով յայտնեց թէ իրենց միութեան անդամները ձրիօրէն պիտի շինեն խանութները։ Եւ յարգելով իրենց խօսքը, հայ վարպետները առանց ոեւէ վարձատրութեան շինեցին խանութները։ Այս միջոցը գործածեցին անոնք ամէն տեղ, ուր Թուրք վարպետներ պակաս գին տալով գործ կ՚առնէին։

Հետեւանքը այն եղաւ որ վերջինները պղաստանալով երդումով եւ գղջումով միացան հայ վարպետներու միութեան, եւ միասին գործեցին մինչեւ Համաշխարհային Ա. պատերազմ եւ երկու ազգէ վարպետներն ալ նպաստաւորուեցան։

*
**

Մալաթիոյ երրորդ արհեստակցական միութիւնը պիտի ըլլար ՍԱՓՐԻՉՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆԸ, որ սակայն չկրցաւ կազմուիլ, թէեւ ձեռնարկուեցաւ։ Վասնզի բաւական թիւով Թուրք սափրիչներ կային եւ Թուրքը կեավուրի հետ չէր ուզեր ընկերակցիլ նոյնիսկ իր շահուն համար (Խոսրով Եղիայեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 27, էջ 9)։ Թէեւ Պաղտասար Եղիկեան (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 27, էջ 9) այնպէս ցոյց կու տայ որ այդ արհեստակցական միութիւնը կազմուած էր։

Գոնէ մազ կտրելու եւ ածիլուելու գիները որոշելու համար միութիւն մը կրնար ըլլալ բայց այդքան ալ չեղաւ, որովհետեւ միտքերը պատրաստ չէին։

Սափրիչներ հայ եւ Թուրք էին։ Մալաթիոյ շրջակայքը գտնուող բոլոր գիւղերու սափրիչները Հայեր էին։ Թուրք սափրիչները գիւղերուն մէջ գործ չունէին, որովհետեւ գիւղացին Թուրք սափրիչին վրայ վստահութիւն չունէր եւ կարծես թէ բոլոր գիւղացիներուն համար անգիր օրէնքի պէս բան մըն էր որ արհեստաւորները միայն Հայերն էին եւ Թուրքերէն վարպետ մարդ չէր ըլլեր (հմմտ. Պաղտասար Եղիկեան, ԱՐՀԵՍՏԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՄԱԼԱԹԻՈՅ ՄԷՋ, ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 27, էջ 9)։

Հետեւաբար Թուրքերը կը նախընտրէին հայ սափրիչները անոնց պարկեշտութեան վստահելով։ Նոյնպէս նկատելի է որ ՆԱՄԷՀՐԱՄը չէր թոյլատրեր որ Թուրքը թէ՛ քաղաքին եւ թէ գիւղերուն մէջ Թուրք տուները մտնէր (հմմտ։ Խոսրով Եղիայեան, նոյն)։

Հայ սափրիչներն էին որ Թուրք կիներու ԱԿՌԱՆԵՐԸ ԿԸ ՔԱՇԷԻՆ, արիւնը կ՚առնէին նշդրակով եւ տզրուկ կը փակցնէին անոնց մարմնոյն զանազան մասերուն վրայ։

Քաղաքի հասարակ Թուրքերը մեծ մասամբ թուրք սափրիչներու կ'երթային, բայց երբ իրենց տուներուն մէջ սափրիչի պէտք ունենային, հայ սափրիչներու կը դիմէին եւ գոհացուցիչ կերպով կը վճարէին: Քաղաքի սափրիչները մասնաւոր գին մը չունէին, մազը կը կտրէին, կ'ածիլէին եւ գլուխն ալ կը լուային, այդ աշխատանքին փոխարէն կը գոհանային ինչ որ յաճախորդը տար: Թէեւ առաջնակարգ խանութներու յաճախորդները աւելի կը վճարէին, բայց ընդհանրապէս մէկ դահեկանը (40 փարա) անպաշտօն կերպով որոշուած գին մը եղած էր: Ատկէ պակաս վճարողներ չկային. բայց թուրք զինուորական ու կառավարական պաշտօնեաները ատոր երկու անգամը եւ աւելի կը վճարէին (Խօսրով Եղիայեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, թ. 30): Գիւղի սափրիչները գրեթէ մեծ մասամբ քաղաքին մէջ ալ խանութներ ունէին, խանութ չունեցողներու թիւը շատ քիչ էր: Գիւղի սափրիչներու պարտականութիւնն էր ամէն երկու շաբաթը անգամ մը երթալ ու իր պատկան գիւղի մարդոց մազերը կտրել ու երեսները ածիլել: Այս աշխատանքին վարձատրութիւնը կանխիկ դրամով չէր ըլլար, այլ՝ ընդունուած սովորութեան համաձայն փոխանակութեամբ: Վարպետները կը սպասէին մինչեւ կալերու ժամանակը եւ փոխարէնը կը ստանային հացահատիկով:

Եթէ մէկ ընտանիք ունէր երեք կամ չորս անգամ մազ կտրուող եւ ածիլուող, եւ ունէր տասը կալ, տասը կալէն ալ սափրիչը կը ստանար իր իրաւունքը, իսկ եթէ ընտանիքը ունէր 8—10 անգամ մազ կտրուող եւ ածիլուող եւ ունէր միայն մէկ կալ, այդ մէկ կալէն միայն սափրիչը իրաւունք ունէր: Գիւղացին տարբերութիւն չէր ըներ թէ ինք միայն երկու անգամ ունի եւ տասը կալէն ալ կու տայ սափրիչին, իսկ այս վերջինն ալ չէր տարբերեր ոեւէ գիւղացիի թէ ինք տասը մազ կտրուող ու ածիլուող ունի եւ միայն մէկ կալէ կը վարձատրուի մէկ չափով:

Սափրիչին իրաւունքը կը տրուէր կալի ամբողջական դէզէն, այլ խօսքով, դեռ հողատիրոջ բաժինը չհանուած, այդ պատճառով ալ գիւղացին առատաձեռն կ'ըլլար կալին վրայ, եւ կ'ուզէր որ սափրիչը ներկայ ըլլայ (Խօսրով Եղայեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, թ. 30):

Մասնաւորապէս գիւղի սափրիչները մեծ կորուստ կ'ունենային, երբ զանազան պատճառներով չէին կրնար կալերուն ներկայ ըլլալ: Այս սովորութիւնը այնքան բնական դարձած էր, որ կալի ժամանակ եթէ պատահօրէն բացակայէր, իբր անգիր օրէնք մէկ կողմ կը դրուէր իր բաժինը, վերջը յանձնուելու համար: Միայն պէտք է նշել որ կու տային տարբերութիւններ ընելէ ետք, եւ ոչ այնքան առատաձեռնօրէն որքան կալին վրայ:

Սափրիչը բացի ցորենէն, իրաւունք ունէր նաեւ գարիէն, եգիպտացորենէն, բրինձէն, բամպակէն եւ բանջարեղէնէն: Մինակ ՊՕՅէն անոր իրաւունք չէր հանուեր, որ կը ցանուէր եզերուն ձմեռուան ուտելիքի համար:

Այս կարգադրութիւններու համար թէ՛ սափրիչները եւ թէ՛ գիւղացիները չէին գանգատիր եւ կը համակերպէին իբր տուեալ անգիր օրէնք, սակայն ետքը կամաց-կամաց արթնցան եւ սկսան դժգոհութիւն ցոյց տալ այս անի–

*մասս եւ անարդար կարգադրութիւններուն համար եւ միշտ կը դանդատէին իրենց վիճակէն :*

*Նախ դժգոհութիւններ կային գիւղերու բաշխումներուն համար, որ անհաւասար եւ անարդար կերպով կատարուած էին եւ յետոյ գիները կըտրատելու մրցում մը կար, որ կը վնասէր իրենց : Պէտք էր միջոց մը գտնուէր այս անել վիճակէն դուրս գալու համար :*

*Եւ ատիկա գտան :*

*Մեծ վարպետները քով քովի գալով խորհրդակցեցան եւ որոշեցին իրենք ալ, — գիւղի եւ քաղաքի սափրիչները — միութիւն մը կազմել, գիւղեր բաժնել համաձայնութեամբ եւ վերջ տալ վնասակար մրցումին, եւ մէկ օխա չաքարով կամ սուրճով գիւղի Աղաները կաշառելով, իրարու ձեռքէ յաճախորդ խլելու սովորութիւնը :*

*Մալաթիոյ սափրիչներուն մէջ կային այնպիսիներ, որոնք մեծ համբաւի տիրացած էին :*

*Մալաթիոյ արհեստներուն վրայ գրող երկու անձեր՝ Պաղտասար Եղիկեան եւ Խոսրով Եղիայեան (տես ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 27 եւ Թ. 30), իրարու հետ համաձայն չեն թէ որո՛նք էին սափրիչներու առաջնակարգները, բայց կ'երեւի թէ բաւական թիւով վարպետներ կային թէ' Հայոց եւ թէ' Թրքաց մէջ : Ըստ Խոսրով Եղիայեանի երկու վարպետներ կային, որոնք անառարկելիօրէն շահած էին առաջնութիւնը եւ այդ պատճառով ալ իրենց կը քաշէին կառավարական ու զինուորական պաշտօնեաները եւ հայ եւ Թուրք հարուստներն ու երեւելիները : Ատոնցմէ առաջինը Գարաօղլանեան եղբայրներն էին, իսկ երկրորդը Համիտ Ուստան : Առաջինները 95–ի կոտորածէն առաջ եղած էին անդերազանցել, իսկ երկրորդը 95–էն վերջ անոնց հաւասարած էր : (Գարաօղլանեանները կը կոչուէին նաեւ Եկէնմանուկեան) :*

*Կը յիշուի նաեւ վարպետ Թորոս մը ըստ Պաղտասար Եղիկեանի (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 27), առաջինը Մալաթիոյ սափրիչներուն, սակայն, Խ. Եղիայեան կ'առարկէ թէ վարպետ էր բայց ոչ առաջնակարգ : Եւ կ'ըսէ թէ Մալաթիոյ մէջ բոլորին ծանօթ առածի կարգ անցած խօսք մըն էր որ, երբ մէկը իր յամառութեամբ խօսք չի հասկնար եւ կամ յամառօրէն սխալի մը վրայ պնդէր, կ'ըսէին* «դեռ Քէօր Թորոսեն կ'ածիլուի» *:*

*Այս վարպետ Թորոսը աւելի ծանօթ էր ՔԷՕՐ ԹՈՐՈՍ անունով, եւ ըստ Պաղտասար Եղիկեանի «Պոլսէն եկող բոլոր կառավարական ու զինուորական պաշտօնեաները այս վարպետին կ'երթային սափրուելու համար» :*

*Այն ատենները, երբ որեւէ մէկուն հարցնէին թէ «որու թրաշ կ'ըլլաս» — «վարպետ Թորոսին» կ'ըլլայ պատասխանը :*

*Կար նաեւ Էլիճանեան Սարգիս վարպետը, որ անուն հանած էր եւ բարձր կարգի յաճախորդներ ունէր. այս վարպետը բժշկութիւն ալ կ'ընէր :*



## Թ.

# ՆԵՐԿԱՅ ՄԱԼԱԹԻՈՅ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԵԱՆՔԸ

*Ինչպէս տեսնուեցաւ, 1915-ի մեծ եղեռնէն առաջ, 1908-ի խաբեպատիր Սահմանադրութեան շնորհիւ հայ առեւտրականները երբ վայելեցին համեմատական ազատութիւն մը, կրցան վերակազմել քիչ-շատ իրենց տնտեսութիւնը, որոշ չափով մը։*

*Նոյնպէս շնորհիւ այս ազատութեան!!! Հայերը կրցան կազմել արհեստակցական միութիւններ որոնք շարունակ աւելի կը զօրանային եւ անշուշտ հետզհետէ պիտի ընդհանրանային եւ պիտի ընդգրկէին ուրիշ արհեստներն ալ, եւ թերեւս շատ լաւ տնտեսական կացութիւն մը պիտի պարգեւէին քաղաքին հայ բնակչութեան։*

*Ափսոս սակայն անիրագործելի երազ մը եղաւ վասնզի համաշխարհային Ա. պատերազմէն օգտուելով Թուրքիա անարգել գործադրեց Հայերը բընաջնջելու շատոնց երկնուած ծրագիրը։*

*Այս սոսկալի եղեռնը գործադրելէն վերջ, Թուրքը որ անպատիժ մնացած էր, ծրագրեց նոր Թուրքիա մը կերտել քաղաքակիրթ ազգերու կազմային նմանութեամբ։ Այդ նոր ծրագրին մաս կը կազմէր Թուրքիոյ տնտեսական անկախութիւնը։ Ասոր համար Թուրք հանրապետութիւնը կայսրութեան օրով կնքուած բոլոր փոխառութիւնները ուրացաւ եւ նոր փոխառութիւններով տնտեսական գերութեան չենթարկուելու համար ընդգրկեց փոխառութեան բնաւ չդիմելու սկզբունք մը, որ սակայն չկրցաւ պահել եւ այսօր դարձեալ մեծ պարտքերու տակ է երկիրը։*

*Նոյնպէս Թուրք հանրապետութեան վարիչները որոշած էին նորոգել եւ կենդանացնել աւերուած քաղաքները եւ աշխատիլ իրենց երկիրը ինքնապահ դարձնել տնտեսական մարզին մէջ։ Այս նպատակով Թուրք կառավարութիւնը ամէն ջանք ըրաւ, որպէսզի այն պարապը, որ բնաջնջուած Հայերը եւ հեռացած Յոյները կը ձգէին Թուրքիոյ մէջ, լեցնեն Թուրքերը՝ քաջալերելով որ իրենք լրացնեն երկրին պէտքերը, արհեստները եւ վաճառականութիւնը ձեռք առնելով։*

*Եւ սկսան ազգայնական ուղղութեամբ տնտեսական նոր հիմնարկներ գոյութիւն առնել Թուրք եւ խլամ վարիչներով, որոնք յաճախ ձախողանքի մատնուեցան։Պատճառները այլազան են, սակայն անոնց առաջինը մեզի համար Թուրքին խառնուածքը եւ անընդունակ եւ անպատրաստ ըլլալն է տընտեսական պայքարի համար։*

*Շատ մեծ միամտութիւն եւ բարեմտութիւն է հաւատալ թէ Թուրքիա կրնայ բարեկարգուիլ եւ երջանիկ բնակավայր մը դառնալ իր բնակչութեան, եթէ բարեփոխութիւններ կատարուին։*

*Դժբախտաբար Թուրքը այնպիսի խառնուածք մը եւ մտայնութիւն մը առած է իր անցեալ կեանքին մէջ, որ անընդունակ դարձած է իր ճիգով կերպարանափոխուելու եւ քաղաքակրթուելու, եթէ օտար ճնշումը չըլլայ։*

Գ. Մելիքինեցի որ իր «ՆԱԽՃԻՐՆԵՐ»ուն մէջ, «Մալաթիոյ տնտեսական միջոցները եւ արտադրութիւնները» եւս նիւթ ըրած է քննութեան, Մալաթիոյ տնտեսական կեանքին նուիրուած այս տեսութեան իբր եզրափակում կ՚ըսէ թէ «Նկատի ունենալով Մալաթիոյ պտղամշակութեան բնական առաւելութիւնները, համարձակութեամբ կարելի է ըսել որ ան կը դառնար արդիւնաբերութեան լաւագոյն կեդրոններէն մին, եթէ օժտուէր արդիական գիտելիքներով եւ փոխադրութեան միջոցներով» (ՆԱԽՃԻՐՆԵՐ, էջ 60):

Ուրեմն կը հաւատար թէ կարելի էր Մալաթիան զարգացնել տնտեսապէս, եթէ մշակութեան արդիական մեթոտներ կիրարկուէին եւ փոխադրութեան միջոցներ ստեղծուէին: Այսօր շնորհիւ Ամերիկեան օժանդակութեան մօտ 40.000 ԹՐԵՔԹՕՐՆԵՐ կ՚ակօսեն Թրքական հողերը, եւ երկաթուղիներու շատ տարածուն ցանց մը Թուրքիոյ ամէն մասերը իրարու հետ յարաբերութեան կը դնէ, բայց սպասուած արդիւնքը չի տեսնուիր:

Մասնաւորելով մեր խօսքը Մալաթիոյ վրայ, բացառիկ կերպով մշակութեան յարմարութիւն ունեցող այդ արգասաբեր աշխարհամասը, որ հիմա կը հերկուի արդիական միջոցներով, եւ երկաթուղիով յառաջդրութեան մէջ է Անատոլուի գլխաւոր քաղաքներուն հետ, եւ կապուած՝ Միջերկրականի (գլխաւորաբար Իսկենտերունի) եւ Սեւ Ծովու նաւահանգիստներուն, ինչպէս նաեւ Կ. Պոլսոյ եւ Իզմիրի պէս արտածման կարեւոր կեդրոններու հետ, սակայն չենք հաւատար որ մեծ բարւոքում մը ունեցած ըլլայ:

Թուրքերը կ՚ուզեն հաւատացնել թէ դրեթէ աւերակի վերածուած Մալաթիան վերանորոգուած է եւ օժտուած է իբր թէ (1) լայն պողոտաներով, հրապարակներով, հանրային պարտէզներով եւայլն: Դարձեալ կ՚ըսուի թէ կառուցուած են կառավարական եւ քաղաքապետական երկու մեծ շէնքեր իբր պաշտօնատուն:

Այս տեղեկութիւններս կու տայ հրատարակութեան վրայ եղող ԻՍԼԱՄ ՀԱՄԱՅՆԱԳԻՏԱՐԱՆԻՆ Թրքական թարգմանութիւնը (Islam Ansiklopedisi) որ տակաւին նոր հասած է Մալաթիոյ բառին:

Նոյն բառարանին մէջ կը հաւաստուի թէ ժողովուրդին կողմէ ալ շատ մը գործատեղիներ եւ առեւտրական տուներու հետ շինուած են պարտէզներու մէջ անհատական բնակարաններ:

Նոյնպէս այս բառարանին մէջ Besim Daskot(2) կը հաւաստէ թէ Պունար Պաշի առատաբուխ ակէն օգտուելով Մալաթիա այսօր ունի խմելու լաւ ջուր եւ ելեկտրական ուժ: Ուստի Թուրքերը կ՚ուզեն հաւատացնել թէ հոն բարւոք

---

(1) Իբր թէ անոր համար որ Մալաթիա այցելող Հայերը չեն հաստատեր այսքան զարգացում, օրինակի համար Խորէն Գ. Փափազեանի ընդարձակ յօդուածաշարքը, որ 1954-ին հրատարակուեցաւ Քալիֆորնիոյ ՄՇԱԿին մէջ:

(2) Այս Թուրք հեղինակը քաղաքի վրայ երկարօրէն խօսելէ ետք կ՚արտատպէ Իսլամական Բառարանին սկզբնական գերմաներէն բնագրին մէջ E. Honingmann-ի գրածին թարգմանութիւնը: Իր գրածը անշուշտ Թրքական տեսակէտին ծառայելու նպատակ ունի եւ պէտք է ըստ այնմ նկատի առնուիլ:

վիճակ մը ստեղծուած է: Անոնք կը խօսին տնտեսական առաջդիմութեան վրայ իբր հետեւանք երկրագործական զարգացման, ճարտարարուեստական հաստատութեանց հիմնարկութեան եւ մանաւանդ շնորհիւ երկաթուղիներու շինութեանց հաղորդակցութիւններու դիւրութեան:

Չեմ ըսեր թէ ասոնք բոլոր սուտ են: Բարւոքումներ որոշ չափով անշուշտ կատարուած են, սակայն ի վիճակի չեմ ճշդելու անոնց չափը:

Երկրագործութեան մասին դժբախտաբար տուեալներ չունիմ, իսկ իբր ճարտարարուեստական հիմնարկներ ըստ Besim Daskotի 1937–ի հիմնուած բամպակ կտաւներու մեծ գործատունը, ինչպէս նաեւ ծխախոտի գործարանը, աղիւսի, կղմինտրի աշխատանոցները եւ երկաթուղիներու նորոգութեան գործանոցները արդեօք ի՞նչ վիճակի մէջ են, չենք գիտեր, իսկ հաղորդակցութիւններուն գալով երկաթուղին առաջին անգամ 1939–ին երկարաձգուած է մինչեւ Մալաթիա եւ շահագործուիլ սկսած՝ Ֆէյզի Փաշա–Մալաթիա գիծը:

Մալաթիա 1937–ին կցուած է Սեբաստիոյ երկաթուղիի գծով մը եւ կապուած ներքին Անատոլուի մայր երակը ներկայացնող գիծին եւ այսպէս յարաբերութեան մտած ծովեզերքներու, ինչպէս նաեւ Թուրքիոյ ներքին բոլոր կարեւոր քաղաքներուն հետ:

Երկաթուղին նպաստեց անշուշտ երկրագործական զանազան բերքերու մեծաքանակ արտածմանը՝ դէպի զանազան վայրեր: Բայց շատ կը տարակուսիմ որ Մալաթիա մեծ զարգացման մը հասած ըլլայ, թէեւ հաւաստուած ըլլայ թէ շնորհիւ իր տնտեսական վիճակին բարւոքման բնակչութիւնը իբր թէ տարապայման աճում մը ունեցած է:

Ըստ Besim Daskotի տուեալներուն Ի. դարուն սկիզբը 30·000 կ'ենթադրուէր բնակչութիւնը՝ 3000–ը հայ ըլլալու պայմանով:

Առաջին Համաշխարհային Պատերազմի ընթացքին այս թիւը 40·000–ի մօտեցած ըլլալ կը կարծուէր, բայց Մալաթիա ալ կրած է պատերազմի հետեւանքը եւ այս պատճառով 1927–ի մարդահամարին իջած էր այդ թիւը 20·710–ի :Անկէ ետքը, նախապէս անզգալի, բայց ետքը արագ աճում մը տեսնուած է: Այսպէս 1935–ին, 27·300, 1940–ին 36·300, 1945–ին 41·500, 1950–ին 49·100 եւ վերջին 1955–ի մարդահամարին համաձայն 64·880–ի հասած է այդ թիւը:

Քառորդ դարու ժամանակամիջոցին Մալաթիոյ բնակչութիւնը իբր թէ երեք անգամ աճած է, եւ Մալաթիա Թուրքիոյ ամենէն արագ ընդարձակուող քաղաքներէն մէկը եղած է:

Թուրք հեղինակը այս տեղեկութիւններու մէջ Հայերու արդի թիւին վրայ բնաւ չի խօսիր եւ չ'ըսեր թէ անոնք ի՛նչպէս անհետացան եւ ջնջուեցան:

1918–ի Զինադադարէն ետք հոն համախմբուած էին 2000 հայ վերապրողներ, որոնք չեն կրցած մնալ հոն եւ ասդին–անդին ցրուած են, եւ այսօր հոն շատ աննշան թիւով Հայեր կ'ապրին եւ հակառակ իրենց այս անշքացած վիճակին, եւ տեսակ–տեսակ սեղմումներուն եւ հալածանքներուն, կեանքի պայքարը կը տանին համբերատարութեամբ եւ իրենց գոյութիւնը կը պահեն:

Թուրքերը գրեթէ հոն են ուր որ էին ասկէ 40 տարի առաջ: Տարբերու-թիւնները բացարձակ երեւութական են:

Ֆէսին յաջորդած է գլխարկը և տափատ ու շալվար կը մրցին իրարու հետ, բայց Թուրքը միշտ նոյն մակարոյծն է եւ նոյն այն յափշտակիչը, որ երբեմն քրիստոնեայ հպատակները կը կողոպտէր բռնութեամբ, իսկ հիմա անյագօրէն կը կողոպտէ տոլարները «Ընքլ Սէմ»ին՝ անոր քթին խնդալով:

Տնտեսական անկախութիւնը, զոր կերտել կ'երեւակայէր Թուրքը, այսօր բացարձակ ցնորք մը դարձած է, եւ այդ բարեբեր սնանկութեան դու-ռը հասած է՝ մատնուելով անօրինակ տնտեսական անկումի մը եւ աներեւա-կայելի աղքատութեան:

